ՀՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ

ԱՐՎԵՍՏԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՀՀ ՄՇԱԿՈՒՅԹԻ, ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԻ ԵՎ ՍՊՈՐՏԻ ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՀԵՏԱԶՈՏՄԱՆ ԿԵՆՏՐՈՆ



ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1996

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ



ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

# ИСТОРИЯ АРМЯНСКОЙ АРХИТЕКТУРЫ



# HISTORY OF ARMENIAN ARCHITECTURE

ԳՄԴ 85. 113(2Հ)1
Հ. 253

Տպագրվում է ՀՀ ԳԱԱ արվեստի ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ



*Գիրքը հրատարակության են երաշխավորել գրախոսներ՝
ակադեմիկոս* Բ. Ն. Առաքելյանը
*և ճարտարապետության դոկտոր* Ս. Խ. Մնացականյանը

Հ. 53 Հայկական ճարտարապետության պատմություն: *Վեց հատորով /ՀՀ ԳԱԱ արվեստի ին-տ, ՀՀ մշակույթի, երիտասարդության հարցերի և սպորտի նախարարության հուշարձանների հետազոտման կենտրոն, (Խմբ. խորհուրդ՝ Բ. Ն. Առաքելյան և ուրիշ.), ՀՀ ԳԱԱ հրատ.։*

*Հ. 1, (Պատ. խմբ.՝ Գ. Ա. Տիրացյան).—1996.—298 էջ, 48 թ. նկ.։*

*Հայկական ճարտարապետության պատմության վեցհատորյակի առաջին հատորն ընդգրկում է Հայկական լեռնաշխարհի ճարտարապետական մշակույթը՝ հնագույն ժամանակներից մինչև վաղ միջնադար։ Հանգամանորեն ներկայացված են նախնադարյան համայնական հասարակարգի կառուցողական արվեստը, ուրարտական ճարտարապետությունը և անտիկ շրջանի ճարտարապետական մշակույթը մինչև III դ. ներառյալ։*

*Հասցեագրվում է ընթերցող լայն շրջաններին։*

Հ $\frac{4902000000}{703(02)-96}$ 97—87 ԳՄԴ 85.113(2Հ)1

# ԱՐՎԵՍՏԻ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ԿՈՂՄԻՑ

Հայ ժողովրդի բազմադարյան մշակույթի համակարգում ճարտարապետությանը վերապահվում է բացառիկորեն մեծ ու կարևոր տեղ՝ պայմանավորված իր ազգային անկրկնելի ինքնատիպությամբ, մեծահարուստ ավանդներով, միջազգային ճանաչում գտած գեղարվեստական բարձր մակարդակով:

Հայաստանի տարածքում մարդու շինարարական գործունեության առաջին հետքերը վերաբերում են նոր քարե դարին: Մ. թ. ա. IV—II հազարամյակներից մեզ են հասել բազմաթիվ բնակավայրեր, բերդշեններ, մեգալիթյան կառուցվածքներ: Այդ դարաշրջանում ձևավորվել են քաղաքաշինական, ամրոցաշինական, բնակարանային ճարտարապետության որոշակի սկզբունքներ, որոնք հարատևեցին հայ ճարտարապետության զարգացման ողջ ընթացքում:

Հայկական լեռնաշխարհում մ. թ. ա. IX դարում կազմավորվեց հին աշխարհի ստրկատիրական հզոր պետություններից մեկը՝ Արարատյան թագավորությունը (գրականության մեջ ավելի հայտնի Ուրարտու անունով): Նրա զարգացած քաղաքաշինության և ճարտարապետության մասին պատկերացում են տալիս Հայաստանի Հանրապետության տարածքում գտնվող Էրեբունի, Թեյշեբաինի, Արգիշտիխինիլի քաղաքները: Էրեբունին, որն ըստ սեպագիր արձանագրության հիմնադրվել է մ. թ. ա. 782 թ., կյանքը գոյատևեց նաև Ուրարտական պետության անկումից հետո և նրա ժառանգորդը դարձավ Երևանը: Հելլենիստական մշակույթի ոլորտն ընդգրկված Հայաստանի արվեստի ու ճարտարապետության բարձր մակարդակի վկայությունն են երկրի մայրաքաղաքների՝ Արմավիրի, Արտաշատի, և Գառնիի ամրոցի հուշարձանները:

Հայ ճարտարապետության ազգային ինքնատիպ կերպարը ձևավորվեց և բյուրեղացավ վաղ միջնադարում՝ IV—VII դդ.:

Հայաստանն աշխարհի առաջին պետությունն էր, որ Տրդատ թագավորի օրոք քրիստոնեությունն ընդունեց իբրև պետական կրոն (301 թ.) և քառորդ դար միակ քրիստոնեական պետությունն էր աշխարհում: Քրիստոնեությունն ընդունելուց անմիջապես հետո երկրում ծայր առավ պաշտամունքային շենքերի տիպերի ինքնուրույն մշակումը: Հայ ճարտարապետությունը վաղ միջնադարում, հատկապես իր զարգացման ոսկեդարում (VII դ.), ստեղծեց եկեղեցական շենքերի մի շարք ինքնատիպ հորինվածքներ (Էջմիածին-Բագարանի, Մաստարայի, Ավան-Հռիփսիմեի, «զմբեթավոր դահլիճի» տիպի), որոնք մտան համաշխարհային արվեստի գանձարանը:

Հայ ճարտարապետության դասական շրջանն ավարտվեց VII դարի վերջում, երբ արաբները նվաճեցին Հայաստանը: Բայց IX դարում արդեն հայկական պետականությունը վերածնվեց և սկիզբ առավ Հայաստանի ճարտարապետության զարգացման նոր շրջափուլը: Դա պայմանավորվեց, առաջին հերթին, քաղաքային մշակույթի (հատկապես երկրի մայրաքաղաք Անիի)

վերելքով, որի հետևանքը եղավ պաշտամունքային և աշխարհիկ ճարտարապետության բուռն զարգացումը:

Երկրի ֆեոդալական մասնատվածությունը IX—XI դարերում հանգեցրեց Անիի, Սյունիքի, Լոռու, Վասպուրականի, իսկ XII—XIII դարերում Արցախի առանձին ճարտարապետական դպրոցների ստեղծմանը:

IX դարում ձևավորվեց հուշարձանի մի նոր տիպ՝ խաչքարը, եզակի երևույթ միջնադարյան գեղարվեստական բովանդակ մշակույթում:

IX—XIV դարերի ճարտարապետության մեջ կարևոր տեղ են գրավում վանական համալիրները, որոնց մեջ կառուցվում էին նաև աշխարհիկ բնույթի շենքեր: Այս շարքում առանձնանում են գավիթներն ու ժամատները՝ յուրօրինակ շինություններ, որոնք սովորաբար ծառայում էին որպես տապանատուն և ժողովատեղի:

Կիլիկյան Հայաստանը XII—XIV դդ. աչքի էր ընկնում զարգացած ճարտարապետությամբ, հատկապես ամրոցաշինությամբ:

Քաղաքական և տնտեսական անբարենպաստ պայմանների հետևանքով XV—XVI դարերում շինարարությունը Հայաստանում գրեթե դադարեց: Այդ ժամանակաշրջանում հայ ճարտարապետությունը գոյատևում էր հայ գաղթօջախներում (Վրաստան, Իրան, Ռուսաստան, Լեհաստան, Ռումինիա և այլն): XVII դարի սկզբում միայն համեմատաբար նպաստավոր պայմաններ ստեղծվեցին երկրի վերականգնման ու շինարարական գործունեության համար:

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին (1828 թ.) բախտորոշ նշանակություն ունեցավ ժողովրդի նյութական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտների, նաև ճարտարապետության համար: Այն իր պատմության միջնադարյան շրջանից թևակոխեց զարգացման մի նոր փուլ՝ ուրույն հատկանիշներով:

Առանձնապես նշանակալի և ծանրակշիռ է հայ ճարտարապետության զարգացման խորհրդային շրջանը՝ ոչ միայն շինարարության աննախադեպ մեծ ծավալով, այլև ճարտարապետական արվեստի աչքի ընկնող վարպետներով, մեծարժեք կոթողներով, ազգային ավանդների նորովի կիրառմամբ, արդիական ճարտարապետության նկարագրի որոնումներով:

*
* *

Հայ ճարտարապետությունն անցյալ դարի 30-ական թվականներից դարձել է Եվրոպայի և ռուս գիտնականների սևեռուն ուշադրության առարկան: Հայագիտության այդ նոր բնագավառի հիմքը դրեցին անվանի հնագետ ու ազգագրագետ շվեյցարացի Ֆրեդերիկ Դյուբուա դը Մոնպերեն և ֆրանսիացի գիտնական Շարլ Տեքսիեն՝ գրեթե միաժամանակ: Նրանց կատարած չափագրությունները, գրչանկարները, առանձին հուշարձանների վերակազմության նախագծերը ներկայացրին Արևմուտքին հայ ճարտարապետության առավել նշանավոր կոթողները: Իրենց որոշ կանխակալ և վիճելի տեսակետներով հանդերձ, դը Մոնպերեի և Տեքսիեի աշխատանքները նշանակալի դեր կատարեցին Եվրոպայում հայ ճարտարապետական արվեստի ուսումնասիրման գործում: Մինչև XIX դարի վերջը ընդհանուր բնույթի կամ Հայաստանի ու Վրաստանի ճարտարապետությանը նվիրված ուսումնասիրություններում արծարծվել են հայ ճարտարապետության հետ կապված բազմաթիվ խնդիր-

ներ: Այս առումով ուշագրավ են ֆրանսիացի Մարի Բրոսեի, գերմանացի Կարլ Շնաազեի, անգլիացի Ջեյմս Ֆերգյուսոնի և հատկապես ականավոր գիտնական Օգյուստ Շուազիի (Ֆրանսիա) աշխատությունները: Համաշխարհային ճարտարապետությանը նվիրված իր ծավալուն ուսումնասիրության մեջ նա առանձին տեղ է հատկացնում հայ ճարտարապետությանը, նշելով նրա դերն ուրիշ երկրների շինարարական արվեստի առանձին ձևերի ստեղծման, ռոմանական ոճի կազմավորման մեջ:

Անցյալ դարում հայ ճարտարապետությունը դառնում է նաև ռուս արվեստաբանների քննության առարկա (Ա. Մուրավյով, Դ. Գրիմ, Ն. Կոնդակով): Միաժամանակ Հայաստանի շատ հուշարձաններ, վանական համալիրներ և դրանց վիմագրությունը ներկայացվում են նաև հայ հեղինակների գործերում (Հ. Շահխաթունյանց, Ս. Ջալալյանց, Ղ. Ալիշան, Ս. Էփրիկյան, Ե. Լալայան): Իսկ նույն դարի վերջին տասնամյակում սկսվում են միջնադարյան Հայաստանի մայրաքաղաք Անիի սիստեմատիկ պեղումները՝ խոշորագույն գիտնական և հայագետ ակադեմիկոս Նիկողայոս Մառի գլխավորությամբ: Դրանց շնորհիվ ձևավորվեց հայ միջնադարյան ճարտարապետության հիմնավոր ուսումնասիրության դպրոցը: Այդ գործում կարևոր դեր խաղաց Անիի գիտարշավը, որը 1917 թ. վերածվեց Կովկասի առաջին գիտահետազոտական ինստիտուտի: XX դարի սկզբում լույս տեսավ մեծանուն արևելագետ ու հայագետ Հովսեփ Օրբելու աշխատությունների շարքը՝ նվիրված Հայաստանի նյութական մշակույթի տարբեր հարցերին: Բազմավաստակ գիտնական, ճարտարապետ Թորոս Թորամանյանը ծավալեց հայկական շինարարական արվեստի մասնագիտական խոր և բազմակողմանի ուսումնասիրության գործը և դարձավ Հայաստանի ճարտարապետության գիտական ուսումնասիրության հիմնադիրն ու ռահվիրան:

XX դարի սկզբից համաշխարհային մասնագիտական գրականության մեջ հայ ճարտարապետությունը գրավում է ավելի ու ավելի աչքի ընկնող տեղ: Հատկապես արժեքավոր են Շ. Դիլի, Վ. Բախմանի, Գ. Ռիվոյրայի, Խ. Լինչի, Յու. Բալթրուշայթիսի եվրոպական տարբեր լեզուներով լույս տեսած ուսումնասիրությունները, որոնք մասամբ կամ ամբողջովին նվիրված են հայ ճարտարապետությանը: Այս շարքում առանձնանում են ավստրիացի խոշոր գիտնական, արվեստաբան և արևելագետ Ի. Ստրժիգովսկու ուսումնասիրությունները: Նա Հայաստանում հավաքած տվյալների, Թորոս Թորամանյանի տպագիր ու անտիպ մեծաքանակ նյութերի հիման վրա գրեց և 1918 թ. Վիեննայում լույս ընծայեց երկհատոր «Հայերի ճարտարապետությունը և Եվրոպան» կոթողային մենագրությունը, որը մինչև օրս էլ չի կորցրել իր արժեքն ու կարևորությունը: Ստրժիգովսկին եվրոպացի արվեստաբաններից առաջինն էր, որ բացահայտեց և հիմնավորեց հայ ճարտարապետության միջազգային նշանակությունը և ազդեցությունը Արևմուտքի ճարտարապետության զարգացման վրա:

1920-ական թվականներից սկսած հայ ճարտարապետության ուսումնասիրության կենտրոնը դարձավ Խորհրդային Հայաստանը: Այս ժամանակաշրջանին է վերաբերում Թ. Թորամանյանի գիտական գործունեության առավել բեղմնավոր փուլը, այս տարիներին հանդես եկավ հայ և ռուս հետազոտողների մի նոր սերունդ: Ազգային մշակույթի, ուստի նաև ճարտարապետության ուսումնասիրությունը դարձավ պետականորեն ծրագրվող գործ: Հետազոտության առարկա դարձան հուշարձանների պատմությունը, վիմագրությունը,

քանդակն ու որմնանկարը, սկսվեցին պղնձեքարյան և բրոնզի ու վաղ երկաթի դարաշրջանի բնակատեղիների՝ Շենգավիթի (Ս. Սարդարյան), Լճաշենի (Հ. Մնացականյան), Մեծամորի ու Ջրահովիտի (Է. Խանզադյան), Մոխրաբլուրի, Նամիրամի (Գ. Արեշյան) ուսումնասիրությունները, ուրարտական քաղաքների, Հին Հայաստանի մայրաքաղաքների (Դվին, Արմավիր, Արտաշատ), ամրոցների (Ամբերդ, Գառնի) պեղումները: Կարմիր բլուրում ու Արինբերդում Թեյշեբաինիի ու Էրեբունիի սիստեմատիկ պեղումների (Բորիս Պիոտրովսկի, Կոնստանտին Հովհաննիսյան), ապա Արգիշտիխինիլի—Արմավիրի պեղումների (Հարություն Մարտիրոսյան, Գևորգ Տիրացյան, Կորյուն Ղաֆադարյան) արդյունքները ու գիտական բարձր մակարդակով կատարված հետազոտությունները Հայաստանը դարձրին ուրարտագիտության նշանավոր կենտրոն:

Հելլենիստական Հայաստանի նյութական մշակույթն ու ճարտարապետությունն ուսումնասիրեցին Նիկողայոս Բունիաթյանը, Բաբկեն Առաքելյանը, Ալեքսանդր Սահինյանը, Գևորգ Տիրացյանը, որոնք և բացահայտեցին այդ ժամանակաշրջանի հայ արվեստի կարևոր նշանակությունը հայ դասական ճարտարապետության ծագման ու զարգացման ընթացքում: Հայագիտական աչքի ընկնող երևույթ էր Թ. Թորամանյանի գիտական վաստակն ընդգրկող երկու ծավալուն հատորների տպագրությունը:

Հետպատերազմյան տարիներին գիտնականները ձեռնամուխ եղան ընդհանրացնող բնույթի հետազոտությունների ստեղծմանը, առաջին անգամ գրվեց հայ միջնադարյան ճարտարապետության պատմությունը, որի հեղինակն էր աչքի ընկնող գիտնական Նիկոլայ Տոկարսկին: Նա խոշոր վաստակ ունի նաև Հայաստանի ժայռափոր կառույցների, ամրոցների, վաղմիջնադարյան մի շարք հուշարձանների (որոնք ինքն էր հայտնաբերել պեղումներով), Տայքի ճարտարապետական դպրոցի գիտական և անաչառ հետազոտման գործում: Նորահայտ նյութերի հիման վրա կարևոր ընդհանրացնող աշխատություններ գրեցին Անատոլի Յակոբսոնը, Յուրի Յարալովը, Վարազդատ Հարությունյանը, Հովհաննես Խալփախչյանը, Ալեքսանդր Սահինյանը, Ստեփան Մնացականյանը, Մուրադ Հասրաթյանը: Հետազոտության առարկա դարձան հայկական ճարտարապետության առանձին հանգուցային խնդիրները՝ քաղաքաշինական մշակույթը (Վարազդատ Հարությունյան, Արմեն Զարյան), աշխարհիկ շենքերը (Վարազդատ Հարությունյան, Հովհաննես Խալփախչյան), կառուցվածքների տիպերը (Ստեփան Մնացականյան, Տիրան Մարության, Վահագն Գրիգորյան), առանձին կարևոր հուշարձանները (Ալեքսանդրա Երեմյան, Ալեքսանդր Սահինյան, Գառնիկ Շախկյան), հարդարանքը (Շմավոն Ազատյան), ճարտարապետական դպրոցները (Ստեփան Մնացականյան), միջնադարյան ճարտարապետները (Սեդրակ Բարխուդարյան), ժողովրդական ճարտարապետությունը (Սողոմոն Վարդանյան, Էմին Հակոբյան, Նուբար Պապուխյան, Սարգիս Մաթևոսյան), վիմագրությունը (Հովսեփ Օրբելի, Գարեգին Հովսեփյան, Կարո Ղաֆադարյան, Սեդրակ Բարխուդարյան, Սուրեն Ավագյան, Պարույր Մուրադյան): Մեծ է Անատոլի Յակոբսոնի ավանդը հայ և հարևան երկրների (Վրաստան, Սիրիա, Բյուզանդիա) ճարտարապետական առնչությունների, վանական համալիրների, խաչքարերի հետազոտման բնագավառում: Հայ խորհրդային ճարտարապետության նվաճումների ուսումնասիրությունը նոր էջ բացեց հայ արվեստաբանության պատմության մեջ՝ մշակվեցին նաև տեսական հարցեր, ստեղծագործականի հետ մեկտեղ նաև գործնական խնդիրներ: Ուշագրավ են Խորհրդային Հայաստանի քաղաքաշինությանը (Հրայր

Իսաբեկյան), հայ խորհրդային ճարտարապետության անցած ուղին ամփոփող (Վարազդատ Հարությունյան, Կոնստանտին Հովհաննիսյան, Լևոն Բաբայան, Արծվին Գրիգորյան, Մարտին Թովմասյան, Մուրադ Հասրաթյան, Լորետա Գյուլխանյան), նրա հիմնադիր Ալեքսանդր Թամանյանին նվիրված (Լևոն Զորյան), նրա ազգային առանձնահատկությունները բացահայտող (Յուրի Յարալով, Կարեն Բալյան) հետազոտությունները:

Հայ արվեստաբանական մտքի, ճարտարապետության գիտության ձևավորմանն ու զարգացմանը մեծապես նպաստեց ՀՀ գիտությունների ակադեմիայի արվեստների պատմության և տեսության սեկտորի հիման վրա 1958 թ. ստեղծված արվեստի ինստիտուտը: Նրա ճարտարապետության բաժինը ուսումնասիրում է հայ ճարտարապետության անցած բազմադարյան ճանապարհը՝ հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը:

Ինստիտուտը համագործակցում է ինչպես հայրենական, այնպես էլ արտասահմանյան հայագիտական կենտրոնների հետ: 1960-ական թթ. եվրոպական երկրներում վերստին ուժեղացավ հետաքրքրությունը Հայաստանի միջնադարյան արվեստի՝ մանրանկարչության, որմնանկարչության, քանդակագործության, հատկապես ճարտարապետության հանդեպ: Այդ շարժումը կյանքի կոչեցին իտալացիները: 1966-ին Հռոմի համալսարանին առընթեր ստեղծվեց հայ ճարտարապետության ուսումնասիրման կենտրոն (ղեկավար՝ Պաոլո Կունեո), իսկ 1967-ին Միլանի պոլիտեխնիկական ինստիտուտում՝ Հայ մշակույթի ուսումնասիրման ու վավերագրման կենտրոն (ղեկավար՝ Ադրիանո Ալպագո Նովելլո): Հռոմի կենտրոնի գործունեության արդյունքը եղավ հինգ մենագրություն՝ նվիրված նորահայտ կամ քիչ ուսումնասիրված ճարտարապետական հուշարձաններին (Թոմազո Բրեչչա Ֆրատադոկի, Պաոլո Կունեո, Ֆրանչեսկո Գանդոլֆո, Մարիո դ'Օնոֆրիո): Պաոլո Կունեոյի գրքերին, գիտական հոդվածներին, միջազգային գիտաժողովների զեկուցումներին հաջորդեց նրա «Հայ ճարտարապետությունը» երկհատոր աշխատությունը (1988 թ.), որտեղ ընդգրկված են IV—XIX դարերի պատմական Հայաստանի տարածքի ճարտարապետական գրեթե բոլոր նշանավոր հուշարձանները՝ չափագրություններով, լուսանկարներով, սեղմ նկարագրությամբ ու հակիրճ գնահատականով մանրամասն մատենագիտությամբ: Հանրագիտարանի արժեք ներկայացնող այդ աշխատությունը դարձել է հայ ժողովրդի շինարարական արվեստով զբաղվող արևմտյան գիտնականների սեղանի գիրքը: Ավելի բազմազան է Միլանի կենտրոնի գործունեությունը: Ա. Նովելլոյի ղեկավարած կենտրոնը կազմակերպել է շրջիկ ցուցահանդես՝ աշխարհի երկրներին ծանոթացնելով հայ ճարտարապետության արժեքներին, տարբեր լեզուներով լույս է ընծայել նրա կատալոգները, հիմնադրել «Վավերագրեր հայ ճարտարապետության» բարձրորակ մատենաշարը՝ ՀՀ ԳԱԱ արվեստի ինստիտուտի համագործակցությամբ (մինչև այժմ լույս է տեսել երկու տասնյակ գիրք): Միլանի կենտրոնը հրատարակում է նաև «Հայ ճարտարապետության հետազոտություններ» մատենաշարը, որից լույս է տեսել 25 պրակ:

Միլանի կենտրոնի և անձամբ Ա. Նովելլոյի անմիջական մասնակցությամբ հրավիրվեցին հայ արվեստին նվիրված միջազգային գիտաժողովներ: 1975, 1978, 1981, 1985, 1988 թթ. Իտալիայում ու Հայաստանում կայացած գիտաժողովներին մասնակցել են աշխարհի տարբեր երկրների հարյուրավոր մասնագետներ, լսվել են բազմաթիվ զեկուցումներ, որոնք (տպագրված առանձին գրքերով) մի նոր աստիճանի բարձրացրին հայ արվեստագիտությունը: Պետք

է հուսալ, որ Արվեստի ինստիտուտի և Միլանի կենտրոնի միջև կնքված պայմանագրով նախատեսված հետագա գիտաժողովներն ավելի ևս կհարստացնեն միջնադարյան հայ արվեստի ուսումնասիրությունը:

Իտալիայից բացի, հայ ճարտարապետության և արվեստի ուսումնասիրության օջախներ ստեղծվեցին Արևմտյան Գերմանիայում (Հարտմուտ Հոֆրիխտեր, Գունդոլֆ Բրուխհաուզ, Արմեն Հախնազարյան), ԱՄՆ-ում, (Ռիչարդ Մերյուս, Լյուսի Մանվելյան), Ֆրանսիայում (Թիերի ամուսիններ, Պատրիկ Դոնաբեդյան): Ժան-Միշել Թիերին հրատարակեց Վասպուրականի, Կարսի մարզի հայկական հուշարձաններին նվիրված աշխատություններ: Պ. Դոնաբեդյանի մասնակցությամբ Ժ. Մ. Թիերին տպագրեց «Հայկական արվեստ» ծավալուն մենագրությունը՝ նվիրված Հայաստանի ճարտարապետությանը, նկարչությանը, քանդակագործությանը և կիրառական արվեստին: Միջազգային գիտաժողովները նպաստեցին, որ հայ գեղարվեստական մշակույթը հետաքրքրության առարկա դառնա նաև ուրիշ երկրների արվեստաբանների համար (Բուլղարիա, Հարավսլավիա, Հունաստան, Բելգիա, Դանիա, Իռլանդիա և այլն):

Հայ ճարտարապետության պատմության ուսումնասիրության կարևորագույն օջախներ են նաև Երևանի ճարտարապետաշինարարական ինստիտուտի ճարտարապետության տեսության և պատմության ամբիոնը, Հայաստանի գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտը, որի աշխատանքները սերտորեն կապված են ճարտարապետական հուշարձանների պեղումների հետ, և հատկապես Հուշարձանների հետազոտման կենտրոնը, որի բեղարձակ գործունեության մի կարևոր նյութը ճարտարապետությանը վերաբերող գրքերի հրատարակությունն է: ԵՃՇԻ ճարտարապետության տեսության և պատմության ամբիոնը մոտ կես դար արդեն ոչ միայն մասնագետների, այլ նաև գիտական կադրերի պատրաստման կենտրոն է. այստեղ առաջին անգամ մշակվել է հայ ճարտարապետության պատմության դասընթաց (Վ. Հարությունյան): Ի վերջո, նշենք նաև Հայկական հուշարձանների պահպանության ընկերության գնահատելի գործունեությունը, որի հրատարակած աշխատանքների մեջ առանձնապես ուշագրավ են Լեռնային Ղարաբաղի (Շ. Մկրտչյան) և Նախիջևանի (Ա. Այվազյան) հուշարձաններին նվիրված գրքերը:

Տասնամյակների ընթացքում կուտակված փաստական հսկայական նյութը Արևմտյան Հայաստանի, Իրանի տարածքի, հայկական գաղթօջախների, Վրաստանի և Ադրբեջանի տարածքի հայկական հուշարձանների բազմաթիվ ուսումնասիրությունները, կատարված պեղումները, որոնց շնորհիվ ի հայտ եկան նորանոր ճարտարապետական արժեքներ, հնարավոր դարձրին «Հայ ճարտարապետության պատմության» ներկա վեցհատորյակի ստեղծումը:

*
* *

Վեցհատորյակի առաջին հատորն ընդգրկում է Հայկական լեռնաշխարհի, պատմական Հայաստանի տարածքի ճարտարապետական մշակույթը հնագույն ժամանակներից մինչև մ. թ. III դարը, հաջորդ երկու հատորները՝ վաղ միջնադարի՝ IV—VII դարերի ճարտարապետությունը (երկրորդը՝ քաղաքաշինությունը, աշխարհիկ ճարտարապետությունը, բազիլիկ կառույցները, երրորդը՝ նույն ժամանակաշրջանի կենտրոնագմբեթ շենքերը, մեմորիալ հուշարձանне-

րք, շինարարական տեխնիկան, արվեստների սինթեզը), չորրորդ հատորը՝ IX—XIV, հինգերորդը՝ XV—XIX դարերի, վեցերորդը՝ Խորհրդային Հայաստանի ճարտարապետությունը:

Վեցհատորյակն, այսպիսով, հայ ճարտարապետական գիտության ավելի քան հարյուրհիսուն տարվա աշխատանքի հանրագումարն է և ամփոփումը՝ այդ գիտության այսօրվա հնարավորությունների մակարդակով: Հասարակության դատին հանձնելով իրենց աշխատանքի արդյունքը, հեղինակները հեռու են այն մտքից, որ վեցհատորյակը ներկայացնում է հայ ճարտարապետական արվեստի բազմադարյա պատմությունը համակողմանի և կատարելապես, մի բան, որ հնարավոր է իրագործել հետագայում, երբ հայ ճարտարապետության ուսումնասիրության ասպարեզում՝ իր վիթխարի ժամանակային և տարածքային ընդգրկմամբ, այլևս չեն լինի սպիտակ կետեր, հետազոտված կլինեն հայկական բոլոր հուշարձանները ոչ միայն ներկայիս Հայաստանի տարածքում, այլև ամենուրեք:

# ՄԱՍ ԱՌԱՋԻՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՆԱԽՆԱԴԱՐՅԱՆ-ՀԱՄԱՅՆԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

# Ն Ե Ր Ա Ծ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

## ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ԱՌԱՋԱՎՈՐ ԱՍԻԱՅՈՒՄ

*Շինարարական գործի և ճարտարապետության ակունքները սերտորեն կապված են նախամարդու կողմից արհեստական միջավայրի ստեղծման առաջին փորձերի հետ։ Վերջին տասնամյակներում կատարված հետազոտությունները բացահայտել են կարևորագույն մի քանի փաստեր, որոնք լուսաբանում են ճարտարապետության առաջացման հանգուցային խնդիրը։ Ճարտարապետության պատմության և, ընդհանրապես, հնագիտության մեջ ենթադրվում էր, որ շինարարական գործն առաջացել է մարդկային մշակույթի աստիճանական կատարելագործման ընթացքում, հին քարեդարի (պալեոլիթի) զարգացած փուլերում։ Սակայն Արևելյան Աֆրիկայում գտնվող Օլդուվայ հնավայրում կատարված հայտնագործությունները ստիպում են արմատապես վերանայել այդ վարկածը։ Պալեոլիթյան ամենավաղ մշակույթը ներկայացնող քարե տարատեսակ գործիքների հետ մեկտեղ այդտեղ բացվել է ձվածիր հատակաձևով քարերի շարվածք, որով ամրացված է եղել ճյուղերից ու խոտից շինված հոլիկի հիմքը։ Շերտը, որի մեջ գտնվել է այդ շինությունը, 1,8—2 միլիոն տարեկան է[1]։ Ֆրանսիայի հարավում պեղված Տերրա-Ամատա հինքարեդարյան կայանում գտնվել են հնագույն հյուղակների հետքեր, որոնց պատերի հիմնակմախքը կազմել են ցցված ձողաններ, իսկ հատակները ծածկված են գլաքարով։ Օլդուվայան ժամանակաշրջանին հաջորդող վաղ աշելին վերագրված ձվածիր հատակաձևով այդ շինությունները (մոտ 380—450 հազար տարի նախքան մեր օրերը) խոշոր չափի են եղել. երկարությունը՝ 7—15 մ, լայնությունը՝ 4—6 մ։*

*Ճարտարապետության առաջացման համար առանձնապես կարևոր էր քարայրաբնակության գործոնը։ Ապաստանելով քարանձավում, անբարենպաստ կլիմայական պայմաններում, նախամարդը սկսում է օգտագործել և դիտել այն որպես բնակարան, որի ներքին տարածությունը յուրացված է և ենթակա է կիրառական ստորաբաժանման՝ սննդի մշակման, գործիքների արտադրության, օջախների տեղադրման, ննջեցյալների թաղման համար։ Քարայրային բնակարանը հանդես էր գալիս իբրև կազմակերպված միկրոկոսմ՝ ընդդեմ արտաքին աշխարհի քաոսի։ Ուստի պատահական չէ, որ աշելյան մշակույթներում գոյություն ունեցած հնագույն շինությունները՝ պատերը և հյուղակները, կառուցվել են ի լրացումն քարայրային բնակարանի, քարայրի ներսում կամ մուտքի մոտ։ Լազարեթ քարայրի (Ֆրանսիա) ուշ աշելյան ժամանակաշրջանի շերտում հայտնաբերվել է 11 մ երկարությամբ և 3,5 մ լայնությամբ մի կառույց՝ ձողանային հիմնակմախքով, որը նախկինում ծածկված էր կենդանիների մորթիներով։ Նրա ներքին մակերեսը, որը հավասար էր 53 մ$^{2}$, բաժանվում էր միջնորմով։ Կացարանի մուտքը ուղղված էր դեպի քարայրի ներսը, իսկ քարայրի բացվածքում քարաշեն մի փոքրիկ պատ է դրված եղել, որը հյուղակը պաշտպանել է ձմռան ամիսներին ծովից փչող քամիներից[3]։*

*Քարայրաբնակությունը Հայկական լեռնաշխարհում արձանագրվում է առնվազն վաղ աշելյան (հին տերմինաբանությամբ՝ շելյան) ժամանակաշրջանից սկսած։ Դրա վկայությունն է Լեռնային Ղարաբաղում գտնվող Ազոխի քարան-*

ձավի 6-րդ շերտի մշակույթը, որը շուրջ 300—600 հազար տարեկան է[4]: Այդ ժամանակաշրջանից սկսած քարայրները Հայկական լեռնաշխարհում պարբերաբար օգտագործվել են բնակության համար մինչև մեր դարի սկիզբը: Արդի տվյալներով լեռնաշխարհի քարանձավներում, բացի հինքարեդարյան (պալեոլիթյան) մշակույթներից, հայտնաբերվել են միջին քարեդարյան (մեզոլիթյան), պղնձաքարեդարյան (էնեոլիթյան), վաղ և ուշ բրոնզեդարյան, վաղ երկաթեդարյան, զարգացած և ուշ միջնադարյան մշակութային շերտեր: Չի բացառվում, և նույնիսկ հավանական է թվում, քարայրների բնակեցումը նոր քարեդարում (նեոլիթում), ինչպես նաև առայժմ չվկայված մյուս դարաշրջաններում, իսկ ստրկատիրական ժամանակաշրջանում և ավելի ուշ դարերում օգտագործվող բնական քարանձավների կողքին կերտվել են պաշտամունքային նշանակության ժայռափոր հոյակապ կառույցներ:

Որոշ ուսումնասիրողներ ենթադրում են, որ նախամարդը բնակվել է Ազոխի քարայրում նույնիսկ վաղ-աշելյան ժամանակաշրջանից առաջ՝ օլդուվայան դարաշրջանում, սակայն այդ վարկածը լրացուցիչ փաստարկման կարիք ունի:

Հայաստանում կացարանների կառուցման հնագույն ձևերից մեկը վերաբերում է վաղ պալեոլիթի վերջին՝ մուստերյան դարաշրջանին: Երևան—1-ին քարայրի մուտքի մոտ, նրա ծածկից դուրս հայտնաբերվել են փայտե ձողաններից ու մորթիներից պատրաստված, տափանված հատակով հյուղակի հետքեր: Ռադիոածխածնային անալիզի տվյալներով այդ հյուղակը գոյություն է ունեցել 48 հազար տարի առաջ[5]:

Ուշ պալեոլիթում Մերձավոր արևելքի տարածքում բնակության համար համատարած օգտագործվել են քարայրները: Նույն դարաշրջանում գոյություն են ունեցել նաև բացօթյա բազմաթիվ բնակավայրեր, որտեղ պետք է կառուցված լինեին թեթև շինություններ: Սակայն առ այսօր նրանց հետքերը չեն հայտնաբերվել: Բացօթյա արհեստական հնագույն շինությունը հայտնագործվել է Պաղեստինում, Տիբերիաս լճի արևելյան ափին գտնվող Այն Գև 1-ին հնավայրում: Այստեղ բացվել է թեք լանջի վրա փորված կլորավուն հատակաձևով փոս, որի մեջ անմշակ քարերից կիսակլոր հատակագծով հենապատ էր կառուցված: Շարվածքի բարձրությունը 0,4 մ էր: Այս կացարանը պատկանում է էպիպալեոլիթյան կեբարյան հնագիտական մշակույթին և ռադիոածխածնային անալիզի հիման վրա վերագրվում է մ.թ.ա. 15—13-րդ հազարամյակներին[6]:

Այնուհանդերձ կեբարյան բնակչության հիմնական մասը դեռևս ապրել է քարանձավներում: Քարայրային կյանքը շարունակել են նաև նրանց հետնորդները՝ նատուֆյան մշակույթի կրողները:

Ճարտարապետության հնագույն փուլի ձևավորումը սերտորեն կապված է արտադրող երկրագործական-անասնապահական տնտեսության առաջացման հետ: Մոտավորապես մ.թ.ա. X—IX հազարամյակներից սկսած Երկրագնդի վրա հաստատվում են բնակլիմայական այն պայմանները, որոնք բնորոշ են երկրաբանական նորագույն ենթաշրջանին՝ հոլոցենին: Այնուհետև բնական միջավայրի փոփոխությունը ճակատագրական նշանակություն է ունեցել միայն առանձին հասարակությունների գոյության համար: Այդ փոփոխությունները միատեսակ չէին տարբեր երկրամասերում և իրենց նշանակությամբ չեն կարող համադրվել սառցապատման գործոնի հետ: Հին հոլոցենում Առաջավոր Ասիայում տեղի է ունեցել մարդկության պատմության ընթացքի խոշորագույն հեղաշրջումներից մեկը՝ անցումը որսորդական-հավաքչական յուրացնող տնտեսությունից երկրագործության և անասնապահության միջոցով սննդամթերքի արտադրությանը, որը «նեոլիթյան հեղափոխություն» անվանումն է ստացել: Արտադրող տնտեսության ձևավորմանը Առաջավոր Ասիայում համընկնում են մշակութային մի շարք կարևորագույն հայտնագործություններ, որոնք մեծ թափ են հաղորդել համաշխարհային պատմական առաջընթացին: Նեոլիթում այստեղ տարածվում է արհեստական առաջին շինանյութի՝ հում աղյուսի արտադրությունը, կավը օգտագործվում է իբրև աղյուսե և քարե կառուցվածքների շարվածքի կապակցող նյութ, սկսվում է ճարտարապետության վերընթաց զարգացումը, առաջանում և զարգանում է խեցեգործությունը, մանածագործությունն ու ջուլհակությունը, արմատապես կատարելագործվում է փայտամշակման տեխնոլոգիան, մարդը սկսում է ծանոթանալ մետաղին: Նեոլիթից սկսած երկրագործությունը Առաջավոր Ասիայում և, մասնավորապես, Հայկական լեռնաշխարհում կապված էր ոռոգելի ջրի օգտագործման հետ, ուստի ոռոգման տեխնիկան նույնպես սկսվում է այդ դարաշրջանում: Այսպիսով նեոլիթյան հե-

ղափոխությունը արտահայտում էր մարդկային գործունեության ամբողջ համակարգի որակական փոփոխությունը: Մարդկության պատմության ընթացքում առաջին անգամ Առաջավոր Ասիայում արտադրության միջոցով ստեղծվում է հասարակության գոյության արհեստական միջավայրը, որի հիմքում ընկած արտադրության պրոցեսում ստացված հումքի՝ երկրագործական և անասնապահական սննդամթերքների, քարի, փայտի ու կավի, արհեստական շինանյութերի, գործվածքների վերամշակումը: Նեոլիթյան հեղափոխությունը Առաջավոր Ասիայում ընդգրկել է շուրջ չորս հազարամյակ՝ մ.թ.ա. X—VII-ը ներառյալ, մի ժամանակահատված, որ չնչին էր մարդկության պատմության դրան նախորդող ամբողջ ժամանակաշրջանի համեմատությամբ: Այդ պրոցեսի սկզբնավորումը արտացոլում են այս տարածքի էպիպալեոլիթի (հետհինքարեդար) կամ մեզոլիթի (միջին քարեդար) հնագիտական մշակույթները, իսկ հնագիտական հաջորդ դարաշրջանի՝ նեոլիթի (նոր քարեդար) հուշարձանները արտահայտում են մերձավորարևելյան վաղ երկրագործական-անասնապահական մշակույթների բնորոշ հատկանիշների ձևավորումն ու զարգացումը:

Նեոլիթյան հեղափոխության և նրան հաջորդող զարգացած նեոլիթի ժամանակաշրջանում Առաջավոր Ասիայում ձևավորվում են ճարտարապետական տարբեր ավանդույթներ, որոնք հիմնականում արտահայտվել են այդ ընդարձակ տարածքի տարբեր շրջանների բնակարանաշինության մեջ:

Նեոլիթյան հեղափոխության սկզբնական շրջանում առաջացել են նոր տիպի բացօթյա բնակավայրեր: Այդ պրոցեսը ցայտուն կերպով բացահայտվում է Նատուֆյան մշակույթի նյութերում: Մեզոլիթյան (կամ էպիպալեոլիթյան) այդ մշակույթը տարածված է եղել Ասորիքում և Պաղեստինում և մոտավոր կերպով թվագրվում է մ.թ.ա. 10000—8000 թթ.: Հարթեցնելով քարայրների առջևում գտնվող տարածությունը, նատուֆցիները ստեղծել են օգտագործվող արհեստական հարթակներ, որոնց մեջ կիրառական նշանակության փոսեր են փորվել (Էլ-Ուադ): Օգտագործելով քարե չոր շարվածքը, նրանք թեք լանջերի վրա փոքրիկ հենապատեր են կառուցել, ստեղծելով արհեստական դարավանդներ, որպիսիք օգտագործվել են թեթև նյութերից հյուղակներ շինելու համար (Նահալ-Օրեն)[7]: Կացարանաշինության առաջին հաջողությունները պարզորոշ դրսևորվում են նատուֆյան մշակույթի բացօթյա բնակավայրերում: Այն-Մալլահայում (Էյնան) կառուցված են եղել կլոր հատակաձևով 4-ից մինչև 9 մ տրամագծով կիսագետնափոր կացարաններ, որոնց ստորգետնյա մասի հողե պատերը ամրացվել են մինչև 1,20 մ բարձրությամբ քարերի անշաղախ շարվածքով: Խոշոր կացարաններում բացվել են պատին զուգահեռ, օղակաձև դասավորությամբ փայտե սյուների հետքեր, որոնք կարող էին կրել տանիքի զգալի ծանրությունը: Կացարանները կարմիր գույնով ներկված սալահատակներ են ունեցել: Շինությունների ներսում բացվել են բազմաթիվ պահեստահորեր: Այն-Մալլահայում միաժամանակ բնակեցված էր 25-ից 50 կացարան[8]: Մյուրեյբեթում (Եփրատի ափին՝ Ասորիքում) նատուֆյան մշակույթին անմիջականորեն հաջորդող շերտում բացվել են ավելի հաստատուն շենքի մնացորդներ: Այն կլոր հատակագծով, 6 մ տրամագծով կիսագետնափոր տուն էր, որի պատը կազմել է կողք-կողքի ցցված գերանների շարքը, երեսից 10 սմ հաստությամբ կավաշերտով սվաղված[9]:

Նատուֆյան մշակույթին մոտավորապես ժամանակակից է Զագրոսյան լեռներում տարածված էպիպալեոլիթյան հնագիտական այն մշակույթը, որը ներկայացված է Զավի-Չեմի-Շանիդար հնավայրի նյութերով: Բավականաչափ ընդարձակ այս բնակավայրում (մակերեսը շուրջ 275×215 մ է) բացվել են կլոր հատակագծով (մոտ 4 մ տրամագծով) քարե շարվածքներ, որոնք թերևս կացարանի պատի ստորին մասն էին կազմում[10]: Պեղողները չեն կարողացել պարզել, թե արդյոք այդ կառուցվածքը վերգետնյա՞, թե կիսագետնափոր շինություն էր: Այսուհանդերձ նույն տարածքում պեղված ժամանակագրական հաջորդ շրջանը ներկայացնող Թելլ Մըլեֆաաթ բնակավայրում հայտնի են կիսագետնափոր ձվածիր (3,5×2,7 կամ 4×3 մ) կամ կլոր (4 մ տրամագծով) հատակագծով կառույցներ[11]:

Ճարտարապետական այդ ժառանգությունը վերափոխվում և էապես հարստանում է Առաջավոր Ասիայի պատմության հաջորդ շրջաններում, որոնք վաղագույն նեոլիթ (պրոտոնեոլիթ) ու նախակերամիկական նեոլիթ անվանումն են ստացել և կարող են թվագրվել մ.թ.ա. 8500—6500 թթ. միջև ընկած ժամանակահատվածով: Պրոտոնեո-

լիթի և նախակերամիկական նեոլիթի առաջին շրջանի հուշարձանները ներկայացնում են կառուցողական մտքի և շինարարական տեխնիկայի որոշակի զարգացում։ Այդ ժամանակաշրջանում հայտնագործվում, իրականացվում և տարածվում է ազատ կանգնած պատի գաղափարը, որը հնարավոր էր դարձել կավահողի կապակցող հատկությունների բացահայտման շնորհիվ։ Այսուհետև շարվածքը հանդես է գալիս ոչ միայն որպես հենապատ կամ հիմնաշար, այլև ձևավորում է կառույցների վերգետնյա ծավալը։ Շինությունները ավելի հիմնավոր են դառնում։ Կիսագետնափոր հյուղակների կողքին լայնորեն տարածվում են վերգետնյա կացարանները։ Այդ զարգացումը ցայտուն կերպով ներկայացնում են Մյուրեյբեթի պեղումները։ Էպինատուֆյան շերտին անմիջականորեն հաջորդող բնակավայրի գոյության երկրորդ փուլում կառուցվում են վերգետնյա և կիսագետնափոր կլոր հատակաձևի կացարաններ։ Դրանց պատերը կավածեփ են։ Շինությունների ամրացման համար օգտագործվել են կավաշաղախով շարված քարե շարվածքներ։ Երկրորդ փուլի միաբջիջ կառույցներին երրորդ փուլում (10—17-րդ շինարարական հորիզոններ) հաջորդել են կլոր բազմաբջիջ խոշոր (6 մ տրամագծով) կացարաններ։ Դրանց արտաքին պատերը զանգվածեղ են, կավաշաղախով ամրացված միջին ու մանր քարերի շարվածքով կամ կավածեփ են։ Ներսում կացարանները կավածեփ բարակ միջնորմներով հատվել են մի քանի բաժանմունքների։ Տանիքի համար օգտագործվել են գերանակապ կառուցվածքներ, որոնք հենվել են սյուների վրա։ Նույն փուլի վերջին շրջանում կլոր հատակաձևով բնակելի կացարանների կողքին հանդես են եկել կիրառական յուրահատուկ նշանակության (հավանաբար՝ տնտեսական) քառաշեն քառանկյունի բազմաբջիջ կառույցներ։ Այսպիսով, արձանագրվում է անցումը կլոր հատակագծից դեպի ուղղանկյունը։

Սիրիա-պաղեստինյան նախակերամիկական նեոլիթի ճարտարապետական նորույթները չեն սահմանափակվել վերոհիշյալ փոփոխություններով։ Թել Ասուադի պեղումների ընթացքում արձանագրվել է հարթառուցիկ (պլանոկոնվեքս) ձևի հում աղյուսի օգտագործումը, իսկ Նահալ Օրենի 2-րդ շերտը ներկայացնում է բնական ռելիեֆի թեք լանջի դարավանդային կառուցապատման առաջին փորձերից մեկը։ Այդ բնակավայրում պեղվել են արհեստական չորս դարավանդներ, որոնց վրա բացվել են կլոր հատակաձևով 3—4 մ տրամագծով միաբջիջ 14 կացարաններ։ Տների պատերը կառուցվել են կավաշաղախով շարված քարերով։ Կացարանները խմբավորվել են այնպես, որպեսզի ներքևում դրված տան լանջին հպված պատի հատվածը հենապատ ծառայի վերին դարավանդի շինության համար[12]։

Ճարտարապետական զարգացումը վաղագույն նեոլիթի ժամանակաշրջանում վկայված է նաև Սիրիա-պաղեստինյան մշակութային ոլորտի սահմաններից դուրս։ Խուզիստանում պեղված Ալիկոշ արհեստական բլուր-բնակավայրի Բըս Մորդեհ մշակութային փուլի շերտում բացվել են ուղղանկյուն փոքրիկ (2,25 մ երկարությամբ) կացարաններ, որոնց պատերը շարվել են բնական կարմրավուն գույնի կավաշերտից կտրված՝ 25×15×10 սմ չափի պրիզմայաձև կավակտորներով։

Նույն ժամանակաշրջանին է պատկանում Քերմանշահի մոտակայքում պեղված Գանջդարեհ բնակավայրը, որի D շերտը հոծ կառուցապատման պատկեր է ներկայացնում։ Այստեղ բացվել են կողք կողքի կառուցված խորանարդաձև ծավալի բազմաթիվ փոքրիկ շինություններ, որոնց մի մասը թերևս պահեստային նշանակություն է ունեցել։ Պատերը շինվել են հարթառուցիկ հում աղյուսներից, որոնց 1 մ-ի հասնող երկարությունը հուշում է Հյուսիսային Միջագետքում նեոլիթի ավելի ուշ փուլում տարածված կավի երկարուկ կտորներից՝ «շերտերից» պատեր կառուցելու ավանդույթի հնարավոր ակունքները։ Բնակավայրի կենտրոնում պեղված մի քանի շինություններ ներկայացնում են բնակելի տան երկհարկ ծավալի ստեղծման փորձը։ Պահպանվել են թեթև նյութերից կառուցված հատակների հետքեր, որոնք բարձրացված են եղել փայտե չորսյուների վրա, տակից թողնելով ենթադրվող պահեստային նշանակության խորանարդաձև կառուցվածքներ։ Կացարանների ծածկերում օգտագործվել է հորիզոնական գերանների վրա հենված, կավահողով ծածկված ճյուղերից կառուցվածքը։ Գանջդարեհ D-ի ճարտարապետությունը ներկայացնում է կացարանների ներքին ձևավորման նոր տարրեր՝ շինություններից մեկում պաշտամունքային նշանակության խորշ է բացվել, որտեղ գտնվել է վայրի ոչխարների բարձր ամրացված երկու գանգ։ Կենդանիների (մասնա-









*վորապես՝ ցլերի) գանգերի օգտագործումը սրբարանների ներքին ձևավորման համար բազմատեսակ եղանակով հանդես է գալիս նեոլիթյան մշակույթների զարգացման հաջորդ փուլում՝ Հարավային Անատոլիայում գտնվող Չաթալ-Հույուքում։ Ճարտարապետական նորույթներով բազմահարուստ Գանջդարեհ D շերտում հայտնաբերվել է նաև Առաջավոր Ասիայում առ այսօր հայտնի հնագույն խեցեղեն (մ.թ.ա. VIII հազարամյակի երկրորդ կես)*[13]*։*

*Մոտավորապես նույն ժամանակաշրջանին են պատկանում Հայկական լեռնաշխարհի նեոլիթյան ճարտարապետության այժմ հայտնի հնագույն հուշարձանները։*

# ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՆԵՈԼԻԹ-ԷՆԵՈԼԻԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

Նորագույն հայտնագործությունների վկայությամբ Հայկական լեռնաշխարհի ճարտարապետական առաջին հուշարձանները նույնքան հին են, որքան հին է Առաջավոր Ասիայի նախակերամիկական նեոլիթի առավել զարգացած շրջանների ճարտարապետությունը։ Հայկական լեռնաշխարհում մինչ օրս պեղված հնագույն կառույցները վերաբերում են նախակերամիկական նեոլիթի երկրորդ փուլին։ Սակայն դրանց ձևերի ու շինարարական տեխնիկայի զարգացման աստիճանը հուշում են այդ ճարտարապետության նախապատմության գոյությունը, որը, թերևս, կարող է վերագրվել մեզոլիթի և պրոտոնեոլիթի ժամանակաշրջաններին։

Նշված կառույցները հայտնագործվել են լեռնաշխարհի հարավարևմտյան մասում՝ Հայկական Տավրոսի ստորոտում, Չայոնու Թեփեսի արհեստական բլուր-բնակավայրի պեղումների ընթացքում։ Հնավայրը գտնվում է այժմյան Դիարբեքիրի վիլայեթի էրգանի (Արգանա) քաղաքից 7 կմ դեպի հարավ-արևմուտք Հիլար (Սեավերենփինար) գյուղի հյուսիսային եզրին, Բողազչայ հեղեղատի ափին։ Չայոնու Թեփեսի կառուցապատ տարածքը շուրջ 3 հեկտար էր։ Այստեղ ներկայացված է բնակեցման երեք ժամանակաշրջան, որոնք իրարից անջատվել են ամայության երկարատև ժամանակահատվածներով։ Հիմնական հետաքրքրությունը ներկայացնում է մշակութային ստորին շերտը, որն արտացոլում է չայոնույան հնագիտական մշակույթը։ Այդ շերտի բնակավայրը վերաբերում է նախակերամիկական նեոլիթին և ռադիոածխածնային անալիզի տվյալների համաձայն, գոյատևել է շուրջ կես հազարամյակ՝ մ.թ.ա. VIII հազարամյակի ընթացքում։ Ստորին շերտը կամ չայոնուի փուլը պեղողները ստորաբաժանել են ժամանակագրական մի քանի ենթափուլերի։ Պեղումների միջոցով հայտնաբերված ճարտարապետությանը վերաբերող նախնական հաղորդումներից[1] կարելի է եզրակացնել, որ չայոնուի փուլի բոլոր ենթափուլերին բնորոշ էր բնակավայրի ագլոմերատիվ կառուցապատումը՝ առանձնացված դիրքով կանգնեցված կառույցներով։ Չայոնուի ճարտարապետական զարգացման համեմատաբար բարձր մակարդակը շեշտվում է ստանդարտ ձևերի կառույցների առկայությամբ։ Այստեղ բացահայտվել են շինությունների մի քանի տիպեր, որոնք առանձնանում են մեկը մյուսից ինչպես հատակագծային լուծումներով, այնպես էլ կիրառված շինարարական տեխնիկայով։ Պեղողները առանձնացրել են կառույցների 4 տիպ։

Ամենավաղ ենթափուլում կառուցվել են «վանդակաձև» հատակագծի հիմքեր ունեցող կառույցներ։ Բացվել են այս տիպին պատկանող միատեսակ ամբողջական 7 շինություններ։ Արտաքին կողմից դրանք ուղղանկյուն են (5×7 մ չափի)։ Ներսից բաժանված են նեղ կողմին զուգահեռ՝ մի երկայնական պատից դեպի մյուսը ուղղագիծ ձգվող միջանկյալ պատերով, որոնց միջև մնում էր նեղ (մի քանի տասնյակ սանտիմետր լայնությամբ) ու երկարուկ մի տարածություն (միջանկյալ այդ պատերի քանակը հասնում է 7-ի)։ Պատերը շարվել են մանր ու միջին մեծության անմշակ քարերի կավահողե շաղախով ամրացված

շարվածքով։ Ենթադրվում է, որ այդ «վանդակաձև» հիմքերի վրա դրվել է շինության փայտե հատակը։ Առաջավոր և Միջին Ասիայի ավելի ուշ ժամանակաշրջանի վաղերկրագործական մշակույթների բնակավայրերում հայտնի են իրար զուգահեռ կողք-կողքի դրված կարճ պատերի խմբեր, որպիսիք մեկնաբանվում են իբրև ցորենի պահեստների հիմքեր։ Այդ հուշարձաններում դրանք հանդես են գալիս բնակելի բնույթի այլ կառույցների հետ միասին։ Չբացառելով Զայոնուի «վանդակաձև» հիմքերի նման մեկնաբանման հնարավորությունը, նշենք, որ այս հուշարձանում դրանք գտնվել են այլ տիպերի կառույցներից մի փոքր ավելի խորը, այսինքն չի հաստատվել դրանց գոյակցությունը շինությունների մյուս տիպերի հետ։

Կառույցների երկրորդ տիպը, որ թերևս հանդես է եկել «վանդակաձև» հատակագծի շինություններից մի փոքր ավելի ուշ, պեղողների կարծիքով, բնորոշվում է երկու հատկանիշով։ Դրանց մեջ հատակի հարթեցումը կատարվել է մանրակրկիտ և, իբրև շինարարական տեխնիկայի նորույթ, օգտագործվել են ուղղահայաց կանգնեցված կրաքարի սալեր։ Այս տիպի կառույցները նույնպես ուղղանկյուն հատակաձևի են և հասնում են խոշոր չափերի։ Դրանցից մեկը 9,5×7,5 մ մակերես է ունեցել։ Այդ շինությունների հատակները սալապատվել են խոշոր, բարակ սալերով կամ կառուցվել են «տեռացցո» տեխնիկայով։ Այս տիպը առանձնանում է ևս մեկ կարևոր հատկանիշով՝ ներսում շինությունների պատերը օժտված են քարաշար որմնահեցերով, որոնք թերևս կրել են տանիքի կառուցվածքը։ Այս տիպը պեղողները անվանում են «լայնարձակ սալահատակված հատակագիծ» (broad pavement plan)։

Երրորդ տիպը, որը «բջիջաձև» հատակագիծ անվանումն է ստացել, ներկայացված է ուղղանկյունաձև շինություններով։ Սրանք ունեցել են քարաշեն ավելի բարձր գետնախարիսխ, որի վրա դրված էր հում աղյուսից շարված պատը։ Ներսից նույնատիպ շարվածքի միջնորմներով շինությունները բաժանվել են ուղղանկյունաձև, մոտավորապես հավասարաչափ բջիջների, որոնց թիվը 6 և ավելի է։ Այս տիպը տարբերվում է «վանդակաձև» հատակագծի կառույցներից երկայնական միջնորմների առկայությամբ, բջիջների այլ համաչափություններով և պատերի աղյուսե շարվածքով։ Կարելի է ենթադրել, որ «բջիջաձև հատակագծի» շինությունները պահեստային նշանակություն են ունեցել։

Վերջապես կառույցների ևս մեկ տիպ հանդես է եկել շայոնույան մշակույթի վերջին, վերին ենթափուլում։ Սրանք նույնպես ուղղանկյունաձև հատակագծի քարաշեն պատերով խոշոր կառույցներ են (մեկի չափը շուրջ 5,10×9 մ է), առանց ներքին բաժանման հետքի։

«Բջիջաձև» հատակագծի կառույցներից մեկում հայտնաբերվել են Զայոնուի տների կավե երկու մոդելներ։ Դրանք ներկայացնում են հարթ տանիքով ծածկված շինություններ։ Մոդելների վերին եզրի տակ գտնվում են տանիքը պահող գերանների նշաններ։

Զայոնուի մշակույթը ոչ միայն ճարտարապետական նորույթներով է հարուստ։ Այստեղ հայտնաբերվել են բնական պղնձից պատրաստված մետաղե առարկաներ, որոնք հնագույնն են մեր մոլորակում։

Ճարտարապետության պատմության տեսանկյունից Զայոնուի փուլը ևս կարևոր երևույթ է։ Ինչպես էլ մեկնաբանելու լինենք կառույցների տիպերի հաջորդականությունը, շատ հավանական է, որ այդ բնակավայրում միաժամանակ գոյություն են ունեցել մեկ տիպից ավելի շինություններ։ Այս կոահմանը հետևում է ճարտարապետության ֆունկցիոնալ ճյուղավորման հնարավորությունը, այսինքն, կիրառական տարբեր նշանակության կառույցներ հանդես են եկել ճարտարապետական յուրովի լուծումներով, որպիսիք և ապահովել են շինության առավելապես նպատակահարմար, մասնագիտացված օգտագործումը։

Զայոնու Թեփեսին միակ հուշարձանը չէ, որ բացահայտում է ճարտարապետության ֆունկցիոնալ ճյուղավորման սկզբնավորումը Առաջավոր Ասիայում մ.թ.ա. VIII հազարամյակում։ Այս տեսանկյունից նշանակալից են բիբլիական Յերիքովի (Թելլ-էս-Սուլթան հնավայրը Պաղեստինում) նախակերամիկական նեոլիթի առաջին փուլի շերտերի պեղումների արդյունքները։ Յերիքովի նախակերամիկական նեոլիթի այդ փուլի բնակավայրը շուրջ 3—4 հա մակերեսով ընդարձակ տարածք էր զբաղեցնում։ Այն ամփոփված էր կավաշաղախով շարված քարաշեն պարսպով։ Պեղումների ամենաընդարձակ տեղամասում այդ պարիսպը ունեցել է 3 մ հաստություն և պահ-

պանվել է 3,9 մ բարձրությամբ։ Նրան հպված է 8,5 մ բարձրությամբ պահպանված կլոր հատակագծով աշտարակը, որի հիմքի տրամագիծը 10 մ է։ Աշտարակի ներքին սնամեջ տարածություն կարելի էր մտնել 1,7 մ բարձրությամբ դռնով։ Աշտարակի ստորին մասում մեծ հաստություն ունեցող պատը վեր բարձրանալով՝ հետզհետե նեղանում է, ներսից կազմելով համակենտրոն 22 աստիճան, որոնց միջոցով կարելի էր բարձրանալ աշտարակի գագաթը[2]։ Հետազոտողները իրավամբ նշում են, որ Յերիքովի պարիսպը կոլեկտիվ աշխատանքների կազմակերպման արդյունք է։ Այսպիսով, մ.թ.ա. VIII հազարամյակում նկատվում է ոչ միայն կենցաղային-բնակելի ճարտարապետության յուրահատուկ կիրառման համար նախատեսված ճարտարապետական ձևերի մշակում, այլև ամրաշինության ձևավորում, որը վկայում է վաղերկրագործական առավել զարգացած համայնքների հասարակական կյանքում տեղի ունեցած էական փոփոխությունները։

Մ.թ.ա. VII հազարամյակի ճարտարապետության զարգացման ընթացքում Առաջավոր Ասիայում ձևավորվում են կառուցողական յուրահատուկ ավանդույթների տարածման շրջանները։ Այդ ավանդույթները հաճախակի համընկել են հնագիտական առանձին մշակույթների հետ։ Հարավային Փոքր Ասիայի այդ ժամանակաշրջանի ճարտարապետական ավանդույթը ներկայանում է Կոնիայի դաշտավայրում գտնվող Չաթալ-Հույուքի արևելյան բլրի պեղումների նյութերով, որտեղ առաջին անգամ, այսօրվա տվյալներով, բացահայտվում է ճարտարապետության և կերպարվեստի կայուն միացության հնագույն եղանակը։

Արևելյան Չաթալ-Հույուքը նեոլիթյան բազմաշերտ բլուր-բնակավայր է, որը զբաղեցնում է շուրջ 13 հա տարածություն։ Նրա նեոլիթյան 19 մ հաստությամբ մշակութային նստվածքները ավելի հզոր են, քան առաջավորասիական մյուս բնակավայրերի նեոլիթյան շերտերը (Յերիքով՝ 13,7 մ, Մերսին՝ 9 մ, Թել Մագզալիա՝ 8 մ, Թեփե Գուրան՝ 7 մ)։ Չաթալ-Հույուքում շուրջ 4000 քառ. մ մակերեսով պեղվել են իրար հաջորդող շինարարական 12 հորիզոն[3], որոնցից յուրաքանչյուրն առանձին բնակավայր է ներկայացնում։ Դրանք ամբողջությամբ, թերևս, գոյատևել են 7—9 դար և ռադիոածխածնային մեթոդով թվագրվում են մ.թ.ա. VII հազարամյակով։ Բնակավայրերի կառուցապատումը հոծ էր, հատակագծային որոշ կանոնավորության պահպանմամբ։ Տները բաղկացած էին ուղղանկյուն հատակագծով 1—3 սենյակներից։ Հիմնական սենյակը, որի մակերեսը սովորաբար 25—27 քառ. մ է, ծառայել է իբրև բնակարան և խոհանոց, իսկ ավելի փոքր, օժանդակ սենյակները՝ պահեստներ։ Պատերն ունեցել են քառանկյուն կտրվածքի գերաններից կազմված հիմնակմախք, որի միջանկյալ տարածությունները շարվել են հում աղյուսներով։ Տան մուտքը տանիքի երդիկից էր, որտեղից իջնում էին փայտե աստիճաններով։ Պատերի վերին մասում կային նաև լուսավորության համար թողնված լուսամուտներ։ Բակերը սակավաթիվ էին։ Այսպիսով, շարժումը բնակավայրի տարածքում կատարվել է հիմնականում տանիքների վրայով։

Չաթալ-Հույուքում պեղվել է մոտ 40 սրբարան, որոնք բնակելի սենյակներից տարբերվում են միայն ներքին ձևավորմամբ։ Սրբարաններում պահպանվել են աստվածուհիների և հովազների պատկերներով կավե գունավորված բարձրաքանդակներ, ցուլերի կավե գլուխներ, վայրի ցուլերի եղջյուրներով զարդարված կուռքեր, որմնանկարներ։ Որմնանկարներից առավելապես աչքի են ընկնում եղջերուների և ցուլերի որսի տեսարաններ, մարդկանց դիակների վրա հարձակվող ուրուրներ, ձեռքերի պատկերներ, գորգանախշ հորինվածքներ։ Հայտնաբերվել է հրաբխի ժայթքման պատկերով բնանկարը։ Սրբարաններից մեկում բացվել է հատկապես թաղման արարողությունների համար կառուցված շենքի պատկերով որմնանկարը։ Դա ճարտարապետական կառույցի գեղանկարչական հնագույն պատկերն է, որը վկայում է բնակավայրից դուրս գտնվող պաշտամունքային հատուկ շինությունների գոյությունը և ճարտարապետության ֆունկցիոնալ ճյուղավորման բավականաչափ զարգացած աստիճան է ներկայացնում։ Չաթալ-Հույուքի կառույցների ուսումնասիրությունը բացահայտում է ճարտարապետության և կերպարվեստի միավորման առաջին փորձերից մեկը։ Սրբարաններից շատերում գտնված որմնանկարներն ու ծավալային անշարժ պատկերները օրգանապես չեն կապվում պաշտամունքային սենյակի ներքին ծավալի ճարտարապետական ձևի հետ։ Նրանց տեղաբաշխումը սենյակի առանցքների նկա-

մամբ հաճախ պատահական է և չի համընկնում նրա համաչափություններին։ Այս դեպքում կարելի է խոսել ճարտարապետական ձևի և կերպարվեստի գործի մեխանիկական միավորման մասին։ Սակայն սրբարանների մյուս մասը ներկայացնում է կանխամտածված լուծումների այնպիսի փորձեր, որպիսիք հուշում են օրգանական համադրման սկզբնավորումը։ Առաջին հերթին պետք է նշել տների հիմնակմախքի փայտե չորսունների օգտագործումը սենյակների գեղագիտական ձևավորման համար։ Ուղղահայաց այդ չորսունները որմնահեցերի նման դուրս գալով պատի մակերեսից նրա հարթությունը բաժանել են շրջանակավորված հատվածների։ Չորսունները հաճախակի գունավորվել են, իսկ շրջանակավորված մակերեսները օգտագործվել են որմնանկարների համար այնպես, որպեսզի շրջանակը որմնանկարչական ամբողջական հորինվածք ամփոփեր։ Իսկ 7-րդ և 6-րդ հորիզոնների սրբարաններում շրջանակավորված մակերեսները զուգաչափորեն զբաղեցնում են ծավալային պատկերներ, որոնց տեղաբաշխումը կազմակերպում է ճարտարապետական ծավալը։ Չաթալ-Հույուքում ճարտարապետության և կերպարվեստի միավորումը դրսևորվել է միայն ներքին ծավալներում՝ սրբարանների ինտերյերներում։

Նեոլիթյան հնավայրեր, որպիսիք որոշակիորեն կարող են վերագրվել մ.թ.ա. VII հազարամյակին, Հայկական լեռնաշխարհի տարածքում առայժմ հայտնի չեն։ Պարզ չէ, թե ի՞նչ է հաջորդել Չայոնու Թեփեսիի ճարտարապետական ավանդույթին։ Մ.թ.ա. VI հազարամյակում Հայկական լեռնաշխարհի հարավարևելյան ծայրամասում տարածված էր Հաջի Ֆիրուզի հնագիտական մշակույթը, որի անվանումը ծագում է Ուրմիա լճի հարավային ափին, Սոլդուզի հովտում գտնվող համանուն բլուր-բնակավայրից[4]։ Այստեղ բացահայտվել է շինարարական 6 շերտ։ Հաջի Ֆիրուզի բնակավայրերի կառուցապատումը խիտ էր։ Տները իրարից անջատվել են բակերի և նեղ անցումների միջոցով։ 6,5×4 մ միջին չափի ուղղանկյունաձև հատակագծով տները կազմված են մեկ սենյակից, որի ներսում, սակայն, որոշակիորեն առանձնացվել են բնակելի, խոհանոցային և պահեստային տարածությունները (գծագր. աղ. 3ա)։ Մուտքերը սկսվել են գրեթե գետնի մակերեսից, որի մակարդակի տարբերությունը տան հատակից մեկ աստիճանից չի անցել։ Որոշ տների հատակները ներկվել են կարմիր օխրայով։ Օջախները գտնվել են պատերի տակ, հարթակի վրա բարձրացված։ Միջնորմի միջոցով դրանք հաճախակի անջատվել են պահեստային տարածություններից։ Բացվել են տանիքի ծանրությունը կրող հում աղյուսից շարված որմնահեցերի և փայտե սյուների հետքեր։ Պեղողների ենթադրությամբ, վերնաշարի վրա հենված, ճյուղերից և եղեգնից կազմված ու կավով սվաղված տանիքը ջրամեկուսացման նպատակով կարող էր ծխված լինել։ Եթե հիմնական տների պատերը կառուցվել են կավաշաղախով շարված կանոնավոր հում աղյուսներով, ապա բակերի կողմից նրանց կցված օժանդակ կառույցների պատերը շինվել են պնդացված կավացեխով։ Հաջի Ֆիրուզի հնագիտական մշակույթը որոշ աղերսներ ունի Հյուսիսային Միջագետքում տարածված Հասունայի մշակույթի վաղ փուլի հուշարձանների հետ։

Հաջի Ֆիրուզի մշակույթը հիշեցնող ևս մեկ հուշարձան պեղվել է Ուրմիա լճից արևելք, Թավրիզից հարավ-արևմուտք։ Այստեղ գտնվող Յանիք-Թեփեի երկու արհեստական բլուր-բնակավայրերից փոքրը (արևելյան) բլուրը պեղողի կողմից վերագրվել է ուշ նեոլիթի ժամանակաշրջանին։ Ռադիոածխածնային անալիզի տվյալներով, այն պետք է թվագրել մ.թ.ա. VI հազարամյակով։ Ամենավաղ շերտերից այստեղ առկա են հում աղյուսից շարված զանգվածեղ պատերով ուղղանկյունաձև հատակագծով տներ։ Յանիք-Թեփեի փոքր բլրի ուշ նեոլիթյան ճարտարապետությունը խիստ հիշեցնում է Հաջի Ֆիրուզի բնակարանները։ Այստեղ նույնպես պատերն ու հատակները ներկելու համար օգտագործվել է կարմիր օխրան, իսկ հաստ ու կարծր հատակները շինվել են գիպսի շաղախից[5]։

Նեոլիթի վերջում Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և Հարավային Կովկասի կենտրոնական մասերում տարածված է եղել շուլավերի-շոմութեփեյան մշակույթը, որի ճարտարապետական ավանդույթը լրիվին տարբերվում է Ուրմիա լճի ավազանի նշված հնավայրերի պեղումներով ընձեռած տվյալներից։ Այդ մշակույթի առայժմ հայտնի հիմնական հուշարձանները կենտրոնացված են Կուրի միջին հոսանքի աջակողմյան վտակների (Խրամ, Դեբեդ, Աղստև) հովիտների ստորին մասում, սակայն հայտնի են առանձին փաստեր, որոնք հիմք են տալիս կա-




*Աղ. 1 ա) Իմիրիս-գորա՝ բնակատեղիի ընդհանուր հատակագիծը, բ) Խրամիս Դիդի-գորա՝ ընդհանուր հատակագիծը, գ) Գառգալար-Թեփեսի՝ բնակատեղիի պեղված հատվածի ընդհանուր հատակագիծը, դ) Շոմու-Թեփեի՝ բնակատեղիի պեղված հատվածի ընդհանուր հատակագիծը։*

հելու նրա տարածումը նաև Արարատյան դաշտում: Շուլավերի-շոմութեփյան հնագիտական մշակույթը ժամանակակից է Հյուսիսային Միջագետքի հասունյան մշակույթի ուշ փուլին ու հալաֆյան մշակույթին և թվագրվում է մ.թ.ա. VI—V հազարամյակներով: Մի շարք բլուր-բնակավայրերի (Շուլավերիս-գորա, Իմիրիս-գորա, Արուխլո 1-ին, Խրամիս Դիդի-գորա, Շոմու-թեփե, Թոյրե-թեփե, Գառգալար-թեփեսի) մեծածավալ պեղումները, որոնց միջոցով մի քանի հազար քառ. մ մակերեսով և մինչև 9 շինարարական հորիզոնների խորությամբ բացվել են ճարտարապետական բազմաթիվ մնացորդներ, հնարավորություն են ընձեռում վերականգնելու և մանրամասն ուսումնասիրելու շուլավերի-շոմութեփյան մշակույթի կառուցողական ավանդույթը (գծագր. աղ. 1 Ա—Դ): Այդ ավանդույթը բնորոշվում է հետևյալ երևույթների միասնականությամբ. ա) բնակավայրերի մնացորդները բազմաշերտ են և, որպես կանոն, արհեստական բլուր-բնակավայր են կազմում, բ) բնակելի համալիրները խմբավորվել են բնակավայրի կենտրոնական հրապարակի շուրջ (Իմիրիս-գորայի հրապարակի տրամագիծը մոտ 12 մ էր), գ) կառուցապատումը հոծ էր, բնակատեղիի ամբողջ տարածքի նվազագույն մասն անգամ ազատ չէր կառուցապատումից, դ) կառուցապատումը կազմված էր բնակելի կառույցներից, պահեստային շինություններից և ցանկապատված բակերից. ե) բակի շուրջը միավորված շինությունները կազմել են առանձին համալիրներ. զ) բոլոր տները, առանձին կառուցված պահեստային հորերը և բակերի ցանկապատերի մեծ մասը ունեցել են կլոր կամ ձվածիր հատակագիծ (կառույցների տրամագիծը տատանվում է 0,5-ից մինչև 5 մ), է) շինությունների ճնշող մեծամասնությունը «մեղվանոցաձև» էր, այսինքն, հում աղյուսից կառուցված կեղծ թաղը սկսվել է գետնի մակերեսից, շարվածքի ամենաստորին շարքից, իսկ հաջորդ շարքերը 2—3 սմ-ի շեղվածքով տեղադրվել են դեպի կառույցի ներսը: Գլանաձև ստորին մաս ունեցող մի խումբ կառույցներ նույնպես պսակվել են աղյուսաշեն կեղծ գմբեթներով. ը) բոլոր տները վերգետնյա էին, աննշան չափով գետնի մակերեսի մեջ խորացված: Շարվածքի ստորին շարքերն ամրացվել են կառույցը արտաքին կողմից օղակող գետնի վրա դրված կավե բարձի միջոցով. թ) պատերի հաստությունը պայմանավորված էր աղյուսի լայնքով ու այն ծածկող կավե սվաղի շերտի հաստությամբ և կազմում էր 20—35 սմ. ժ) օգտագործված գրեթե միակ շինանյութը հարթառուցիկ (պլանոկոնվեքս) ձևի հում աղյուսն էր, որը շարվել է կավաշաղախով: Իբրև շինանյութ չի օգտագործվել քարը, որը լայնորեն կիրառվել է վաղերկրագործական տարբեր մշակույթներում, հատկապես աղյուսաշեն պատերի գետնախարիսխների համար: Կավածեփ տեխնիկայի կիրառման մասին տեղեկություն գրեթե չունենք: Վերջապես, այժմ հայտնի հարյուրավոր շինությունների ճնշող մեծամասնության կառուցման ընթացքում բացարձակապես չի օգտագործվել փայտը[6]: Փայտաշեն կառուցվածքի օգտագործման մի դեպք հայտնի է Իմիրիս-գորայից, որտեղ թեթև սյան վրա հենվել է ձողակապ հարթ տանիքը: Փայտե սյան և, հետևաբար, նրա վրա հենված տանիքի հետքեր բացվել են Շոմու-թեփեի կառույցներից մեկում: Խրամիս Դիդի-գորայի բակերից մեկի պեղումների ընթացքում գտնվել են բարակ սյուների շարքի հետքեր, ուստի ենթադրվում է, որ բակի այդ մասը ծածկված էր փայտաշեն թեթև կառուցվածքով[7]: Սակավաթիվ այս փաստերը միայն շեշտում են շուլավերի-շոմութեփյան մշակույթի շինարարական ավանդույթին փայտի օգտագործման խորթ լինելը: Ոչ պակաս ուշագրավ է Շուլավերիս-գորայի, Իմիրիս-գորայի և Շոմութեփեի բազմաթիվ շինությունների հատակագծերում ուղիղ գծերի լիակատար բացակայությունը:

Այսպիսով, քարի և փայտի օգտագործման բացակայությունը շուլավերի-շոմութեփյան մշակույթի շինարարական տեխնիկայում հուշում է ճարտարապետական այդ ավանդույթի ձևավորման ընթացքը բնական այնպիսի միջավայրում, որտեղ չեն եղել այդ երկու կարևորագույն շինանյութերը: Միաժամանակ պետք է նշել, որ կլոր հատակաձևը և կառույցների «մեղվանոցաձև» ծավալներն առավելագույն չափով նպաստավոր էին աղյուսակավային ճարտարապետության զարգացման համար: Շինարարական քարը, խճից ու գլաքարից սկսած և ժայռակտորներով վերջացրած, առատ էր Փոքր Կովկասի լեռների տարածքում: Այդ ժամանակաշրջանում թերևս անմատչելի չէր նաև փայտը: Այսպիսով պետք է եզրակացնել, որ շուլավերի-շոմութեփյան ճար-

տարապետական ավանդույթը չի ձևավորվել այն տարածքում, որտեղից հայտնի են այժմ նրան ներկայացնող հուշարձանները։

Պետք է ենթադրել, որ նեոլիթյան հեղափոխության ժամանակաշրջանից սկսած, Հայկական լեռնաշխարհի տարբեր հատվածներում ապրող հասարակությունները անհամաչափ են զարգացել։ Արագընթաց զարգացում են ապրել հովիտներում կենտրոնացված վաղ երկրագործական մշակույթները, որոնք շրջապատված են եղել լեռներում և անտառներում բնակվող որսորդական-հավաքչական տնտեսություն վարող խմբերով։ Փաստական տվյալներով այդ անհամաչափությունը բացահայտվում է ավելի ուշ դարաշրջանում։ Այն ժամանակ, երբ լեռնաշխարհի հարավային և կենտրոնական հովիտներում սկսվել է խալկոլիթյան (կամ, այլ տերմինաբանությամբ, էնեոլիթյան՝ պղնձեքարեդարյան) մշակույթների զարգացումը, հյուսիսային մասի հովիտներում թերևս հարատևել են նեոլիթյան մշակույթները։

Մ.թ.ա. VI հազարամյակի երկրորդ և V հազարամյակի առաջին կեսում Հայկական լեռնաշխարհի զգալի հատվածները (մասնավորապես՝ Հարավ-արևմուտքը) ընդգրկվում են հյուսիսմիջագետքյան հալաֆյան հնագիտական մշակույթի տարածման ոլորտում, իսկ ավելի ուշ՝ մ.թ.ա. V հազարամյակի երկրորդ կեսին Հայաստանում տարածվում է հալաֆյան և հյուսիսուբեյդյան գունազարդ խեցեղենի խառնածին համալիրը։ Հալաֆյան, հալաֆուբեյդյան կամ նրանց հետ առնչվող հնագիտական համալիրներ ներկայացված են Վանա լճի ավազանում (Շամիրամալթի), Դիարբեքիրի դաշտում (Գիրիքիհաջիյան), Խարբերդի դաշտում (Տյուլին-թեփե), Արաքսի միջին հոսանքում (Առաջին Քյուլ-Թեփեի առաջին շերտը, Թեղուտ)։

Հալաֆյան դասական մշակույթի բնակավայր է Գիրիքիհաջիյանը, որը գտնվում է Էքինչիլար գյուղի մոտ, Էրգանայից շուրջ 20 կմ դեպի հարավ-արևելք և թվագրվում է մ.թ.ա. VI հազարամյակի երկրորդ կեսով։ Հալաֆյան խեցեղենի հետ մեկտեղ, բնակատեղիի ստորին շերտում բացվել է թոլոսի (կլոր հատակաձևով կառույց, որին կցված է ուղղանկյունաձև երկարուկ մի սենյակ) քարաշեն գետնախարիսխը։ Դրա կողքին պեղվել են կլոր հատակագծով ևս վեց կառույցների պահպանված առանձին հատվածներ, առանց ուղղանկյունաձև կցակառույցների հետքերի։ Նույն շերտերում բացվել են ուղղաձիգ պատերի մնացորդներ, որպիսիք վկայում են կլոր և ուղղանկյունաձև հատակագծով շինությունների համատեղ գոյությունը։ Պատերը կավակերտ էին, սակայն ճշտված չէ՝ արդյոք կառուցվե՞լ են դրանք հում աղյուսից, թե՞ կավածեփի շերտերով[8]։

Հայկական լեռնաշխարհի էնեոլիթի ժամանակաշրջանի մշակույթների ճարտարապետության ուսումնասիրության համար կարևոր նշանակություն ունեն Նախիջևանի մոտ պեղված Առաջին Քյուլ-Թեփե բլուր-բնակավայրի նյութերը։ Նրա հսկայական հզորության (22 մ-ից ավելի) մշակութային շերտերում պահպանվել են ճարտարապետական բազմաթիվ մնացորդներ, որոնք, ցավոք, բացահայտվել էին պեղավայրի խիստ սահմանափակ տարածքում[9]։ Առաջին Քյուլ-Թեփեի շուրջը 9 մ հաստությամբ ստորին (առաջին) շերտի շինարարական բազմաթիվ հորիզոնները վերաբերում են էնեոլիթի ժամանակաշրջանին։ Ժամանակագրական արդի տվյալներով այդ շերտը ընդգրկում է մ.թ.ա. V հազարամյակի առաջին կեսը։ Այնուհետև բլուր-բնակավայրի տարածքում կյանքը դադարել է և վերսկսվել է վաղ բրոնզեդարյան շենգավիթյան հնագիտական մշակույթի ժամանակաշրջանում։ Այդ մշակույթի մնացորդները կազմել են Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ՝ 8,5—9,5 մ հաստությամբ մշակութային շերտը, որի ճարտարապետությանը կանդրադառնանք հաջորդ գլխում։

Այս հնավայրի պեղումների սահմանափակ տվյալների հիման վրա բացահայտվում է էնեոլիթյան ճարտարապետության այնպիսի մի ավանդույթ, որը էապես տարբերվում է շուլավերիշոմութեփյան մշակույթի շինարարական ավանդույթից։ Առաջին Քյուլ-Թեփեի ստորին շերտին համանման հուշարձանների հետագա պեղումները անկասկած լրացնելու են վերակազմված ավանդույթի պատկերը, որն առայժմ ներկայանում է հետևյալ տարրերով. ա) բնակավայրի մնացորդները արհեստական բլուր-բնակավայր են կազմում, բ) շինարարական ամենաստորին հորիզոններից սկսած (3-րդ շրջան, 21,4 մ խորության բլրի գագաթից), առաջին շերտի գոյության բոլոր շրջաններին բնորոշ է քառանկյուն և կլոր հատակագծի կառույցների կայուն համադրությունը, գ) կառույցների մի մասը բաժանվել է քառանկյունի հատակաձևով մի քանի սենյակների (շինություն №14), որոնցից մեկի երկարու-

թյունը 4, իսկ լայնությունը՝ 3,3 մ էր. դ) կլոր հատակածևով կառույցները հիմնականում մեծ տրամագիծ են ունեցել (6—8,5 մ), միայն № 10 շինության ներքին տրամագիծը 1,5 մ էր. ե) բացակայում է հում աղյուսը։ Դրա փոխարեն պատերը կավածեփ եղանակով են բարձրացվել։ Լայնորեն կիրառվել է (անվաղն գետնախարխաների կառուցման համար) միջին չափի ճաքաքարերից և գլաքարերից կավաշաղախով ամրացված շարվածքը. զ) փայտե կառուցվածքների կիրառումը համատարած էր։ Փայտը օգտագործվել է ծածկերի համար, որոնք հենվել են փոսերի մեջ ամրացված ազատ կանգնած կրող սյուների վրա. է) ուղղագիծ պատերից մեկի հաստությունը մոտ 1 մ է, ուստի կարելի է ենթադրել, որ այն պատկանել է զանգվածեղ մի շինության, որը կարող էր հասարակական նշանակություն ունենալ։

Այսպիսով, ակնհայտ է դառնում շուլավերի-շոմութեփյան նեոլիթյան և քյուլթեփեյան էնեոլիթյան մշակույթների շինարարական ավանդույթների տարբերությունը։ Ճարտարապետական այդ համալիրների ընդհանրությունը սահմանափակվում է երկու երևույթներով՝ դրանք հանդես են եկել արհեստական բլուր-բնակավայրերում և երկուսն էլ ներկայացնում են կլոր հատակագծի իրականացման փաստեր։ Այդ ընդհանրությունները կարելի է դիտել Հարավային Թուրքմենիայից (Անաու) մինչև Բալկանյան թերակղզին տարածված վաղ երկրագործական ամենատարբեր մշակույթներում։ Էապես տարբեր են շուլավերի-շոմութեփյան մշակույթի և Առաջին Քյուլ-Թեփեի առաջին շերտի շինություններում օգտագործված շինանյութերն ու շինարարական տեխնիկան։ Հարթատուցիկ (պլանոկոնվեքս) աղյուսը շուլավերի-շոմութեփյան մշակույթի գրեթե միակ շինանյութն էր, մինչդեռ Քյուլ-Թեփեում այն ներկայացված չէ և փոխարեն օգտագործվել են կավածեփի տեխնիկան, փայտը և քարը։ Առաջին Քյուլ-Թեփեի առաջին շերտի կլոր հատակաձևով կառույցները հարթ կամ կոնաձև տանիք են ունեցել (առայժմ ավելի ստույգ որոշել հնարավոր չէ)։ Հետևաբար, այդ տանիքը պետք է հենվեր գլանաձև ծավալի վրա, որը կարող էր կազմվել ուղղահայաց պատերի միջոցով։ Տարբերվում են բնակելի համալիրների հատակագծային և դրան համապատասխան՝ ծավալային հորինվածքները։ Եթե շուլավերի-շոմութեփյան մշակույթում այդ հորինվածքները կազմվել են մեղվանոցաձև շինությունների խմբերով, ապա Քյուլ-Թեփեում ձևավորվել են ուղղանկյուն և կլոր հատակագծի կառույցների քառանիստ և գլանաձև ծավալների համադրություններով։ Ոչ պակաս նշանակություն ունի շուլավերի-շոմութեփյան և քյուլթեփեյան կլոր հատակագծով կառույցների մակերեսների ցայտուն տարբերությունը։ Վերջինս կարող է հուշել նրանց գործառական տարբերության հնարավորությունը։ Քյուլ-Թեփեի կլոր հատակագծով կառույցն իր մեջ կարող էր միավորել մի քանի ֆունկցիաներ, որպիսիք թերևս բաժանված էին շուլավերի-շոմութեփյան մեղվանոցաձև տարբեր շինությունների միջև։ Այս հանգամանքը կարող է հուշել շուլավերի-շոմութեփյան բնակատեղիների և Առաջին Քյուլ-Թեփեի առաջին շերտի բնակավայրերի բնակչության ապրելակերպի միջև եղած տարբերությունները։

Վերլուծելով Առաջին Քյուլ-Թեփեի առաջին շերտի ճարտարապետական հուշարձանները, անհրաժեշտ է նշել նրանց աղերսները հալաֆյան հնագիտական մշակույթի շինարարական ավանդույթի հետ։ Երկու մշակույթներին էլ բնորոշ է պատերի կառուցումը կավածեփի շերտերից։ Քյուլ-Թեփեի կլոր հատակագծով կառույցների տրամագիծը մոտ է հալաֆյան մշակույթի համանման խոշոր շինությունների տրամագծին։ Օրինակ, Առաջին Քյուլ-Թեփեի ստորին շերտի տների տրամագիծը զգալիորեն գերազանցում է Յարիմ-Թեփե 2-րդ բլուր-բնակավայրի շինարարական հնագույն (9-րդ) հորիզոնում բացված հալաֆյան բնակելի «թոլոսների» տրամագծին (3-ից մինչև 5,3 մ)[10] և նմանվում է Արփաչիյայի խոշորագույն թոլոսներին, որոնց արտաքին տրամագիծը 10 մ-ի է հասնում։ Հալաֆյան «թոլոսներից» շատերը հարթ կամ կոնաձև տանիք են ունեցել (Յարիմ-Թեփե 2-րդ)։ Նման ծածկեր վերակազմվում են նաև Առաջին Քյուլ-Թեփեի ստորին շերտի կառույցների տվյալներով։

Կառույցների կլոր և ուղղանկյունաձև հատակագծերի համադրությունը բացահայտվել է նաև Դաշտային Ղարաբաղում գտնվող Իլանլի-Թեփե բլուր-բնակավայրի պեղումների ընթացքում։ Այդ հուշարձանը թերևս մի փոքր ուշ է Առաջին Քյուլ-Թեփեի ստորին շերտից և կարող է վերագրվել մ.թ.ա. V հազարամյակի երկրորդ կեսին։ Իլանլի-Թեփեում գերակշռող են կլոր հատակագծով շինություններ, սակայն նրանց կողքին բացվել են




Աղ. 2 ա) Թեղուտի բնակատեղիի կացարանի կտրվածքը, բ) Թեղուտի բնակատեղիի ընդհանուր հատակագիծը, գ) Թեղուտի բնակատեղիի կացարանների ընդհանուր հատակագիծը։

նաև ուղղանկյուն, սուր, բութ և կլորացված անկյուններով հատակաձևերի (գծագր. աղ. 3 Բ) կառույցներ[11]։ Այս հնավայրում անկյունավոր հատակագծով կառույցները օժանդակ նշանակություն են ունեցել։

Հայկական լեռնաշխարհի էնեոլիթյան մշակույթները բնութագրող ճարտարապետական մեկ ուրիշ ավանդույթ բացահայտվում է Արարատյան դաշտում՝ Էջմիածնից հարավ պեղված Թեղուտի բնակատեղիի նյութերով[12]։ Այս բնակավայրը գոյատևել է մի քանի տասնամյակների ընթացքում, հավանաբար մ.թ.ա. V հազարամյակի երկրորդ կեսին կամ IV հազարամյակի սկզբին։ Կառուցապատման յուրահատկության հետևանքով բնակատեղի ամբողջ տարածքով մեկ մշակութային շերտ չի գոյացել։ Այսպիսով, ի տարբերություն վերոհիշյալ հուշարձանների, Թեղուտը արհեստական բլուր-բնակավայր չէր։

Թեղուտի կառուցապատման սկզբունքը միանգամայն հակադիր է թվում Շուլավերի-Շոմութեփյան մշակույթի և Առաջին Քյուլ-Թեփեի ստորին շերտի ճարտարապետությանը։ Առաջին հերթին, Թեղուտի կառուցապատման խտությունը նշված բնակավայրերից մի քանի անգամ նվազ է։ Կառույցների միջև մնում էին ազատ, ընդարձակ տարածություններ։ Եթե Իմիրիս-գորայում բնակավայրի գլխավոր հատակագծի կենտրոնը զբաղեցրել են հրապարակը և նրան շրջապատող կառույցները, ապա Թեղուտի բնակատեղիի հնարավոր կենտրոնը կարելի է ենթադրաբար համարել շինությունների խտացման և կուտակման վայրը (գծագր. աղ. 2 Բ)։ Թեղուտում չեն հայտնաբերվել ցանկապատված բակեր, հետևաբար չեն բացահայտվում նաև նրանց միջոցով առանձնացված ընտանիքի կառույցների համալիրները։

Թեղուտի ճարտարապետության յուրահատկությունները ի հայտ են գալիս նաև կացարանների ճարտարապետական-ծավալային կառուցվածքի և շինարարական տեխնիկայի քննության միջոցով։ Թեղուտի բոլոր կացարանները, պահեստային շինությունները կիսագետնափոր էին (գծագր. աղ. 2 Գ)։ Օրինակ, № 1 կացարանի հողի մեջ փորված մասի խորությունը 1,6 մ էր։ Կառույցների հիմնական մասը հողի մեջ իջեցվել է շուրջ 1 մ խորությամբ։ Թեղուտի կացարանները հաստատում են Հարավային Կովկասում և Հայկական լեռնաշխարհում էնեոլիթի ժամանակաշրջանի կիսագետնափոր շինությունների գոյությունը, որը առաջին անգամ հայտնի է դարձել Ղազախի մոտ գտնվող Բաբա-դերվիշ բնակավայրի պեղումների միջոցով[13]։ Թեղուտի կառույցների գետնափոր մասի պատերը շինվել են տարբեր եղանակներով։ Այսպես, № 1 կացարանում այդ մասը կավածեփ էր, № № 2, 12, 13 կացարաններում՝ շարված էր մեկ աղյուսի հաստություն ունեցող ուղղանկյունաձև հում աղյուսների շարվածքով (գծագր. աղ. 2 Ա), № 7 կացարանում՝ ուղղանկյունաձև հում աղյուսների և գլաքարերի խառը շարվածքով։ Առանձին խումբ են կազմում № № 3, 5, 8 կառույցները։ Դրանց պատերի ստորգետնյա մասը կազմված էր կավային մայր հողի կտրվածքով, որը միայն սվաղվել է կավի շաղախով։ Բոլոր կառույցները ունեցել են նաև պատերի վերգետնյա հատվածը, որի մասին վկայում են հատակները ծածկող կամ գետնափոր մասը լցնող հում աղյուսի կամ կավածեփի թափվածքները։

Թեղուտի կառույցները գլանաձև ծավալի էին։ Դրա մասին են վկայում աղյուսե պատերի կանգուն մասերի ուղղահայաց կորության բացակայությունը, ինչպես նաև ծածկի կավե սվաղի բեկորների վրա պահպանված բարակ ճյուղերի դաջվածքները։ Այսպիսով, հաստատվում է փայտի կիրառումը Թեղուտի շինություններում և պարզվում, որ այս բնակավայրի կիսագետնափոր շինությունների տանիքն ու պատը կառուցվածքային առանձնացված տարրեր էին։ Այստեղ դիտվում է Թեղուտի կացարանների և Շուլավերի-Շոմութեփյան մեղվանոցաձև շինությունների կառուցվածքային տարբերությունը։ Եթե Թեղուտի կիսագետնափոր հյուղակները կրող և կրվող տարրերի միացությունից կազմված կառուցվածքներ էին, ապա Շուլավերի-Շոմութեփյան մեղվանոցաձև կառույցների կոնստրուկցիան «աշխատում էր» զանգի սկզբունքով։

Թեղուտի կացարաններում ծածկը կրող սյուներ չեն եղել։ Կարելի է մտածել, որ փայտակերտ տանիքը հարթ էր ու հնարավորին չափ թեթև։ Նրա մեջ պետք է տեղ գտներ լուսածխային անցքը։ Կիսագետնափոր հյուղակներից որևէ մեկում չեն պահպանվել մուտքի բացվածքի հետքեր, ուստի պետք է ենթադրել, որ դրանք եղել են շինությունների վերգետնյա մասում։ Թեղուտի կացարան իջել են փայտե աստիճաններով։ Այսպիսով, կառույցների պատերի վեր-










*Աղ. 3 ա) Հաջի Ֆիրուզ. բնակարանի հատակագիծ, բ) Իյանլի-Թեփե. պեղավայրի ընդհանուր հատակագիծը, գ) Տյուլին-Թեփե. պեղավայրի ընդհանուր հատակագիծը։*

գետնյա մասի բարձրությունը պետք է անպայման հավասար լիներ մուտքերի հնարավոր բարձրությանը: Արևմտյան Ասիայի վաղ երկրագործական մշակույթների ճարտարապետությունից դատելով, կարելի է եզրակացնել, որ մուտքերի բարձրությունը 0,5—0,6 մ-ից պակաս չէր: Թեղուտի № 1 կացարանը խորացվել է հողի մեջ 1,6 մ-ով: Հետևաբար այդ կացարանի պատի ընդհանուր բարձրությունը կարող էր լինել 2,2—2,5 մ, իսկ վերգետնյա մասի բարձրությունը, որը կախված էր ստորգետնյա մասի խորացման աստիճանից՝ մոտավորապես 0,6—1,6 մ: Այսպիսով, այսօր հայտնի հուշարձանների շարքում Թեղուտի ներկայացրած ճարտարապետական ավանդույթը ուրույն է իր կառուցապատման սկզբունքներով, շինարարական տեխնիկայով, կառույցների ծավալային կառուցվածքով, կիսագետնափոր ձևով, շինությունների առանձին մասերի կոնստրուկտիվ փոխհարաբերությամբ: Այդ ավանդույթի կարևոր առանձնահատկությունը շինության կլոր հատակագծի (որը հատակագծի միակ ձևն է) և տանիքի փայտային մասի համադրությունն է: Այս երկու տարրերը ներկայացնում էին շինարարական տարբեր հնարավորություններ: Կլոր հատակագիծն ավելի հարմար էր կեղծ-թաղակապ մեղվանոցաձև շինություններին, մինչդեռ փայտի օգտագործումը տանիքի համար ենթադրում է շինության իրանի և ծածկի կառուցվածքային և ծավալային բաժանվածություն և կարող էր հանգեցնել ուղղանկյունաձև հատակագծի զարգացմանը:

Գիտելիքների արդի վիճակում նեոլիթի և էնեոլիթի ժամանակաշրջանի կառույցների կլոր հատակաձևման ավանդույթի կենտրոնը կարող է համարվել Կուրի միջին հոսանքի աջափնյա մասը և Արարատյան դաշտը, որը երևան է գալիս պեղված բնակավայրերում՝ այդ հատակագծի բացարձակ գերակշռությամբ: Հայկական լեռնաշխարհի հարավ-արևելքի, հարավ-արևմուտքի և այդ մասերին հարող շրջանների բնակարանաշինության մեջ կլոր հատակագիծը խաչաձևվել է ուղղանկյուն հատակագծի ավանդույթի հետ կամ վերջինս գերիշխող է եղել:

Խաչաձևման լավագույն օրինակ է ներկայացնում Հալաֆյան հնագիտական մշակույթը, որի տարածման հյուսիսային շրջանների մասին խոսվել է նախորդ էջերում: Հալաֆ-ուբեյդյան ավանդույթների տարածման ժամանակաշրջանում, մ.թ.ա. V հազարամյակի երկրորդ կեսին, Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերի ճարտարապետական հուշարձանները հակադիր պատկերներ են ներկայացնում: Վերը նկարագրված Թեղուտի շինարարական ավանդույթին հակադրելի է Խարբերդի դաշտում պեղված Տյուլին-Թեփեի ճարտարապետությունը: Այդ երկու բնակավայրերը պատմամշակութային զարգացման մոտավորապես նույն դարաշրջանի հուշարձաններ են: Սակայն, եթե Թեղուտում հյուսիս-ուբեյդյան մշակույթի ազդեցությունը նկատվում է հիմնականում խեցեղենի վրա, ապա Տյուլին-Թեփեն անմիջականորեն ընդգրկվել է հալաֆուբեյդյան հնագիտական համալիրի տարածման ոլորտը:

Տյուլին-Թեփեն Էլյազիգից 21 կմ դեպի արևելք գտնվող խոշոր արհեստական բլուր-բնակավայր էր, որի վերին շերտերը երկաթգծի կառուցման աշխատանքների ընթացքում լիովին հանվել են՝ մինչև շրջապատող գետնի ժամանակակից մակարդակը: Նախկին բլրի կենտրոնական մասում երևան են եկել ուշ հալաֆյան և հալաֆ-ուբեյդյան մշակութային շերտերը: Այդ ժամանակաշրջանի բնակավայրը ընդամենը 0,25 հա տարածք էր զբաղեցնում[14]: Մեծ հետաքրքրություն է ներկայացնում նրա կառուցապատման ձևը: Բնակավայրի կենտրոնական մասում բնակելի համալիրները կանոնավորությամբ տեղադրված են ուղիղ անկյան տակ հատվող շուրջ 2 մ լայնությամբ փողոցների գծով: Բնակատեղիի եզրերին կառուցապատումը կատարվել է խտացող կուտակման սկզբունքով: Այդ մասերում բնակելի համալիրների ազատ կանգնած ծավալները մեկը մյուսի նկատմամբ անկանոն են դասավորված: Կառույցների միջև մնում էին ազատ տարածություններ, բակեր (գծագր. աղ. 3 Գ):

Յուրաքանչյուր բնակելի համալիրը բաղկացած է երկու և ավելի սենյակներից: Արտաքին կողմից համալիրների ծավալը կոտրատվում է ուղիղ անկյուններով, որը սենյակների մեխանիկական ավելացման և համալիրի ընդարձակման հետևանք է: Տները կազմված են մեկ-երկու ուղղանկյուն հատակագծով խոշոր, բավականին լայն սենյակներից, որոնք շրջապատված են նեղ և երկարուկ ուղղանկյունաձև փոքրիկ սենյակներով:

Կոր գծեր տների հատակագծերում չեն արձանագրվել: Տների ներքին հորինվածքի անբաժանելի մասն էին կազմում օջախներն ու վառա-

րանները, որոնք գտնվել են մեծ քանակությամբ ինչպես սենյակներում, այնպես էլ բնակարաններից դուրս՝ բակերում: Հնարավոր վերակազմությամբ տների հարթ տանիքը փայտահողային կառուցվածք է ունեցել: Բացված բոլոր բնակելի համալիրների պատերը կառուցվել են ուղղանկյունաձև հում աղյուսից, առանց կավածեփի անխնիկայի և քարի օգտագործման: Քարը չի օգտագործվել նույնիսկ գետնախարիսխների համար:

Բնակարանաշինության ուղղանկյուն հատակաձևման ավանդույթը զարգացած և ուշ խալկոլիթի (էնեոլիթի) ժամանակաշրջանում արձանագրվում է նաև Ուրմիա լճի ավազանում գտնվող Յանիք-Թեփեի մեծ բլրի և Գյոյ-Թեփեի հնավայրերում, որոնց համապատասխան շերտերում բացված ճարտարապետական մնացորդները կարող են թվագրվել մ.թ.ա. V հազարամյակի երկրորդ և IV հազարամյակի առաջին կեսով: Գյոյ-Թեփեում բացվել են քարաշեն գետնախարիսխի վրա ուղղանկյունաձև հում աղյուսներից կառուցված քառանկյուն հատակագծով սենյակներ[15]: Յանիք-Թեփեի մեծ բլրի ուշ էնեոլիթյան ժամանակաշրջանի շերտը բաղկացած էր առնվազն շինարարական չորս հորիզոններից: Այդ հորիզոններում բացված ճարտարապետական մնացորդներով ներկայանում են բակերի շուրջը խմբավորված հում աղյուսից կառուցված ուղղանկյունաձև հատակագծով մի քանի սենյակներից կազմված բնակելի համալիրներ: Պեղվել են նաև օժանդակ նշանակության ուղղանկյունաձև փոքրիկ նեղ սենյակներ[16]:

Հայկական լեռնաշխարհի էնեոլիթի ժամանակաշրջանի ճարտարապետական ավանդույթների փոփոխությունը բացատրելու համար կարևոր նշանակություն ունեն նրա անմիջական հարևանությամբ գտնվող Ալիկեմեկ-Թեփեսի բնակավայրի պեղումների արդյունքները[17]: Այս հուշարձանը գտնվում է Կուր գետից հարավ, Մուղանի տափաստանում, Ադրբեջանական ՍՍՀ Ջալիլաբադի շրջանում: Ալիկեմեկ-Թեփեսին արհեստական բլուր-բնակավայր է, որի 4 մ հաստությամբ էնեոլիթյան շերտը բաժանվում է շինարարական 6 հորիզոնների (0-ից 5՝ հաշված գագաթից դեպի հիմքը): Էնեոլիթյան բնակատեղին ամբողջությամբ թվագրվում է մ.թ.ա. V հազարամյակի երկրորդ կեսով և, թերևս, IV հազարամյակի սկզբով: Բոլոր հորիզոններում տները շինվել են տարբեր չափերի ուղղանկյունաձև հում աղյուսներով: 5-րդ և 4-րդ հնագույն շինարարական հորիզոններում բացվել են կլոր հատակագծով 3,5 մ միջին տրամագծով շինություններ, որոնց կցված էին քառանկյունի տնտեսական նշանակության փոքրիկ կառույցներ և բրուտագործական երկհարկանի վառարանների մնացորդներ: Շինարարական 3-րդ հորիզոնում պեղվել են վերգետնյա կլոր հատակագծի մի քանի, ինչպես և ուղղանկյունաձև մեկ կառույց, որոնց կողքին բացվել է նաև կիսադետնափոր կլոր հատակագծով մի կացարան, որի կավով սվաղված պատերը ապիտակեցվել են կրով և ներկվել կարմիր օխրայով: 2-րդ շինարարական հորիզոնի ճարտարապետական պատկերը էապես տարբերվում է նախորդ հորիզոններից: Այն պեղվել է համեմատաբար լայն տարածքում: 2-րդ հորիզոնի բնակավայրը կառուցապատված էր ազատ կանգնած բնակելի խոշոր համալիրներով: Դրանք անջատվել են շրջապատից հող ցանկապատով, որը ամփոփում էր քառանկյուն հատակագծով մի քանի սենյակ և ներքին բակը: Համալիրների արտաքին պատերը կարող էին նաև կորաձև հատակագիծ ունենալ: Սենյակների ներսում բացվել են աղյուսաշեն մի քանի որմնահեցեր, որոնք ամրացրել են պատերը և կրել կառույցների հարթ ծածկը: 1-ին հորիզոնի կառույցները ուղղանկյունաձև հատակագծով էին: Բացվել է ավելի քան 7 մ երկարության կորաձև մի պատ, որին երկու կողմից կցվել են տնտեսական փոքրիկ (2—2,5 քառ. մ մակերեսով) շինություններ: Դրանց կողքին գտնվել են նաև բնակելի կառույցներ: Կարելի է ենթադրել, որ 1-ին հորիզոնը, 2-րդի նմանությամբ կառուցապատված է եղել բազմասենյականոց առանձին համալիրներով: Ինչպես 2-րդ, այնպես էլ 1-ին հորիզոնում հայտնաբերվել են բրուտագործական ենթադրվող երկհարկանի վառարաններ:

Ուշ խալկոլիթի (էնեոլիթի) ժամանակաշրջանում (մ.թ.ա. IV հազարամյակ) Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմուտքում հարատևել է ուղղանկյունաձև շինությունների կառուցման ավանդույթը, որի հիմնական գծերը ներկայացրել ենք վերևում, Տյուլին-Թեփեի ճարտարապետությունը նկարագրելիս: Այդ հարատևման մասին են վկայում Նորշուն-Թեփեի ուշ խալկոլիթյան շերտերում բացված աղյուսաշեն կառույցները[18]:

Հայկական լեռնաշխարհի ու Հարավային Կով-

կասի նեոլիթի և էնեոլիթի ժամանակաշրջանի հնագիտական մշակույթները ներկայանում են նաև հասարակական շինարարական աշխատանքների խոսուն վկայություններով: Դրանք բնակավայրերը շրջապատող կամ եզրին գանվող արհեստական խանդակներ են, որոնք, անկասկած, փորվել են բնակավայրում ապրող համայնքի ընդհանուր ուժերով: Այդպիսի խանդակներ հայտնաբերվել են խրամի գետահովտի ստորին հատվածի բնակավայրերում (Արուխլո 1-ին, Իմիրիսգորա), Միլ-Ղարաբաղի տափաստանում (Շահթեփե), Արարատյան դաշտում (Մասիսի բլուր): Այդ խանդակների ստեղծման հիմնական նպատակը ջրի պաշարի կուտակումն էր, որը կարող էր օգտագործվել ոռոգման, ինչպես նաև տնտեսական այլ կարիքների համար[19]: Չի բացառվում էնեոլիթյան խանդակների նաև պաշտպանական նշանակությունը, որը, սակայն, մինչ օրս հաստատված չէ: Արուխլո 1-ին բնակավայրը շրջապատված էր համակենտրոն երկու խանդակներով: Արտաքին խանդակի խորությունը շուրջ 2 մ էր, իսկ վերին մասի լայնությունը՝ 9,5 մ: Խանդակը լցված էր հոսող ջրով: Ներքին խանդակը թերևս «չոր էր», նրա լայնությունը վերին կտրվածքում 11 մ էր հասնում, իսկ խորությունը շուրջ 3 մ էր: Արհեստական այդ բլուր-բնակավայրի տրամագիծը 150 մ է, ուստի պարզ է դառնում խանդակների շինարարության ժամանակ կատարված հողային աշխատանքի մեծ ծավալը, որը պահանջում էր համայնքի աշխատանքի համապատասխան կազմակերպում:

Այսպիսով, Հայկական լեռնաշխարհի և Հարավային Կովկասի նեոլիթի և էնեոլիթի դարաշրջանի վաղ երկրագործական հնագիտական մշակույթները ներկայացնող հուշարձանների քննությունը բացահայտում է այդ ժամանակաշրջանի ճարտարապետության զարգացման հիմնական ուղիները: Լեռնաշխարհի որոշ մասերում դեռևս նեոլիթյան հեղափոխության շրջանում ճարտարապետությունը իր ժամանակի ամենաբարձր մակարդակի է հասել (Չայոնու Թեփեսի): Առայժմ չի բացահայտվել միասնական ճարտարապետական ավանդույթը, որը կարող էր ընդգրկած լինել լեռնաշխարհի ամբողջ տարածքը նեոլիթի և էնեոլիթի դարաշրջաններում: Հակառակ դրան, հայտնի են ճարտարապետական տարբեր, յուրահատուկ մի քանի ավանդույթներ, որպիսիք համապատասխանում են հնագիտական առանձին մշակույթներին: Այդ ավանդույթները բնութագրող կարևոր գծերից է բնակարանաշինության ասպարեզում կլոր և ուղղանկյուն հատակագծերի կիրառման փոխհարաբերությունը: Կլոր հատակագծի բացարձակ կիրառությունը բացահայտվում է Կուրի միջին հոսանքի աջափնյա և Արարատյան դաշտի բնակավայրերում (շուլավերի-շոմութեփյան մշակույթ, Թեղուտ): Վաղ էնեոլիթի դարաշրջանում կլոր կառույցներին ուղղանկյունաձև շինությունների հետ համադրված՝ ամենալայն տարածում են ստացել հալաֆյան հնագիտական մշակույթի զարգացման և նրա ազդեցության ոլորտում՝ մ.թ.ա. VI հազարամյակի երկրորդ և V հազարամյակի առաջին կեսին: Այնուհետև զարգացած և ուշ էնեոլիթի շրջանում, մ.թ.ա. V հազարամյակի երկրորդ կեսին և IV հազարամյակում, կլոր բնակարանաշինության տարածման արեալը թերևս, խիստ սահմանափակվում է: Հայկական լեռնաշխարհի հարավարևմտյան և հարավարևելյան մասերում այդ ժամանակաշրջանի ճարտարապետությունը առայժմ ներկայացված է միմիայն ուղղանկյունաձև կառույցներով (Խարբերդի դաշտ, Ուրմիո լճի ավազան, Մուղանի տափաստան):

Հայկական լեռնաշխարհի և Հարավային Կովկասի նեոլիթյան և էնեոլիթյան վաղ երկրագործական այժմ հայտնի բնակավայրերը պարսպապատ չէին: Դրանք հանդես են գալիս արհեստական բլուր-բնակատեղիների ձևով, որպիսիք հայտնի են միմիայն դաշտավայրային շրջաններում: Պետք է ենթադրել, որ բնակատեղիներ եղել են նաև լեռնային և նախալեռնային շրջաններում, սակայն դրանք բլուր-բնակավայրերից տարբեր են: Չնայած բնակավայրերի կառուցապատված տարածքի էական տատանումներին (0,25 հեկտարից մինչև 3—4 հեկտար), նրանց միջև չի նկատվում տիպաբանական տարբերություն: Այդ ժամանակաշրջանի մոնումենտալ ճարտարապետության հուշարձաններ Հայկական լեռնաշխարհի և Հարավային Կովկասի տարածքում առայժմ չեն հայտնաբերվել: Սակայն աստիճանաբար կուտակվում էր նրանց ստեղծման համար հաջորդ դարաշրջանում անհրաժեշտ շինարարական հասարակական աշխատանքի փորձը:

Հայկական լեռնաշխարհի նեոլիթի և էնեոլիթի հնագիտական մշակույթների ճարտարապետական ավանդույթները պետք է զարգանային ու էապես փոխվեին հաջորդ ժամանակաշրջանում, մ.թ.ա. IV հազարամյակի երկրորդ և III հազարամյակի առաջին կեսին, երբ ամբողջ լեռնաշխարհի տարածքը ընդգրկում է մշակութային նոր ընդհանրությունը:

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ԵՎ ՀԱՐԱԿԻՑ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՎԱՂ ԲՐՈՆԶԻ ԴԱՐՈՒՄ

### (Մ. թ. ա. IV հազարամյակի կեսից մինչև III հազարամյակի 3-րդ քառորդը)

*Մ.թ.ա. III հազարամյակի առաջին կեսին ձևավորվում է Դաղստանից Պաղեստին ձգվող հնամշակութային մի մարզ, որը բաղկացած է մի քանի երևելի հնագիտական մշակույթներից։ Մշակութային այդ ընդհանրության միասնականությունը արժանացել է մի շարք հետազոտողների ուշադրության[1]։ Այդ մարզը կազմող մշակույթներից առավելապես ուսումնասիրված են Հայկական լեռնաշխարհի մեծ մասը զբաղեցնող շենգավիթյան հնագիտական մշակույթը, որը, արդի տվյալներով, ընդգրկել է առնվազն Ուրմիո լճի արևելյան ափի, Կարնո և Խարբերդի դաշտերի միջև ընկած տարածքը և քիրբեթկերակյան հնագիտական մշակույթը, որը տարածված էր Ասորիքում և Պաղեստինում։*

*Շենգավիթյան հնագիտական մշակույթի գոյության ժամանակաշրջանը շրջադարձային էր Հայկական լեռնաշխարհի հնագույն պատմության համար։ Էնեոլիթյան մշակույթների առօգելի երկրագործության ավանդույթների վերընթաց զարգացումը շենգավիթյան մշակույթում հասնում է իր գագաթնակետին։ Բրիչային երկրագործությանը փոխարինում է արորայինը։ Նշանակալիորեն աճում է անասնապահության դերը տնտեսական կյանքում։ Արորային երկրագործության և արոտային անասնապահության տարածումը հնարավոր էր դարձնում բարձր լեռնային շրջանների տնտեսական յուրացումը։ Շենգավիթյան մշակույթի բնակավայրերը հավասարապես հայտնի են ինչպես դաշտավայրային, այնպես էլ լեռնային շրջաններում։ Անասնապահության զարգացման և լեռնային գոտու յուրացման հետ կապված մեծանում է որսորդության տնտեսական դերը, որը երկրորդական նշանակություն է ունեցել ուշ նեոլիթյան և էնեոլիթյան դաշտավայրային երկրագործության մշակույթներում։ Այսպիսով, եթե նեոլիթի և էնեոլիթի դարաշրջաններում մշակույթների առաջընթացի համար առաջատար նշանակություն են ունեցել դաշտավայրա-հովտային շրջանները, ապա շենգավիթյան մշակույթի ժամանակաշրջանում դաշտավայրային և լեռնային մշակութային օջախների դերը հավասարվում է։*

*Շենգավիթյան մշակույթի ժամանակաշրջանում Հայկական լեռնաշխարհում սկսվում է վաղ բրոնզեդարը։ Մետաղագործության և մետաղամշակման զարգացման հետ կապված էր աշխատանքի հասարակական բաժանման նոր փուլի ձևավորումը՝ սկսվել է արհեստների բաժանումը գյուղատնտեսությունից։ Զենքի կատարելագործումը վկայում է ռազմական գործի նշանակության կարևորության մասին։*

*Տնտեսական զարգացման հետևանքով ձևափոխվել է շենգավիթյան մշակույթի հասարակության կառուցվածքը։ Գոյություն է ունեցել մասնավոր սեփականության իրավունքը։ Փոքր ընտանիքներից կազմված դրացիական համայնքները մի շարք շրջաններում աստիճանաբար փո-*



3—197

խարխլվել են չբաժանված մեծ ընտանիքներից բաղկացած համայնքներով։ Սոցիալ-տնտեսապես առավել զարգացած շրջաններում առաջացել են քաղաքային քաղաքակրթության առաջին տարրերը։ Այսպիսով, վաղբրոնզեդարյան շենգավիթյան հնագիտական մշակույթի ժամանակաշրջանի առաջին կեսը կարող է դիտվել իբրև Հայաստանում նախնադարյան համայնական հասարակարգի զարգացման գագաթնակետը, մինչդեռ երկրորդ կեսում որոշակիորեն նկատվում է այդ հասարակարգի քայքայման պրոցեսը։

Հայկական լեռնաշխարհի այդ ժամանակաշրջանի պատմության ընթացքում նկատվող վերոհիշյալ երևույթները որոշակիորեն արտահայտվել են նաև ճարտարապետության ասպարեզում։ Միևնույն մշակույթի սահմաններում հանդես են եկել բնակավայրերի կառուցապատման տարբեր եղանակներ։ Նկատելի են լեռնային և դաշտավայրային բնակավայրերի միջև եղած ճարտարապետական տարբերությունները։ Բնակարանաշինության ասպարեզում տեղի են ունենում հատակագծման և հորինվածքի էական փոփոխություններ։ Զարգանում է քաղաքային քաղաքակրթության վաղագույն փուլերին բնորոշ ճարտարապետության ֆունկցիոնալ ճյուղավորումը, որը ներկայացնում են պաշտամունքային և ամրաշինական մոնումենտալ ճարտարապետության հուշարձանները։

Դաղստանա-պաղեստինյան հնամշակութային մարզի բնակարանաշինության ակունքների և հետագա զարգացման օրինաչափությունների բացահայտման համար հանգուցային նշանակություն ունեն շենգավիթյան հնագիտական մշակույթի վաղագույն հնավայրերը։ Արարատյան դաշտում, Էջմիածնից 4 կմ հարավ գտնվող Մոխրաբլուր արհեստական բլուր-բնակավայրում կատարվող պեղումների ընթացքում, շերտագրական կտրվածքի միջոցով ուսումնասիրվել է շենգավիթյան հնագիտական մշակույթի ավելի քան 7 մ հաստությամբ մշակութային շերտը[2]։ Այդ շերտում բացվել է բնակելի ճարտարապետության շինարարական 9 հորիզոն (3-րդից—11-րդը, հաշվելով վերևից ներքև), որոնցից մի քանիսը (4-րդը, 5-րդը) կազմված են կառուցողական մի քանի ենթաշրջանների մնացորդներից։ Մոխրաբլուրի շենգավիթյան մշակույթի շինարարական հորիզոնները ներկայացնում են բնակելի ճարտարապետության զարգացման չորս փուլ։ Առաջին, վաղագույն փուլը միավորում է 11-րդից 9-րդ հորիզոնները, երկրորդը՝ 8-րդից—6-րդ հորիզոնները, երրորդը՝ 5-րդ և 4-րդ հորիզոնները, իսկ չորրորդ փուլը ներկայացված է մեկ՝ 3-րդ շինարարական հորիզոնով։ Առաջին ու երկրորդ, երրորդ ու չորրորդ փուլերի միջև հնարավոր է ժամանակագրական կարճատև խզում։

Առաջին փուլի շինարարական հորիզոններում, որոնք թվագրվում են մ.թ.ա. IV հազարամյակի երկրորդ կեսով, բացվել է ազատ կանգնեցված շինություններից առաջացած խիտ (բայց ոչ հոծ) կառուցապատման պատկերը։ Պեղված ամբողջական կառույցները առանց բացառության կլոր հատակագծով են։ Բացվել են ուղղագիծ պատերի միայն 2—3 փոքրիկ հատվածներ։ Շինությունների պատերը ունեցել են հում աղյուսների մեկ շարքի հաստություն։ 1,8—2,5 մ տրամագծով փոքրիկ շինությունների կողքին գտնվել են նաև մինչև 4 մ տրամագիծ ունեցող տներ։ Փոքր տրամագծի կառույցներից մեկը (№ 42), որը թերևս պահեստային նշանակություն է ունեցել, ուղղագիծ միջնորմով երկու մասի էր բաժանվում։ Այդ փոքրիկ շինությունները շինարարական տեխնիկայի երկու նորույթներ են ներկայացնում։ Դրանցից մի քանիսի պատերը շարվել են նեղ, երկար կողի վրա դրված աղյուսներով, ուստի պատի հաստությունը հավասար է աղյուսի բարձրությանը, և կավե սվաղի հետ կազմում է 14—16 սմ։ Երկրորդ նորույթը վերաբերվում է շինությունների պատերի ստորին մասի կառուցվածքին։ Շինարարական 9-րդ հորիզոնում պեղված № 43 շինությունը կիրառական յուրահատուկ նշանակություն պետք է ունեցած լինի։ Նրա պատի ստորին մասը կազմված էր երկու համակենտրոն աղյուսե շարվածքներից, որոնց միջև ազատ տարածություն էր մնում։ Վերջինս ամբողջությամբ լցված էր ջարդված կավամանների բեկորներով։ Կառույցի ներսում պատի տակ փորված մոխրով լցված գլանաձև փոսը իբրև օջախ է ծառայել։ Այսպիսով պարզ է դառնում այդ շինության ներսում չորության պահպանման անհրաժեշտությունը, որը ապահովում էին բեկորների մեկուսացնող շերտը և չորացնող օջախը։ Մոխրաբլուրի ամենավաղ, 11-րդ շինարարական հորիզոնում բացվել է բավականին հաստ ուղղագիծ մի պատ, որը շարված էր քառակուսի (16×16 սմ) հում աղյուսներով։ Ի տարբերություն այդ փուլի մյուս կառույցների, այս պատի

հաստությունը կազմել են երկու շարք աղյուսներ։ Պատի երկու մակերեսները սվաղ չեն ունեցել, իսկ շարվածքի համար օգտագործվել են երկու գույնի՝ մուգ գորշ և բաց դեղնավուն աղյուսներ։ Յուրաքանչյուր շարքում մուգ գորշ երկու աղյուսներին հաջորդել է բաց դեղնավուն մեկ աղյուս, որից հետո դրված են եղել ևս մուգ գորշ երկու աղյուսներ։ Այսպիսով, կանգուն վիճակում աղյուսների շարվածքի կարերով բաժանված մուգ գորշ պատի մակերեսը զարդարված էր հորիզոնական առանցքով, ռիթմիկորեն տարածվող բաց դեղնավուն ուղղանկյուններով։ Այդ դասավորությունը նույնությամբ դիտելի էր պատի երկու կողմից։

Այսպիսով, Մոխրաբլուրի բնակելի ճարտարապետության առաջին փուլում բացահայտվել է ճարտարապետության և կերպարվեստի պարզունակ սինթեզի փաստը։

Բնակարանաշինական նույն փուլում հանդես է եկել նաև պատի շարվածքի մի ձև, որը արձանագրվել է 10-րդ շինարարական հորիզոնում։ Այստեղ բացվել է կլոր հատակաձևով շինության պատի մի հատված, որի հաստությունը կազմում է լայնությամբ դրված աղյուսների շարքը։

Այսուհանդերձ Մոխրաբլուրի բնակարանաշինության առաջին փուլում օգտագործվել են տարբեր չափի հում աղյուսներ։ 10-րդ և 9-րդ հորիզոնների պեղումները ցույց են տվել, որ աղյուսների մեծ մասը հաստատուն լայնության էին՝ 21—22 սմ։

Մոխրաբլուրի առաջին փուլին հաջորդող հուշարձանը Նորաբաց բնակավայրն է, որը գտնվում է Երևանի մոտակայքում, Ներքին Չարբախից 1,7 կմ դեպի հարավ—հարավ-արևմուտք[3]։ Այդ հնավայրի ծավալուն պեղումները բացահայտում են Արարատյան դաշտի մ.թ.ա. IV հազարամյակի վերջին քառորդի բնակավայրային ճարտարապետության պատկերը։ Նորաբացի պեղումներով բացվել է շենգավիթյան հնագիտական մշակույթի շինարարական մեկ հորիզոն, որը կառուցապատված էր ագլոմերատիվ եղանակով տեղաբաշխված ազատ կանգնեցված առանձին տներով։ Տների միջև մնում էին միջանկյալ ազատ տարածություններ, այնպես, որ շինությունների զբաղեցրած մակերեսը բնակավայրի ամբողջ տարածքի կեսից քիչ է։ Պեղված 9 տներից միայն մեկը (№ 2) ունեցել է քառաշեն ուղղագիծ գետնախարիսխ, սակայն շենգավիթյան մշակույթի հորիզոնին նրա պատկանելը առայժմ կասկածելի է մնում։ Մնացած բոլոր տները միատեսակ պատկեր են ներկայացնում (գծագր. աղ. 4 գ)։ Դրանք 4,8—7,5 մ արտաքին տրամագծով կլոր հատակագծով շինություններ են՝ յուրատեսակ կցակառույցներով։ Տներից մեկը (№ 9) երկու բաժանմունքներից բաղկացած ուղղանկյունաձև հատակագծի կցակառույց է ունեցել։ № 4 կացարանի կցակառույցը անկանոն հատակագծով էր։ Մեծ հետաքրքրություն են ներկայացնում երեք տների (№№ 3, 5, 7) կցակառույցները։ Դրանք ստեղծվել են տան պատին արտաքին կողմից զուգահեռ կառուցված կոր պատի միջոցով։ Այսպիսով երկու պատերի միջև ստեղծվում էր միջանցքանման երկարավուն տարածություն, որը որոշ դեպքում (№ 5 տունը) օգտագործվել է կենցաղային նպատակների համար։

Նորաբաց բնակավայրում իրար կողքի հանդես են եկել գլանաձև և «մեղվանոցաձև» ծավալի շինություններ։ Այսպես, № 8 տան պատը ուղղահայաց կտրվածքում պահպանել է դեպի ներս թեքված կորություն, որը սկսվել է գրեթե գետնի մակերեսից։ Իսկ № 3 տան ներսում հայտնաբերվել է տանիքը կրող սյան խարիսխը և եղեգնից ու ճյուղերից կազմված սվաղված տանիքի մնացորդներ։ Այս դեպքում տանիքը պետք է հարթ լիներ, քանի որ սյան խարիսխը տեղադրված էր ապակենտրոն դիրքով։

Նորաբաց բնակավայրի շինարարական տեխնիկան որոշակի առանձնահատկություններ է ունեցել։ Պատերը կառուցվել են հորիզոնական կորություն ունեցող հում աղյուսներից։ Այդ աղյուսների պատի արտաքին մակերեսը կազմող երկար կողը ավելի երկար է, քան ներքին մակերեսի կողը։ Երկար կողերի տարբերությունը 3—7 սմ է։ Ամենաերկար աղյուսների արտաքին երկար կողը 60 սմ է, իսկ ներքինը՝ 53 սմ։ Սեղանաձև կամ «կիսալուսնաձև» այդ աղյուսները հարմար են հատկապես շրջանագծային շարվածքի համար և կարող էին իրենց յուրահատուկ ձևը ստանալ միայն կլոր հատակագծման ավանդույթի դարավոր գերիշխանության և զարգացման պայմաններում։ Նորաբացի աղյուսների երկարությունը գերազանցում է շենգավիթյան մշակույթի մյուս հնավայրերից հայտնի աղյուսների երկարությունը։ Այս բնակավայրում աղյուսների երկարությունը խիստ փոփոխական է 40—60 սմ-ի

սահմաններում։ Այդուհանդերձ Նորաբացի աղյուսների լայնությունն ու բարձրությունը շատ ավելի կայուն է՝ լայնությունը՝ 22—23, իսկ բարձրությունը՝ 10—12 սմ։ Նույն հուշարձանում կիսալուսնաձև աղյուսներից բացի հայտնաբերվել են նաև ուղղանկյունաձև աղյուսներից (չափը՝ 48×22×10/12) շարվածքներ։

Նորաբացի գլանաձև ծավալի տներում պատի հաստությունը կազմում է հորիզոնական դրված աղյուսների մեկական շարքը, մինչդեռ «մեղվանոցաձև» կացարաններում պատի հաստությունը կազմում են նեղ երկար կողերի վրա շարված աղյուսների իրար զուգահեռ երկու շարքեր, որոնց միջև մնացած տարածությունը լցվել է կավաշաղախով։ Արտաքին և ներքին կողմից բոլոր պատերը սվաղվել են կավով, իսկ ներսից նաև սպիտակեցվել են կրային կամ գիպսային շաղախով։ Պատերի հիմնաշարի ամրացման նպատակով արտաքին կողմից դրանք օղակվել են աղյուսաշեն «բարձերով», իսկ խոնավությունից խուսափելու համար շինության արտաքին կողմից հիմքի մոտ նաև լցվել են ջարդված կավամանների բեկորներից շերտեր։ Հում աղյուսի շարվածքներ օգտագործվել են նաև կացարանների ներքին ձևավորման, մասնավորապես՝ պատերին կից շարված նստարանների համար։

Նորաբացի կացարանների ներսում օգտագործվել են երեք տեսակ կրակարաններ՝ խոհանոցային վառարաններ, պաշտամունքային և ջեռուցման օջախներ, ուստի համապատասխան եղանակներով լուծվել է ծխի հեռացման և օդափոխության հարցը։ Պաշտամունքային և ջեռուցման բաց օջախների ծուխը թերևս դուրս էր բերվում տանիքում ստեղծված երդիկից։ Մինչդեռ աղյուսե թաղակապ խոհանոցային վառարանները կառուցվել են պատերի տակ և նրանց ծուխը դուրս էր գալիս վառարանի և պատի հպման մասում հում աղյուսից պատի մեջ կառուցված ծխնելույզի միջոցով։ Տան արտաքին կողմից ծխնելույզը բացվում էր գետնի մակերեսից ոչ բարձր, վառարանի թաղի մակարդակին հավասար։ Տներից մեկում, պաշտամունքային օջախը, որը մայր հողի մեջ փորված գլանաձև փոս էր ներկայացնում, հպված էր պատին։

Այսպիսով, Մոխրաբլուրի հնագույն փուլի և Նորաբացի բնակելի ճարտարապետության մի քանի տարրեր մոտեցնում են այդ հուշարձանները շուլավերի-շոմութեփյան մշակույթի ճարտարապետական ավանդույթին։ Դրանք են՝ կառույցների գլանաձև և «մեղվանոցաձև» ծավալների համադրությունը, կլոր հատակագծի բացարձակ գերակշռությունը, ուղղագիծ պատերի հազվադեպ օգտագործումը, շինությունների օղակող «բարձերի» առկայությունը, պաշտամունքային օջախների տեղադրումը պատերի տակ և այլն։ Այդ նմանությունները թերևս կարող են հիմք ծառայել շուլավերի-շոմութեփյան և շենգավիթյան մշակույթների ճարտարապետական ավանդույթների ազգակցական կապ ենթադրելու համար, սակայն չպետք է աչքաթող անել այն հանգամանքը, որ մինչ այժմ հայտնի շուլավերի-շոմութեփյան մշակույթի ուշ փուլի և շենգավիթյան մշակույթի վաղագույն հուշարձանները իրարից անջատված են մոտ 9-ից 12 դար ընդգրկող ժամանակաշրջանով։ Ուստի միջանկյալ հուշարձանների ճարտարապետության անհայտ լինելու պայմաններում այդ ենթադրությունը չի կարելի վերջնական համարել։

Շենգավիթյան հնագիտական մշակույթի բնակելի ճարտարապետության զարգացման հաջորդ փուլերը առկա են Հայկական լեռնաշխարհի բազմաթիվ հնավայրերում։ Մ.թ.ա. IV և III հազարամյակների սահմանագլխի և III հազարամյակի առաջին քառորդի բնակարանաշինական հատակագծման սկզբունքներն արտահայտված են ուղղանկյունաձև կցակառույցներով մեկ սենյականոց կլոր տների գերակշռությամբ, որոնց կողքին քիչ քանակությամբ հանդես են եկել ուղղանկյունաձև հատակագծով առանձնացված կառույցներ։ Նմանօրինակ պատկեր են ներկայացնում Արաքսի միջին հոսանքում գտնվող Նախիջևանի Առաջին Քյուլ-Թեփեի մշակութային երկրորդ շերտի ճարտարապետական մնացորդները։ Այդ շերտը պատկանում է շենգավիթյան հնագիտական մշակույթին և ունեցել է 8,5—9,5 մ հաստություն[4]։ Սույն շերտի պեղումների ընթացքում բացվել են հաջորդաբար իրար ծածկող շինարարական տասնչորս հորիզոններ, որոնք համարակալվել են ներքևից։ 1—12-րդ հորիզոնները պեղվել են շերտի ստորին մասում 9—13 մ խորության մեջ՝ հաշվելով բլրի գագաթից։ Այսպիսով, 12 շինարարական հորիզոն ամփոփող շերտի հաստությունը ընդամենը 4 մ է, իսկ յուրաքանչյուր հորիզոնի միջին հաստությունը՝ 0,33 մ։ Երկրորդ շերտի զանգվածի վերին մասում կառույցների մնացորդներ գրեթե չեն բա-


















*Աղ. 4 ա, բ) Նախիջևան. Քյուլ-Թեփե, Բ շերտի կացարանների հատակագիծը, գ) Նորաբաց. բնակատեղիի ընդհանուր հատակագիծը, դ) Մոխրաբլուր. տաճարական աշտարակ. ճակատ և հատակագիծ, ե) Յանիք-Թեփե. հատակագիծը։*

ցահայտվել, բացառությամբ 6,4 մ խորության մեջ պեղված 13-րդ շինարարական հորիզոնի շատ ուշագրավ հետքերի։ Այս հորիզոնը ամփոփված է արդեն 1,2 մ հաստությամբ շերտում։ Վերջապես, 14-րդ հորիզոնի աննշան հետքեր գտնվել են 5,2 մ խորությունից։ Շինարարական բոլոր հորիզոնները ներկայացնում են բնակարանաշինական հատակագծման վերոհիշյալ պատկերը։

Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտում ընդամենը բացվել է 40 շինություն, որից 28-ը կլոր հատակագծով կառույցներ են, իսկ մնացածը՝ կլոր կացարանների ուղղանկյունաձև կցակառույցներ կամ առանձին կանգնեցված ուղղանկյուն հատակագծով մի քանի շինություն են (գծագր. աղ. 4 Ա, Բ)։ Տները և նրանց ստորաբաժանումները ունեցել են գետնի մակերեսից սկսվող 0,7—1,1 մ լայնությամբ մուտքեր։ Քանի որ շինարարական մնացորդները բացվել են փոքր մակերեսում, դժվար է բնութագրել բնակավայրի հատակագծային առանձնահատկությունները։ Այնուամենայնիվ, կարելի է եզրակացնել, որ ստորին 12 շինարարական հորիզոնները ներկայացնում են առանձնացված ծավալներով, խիտ, բայց ոչ հոծ կառուցապատում։

Երկրորդ շերտի կառույցներում իբրև հիմնական շինանյութ օգտագործվել է հում աղյուսը։ Աղյուսները տարբեր չափի են՝ 40×20×10 սմ, 50×24×10 սմ, 44×20×12 սմ, 44×22×10 սմ, 42×18×12 սմ, 42×22×12 սմ, 42×24×12 սմ, սակայն յուրաքանչյուր շինության կառուցման համար օգտագործվել են միևնույն չափի աղյուսներ։ Տարբեր հորիզոններում ամենատարածված չափը եղել է 42×18×12 սմ, 2—8-րդ հորիզոններում օգտագործված աղյուսների հիմնական լայնությունն է 22 և 18 սմ։ 50 սմ երկարությամբ աղյուսներ հանդիպել են միայն 1-ին շինարարական հորիզոնում։ Աղյուսները պատրաստվել են կաղապարի միջոցով։ Հում աղյուսի կողքին բոլոր հորիզոններում լայնորեն օգտագործվել է կավածեփի տեխնիկան։ Կապակցող միակ նյութը կավաշաղախն էր։ Փայտը՝ գերաններ, ճյուղեր, ձողաններ, եղեգն սյուների, դռների և նրանց սռնիների համար։

Առաջին հայացքից թվում է, թե Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտի շինարարական բոլոր մնացորդները միապաղաղ, անփոփոխ պատկեր են ներկայացնում։ Սակայն մանրազնին քննությամբ ստորին հորիզոններից մինչև վերինը բացահայտվում է ճարտարապետական մշակույթի որոշակի զարգացում, որը դրսևորվել է շինարարական կառուցվածքներում և կառույցների ծավալների փոփոխությամբ։

Ստորին 12 շինարարական հորիզոններում բացված կլոր կառույցների ներքին տրամագիծը փոփոխական է 3,5—8,3 մ սահմաններում։ Սակայն ամենից տարածված է եղել 4,5—6,5 մ չափը։ Ուղղագիծ միջնորմներով կլոր շինություններն անհավասար մասերի են բաժանվել։ Ստորին հորիզոններում բացված ուղղանկյուն կցակառույցները հիմնականում փոքր են եղել։ Այսպես, օրինակ, № 20 կցակառույցը 2,45×1,35 մ չափի էր։ Առաջին և երկրորդ շինարարական հորիզոններում նույնիսկ ամենախոշոր՝ 7,3 մ, 8,25 մ, 8,35 մ ներքին տրամագծով տների պատերը բարակ են եղել (հաստությունը՝ 25—32 սմ)։ Դրանց հաստությունը կազմել է երկայնական դրված աղյուսների մեկ շարք։ Երրորդ հորիզոնից սկսած հիմնական կառույցների պատերի հաստությունը կրկնապատկվում է, հանդես է գալիս շարվածքի նոր ձև։ Այս դեպքում պատերի հաստությունը կազմված է երկարությամբ դրված աղյուսների իրար հպված երկու շարքերով, որոնց վրա վերևից դրված շարքը կազմում են լայնությամբ շարված աղյուսները։ Ընդլայնական շարքը մի փոքր լայն էր երկայնական շարքերից, ուստի պատի մակերեսը օղակված էր հորիզոնական իրար զուգահեռ ելուստ գոտիներով, որպիսիք վերացվել են մակերեսային կավասվաղի հաստ շերտի միջոցով։ Այդ հորիզոնից սկսած բարակ պատեր են ունեցել միայն աղյուսաշեն կցակառույցները կամ կավածեփ ոչ մեծ շինությունները։ 11 մ խորությունից սկսած (այդ խորությանը մոտավորապես համապատասխանում են 5—8-րդ շինարարական հորիզոնները) երկրորդ շերտի պեղումների ընթացքում արձանագրվել է գլաքարի և դաշտաքարի (խամ քար) կիրառությունը կառույցների գետնախարսխի շարվածքի համար, մի ավանդույթ, որը պահպանվել է մինչև տվյալ շերտի վերին՝ 14-րդ շինարարական հորիզոնը։ Հիշենք նաև, որ քարաշեն գետնախարիսխներ հայտնի են նաև նույն բնակավայրի առաջին՝ էնեոլիթյան շերտում։

Երկրորդ շերտի կառույցների ծածկը կազմված էր գերանների, ձողանների ու ճյուղերի հիմնակմախքով, որը ծածկվել էր եղեգնի շերտով,

իսկ այնուհետև սվաղվել կավով։ Այդ մասին են վկայում տանիքների փայտե մասերի ածխացած մնացորդները։ Շերտի ստորին 12 շինարարական հորիզոնների կլոր տների տանիքը հարթ էր։ Նման հետևության կարելի է հանգել վերլուծելով №№ 30, 28, 18, 7 տներում բացված ծածկը կրող սյուների սալային խարիսխների դիրքը։ Այդ տներում եղել է մեկական սյուն, որը փոքրացնում էր ծածկվող տարածության թռիչքը։ Սյունը տեղադրվել է ապակենտրոն դիրքով, որը բացառում է կոնաձև կտուրի գոյության հնարավորությունը։ Կարելի է ենթադրել, որ սյան շեղումը կենտրոնից կարող էր պայմանավորված լինել լուսածխնելուզային անցքը կենտրոնում տեղադրելու անհրաժեշտությամբ։ Վերջինիս կենտրոնական դիրքը թերևս պայմանավորված էր կիրառական (հավասար լուսավորություն) և պաշտամունքային գործոններով։ Խարիսխների վերին մակերեսը համընկնում էր տների հատակների մակարդակին, հետևաբար սյունը ծածկի կառուցվածքի կրող-կրվող տարրն էր։ Հնարավոր է, որ հարթ կտուրը կենտրոնական մասում մի փոքր բարձրացվել է, քանի որ լուսածխնելուզային անցքը կարող էր երիզվել ձողանների պսակով։ Հարթ էր նաև նույն հորիզոններում բացված ուղղանկյունաձև հատակագծով կցակառույցների և առանձնացված շինությունների տանիքը։

Շինարարական 13-րդ հորիզոնը նախորդ հորիզոնների համեմատությամբ ներկայացնում է ճարտարապետական մշակույթի առավել զարգացած պատկերը։ Այդ հորիզոնի կառույցների փլատակներից գոյացած շերտը գրեթե չորս անգամ ավելի հաստ է, քան նախորդ յուրաքանչյուր հորիզոնի մնացորդը։

Այս փաստը հուշում է կառույցների չափերի և նրանց պատերի զանգվածեղության տարբերությունը։ Այդ հորիզոնում բացված № 2 կլոր հատակաձևով կառույցի ներքին տրամագիծը կարող էր (ըստ վերակազմության) լինել մոտ 12 մ։ Քարաշեն գետնախարսխի վրա դրված նրա կավածեփ պատի հաստությունը 0,7 մ էր, իսկ կառույցի ենթադրվող մակերեսը՝ շուրջ 115 քառ. մ. էր։ № 2 կառույցում հայտնաբերվել են փայտե սյան այրված մնացորդներ։ 30 սմ տրամագծով գերանի ծայրը թաղված էր 35 սմ խորության փոսի մեջ և ամրացված էր քարերով։ Այսպիսով, ի տարբերություն նախորդ հորիզոններից, № 2 տան սյունը կանգնած էր ազատ կերպով և ծառայում էր իբրև կառուցվածքի միայն կրող տարր։ Ուշագրավ է սյան ապակենտրոն դիրքը կառույցի ներսում։ Նրա հեռավորությունը պատի մոտակա հատվածներից 3,5—4,5 մ է, որը համապատասխանում է ծածկի թռիչքի հնարավոր մեծությանը։ Սակայն սյան հեռավորությունը պատի հանդիպակաց, հեռավոր կետերից 6,9—8,7 մ է, ուստի պետք է ենթադրել, որ նման թռիչք ծածկելու համար կառույցի ներսում կանգնեցված էր ևս մեկ կամ թերևս երեք ու ավելի սյուն։ Այսպիսով, № 2 կառույցը սյան տեղադրման նոր եղանակ ներկայացնելով, վավերացնում է նաև բազմասյուն կառուցվածքների առկայությունը շենգավիթյան մշակույթի ճարտարապետության կլոր բնակարանաշինության զարգացած փուլում։

Նախիջևանի Առաջին Քյուլ-թեփեի երկրորդ շերտի ճարտարապետական զարգացմանը նմանվող երևույթներ նկատելի են նաև էջմիածնի Մոխրաբլուրի բնակարանաշինության երկրորդ և երրորդ փուլերում։ 11-րդ—9-րդ շինարարական հորիզոնների փոքր ու միջին տրամագծի կլոր հատակաձևով տների փոխարեն, Մոխրաբլուրի 8-րդ շինարարական հորիզոնում հանդես են եկել անհամեմատ ավելի մեծ տրամագծի կլոր կառույցներ, որոնք ունեցել են ուղղանկյունաձև կցակառույցներ։ Օրինակ, № 37 տան ներքին տրամագիծը 7 մ էր։ Այսուհանդերձ նրա բարակ պատը (հաստությունը 25 սմ) կազմված է երկայնությամբ շարված 22 սմ լայնության աղյուսների մեկական շարքով։ Կառույցի ներսում բացվել են ապակենտրոն տեղադրությամբ սյան խարիսխներ, որոնց դիրքը վկայում է տանիքի հարթ ձևի մասին, որը, սակայն, չի բացառում ծխալուսային անցքը եզերող բրգաձև պսակի գոյության հնարավորությունը։ Այսպիսով, Մոխրաբլուրի 8-րդ շինարարական հորիզոնը ցայտուն նմանություններ է դրսևորում Առաջին Քյուլ-թեփեի երկրորդ շերտի 1-ին և 2-րդ շինարարական հորիզոններին, որոնց կլոր շինությունների պատերի հաստությունը նույնպես կազմված էր երկայնությամբ դրված աղյուսների մեկական շարքով։ Մոխրաբլուրի 7-րդ շինարարական հորիզոնից սկսած արձանագրված է ազատ կանգնեցված քառանկյունի հատակագծով կառույցների առկայությունը։ № 33 շինությունը գրեթե քառակուսի հատակաձևով էր (ներքին չափը 2,08×2,01 մ) նրա պատը կազմված էր լայնությամբ դրված աղյուս-

ների շարքով։ Թեպետ Մոխրաբլուրի ստորին շերտերը բացվել են սահմանափակ տարածքում, այնուհանդերձ նրանց ճարտարապետական մնացորդները խոսուն փաստեր են ներկայացնում։ Այսպես, 7-րդ և 6-րդ շինարարական հորիզոններում պեղված կլոր կառույցների պատերը շարվել են երկարությամբ դրված աղյուսների մեկական շարքով, որը և կազմել է պատի հաստությունը, մինչդեռ նույն հորիզոնների առանձին կանգնած քառանկյունի շինությունների և կցակառույցների պատերը շարվել են նաև լայնությամբ դրված աղյուսների մեկական շարքով։

Մոխրաբլուրի բնակարանաշինության առաջին և երկրորդ փուլերում օգտագործված աղյուսների լայնության հիմնական չափը 22±1 սմ է։

Այսպիսով, աղյուսների չափերը կարող են արժեք ներկայացնել շենգավիթյան մշակույթի Արաքսի միջին հոսանքի հուշարձանների ժամանակագրական հետազոտության համար։ 50 սմ արտասովոր երկարության աղյուսները գտնվում են Նախիջևանի Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտի միայն առաջին շինարարական հորիզոնում և Նորաբացում։ Իսկ աղյուսի լայնության 22—23 սմ-ին հավասար չափը բնորոշ է Մոխրաբլուրի 10-րդից—6-րդ, Քյուլ Թեփեի երկրորդ շերտի 2-րդից—8-րդ հորիզոնների և Նորաբացի շինարարական տեխնիկայի համար։ Անհրաժեշտ է նշել նաև, որ Նորաբացի աղյուսների երկարությունն ու լայնությունը նույնական են շուլավերի-շոմութեփյան մշակույթի բնակավայրերից մեկի՝ Շոմու-Թեփեի պլանոկոնվեքս աղյուսներին[5]։ Սակայն այս վերջին նմանությունը կարող է նաև պատահական լինել։

Մոխրաբլուրի շերտագրական պեղավայրում ուսումնասիրված բնակարանաշինության երրորդ փուլում բացահայտվում են կարևոր մի շարք նորույթներ, որպիսիք անհայտ են երկրորդ փուլում։ Առաջին և երկրորդ փուլերում շինարարական յուրաքանչյուր հորիզոնը ներկայացված է կառուցողական մեկական շրջանով և այդ շրջանի կառույցների կործանմանը հաջորդող շրջանում (այսինքն՝ հաջորդ հորիզոնում) շինությունների հատակագծային տեղադրությունը փոխվում է։ Երրորդ փուլի պատկերը (5-րդ և 4-րդ հորիզոններ) միանգամայն այլ է։ Այստեղ հորիզոնի հատակագծային կմախքը կազմող կլոր կառույցները բազմիցս վերանորոգվել են իրենց տեղերում, իսկ հատակագծային փոփոխության ենթարկվել են այդ տները շրջապատող անկյունավոր շինություններն ու կցակառույցները։ Այսպիսով, 4-րդ և 5-րդ հորիզոնների սահմանները որոշվում են կլոր կառույցների հիմնադրման և վերջնական կործանման մակարդակներով։ 4-րդ շինարարական հորիզոնում բացահայտվել է կառուցողական չորս շրջան, իսկ 5-րդում՝ երկու շրջան, երկուական ենթաշրջաններով։ Յուրաքանչյուր նոր շրջան նշանավորող վերանորոգման ժամանակ հիմնական կլոր տների պատերը քանդվել-հարթեցվել են, իսկ այնուհետև հին պատի տեղում ճշգրիտ կերպով տեղադրվել է կառուցողական նոր շրջանի պատը։ Ուշագրավ այս երևույթը բացահայտում է կլոր տների հատուկ նշանակությունը բնակելի համալիրներում, ինչպես նաև թույլ է տալիս մտածելու, որ նախկին տան վերարտադրությունը վերանորոգման ընթացքում պետք է կատարվեր այդ տանը բնակվող ընտանիքի կողմից։ Ուստի կառուցողական մի քանի շրջանների ընթացքում գոյատևած տներում թերևս ապրել են միևնույն ընտանիքի տարբեր սերունդներ։

Շինարարական գործունեության եղանակի փոփոխությունը դրսևորվում է նաև շինարարական հորիզոնների հզորության տարբերությամբ։ Եթե Մոխրաբլուրի բնակարանաշինության երկրորդ փուլի յուրաքանչյուր հորիզոնի հաստությունը 0,4—0,7 մ է, ապա 5-րդ հորիզոնի հաստությունը՝ 1,6, իսկ 4-րդ հորիզոնինը՝ 1,8 մ է։ Շինարարական հորիզոնների զանգավածեղացումը երկրորդ փուլից երրորդին անցման շրջանում չպետք է բացատրել միայն կառուցողական շրջանների քանակի տարբերությամբ՝ այսինքն՝ վերանորոգման շնորհիվ հորիզոնի առանձին շինությունների գոյատևման երկարացմամբ։ Որոշակիորեն նկատելի է նաև կառույցների պատերի զանգվածեղացման ընթացքը, որը պայմանավորված էր շարվածքի նոր տեխնիկայի առկայությամբ։ 5-րդ շինարարական հորիզոնում պատերը հաստանում են, լայնանալով մինչև 40 սմ, իսկ 4-րդ հորիզոնի №№ 6 և 7 հիմնական կլոր տների պատը շարվում է երկարությամբ դրված աղյուսներից՝ իրար հպված երկու շարքով։ Այս եղանակով շարված № 7 տան պատի հաստությունը 68 սմ է։ Այսպիսով, Մոխրաբլուրում բացահայտվում է բնակելի կառույցների զանգվածեղացման այնպիսի ընթացք, ինչպիսին դիտվում է Նախիջևանի Առաջին Քյուլ-Թեփեի

երկրորդ շերտի 2-րդ շինարարական հորիզոնից 3-րդին և 12-րդից—13-րդին անցման շրջանում։

Մոխրաբլուրի բնակարանաշինության զարգացման երրորդ փուլում նկատվում են նաև հատակագծման նորույթներ։ Շերտագրական պեղամասի տարածքը 5-րդ շինարարական հորիզոնի կառուցողական վաղ շրջանի վերջում հոծ կառուցապատման պատկեր էր ներկայացնում։ Անկյունավոր հատակաձևի կցակառույցներով կլոր տները շրջապատվել են զգալի մեծության բազմանկյուն կամ քառանկյուն սենյակներով (լուսանկ. աղ. 1)։ Այսպիսով հիմք էր դրվում բնակելի բազմասենյականոց համալիրների, որոնց առաջացումը թերևս պայմանավորված էր հայրիշխանական չբաժանված մեծ ընտանիքի ձևավորմամբ։ 4-րդ հորիզոնում բնակելի համալիրները խմբավորվել են փողոցների երկայնքով։ Այդ հորիզոնում փողոցի բացված հատվածի լայնությունը 1,75—2,50 մ է։ Շինարարական 5-րդ հորիզոնի կառուցողական վերջին շրջանում տարածվում են նոր չափի 36×27×9 սմ աղյուսներ։ Աղյուսների այս չափը բացարձակապես գերիշխող է դառնում 4-րդ շինարարական հորիզոնի պեղված կառույցներում։ Այն ուշագրավ է կողերի 1:3:4 համաչափ հարաբերությունով։

Մոխրաբլուրի բնակարանաշինական երրորդ փուլին համանման ճարտարապետություն ավելի մեծ մակերեսում բացվել է Ջրահովտի (Մասիսի շրջան) բլուր-բնակավայրի պեղումների ընթացքում[6]։ Երևանից մոտ 18 կմ հարավ գտնվող այս բլուր-բնակավայրում պեղված 10,5 մ խորության շերտագրական պեղամասում բացահայտվել են շենգավիթյան մշակույթի տասնհինգ շինարարական հորիզոններ և կառուցողական շրջաններ։ Առավել ընդարձակ պեղումներ կատարվել են շենգավիթյան մշակույթի 3-րդ (վերևից սկսած) շինարարական հորիզոնում, որտեղ բացվել է փողոցի մի երկար հատված ու նրա երկու կողմերում հում աղյուսից կառուցված կլոր հատակագծով կառույցներ, հարակից տնտեսական նշանակության շինություններով, բակով, որոնք փողոցից անջատվել են ցանկապատով։ Տարբեր հորիզոնների կլոր կառույցներում գտնվել են խոհանոցային երկմասանի վառարաններ։ Ջրահովտի 3-րդ հորիզոնի շինությունների հատակագծային կազմակերպման առանցքը փողոցն էր, որը հոծ կառուցապատման պայմաններում ապահովում էր բնակելի համալիրների գործառությունը։

Մոխրաբլուրի շենգավիթյան մշակութային շերտի բնակարանաշինության չորրորդ փուլը (3-րդ շինարարական հորիզոն), որը հնարավոր է վերագրել մ.թ.ա. III հազարամյակի երկրորդ քառորդին, նույնպես ներկայացնում է փողոցների երկայնքով կատարված հոծ կառուցապատման պատկերը։ Այստեղ վերստին հանդես է եկել աղյուսների քառակուսի ձևը նախկինում անհայտ չափերով (32×32×8 սմ)։ Քառակուսի աղյուսների օգտագործմանը զուգընթաց շարունակվել է ուղղանկյունաձև աղյուսների արտադրությունը։ Այս և նախորդ փուլի տարբերությունը առաջին հերթին բացահայտվում է կլոր և ուղղանկյուն հատակաձևով կառույցների փոխհարաբերության ուսումնասիրության միջոցով։ Եթե երրորդ փուլում կլոր կառույցները, շրջապատված լինելով անկյունավոր կցակառույցներով և առանձին կանգնած շինություններով, կազմել են բնակելի համալիրի միջուկը, ապա չորրորդ փուլի բնակելի համալիրը ձևավորվել է քառանկյունի խոշոր շինությունների հարակցման եղանակով, իսկ կլոր կառույցները ինչպես քանակով, այնպես էլ զբաղեցրած մակերեսով համեմատաբար շատ փոքր տեղ են գրավել։ Այսպիսով, Մոխրաբլուրի բնակարանաշինության չորրորդ փուլում դիտվում է վաղ երկրագործական մի շարք մշակույթներին բնորոշ կլոր հատակագծման ավանդույթի հարատևման վերջին շրջանը։ Այդ շրջանի բնակավայրի պատկերը Արարատյան դաշտում ներկայացնում է ընդվող հնագիտական մշակույթի անվանադիր հուշարձան Շենգավիթը[7]։

Այդ հնավայրը գտնվում է Երևան քաղաքի հարավարևմտյան կողմում, նախկինում Հրազդան գետի, իսկ այժմ՝ Երևանյան արհեստական լճի ձախ ափին։ Հուշարձանը զբաղեցնում է 6 հա մակերեսով բնական բլրի գագաթը և նրա լանջերի վերին մասը։ Բլրի գագաթը Հրազդան գետի հունից բարձր է 25—30 մ-ով։ Բլուրը հրվանդանաձև տեսք է ունեցել, հյուսիսից և արևմուտքից այն եզերված էր Հրազդան գետով, իսկ հարավից՝ ու խոր փոսորակով։

Շենգավիթի բնակավայրը պատկանում է բնական բարձունքների վրա տեղադրված արհեստական բլուր-բնակավայրերի տիպին։ Մշակութային շերտի ամբողջ հաստությունը լավ պահ-












*Աղ. 5 ա) Շենգավիթ. բնակարանների համալիրների հատակագիծ, բ) Գառնի. բնակելի կառույցի հատակագիծը, գ) Շենգավիթ. ընդհանուր հատակագիծ։*

պանված կենտրոնական հատվածներում 3,4—4 մ է։ Այն հիմնականում բաղկացած է շենգավիթյան հնագիտական մշակույթին պատկանող իրար հաջորդող չորս շինարարական հորիզոններից, ըստ որում վերին հորիզոնի կլոր հատակաձևով կառույցների մի մասի հիմքը դրված է նախորդ հորիզոնի կլոր շինությունների պատի տեղում, ուստի այդ երկու հորիզոնները թերևս կարող են դիտվել իբրև միևնույն հորիզոնի կառուցողական երկու շրջաններ։ Շենգավիթյան մշակույթի ստորին երկու՝ 3-րդ և 4-րդ հորիզոնների կառույցների տեղադրությունը տարբերվում է մեկը մյուսից, ինչպես և վերին հորիզոններից։ Տվյալների հանրագումարը թույլ է տալիս թվագրելու այդ չորս հորիզոնների ամբողջությունը մ.թ.ա. 2800—2500 թթ.։

Շենգավիթի վերին հորիզոնի բնակավայրի հատակագծում նկատվում է ծուռտիկ փողոցի մի հատված, որի երկու կողմերը հոծ կառուցապատում են ունեցել (գծագր. աղ. 5 գ)։ Դրանով Շենգավիթի պեղված մասի կառուցապատման եղանակը նմանվում է Մոխրաբլուրի բնակարանաշինական երրորդ և չորրորդ փուլերին և Ջրահովտի 3-րդ շինարարական հորիզոնին։ Շենգավիթի վերին հորիզոնի բնակելի տները բաղկացած են եղել ուղղանկյուն հատակագծով (3×3 մ, 4×7 մ և այլն) մի քանի սենյակներից (մինչև 12) և կլոր հատակագծով մեկ շինությունից (գծագր. աղ. 5 ա) որը յուրաքանչյուր տան համալիրում կարևոր նշանակություն է ունեցել (լուսանկ. աղ. 2 ա)։ Կլոր կառույցների ներքին տրամագիծը 6—8 մ է (լուսանկ. աղ. 2 բ)։ Սենյակներին կցվել են ցանկապատված բակեր, որոնցից մեկի չափերն են՝ 14,5×7,5 մ։

Պատերը գետնախարիսխ են ունեցել, ստորին հորիզոններում գետաքարով շարված, իսկ վերինում՝ միջին մեծության ճեղքված քարով և գլաքարով։ Պատի արտաքին կողմում դրված քարերը ներսի շարվածներից ավելի խոշոր են։ Քարերը շարվել են կավաշաղախով կամ չոր շարվածքով։ Գետնախարիսխի վրա դրվել է չթրծած աղյուսով պատը։ Հանդիպում են երկու չափի՝ 28×20×10 սմ և 40×27/29×10 սմ աղյուսներ։ Այսպիսով, երկրորդ համաչափության աղյուսները պատրաստվել են առաջինի կրկնակի մեծությամբ։ Հանդիպում են նաև 12 սմ հաստությամբ աղյուսներ։ Որոշ պատեր ամենաստորին շարքից սկսած շարվել են աղյուսից, առանց քարե գետնախարիսխի։ Պատերի հաստությունը 0,8—1 մ էր, իսկ պահպանված մասի բարձրությունը՝ մինչև 2 մ է։ Ներսից և դրսից պատերը սվաղվել են կավով, հաճախ՝ առանց որևէ գործիքի օգնության, որի մասին վկայում են սվաղի վրա տեղ-տեղ պահպանված մատնահետքերը։ Մուտքերը երբեմն քարե շեմ կամ աստիճաններ են ունեցել։ Հատակները շարվել են հում աղյուսով կամ մանր կոպիճի համակենտրոն շրջաններից բաղկացած շարվածքով, իսկ այնուհետև սվաղվել են 1—1,5 սմ հաստության կավի շերտով։ Հատակի նորոգման ժամանակ այն ծածկվում էր նոր կավաշերտով։ Սենյակների ներսում պատի պարագծով կառուցվել են նստարաններ (նստարաններից մեկը ունեցել է 45 սմ լայնություն և նույնքան՝ բարձրություն)։ Ենթադրվում է, որ որոշ սենյակների պատերը ներսում ներկվել են կապույտ կամ երկնագույն ներկով։

Շենգավիթի բնակարանների ծածկերը ունեցել են կրող-կրվող այնպիսի կառուցվածք, որը ներկայացվել է Մոխրաբլուրի և Նախիջևանի Քյուլ-թեփեի բնակարանաշինության նկարագրությամբ։ Ուղղանկյուն սենյակների ծածկը հավանաբար հարթ էր, իսկ կլոր շինությունների տանիքը ավելի բարդ կառուցվածք է ունեցել։ Դատելով նրանց մեջ հայտնաբերված սյան խարիսխների ապակենտրոն տեղադրությունից և օջախների դիրքից, կարելի է ենթադրել, որ այդ կառույցների կտուրը կենտրոնական մասում ունեցել է գերանակապ պսակներ, որոնք օջախի վերևում երդիկ էին ստեղծում։ Այսպիսով, Շենգավիթի կլոր հատակագծի շինություններն արտաքուստ գլանաձև ծավալի էին, իսկ նրանց տանիքը, եզրերում հարթ լինելով, կենտրոնում որոշ բրգաձևություն է ունեցել։ Վերջինս կարող է դիտվել իբրև գլխատան կառուցվածքի նախատիպերից մեկը։

Բազմասենյակ համալիրների կլոր շինությունները, օգտագործվելով նաև կենցաղային նպատակների համար, հիմնականում պաշտամունքային նշանակություն են ունեցել։ Այս կերպ բացատրվում է նրանց վերակառուցումը միևնույն տեղում, շինարարական տարբեր հորիզոններում կամ կառուցողական շրջաններում։ Շենգավիթյան մշակույթի բնակավայրերում հետաքրքիր այս երևույթը նկատվում է Մոխրաբլուրի բնակարանաշինական երրորդ փուլից սկսած։ Շենգավիթի կլոր շինությունների կենտրոնում

(ինչպես և որոշ ուղղանկյուն սենյակներում) տեղադրվել է արտաքին կողմից կլոր, 0,5—1 մ տրամագծով պաշտամունքային օջախը։

Հասարակական գործոնը կլոր շինությունների վերացման կարևորագույն պատճառներից էր։ Չբաժանված նահապետական մեծ ընտանիքների տարածման հետևանքով ձևավորվել է բնակելի կառույցի նոր ձևը՝ ուղղանկյուն սենյակներից բաղկացած բազմասենյակ տունը։ Այդ տան կազմում կլոր սենյակը դեռ գոյատևում է վերապրուկի տեսքով, կապված լինելով մարդկանց գործունեության ամենապահպանողական, դժվարությամբ փոփոխվող երևույթի՝ ընտանեկան պաշտամունքի հետ։ Պաշտամունքային ճարտարապետությունը տեղ-տեղ պահպանել է կլոր կառույցի ձևը դաղստանա-պաղեստինյան հնամշակութային մարզի գոյության նույնիսկ ուշ շրջանում։ Դրա մասին է վկայում ամբողջությամբ պեղված Կվացխելեբի բնակավայրի միակ կլոր կառույցը՝ սրբարանը, ինչպես նաև Քիրբեթ-Կերակի մոնումենտալ տաճարի ճարտարապետությունը։

Այսպիսով, զարգանալով Առաջավոր Ասիայի վաղ երկրագործական տարբեր մշակույթներում, ներկայացնելով Հայկական լեռնաշխարհի մի քանի հազարամյակների ճարտարապետական ավանդույթները՝ կլոր հատակագծով բնակելի կառույցների տիպաբանական խումբը վերանում է շենգավիթյան մշակույթի զարգացած փուլի վերջում։

Շենգավիթին ժամանակակից է հնագիտական նույն մշակույթը ներկայացնող Գառնիի վաղբրոնզեդարյան բնակավայրը։ Նրա շերտը հնագույնն է անտիկ ամրոցի տարածքում[8]։ Գառնիի շենգավիթյան բնակավայրի տեղադրությունը տարբերվում է վերը հիշատակված հուշարձանների դիրքից։ Այն զբաղեցնում է Գառնիի եռանկյունաձև հրվանդանը, որի ժայռակազմ երկու կողմերը ուղղահայաց կտրվելով դեպի կիրճի հատակը, անմատչելի են։ Երրորդ կողմից բնակավայրը պաշտպանված էր անմշակ խոշոր քարերից շարված պարսպով։ Այսպիսով, Գառնիի շենգավիթյան մշակույթի բնակավայրը տեղադրությամբ նման է բրոնզե դարի ավելի ուշ փուլերում Հայաստանում տարածված, այսպես կոչված, «կիկլոպյան ամրոցներին»։ Գառնին և նրան ժամանակակից ու համանման հուշարձանները սկսում են «կիկլոպյան ամրոցների» տիպաբանական երկար շարքը, որը գոյատևել է մինչև միջնադարը։ Գառնիի վաղ բրոնզեդարյան ամրոց-բնակավայրը թեև գտնվել է լեռնային հուշարձաններին բնորոշ բնական միջավայրում, այնուհանդերձ միավորել է լեռնային և դաշտավայրային բնակավայրի հատկանիշները։ Հրվանդանի մակերեսի փոքր թեքությունը չի խանգարել տեղի բնակիչներին կիրառելու հարթավայրային կառուցապատման սկզբունքները։

Շենգավիթյան մշակույթի շերտի առավելագույնս պահպանված հաստությունը Գառնիում շուրջ 2—2,2 մ է։ Թեպետ պեղումների մակերեսը սահմանափակ էր, այստեղ բացահայտվել են երեք շինարարական հորիզոններ։ Ստորին (3-րդ) հորիզոնում բացվել է 6,7 մ տրամագծի մի կլոր կառույց (գծագր. աղ. 5 բ), որի պատի քարաշեն ստորին մասի տեղ-տեղ պահպանված բարձրությունը 1,2 մ-ի է հասնում։ Պատը շարված է անհամաչափ մեծության քարերով՝ մանր ու միջին չափի քարերի կողքին հանդիպում են 0,7 և 0,4 մ բարձրություն ունեցող քարեր։

Դրսից և ներսից պատը սվաղված է կավով։ Արևելյան կողմից բացված մուտքը ունի 1 մ լայնություն։ Կառույցի պատի հաստությունը 0,9 մ է, որը կարող է ցույց տալ նրա՝ Շենգավիթում բացված կառույցների ժամանակակից լինելը։ Շինության հատակը դրված էր մայր հողի վրա, որը հարթեցվել է խճաքարերով, իսկ երեսից սվաղվել հարդախառն կավի հաստ շերտով։

Միջին (2-րդ) շինարարական հորիզոնի հաստությունը մոտ 0,4 մ է։ Այստեղ բացվել են կլոր հատակաձևով երկու շինությունների քարաշեն գետնախարիսխների հատվածներ և հում աղյուսներից մի շարվածք, որը հատել է 3-րդ շինարարական հորիզոնի կլոր կառույցի տարածքը։

Վերին (1-ին) շինարարական հորիզոնում, որի վերին սահմանը համապատասխանում է 1,3 մ խորության, բացվել է 6,7 մ տրամագծով կլոր հատակագծով մի կառույց, որի անմշակ քարերով շարված գետնախարիսխի բարձրությունը 0,5 մ էր, իսկ հաստությունը՝ 0,6 մ։ Ուշագրավ է 1-ին և 3-րդ շինարարական հորիզոնների կլոր կառույցների տրամագծի կրկնությունը։ Ներսից և դրսից գետնախարիսխը սվաղված էր կավով։ Գետնախարիսխի վրա պահպանվել են հում աղյուսից շարված պատի հետքեր։ Պահպանված աղյուսների չափերն են՝ 26×20×10 սմ։ Այսպիսով, Գառնիի 1-ին շինարարական հորիզոնի աղյուսները կրկնում են Շեն-

գավիթի վերին (1-ին) շինարարական հորիզոնի փոքր աղյուսների չափերը, որը թերևս կարող է ժամանակագրական կռվան ծառայել այդ հուշարձանների հարաբերական թվագրման համար։ Գառնիի վերին հորիզոնի նկարագրված կառույցը կավածեփ հատակ է ունեցել։ Այդ կլոր շինությանը հպված էին ուղղանկյունաձև կառույցներ։ Պեղամասի տարածքում դրանցից բացվել է 0,65 մ հաստությամբ ուղղագիծ պատի ստորին մասի շարվածքը՝ անմշակ, միջին մեծության քարերից։

Շենգավիթին և Գառնիին ժամանակակից (մ.թ.ա III հազարամյակի կեսը) բնակավայրի կլոր և ուղղանկյունաձև կառույցներով կառուցապատման մեկ այլ տարբերակ բացվել է Էլառում (Արզնի)[9]։ Հուշարձաններով հարուստ այդ վայրում հայտնաբերվել են շենգավիթյան մշակույթը ներկայացնող բազմաթիվ կառույցներ, որոնց ամենաուշագրավ մասը բացվել է Դարանի մինչուրարտական ամրոցի լանջերին[10]։ Ամրոցի տարածքում մշակութային շերտի հաստությունը հասնում է 4 մ-ի, որի ստորին զանգվածում բացվել են շենգավիթյան մշակույթի շինարարական երկու հորիզոններ։ 2-րդ (ստորին) շինարարական հորիզոնում պեղվել է քառանկյուն շինության ուղղագիծ պատի մի հատված, որը շարված էր խոշոր քարերով։ Հայտնի չէ՝ արդյոք այդ շարվածքը գետնախարի՞սխ էր որի վրա բարձրացվել է հում աղյուսի պատը, թե՞ պատը ամբողջությամբ քարաշեն էր։ Ուշադրության արժանի է այն փաստը, որ քառանկյուն կառույցի տեղում, շենգավիթյան մշակույթի 1-ին (վերին) շինարարական հորիզոնում գոյություն է ունեցել կլոր հատակաձևով մի շինություն։ Ուստի պետք է ենթադրել, որ Էլառի վաղբրոնզեդարյան բնակավայրում իրար կողքի հանդես են եկել կլոր և քառանկյուն հատակաձևով կառույցներ։ Էլառի կլոր հատակագծով կառույցների ներքին տրամագիծը 4—8 մ էր, իսկ պատերի հաստությունը, որը կազմված էր քարերի կրկնակի շարվածքով՝ շուրջ 1 մ էր։ Մի շարք շինություններում պատի արտաքին շարվածքի քարերը ավելի խոշոր են, քան ներսից շարվածները։ Կլոր կառույցներում պատերի քարե շարվածքի պահպանված բարձրությունը 1,2 մ-ի է հասնում։ Այսպիսով, կարելի է ենթադրել, որ այդ տների պատերը կարող էին ամբողջությամբ քարաշեն լինել և նրանց կառուցման համար հում աղյուսը թերևս չի օգտագործվել։ Տների հատակները ծեփվել են կավով։

Շենգավիթյան մշակույթի ճարտարապետական ավանդույթների ուսումնասիրության համար հատկապես կարևոր է բնակավայրի կառուցապատման այն եղանակը, որը վերակազմվում է Էլառի պեղումների տվյալների հիման վրա։ Դարանի ամրոցի բլրի հյուսիսարևելյան լանջին բացվել են արհեստական երկու դարավանդների վրա կառուցված կլոր տներ։ Ստորին դարավանդում պեղվել է երկու շինություն, իսկ վերին դարավանդում՝ հինգ։ Դարավանդները իրարից բաժանում է մի քանի տասնյակ մետր լայնությամբ մի տարածություն։ Այսպես առաջանում էին տների՝ մեկը մյուսից առանձնացված շարքեր և յուրաքանչյուր դարավանդ կամ իրար մոտ գտնվող դարավանդներ կարող էին հանդես գալ իբրև յուրատեսակ թաղամասեր։ Ուշագրավ է շինարարական աշխատանքներ կատարելու նպատակով բլրի լանջի արհեստական փոփոխման փաստը։ Նույն բլրի հարավային լանջին կատարված պեղումները ևս արձանագրել են արհեստական դարավանդների ստեղծման փաստը, ընդ որում պարզվել է, որ դարավանդի վրա կլոր տունը կառուցելիս, բլրի բնական լանջը կտրվել է և այդ կտրվածքին հենվել է տան պատը։ Ուստի այդ կողմից տունը միաձուլվում էր լանջի հետ։ Այսպիսով, Էլառի շենգավիթյան մշակույթի բնակելի ճարտարապետությունը, հիմնականում նմանվելով նույն մշակույթի այդ փուլի հայտնի մյուս հուշարձաններին, ներկայացնում է կարևոր երեք առանձնահատկություն՝ ա) բնական թեքության արհեստական դարավանդման առկայություն, բ) բնակավայրի կառուցապատման կազմակերպում ըստ դարավանդների, գ) տան հետին կողմը լանջի մեջ մտցված լինելը։

Նմանօրինակ կառուցապատում է ունեցել նաև Ախալցխայի մոտ գտնվող Ամիրանիս-գորա բնակավայրը, սակայն այդտեղ կլոր տներ չեն հայտնաբերվել։ Ամիրանիս-գորայի կառույցների հիմնական ձևը քառանկյուն երկարուկ տունն է։

Էլառի ճարտարապետությունը ներկայացնում է Հայկական լեռնաշխարհի դաշտավայրային միջավայրում արմատավորված տան կլոր հատակաձևի փոխադրման փորձը թեք լանջերի վրա։ Էլառում դեռևս չենք տեսնում լեռնային բնակավայրերի կարևոր հատկանիշներից մեկը՝ կառույցների այնպիսի դասավորություն, որի դեպ-

քում ներքին դարավանդի շինությունների տանիքը վերին շինություններին ծառայում է իբրև բակ: Սակայն շինարարության նպատակով արհեստական դարավանդների ստեղծումը, ինչպես նաև տան հետին կողմը լանջի մեջ թողնելու սովորույթի առաջացումը, անհրաժեշտ նախադրյալ էին բնակավայրերի լեռնային տիպի ձևավորման համար: Այսպիսով՝ Էլարը կարող է դիտվել իբրև դաշտավայրային բնակավայրերից լեռնայինին անցումնային տիպի օրինակ:

Արարատյան դաշտի և նրան եզերող նախալեռնային ու լեռնային գոտու տարածքում հայտնի են տարբեր ծավալով պեղված շենգավիթյան մշակույթի բնակելի ճարտարապետության մնացորդներ ներկայացնող նաև մի շարք այլ հուշարձաններ՝ Այգևանը, Լճափի բլուրը, Ոսկեբլուրը, Ադաբլուրը (Կղզյակ բլուրը), Արևիկը, Ջյանբերդը (Հարավային Ղոյթուր), Կամարիսը (Գյամրեզ), Ցրանգանոցը, Ախթամիրը (Ոսկեվազ)[11]: Նախնական հաղորդումներից պարզվում է, որ այդ բնակավայրերում պեղված կառույցների մնացորդները արտացոլում են շենգավիթյան մշակույթի ճարտարապետական զարգացման վերոհիշյալ երևույթները կամ մասամբ լրացնում են նկարագրված պատկերը: Այսուհանդերձ պետք է շեշտել, որ Արարատյան դաշտի և հարակից շրջանների տարածքում շենգավիթյան մշակույթի բոլոր փուլերը հավասարապես ուսումնասիրված չեն: Դեռ պետք է բացահայտվեն և ուսումնասիրվեն չհետազոտված փուլերի ճարտարապետական հուշարձանները: Բացարձակապես անհայտ է շենգավիթյան մշակույթին անմիջապես նախորդող ճարտարապետությունը: Նաև հայտնի չէ՝ ի՞նչ է հաջորդում Շենգավիթի 1-ին (վերին) շինարարական հորիզոնին:

Քննենք բնակարանաշինության զարգացման ընթացքը շենգավիթյան մշակույթի տարածման մյուս շրջաններում: Բազմաշերտ մի շարք հուշարձաններ հայտնաբերվել և մասնակիորեն պեղվել են Դաշտային Ղարաբաղում՝ Միլի տափաստանի հարավային կողմում Ղուրուչայի և Քենդելենչայի գետահովիտների ստորին մասում: Այստեղ ուշադրության հատկապես արժանի է Ղարաքյոփեկ-Թեփե բազմաշերտ բնակավայրը[12]: Այդ հուշարձանում պեղված շենգավիթյան մշակույթի շերտի շինարարական հորիզոնները բաժանված են երկու ենթաշերտի: Ստորին ենթաշերտում պեղվել են կլոր հատակաձևով 3,5—4 մ տրամագծով մեկ սենյականի տներ: Տեղ-տեղ 1 մ բարձրությամբ պահպանված այդ կառույցների պատերը շարված են հարթ սալիկներից և անմշակ փոքր դաշտաքարերով: Ղարաքյոփեկ-Թեփեի ստորին ենթաշերտի շինությունների հատակներն ու պատերը սվաղվել են կավով և ներկվել կարմիր ներկով: Աշխարհագրական նույն շրջանում գոյություն են ունեցել նաև կլոր հատակաձևով բնակելի ավելի խոշոր կառույցներ: Այսպես, Գյոնեշ-Թեփեում պեղված տան տրամագիծը 7 մ-ից ավելի է: 0,7 մ բարձրությամբ պահպանված նրա պատերը շարված են ավելի խոշոր քարերով: Ղարաքյոփեկ-Թեփեի շենգավիթյան շերտի վերին ենթաշերտում բացվել են միմիայն քառանկյուն սենյակներից կազմված բնակելի բազմասենյակ համալիրներ: Վերին ենթաշերտում կլոր շինությունները բացակայում են: Բազմասենյակ տների պատերը կառուցված են ճեղքված խոշոր քարերից և դաշտաքարերից, որոնք շարվել են կավաշաղախով: Դրանց հաստությունը 1 մ է, իսկ առանձին տեղերում դրանք պահպանվել են 1,2 մ բարձրությամբ: Ներսի կողմից պատերը սվաղվել են կավով: Թեպետ շատ հավանական է Ղարաքյոփեկ-Թեփեի երկու ենթաշերտերի միջև ժամանակագրական խզման գոյությունը, այսուհանդերձ տվյալ բնակավայրի շերտագրությունը լավ է արտացոլում շենգավիթյան մշակույթի բնակելի ճարտարապետության զարգացման հիմնական օրինաչափությունը:

Շենգավիթյան մշակույթի զարգացման կարևորագույն օջախներից է Պարսկահայքը: Ուրմիո լճի ափերին գտնվում են այդ մշակույթի տասնյակ հուշարձաններ: Մի կողմ թողնելով այդ շրջանում կատարված հետախուզական աշխատանքները, նշենք, որ դրանցից այս կամ այն չափով պեղվել են երեքը. Յանիք-Թեփեն լճի արևելյան, Գյոյ-Թեփեն՝ արևմտյան և Հավտավան-Թեփեն՝ հյուսիսային ափին:

Յանիք-Թեփեում շենգավիթյան մշակույթի հզոր շերտը պեղվել է արևմտյան (մեծ) բլրում: Այդ շերտը ծածկում է իրեն նախորդող շուրջ 8 մետր հաստությամբ էնեոլիթյան (խալկոլիթյան) շերտը: Շենգավիթյան շերտը բաժանվել է երկու ենթաշերտի, որոնք անվանվել են «Յանիքի վաղբրոնզեդարյան 1-ին» և «Յանիքի վաղբրոնզեդարյան 2-րդ»[13]:

Վաղբրոնզեդարյան 1-ին փուլը ներկայաց-







Աղ. 6 ա) Ամիրանիս-գորա. ընդհանուր հատակագիծ, բ, գ) Դեյիրմեն-Թեփե. կացարանների հատակագիծ, դ) Կվացխելեբի. $C_1$ շերտի ընդհանուր հատակագիծը, ե, զ) Խիզանաանտ-գորա. կացարանների հատակագիծ։

ված է ինը հիմնական շինարարական հորիզոններով, որպիսիք իրենց հերթին ստորաբաժանվում են մի շարք կառուցողական շրջանների (14-ից 26-ը վերևից ներքև)։ Այդ հորիզոններում պեղվել է հում աղյուսից կառուցված կլոր հատակաձևով 57 շինություն։

Ցանիքի վաղբրոնզեդարյան 1-ին փուլի շինարարական տարբեր հորիզոնների համադրումը բացահայտում է ճարտարապետության որոշ փոփոխություններ, որոնք դրսևորվել են կառույցների չափերի և բնակավայրերի կառուցապատման եղանակի միջոցով։ Այդ փուլի վաղագույն հորիզոններում պեղված կլոր տների արտաքին տրամագիծը ընդամենը 3,5—3,6 մ է։ Մինչդեռ 17-րդ (նույնը ($F_4$) B) կառուցողական շրջանում արտաքին տրամագիծը հասնում է 6,9 մ-ի (տուն № 2)։ Ստորին հորիզոնների կառուցապատումը ազատ ագլոմերատիվ է։ Առանձնացված կլոր տների միջև մնում էին կառույցներից ազատ մակերեսներ, որպիսիք ապահովել են բնակավայրի տարածքում շարժման ազատ հնարավորությունը։ Նույն վաղբրոնզեդարյան 1-ին փուլին վերաբերող 17-րդ կառուցողական շրջանը շինությունների մեծագույն խտացման պատկեր է ներկայացնում։ Այն հետևանք էր բնակչության էական աճի։ Ենթադրվում է, որ այդ կառուցողական շրջանի գոյության ժամանակահատվածում Ցանիք-Թեփեի բնակավայրի բնակչության թիվը երկու հազարի էր հասնում։ Կառուցապատումը հոծ էր դարձել, սակայն նրա եղանակը մնում էր անկանոն։

Բնորոշ է պեղամասի այն հատակագիծը, որը 17-րդ կառուցողական շրջանն է ներկայացնում (գծագր. աղ. 4 և)։ Այստեղ բացվել է բնակավայրը շրջափակող պաշտպանական պարսպին կից մի հատված։ Պարսպի գիծը ընդհատվում էր նեղ մուտքի (կամ մուտքերից մեկի) բացվածքով, որից ներս գտնվում էր կառույցներից ազատ մի փոքրիկ տարածություն (թերևս՝ նրբանցքի սկիզբը)։ Պեղված հատվածում այդ տարածության մի կողմը լցված էր իրար կպած տներով։ Երկու տների (№ № 12 և 17) միջև մնացած մակերեսը բաժանվում էր ցանկապատով, որի ներսի կողմում գտնվող շուրջ 40 քառ. մ մակերեսով բակը նույնպես եզերված էր կլոր տների հոծ գծով։ Ցանկապատի մեջ եղած մուտքը կապում էր բակը պարսպից ներս ընկած ազատ տարածության և այսպիսով՝ բնակավայրի մուտքի հետ։ Բակը հիմնականում ծառայում էր № 1 շինությանը, որը, ամենայն հավանականությամբ, համայնքի ցորենի շտեմարանն էր։ Շտեմարանի ճարտարապետական հատուկ ձևը հավանական է դարձնում այս վարկածը։ Բակը շրջափակող բնակելի տների մուտքերը տարբեր կողմնորոշում են ունեցել, որոշ դեպքում մուտքերը ուղղված էին բակից դուրս։ Այս փաստը հուշում է, որ բակը չի ծառայել շրջապատի տները միավորելու համար, այլ ապահովում էր շտեմարանի շահագործումը։ Շտեմարանը թերևս միտումնավոր կերպով կապվում էր արտապարսպային տարածության հետ։ Կառուցողական 17-րդ շրջանը ներկայացնում է ցորենի պաշարների կուտակման և պահպանման խնդրի ճարտարապետական լուծման երկու եղանակներ, որոնք արտացոլում են համայնքի սննդամթերքի պահպանման և բաշխման ձևը։ Հասարակական շտեմարանի հետ մեկտեղ յուրաքանչյուր տանը եղել են նաև ցորենի աղյուսաշեն փոքր ամբարներ։

Ցանիք-Թեփեի վաղբրոնզեդարյան 1-ին փուլի բնակելի կառույցների գրեթե միակ ձևը կլոր տունն է՝ քառանկյունի հատակաձևով փոքրիկ կցակառույցով։ Առանձին կանգնած քառանկյուն շինությունները հատ ու կենտ էին և բնակելի չեն եղել։ Կլոր կառույցները տվյալ փուլի առնըվաղն միջին և ուշ կառուցողական շրջաններում հաճախակի հարատևել են երկու և ավելի կառուցողական շրջանների ընթացքում (շինություններ № № 2, 4, 10, 11, 12, 20)։ № 1 կառույցը՝ հասարակական շտեմարանը, նույնպես գործել է երկու (18-րդ և 17-րդ) կամ երեք (18-րդ—16-րդ) կառուցողական շրջանների ընթացքում։ Կլոր շինություններից շատերը վերակառուցվել են իրենց նախնական հատակաձևի ուրվագծով, մինչդեռ քառանկյուն կցակառույցները մեկ կառուցողական շրջանից ավել չեն գոյատևել, ենթարկվելով էական փոփոխությունների։ Այս պատկերը Ցանիքի վաղբրոնզեդարյան 1-ին փուլի միջին կառուցողական շրջանները նմանեցնում է Մոխրաբլուրի բնակարանաշինության երրորդ փուլին։

Ցանիքի վաղբրոնզեդարյան առաջին փուլի տները ներսում հաճախակի բաժանված էին բարակ միջնորմի միջոցով։ Այս նույն երևույթը նկատվել է Նախիջևանի Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտի ստորին (5-րդ և 9-րդ) շինու-

բարական հորիզոններում (կառույցներ № 19 և № 9), ինչպես նաև էջմիածնի Մոխրաբլուրի 9-րդ շինարարական հորիզոնում (կառույց № 42): Հատկանշական է Ցանիքի կլոր շինությունների պատերի կառուցման եղանակը: Դրանք շարվել են հում աղյուսով, ըստ որում 17-րդ շինարարական հորիզոնի բնակելի տների պատերի հաստությունը 25-ից—50 սմ է: Պետք է ենթադրել, որ բարակ պատերը շարվել են երկարությամբ դրված աղյուսների մեկական շարքով: Ամենից հաստ է հասարակական շտեմարանի աղյուսաշեն պատը: Երկարությամբ դրված մեկ շարք աղյուսների հաստության պատեր, ինչպես նշվեց, հանդիպել են Մոխրաբլուրի բնակարանաշինական առաջին և երկրորդ փուլերի կլոր կառույցներում և Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտի ամենավաղին՝ առաջին և երկրորդ շինարարական հորիզոններում: Ցանիք-Թեփեի կլոր շինություններում հանդիպում ենք նաև Քյուլ-Թեփեին բնորոշ աղյուսաշեն շարվածքին՝ համեմատաբար զանգվածեղ պատերը ունեին իրար զուգահեռ երկարությամբ շարված աղյուսների երկու շարք, որի վրա դրված է լայնությամբ դասավորված աղյուսների շարքը: Ցանիքի կլոր կառույցներից շատերի պատերը պահպանել են ուղղահայաց կտրվածքով դեպի ներս կորանալու նշաններ: Դրանց կողքին բացվել են ուղղահայաց պատեր ունեցող շինություններ: № 36 տանը գտնվել են նաև այրված տանիքի մնացորդներ, որպիսիք ներկայացնում են ձողաններից և ճյուղերից կազմված վերևից կավածեփ մի կառուցվածք: Այսպիսով, կարելի է ենթադրել, որ Ցանիքի կառուցապատման մեջ կողք կողքի գոյություն են ունեցել մեղվանոցաձև (կեղծ-թաղակապ) և գլանաձև ծածկի կառույցներ: Այս երևույթը, ինչպես նշվեց, նկատվել է նաև Նորաբացի բնակատեղիում:

Ցանիքի կլոր տների մի մասը ունեցել է շինության կենտրոնին մոտ դրված ծածկը պահող մեկական սյուն: Տարբերվելով Քյուլ-Թեփեի սյուների մեծամասնությունից, Նորաբացի, Մոխրաբլուրի, Շենգավիթի սյուների տեղադրման եղանակից, որտեղ սյուները դրվել են տափակ քարերի վրա և կառուցվածքի կրող-կրվող տարրն են եղել, Ցանիքի սյուները ամրացվել են փոսերի մեջ: Փոսերի մեջ սյուների հիմքերը սեպվել են քարերով կամ այլ դեպքում սյան հիմքը օղակվում էր աղյուսե շարվածքով, այսինքն՝ նրա բունը գլանաձև բարձրանում էր հատակի վրա: Հետևաբար, Ցանիքի կլոր տների սյուները կառուցվածքի ազատ կանգնած միմիայն կրող տարր էին: Սյուների տեղադրման նման եղանակ արձանագրվել է Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտի 13-րդ շինարարական հորիզոնում (շինություն № 2) և Կվացխելեբիում:

Ցանիք-Թեփեի կլոր տները «տիպային» կահավորում են ունեցել: Մուտքի կողքին գտնվել են հում աղյուսից շարված արկղաձև փոքր ամբարպահոցներ: Ենթադրվում է, որ դրանք գերազանցապես օգտագործվել են ցորեն պահելու համար, սակայն, նրանց մեջ ցորենից բացի կարող էին պահվել նաև այլ մթերքներ: Ամբարների կողքին գտնվում էր կարծր շաղախի շերտով ծածկված հարթակը, որի վրա ինչ-որ մթերքներ են մշակվել: Այդ մշակման ընթացքում առաջացած հեղուկի հեռացման համար հարթակի եզրին ակոս էր թողնված: Իբրև հարթակի շարունակություն, պատի հիմքի պարագծով կառուցված էր մի նստարան, որի վրա շարվել են կավանոթներ: «Տիպարային» այդ կահավորումը, որը վկայված է կլոր տների մեծամասնության ներսում, լրացնում էր կիսաձվածիր հատակաձևով խոհանոցային վառարանը: Որոշ տներում խոհանոցային մասը միջնորմով անջատված էր բնակելի տարածությունից: Ցանիքի «տիպարային» կահավորման առանձին տարրերը՝ ամբարներ, նստարաններ, վառարաններ կամ նրանց համադրության միասնությունը հայտնաբերվել է նաև Նախիջևանի Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտում, Նորաբացում, Ջրահովիտում:

Այսպիսով, Ցանիք-Թեփեի վաղբրոնզեդարյան առաջին փուլի բնակելի ճարտարապետությունը հիմնական տարրերով նմանվում է Նախիջևանի Առաջին Քյուլ-Թեփեի երկրորդ շերտի և Մոխրաբլուրի բնակարանաշինական երկրորդ և երրորդ փուլերի ճարտարապետությանը: Հավանական է նաև նրանց ժամանակակից լինելը: Ցանիքի վաղբրոնզեդարյան առաջին փուլը թերևս ընդգրկում է նաև Մոխրաբլուրի բնակարանաշինության առաջին և երկրորդ փուլերի միջև ընկած ժամանակահատվածը:

14-րդ կառուցողական շրջանի ավերումից հետո կյանքը Ցանիք-Թեփեում դադարում է և վերսկսվում է երեք-չորս դար անց, մ.թ.ա. III հազարամյակի երրորդ քառորդում: Բնակավայրի պատմության այդ ժամանակաշրջանը ներկա-

յացնում են Յանիքի վաղբրոնզեդարյան երկրորդ փուլի կառուցողական շրջանները (13-ից—7-ը)։ Երկրորդ փուլի սկիզբը նշանավորվել էր ճարտարապետական ավանդույթի կտրուկ փոփոխությամբ։ Բնակավայրի պեղված տարածքը կառուցապատված էր քառանկյունի հատակաձևով սենյակներից բաղկացած բազմասենյակ տներով։ Կլոր հատակաձևերի նվազագույն հետքը չի նկատվում։ Կառուցապատումը խիտ էր, բայց ոչ հոծ։ Տների միջև մնում էին 3—4 մ լայնությամբ փոքրիկ բակեր, միջանցիկ տարածություններ, որոնց միջոցով իրականացվում էր շարժումը բնակավայրի տարածքում (գծագր. աղ. 8 ա)։ Կառույցների հում աղյուսե պատերի հաստությունը հասնում էր 0,7—0,8 մ-ի։ Բացված սենյակների մակերեսը փոփոխվում էր 5-ից—25 քառ.մ. սահմաններում, սակայն հավանական է նաև ավելի խոշոր սենյակների գոյությունը։

Յանիք-Թեփեի վաղբրոնզեդարյան երկրորդ փուլի ճարտարապետության ամենանշանավոր նորույթը երկհարկանի տների առկայությունն է։ 24 քառ.մ. մակերեսի № 5 սենյակի անկյունում մուտքի դիմաց գտնվող երկայնական պատին զուգահեռ դրված էր մեկ ուրիշ պատ, որի երկարությունը մոտ 2 մ էր։ Վերջինս կտրվում էր սենյակի ներսում առանց որևէ միացման մյուս պատերի հետ։ Սենյակի արտաքին պատի մեջ, հատակից բարձր, տարբեր մակարդակներին պահպանվել են գերանների մնացորդներ, որպիսիք միացրել են այդ պատը կարճ պատի հետ։ Պարզ է, որ սենյակի այդ անկյունում գոյություն է ունեցել վերին հարկ տանող աստիճանավանդակը։ Այսպիսով, Յանիքի վաղբրոնզեդարյան երկրորդ փուլը Հայկական լեռնաշխարհի տարածքում երկհարկանի տան առայժմ հաստատապես հայտնի հնագույն օրինակն է ներկայացնում։ Յանիքի այդ փուլը պատկանում է ուսումնասիրվող հնագիտական մշակութային ընդհանրության գոյության ուշ շրջանին։ Խեցեղենից բացի դրա ապացույցն է նաև տների ներքին ձևավորումը, որը պահպանել է Յանիքի վաղ բրոնզեդարյան առաջին փուլի «տիպարային» կահավորման առանձին տարրերը։

Քիչ բան է հայտնի Ուրմիո լճի արևմտյան ափին գտնվող Գյոյ-Թեփեի շերտերում ներկայացված շենգավիթյան մշակույթի ճարտարապետության մասին։ Այդ հուշարձանը Հայկական լեռնաշխարհի խոշորագույն արհեստական բլուր-բնակավայրերից մեկն է։ Նրա բարձրությունը մերձակա դաշտավայրի մակերևույթից 24 մ է, իսկ մակերեսը՝ մոտ 20 հա է։ Շենգավիթյան մշակույթը ներկայացնող շերտի հաստությունը՝ պեղված 1-ին փոսորակում, 6,7 մ է, որը ստորաբաժանվել է երեք ենթաշերտերի՝ $K_1$, $K_2$, $K_3$ (որից $K_1$ ստորինն է, իսկ $K_3$ վերինն է)[14]։ $K_1$ ենթաշերտում բացվել են կորագիծ քարե շարվածքներ, որպիսիք թերևս կլոր հատակաձևով տների աղյուսե պատերի գետնախարիսխներն էին։ $K_2$ ենթաշերտում պեղվել է 1,7 մ հաստության ուղղագիծ հում աղյուսե հզոր մի պատ, որը, անկասկած, մոնումենտալ ինչ-որ կառույցի մասն էր։ Ենթադրվում է, որ այդ պատը կարող էր պաշտպանական նշանակություն ունենալ։ Վերջապես, վերին՝ $K_3$ ենթաշերտում գոյություն են ունեցել հում աղյուսով կառուցված քառանկյուն խոշոր կառույցներ, որի մասին վկայում է 1,4 մ հաստության ուղղագիծ պատի պեղված հատվածը։ Այսպիսով, Գյոյ-Թեփեի K շերտը կարող է ներկայացնել կլոր հատակաձևով շինություններից ուղղանկյուն կառույցներին անցման երևույթը։

Հայկական լեռնաշխարհի հարավարևմտյան մասում, Խարբերդի դաշտից (այժմ՝ Ալթինովա) մինչև Մալաթիա վերջին տարիների ընթացքում տարբեր հնավայրերում կատարված պեղումները բացահայտել են վաղ բրոնզդարի հզոր շերտեր, որոնք շենգավիթյան մշակույթին ազգակից հնագիտական մշակույթ կամ նույնիսկ այդ մշակույթի լոկալ (տեղայնական) տարբերակ են ներկայացնում։ Պեղումների ընթացքում բացվել են վաղբրոնզեդարյան բնակելի տների տարբեր տիպեր, որոնք իրարից տարբերվում են ինչպես հատակագծային լուծումներով, այնպես էլ կիրառված շինարարական տեխնիկայով։ Տների այդ տիպերը հանդես են եկել վաղ բրոնզեդարի տարբեր ժամանակահատվածներում, ուստի պետք է ենթադրել, որ Խարբերդ—Մալաթիայի շրջանում, սկսած մ.թ.ա. IV հազարամյակի վերջից մինչև III հազարամյակի վերջը, հաջորդաբար փոխվել են բնակարանաշինական տարբեր ավանդույթներ։

Նորշուն-Թեփե, Տյուլին-Թեփե և Խան-Իբրահիմ-Շահ բնակավայրերում հայտնաբերվել են կլոր հատակաձևով կառույցներ, որոնց գոյությամբ հաստատվում է Արաքսի միջին հոսանքի և Ուր-




*Աղ. 7 ա) Սարյոլ-Փուլուր. 10-րդ հորիզոնի ընդհանուր հատակագիծ, բ) Թաբարա-էլ-Աքրադ. բնակարանի հատակագիծ, գ) Սարյոլ-Փուլուր. 5-րդ շինարարական հորիզոնի ընդհանուր հատակագիծ, դ) Թել-Զաղեյդեհ.* H *շերտի բնակարանի հատակագիծ:*

միո լճի ավազանի բնակարանաշինական ավանդույթի առումով Խարբերդ—Մալաթիայի դաշտավայրերի վաղբրոնզեդարյան մշակույթի զարգացման որոշ ժամանակահատվածներում: Տեպե-Գիսիի կլոր կացարանը[15] կիսագետնափոր շինություն էր, որի առողին մասը խորացված էր բլրի խալկոլիթյան (էնեոլիթյան) շերտի մեջ: Պատերը խնամքով շարված էին քարե հարթ սալերից: Շինության ներքին տրամագիծը 3,6 մ էր, իսկ պատերի պահպանված բարձրությունը 1,6 մ-ից ավելի է: Այդ կառույցի շինարարության համար հում աղյուսը թեև չի օգտագործվել: Տեպե-Գիսիի կլոր տանը վերահիշյալ բնակարանաշինական ավանդույթի հետ մի կարևոր հատկանիշ ունի՝ նրան հպված էր քառանկյուն հատակաձևով փոքրիկ կցակառույցը: Խան-Իբրահիմ-Շահ բնակավայրում[16] կլոր կառույցներ բացվել են 6-րդ շինարարական հորիզոնում: Դրան նախորդող 7-րդ հորիզոնի ճարտարապետական մնացորդները ներկայացնում են մեկ սենյակից բաղկացած ազատ կանգնեցված քառանկյունի հատակագծով, քարե գետնախարիսխի վրա հում աղյուսով շարված պատերով տներ, իսկ հաջորդող՝ 5-րդ շինարարական հորիզոնում հայտնաբերվել են քառանկյունի երկարուկ երկու-երեք սենյակներից կազմված տների քարաշեն գետնախարիսխներ: Դրանց միջև ընկած 6-րդ շինարարական հորիզոնի հատակագծում որոշակիորեն առանձնանում է ուղղանկյուն կառույցներով շրջապատված կլոր շինությունը, որի ներքին տրամագիծը 4,3 մ է: Այդ հորիզոնի շինությունները նույնպես քարաշեն գետնախարիսխ են ունեցել:

Հատկապես ուշագրավ է Նորշուն-Թեփեի կլոր տան շերտագրական դիրքը[17]: Այն պեղվել է հնավայրի վաղբրոնզեդարյան առողին շերտերում՝ 24-րդ շերտով ներկայացված շինարարական հորիզոնում: Այդ շերտից ներքև ընկած վաղ բրոնզեդարին վերագրված 26-րդ շերտում պեղվել են քառանկյունի սենյակներից կազմված աղյուսաշեն բազմասենյակ տներ, իսկ վերևում՝ 14—23-րդ շերտերում իրար կողքի հանդես են եկել մեկ սենյականի քառանկյուն հատակաձևով առանձնացված դիրքով կանգնեցված աղյուսաշեն տներ, երկարավուն դասավորությամբ քառանկյուն սենյակներից բաղկացած աղյուսաշեն տներ և ձողանների վրա ճյուղերից հյուսված հիմնակմախքով կավածեփ բնակելի շինություններ: 24-րդ շերտի կլոր կառույցը շուրջ 6 մ տրամագիծ է ունեցել: Նրա պատի հաստությունը կազմված է հում աղյուսների մեկ շարքից: Այդ շինությունը կցված էր միջին մեծության քառանկյուն հատակաձևով աղյուսաշեն մի կառույց, որի փոքր մասն էր ընկած պեղավայրի տարածքում: Այն հանգամանքը, որ պեղավայրի մեծ մասը ազատ էր շինություններից, հուշում է Նորշուն-Թեփեի 24-րդ շերտով ներկայացված բնակավայրի ազատ կառուցապատումը: Չի բացառված նաև, որ պեղված հատվածում ի հայտ է եկել բնակավայրի եզրային մասը:

Խարբերդ—Մալաթիայի շրջանի վաղբրոնզեդարյան բնակավայրերի տարբեր շերտերում բացված բնակելի հարյուրավոր շինությունների շարքում կլոր կառույցները հազվադյուտ են հանդիպում, իսկ Նորշուն-Թեփեի և Խան-Իբրահիմ-Շահի կլոր կացարանների շերտագրական դիրքը հուշում է այդ տարածքի ճարտարապետության մեջ կլոր բնակարանաշինության հանկարծակի ներխուժման հնարավորությունը: Մինչ օրս կուտակված նյութը թույլ է տալիս մտածելու, որ Խարբերդ—Մալաթիայի տարածքում կլոր բնակարանաշինության ավանդույթը չի ունեցել այնպիսի խոր արմատներ, ինչպիսիք բացահայտված են Կուրի և Արաքսի միջագետքում և Ուրմիո լճի ավազանում: Կատարված վերլուծությունը ցույց է տալիս, որ Խարբերդ—Մալաթիայի վաղբրոնզեդարյան բնակարանաշինության մեջ կլոր հատակաձևը հանդես է եկել այնպիսի համադրությամբ, որը բնորոշում է կլոր հատակաձևերից քառանկյուն ձևերին անցման փուլը: Հատակագծային նման պատկերը պետք է հաջորդի Մոխրաբլուրի բնակարանաշինության 3-րդ փուլին, ինչպես և Ջրահովիտի շենգավիթյան հնագիտական մշակույթի 3-րդ շինարարական հորիզոնին: Ինչպես նշվեց, այն առավելապես բնորոշ է Շենգավիթին և Մոխրաբլուրի բնակարանաշինության զարգացման 4-րդ փուլին (3-րդ շինարարական հորիզոն):

Կլոր բնակարանաշինությունը Խարբերդ—Մալաթիայում թերևս նախորդել է կամ անմիջապես հաջորդել է տան այն տիպը, որը ներկայացված է Սաքյոլ-Փուլուրի[18] (Սաքյոլ-բլուր) 11-րդ—9-րդ շինարարական հորիզոններում (հորիզոնները համարակալվել են վերևից ներքև): Այդ տները նեղ ու երկար ուղղանկյունաձև կամ սեղանաձև հատակագծով էին և բաղկացած էին երեք մասից (գծագր. աղ. 7, ա): Վերջիններս առանձնացել են երկայնական պատերի միջև գտնվող

մակերեսը ընդլայնական երեք պատերով հատելու միջոցով։ Երկայնական պատերի վերջավորությունը միացնող պատը կազմում էր տան հետին կողմը։ Ընդլայնական միջին պատը բաժանում էր նեղ կողմերով իրար կցված երկու սենյակները, մինչդեռ տան ճակատային կողմի ընդլայնական պատը հավասարված չէր երկայնական պատերի ծայրերին, այլ դրված էր մի փոքր խորությամբ, այնպես որ երկայնական պատերի դեպի ճակատն ուղղված վերջավորությունը մույթերի (անտերի) տեսքով առաջ էր բերված։ Այդ երկու ելուստները և ճակատային ընդլայնական պատը կազմում էին երեք կողմից փակված և ճակատից բաց, վերևից ծածկված մի նախասենյակ։ Նախասենյակի և սենյակները բաժանող ընդլայնական պատերի մեջ մուտքեր էին բացված, որպեսզի կազմավորեն տան երեք մասերի շարանային դասավորությունը երկայնական առանցքով։ Բնակելի տան այս հատակաձևը հիշեցնում է հունական մեգարոնների հնագույն նախատիպերը, որոնց ձևավորման տարածքն է համարվում Արևմտյան Անատոլիան (Տրոյա 1-ին և 2-րդ, Բեյջեսուլթան և այլն) և Հյուսիսային Բալկանները։

Սարգյոլ-Փուլուրի վաղբրոնզեդարյան բոլոր շերտերի տներում բացվել են փոսեր, որոնք ծառայել են ծածկը կրող սյան տեղադրման համար։ Այսպիսով սյունը կառույցվածքի ազատ կանգնած կրող տարրն էր։ Հարթ տանիքները շինվել են գերաններից, ձողաններից, ճյուղերից և եղեգներից, իսկ վերևից սվաղվել են կավով։ 11-րդ—9-րդ հորիզոնների կառույցների 30—80 սմ հաստությամբ պատերը շարվել են հում աղյուսից։ Դրանց մեծ մասը դրված էր միջին և մանր չափի անմշակ քարերով կառուցված ցածր գետնախարիսխի վրա։ Աղյուսները երկու չափի են, մեծը՝ 48×34×8 սմ, իսկ փոքրերի չափը մեծերի կեսն է։

Հատուկ ուշադրության արժանի է Սարգյոլ-Փուլուրի 11-րդ—9-րդ հորիզոններով ներկայացված բնակավայրերի կառուցապատման սկզբունքը։ Տները կցված են իրար երկայնական պատերով և կազմում են մի հոծ շրջանագիծ, որի կենտրոնական մասում մնում էր մեծ բակի կամ փոքր հրապարակի ազատ տարածությունը։ Այսպիսով, տների հետին պատը հենվում էր բնակավայրն օղակող արտաքին զանգվածեղ պատին, որը պաշտպանական պարսպի կամ հենապատի դեր էր կատարում, իսկ ճակատային նեղ կողմը կամ նախասենյակը դուրս էր գալիս դեպի ներքին հրապարակը։ Այդ եղանակով ստացվում էր հոծ շրջանաձև կառուցապատում։ Սարգյոլ-Փուլուրի ուսումնասիրվող հորիզոնների կառուցապատման եղանակը անկասկած շարունակում է ճարտարապետական այն ավանդույթը, որը բացահայտվել է Կիլիկիայում Մերսինի բլուր-բնակավայրի խալկոլիթյան (էնեոլիթյան) շերտի պեղումների ընթացքում[19]։ Այստեղ, 16-րդ շինարարական հորիզոնում բացվել է բնակավայրի պարագիծը շրջանաձև օղակող անկյունավոր աշտարակներով պարիսպը, որը կազմում է նրան հենվող բնակելի տների հետին կողմը։ Տները բաղկացած էին սենյակների երկու շարքից։ Ըստ որում, ներքին շարքի ճակատները նայում էին դեպի կենտրոնական հրապարակը։ Մերսինի 16-րդ հորիզոնը վերաբերում է ուշ ուբեյդյան ժամանակաշրջանին։ Այսպիսով, Սարգյոլ-Փուլուրի 11-րդ—9-րդ հորիզոնների կառուցապատման եղանակը և տների հատակագծային ձևը տեղ են տալիս այն եզրակացության, որ նշված հորիզոնների բնակավայրերի ճարտարապետությունը ավելի մոտ էր կանգնած Կիլիկիայի և Անատոլիայի, քան թե Հայկական լեռնաշխարհի այդ ժամանակահատվածի ճարտարապետական ավանդույթներին։

Կառույցների հատակագծի էական փոփոխություն է դիտվում Սարգյոլ-Փուլուրի վերին, ավելի ուշ հորիզոններում[20]։ 7-րդ շինարարական հորիզոնը բնակելի կառույցների հատակագծային լուծման երկու տիպ է ներկայացնում։ Այստեղ հանդես են եկել առանձնացված դիրքով կանգնեցված ուղղանկյունաձև կամ զուգահեռակողմ հատակաձևով տներ, որոնք ներսից միջնորմի օգնությամբ բաժանվել են քառանկյուն երկու սենյակի։ Սենյակները իրար հետ չէին հաղորդակցվում։ Նրանց մուտքերը բացվել են տան երկայնական պատերից մեկի մեջ կամ մուտքերից մեկը դրվել է տան ընդլայնական, իսկ մյուսը՝ երկայնական ճակատի մեջ։ Այդ տների բնորոշ առանձնահատկություններից է դռան բացվածքի տեղադրությունը սենյակի անկյուններից մեկում։ Տան այս տիպի կողքին հանդես է եկել նաև բնակելի բազմասենյակ համալիրը, որը կազմված է իրար կցված երեք, երկու և մեկ սենյականոց բջիջներից։ Յուրաքանչյուր բջիջը դրսից առանձին մուտք է ունեցել և չի հաղորդակցվել հարևան բջիջի հետ։ Սարգյոլ-Փուլուրի հաջորդ՝ 6-րդ

շինարարական հորիզոնում բազմասենյակ համալիրների կողքին բացվել են նաև առանձին կանգնեցված մեկ սենյակից բաղկացած քառակուսի տներ (15 և 23)։ Տան այդ տիպը գերիշխող է դարձել Խարբերդ—Մալաթիայի տարածքի վաղբրոնզեդարյան բնակարանաշինության վերջին շրջանում։

Սաքյոլ-Փուլուրի 5-րդ շինարարական հորիզոնը արտացոլում է շինարարական տեխնիկայի հիմնական փոփոխություն։ Այդ հորիզոնի պատերը հում աղյուսից կամ անմշակ քարից շարված 50 սմ բարձրությամբ գետնախարիսխ են ունեցել։ Գետնախարիսխի արտաքին, ներքին և նույնիսկ վերին հարթությունը խնամքով պատվել են կավով։ Ենթադրվում է, որ գետնախարիսխի շարվածքը երկու կողմից ընդգրկվել է փայտե կաղապարով (опалубка), որի մեջ և լցվել է ջրիկ կավաշաղախը։ Գետնախարիսխի վերին հարթության վրա բարձրացվել է պատի փայտաշեն կառուցվածքը։ Պատը ունեցել է գերաններից ու ձողաններից կառուցված հիմնակմախք, որի վրա հյուսվել են բարակ ճյուղեր։ Սենյակի ներսի կողմից հյուսվածքը ծեփվել է կավով։ Այդ եղանակով կառուցվել է բազմասենյակ ընդարձակ մի համալիր, որը կազմված էր 11 սենյակից (գծագր. աղ. 7 Դ)։ Մի սենյակի բացառությամբ, սենյակները միավորված էին երկու բջիջներում։ Բջիջի ներսում սենյակները իրար հետ կապվել են մուտքերով, միջանցքով և նախասենյակով։ Մեկը մյուսից բջիջները անջատվել են խուլ պատով։ Բջիջներից մեկը միավորել է վեց սենյակ, մյուսը՝ չորս։

Փայտի կիրառումը Սաքյոլ-Փուլուրի 5-րդ շինարարական հորիզոնի պատերի կառուցվածքում պատահական չէր։ Խարբերդ-Մալաթիայի շրջանի վաղբրոնզեդարյան մշակույթի զարգացած փուլում տարածում է գտել բնակելի տան մի նոր տիպ, որը ձողանների վրա հյուսված հիմնակմախքով կավածեփ պատերի շինարարական տեխնիկան է ներկայացնում։ Այդ նոր տիպի հանդես գալու հանկարծակիությունը որոշակիորեն նկատվում է Նորշուն-Թեփեի և Դեյիրմեն-Թեփեի շերտագրության մեջ։ Դեյիրմեն-Թեփեում[21] պեղվել են վաղբրոնզեդարյան չորս շինարարական հորիզոններ (հորիզոնները համարակալվել են վերից-վար), որոնք իրենց հերթին կառուցողական առանձին շրջանների են բաժանվել (լուսանկ. աղ. 4)։ Պեղված տարին՝ 4-րդ շինարարական հորիզոնում բացվել են ուղղանկյուն մի քանի սենյակներից բաղկացած տների պատերի քարաշեն գետնախարիսխներ։ Պատերի հաստությունը հասնում է 75—80 սմ-ի։ 3-րդ շինարարական հորիզոնի մնացորդները միանգամայն տարբեր են։ Այդ հորիզոնի շինությունների համար քարը կամ հում աղյուսը չեն օգտագործվել։ Պատերի կառուցման ընթացքում փոսերի մեջ ուղղահայաց ամրացվել են ձողանների շարքեր, որոնց վրա բարակ ճյուղերից և ձողիկներից հյուսվել է պատի հիմնակմախքը։ Այնուհետև ծեփվել է կավով։ Ստեղծված պատերի հաստությունը 15—25 սմ էր։ Այդ շինությունների ծածկը պետք է որ թեթև լիներ։ 3-րդ հորիզոնի վերին (ա) կառուցողական և 1-ինի ստորին (բ) կառուցողական շրջանի պեղումները բացահայտել են հյուսված հիմնակմախքով կավածեփ պատեր ունեցող բնակելի կառույցների ամբողջական հատակագծեր (գծագր. աղ. 6 բ, գ), որոնք առանձնացված դիրքով կանգնեցված կլորացված անկյուններով ուղղանկյուն կամ սեղանաձև հատակագծով տներ են, որոնցից մեկը մի սենյականի կառույց էր, իսկ մյուսը կավածեփ բարակ միջնորմով երկու մասի էր բաժանված։

Ուսումնասիրվող աշխարհագրական շրջանում շինարարական նման տեխնիկայի միջոցով կառուցված շինություններ պեղվել են Նորշուն-Թեփեի վաղբրոնզեդարյան շերտի ամենաստորին հորիզոններում (22-ից մինչև 14-րդը) և Թաշկուն Մեկիի բնակավայրում[22]։ Նորշուն-Թեփեի կառույցները մի փոքր տարբերվում են Դեյիրմեն-Թեփեում պեղվածներից։ Նորշուն-Թեփեի մի քանի կառույցներում ձողանների վրա հյուսված հիմնակմախքը ծեփվել է միայն սենյակի ներսի կողմից։ Այս բնակավայրի հյուսված հիմնակմախքով կավածեփ կացարանները ունեցել են կլորացված անկյուններով ուղղանկյուն հատակաձև։ Նմանօրինակ երկու կառույցների հարակցման միջոցով ընդարձակվել է բնակարանի մակերեսը, տունը երկմասանի էր դարձել։ Հյուսված կավածեփ պատերի տակ սենյակի ներսում հում աղյուսից շարվել են «նստարաններ», որոնց վրա դրվել են զանազան իրեր։ Նույն տներում գտնվել են նաև պաշտամունքային նշանակության եռամաս օջախներ և պայտաձև զոհարաններ։ Նորշուն-Թեփեի նույն շերտերում, հյուսված հիմնակմախքով կավածեփ բնակարանների կողքին, բացվել են քառանկյուն հատակաձևով

հում աղյուսից կառուցված տներ։ Հրապարակումների նախնական բնույթը թույլ չի տալիս վերջնական եզրակացության հանգել, սակայն հավանական է, որ տների երկու ձևերի միջև գործառության տարբերություններ չեն եղել։ Ինչպես հյուսածո հիմնակմախքով կավածեփ տներ, այդպես էլ՝ աղյուսաշեն կառույցներ միաժամանակ ծառայել են տարբեր նպատակների՝ որպես բնակարան, ընտանեկան պաշտամունքի վայր և արտադրության տեղ։ Այսպիսով, ճարտարապետական ձևերի տարբերությունները չէին կարող բխել գործառական տարբերությունից։ Պետք է ենթադրել, որ էթնիկական խմբերի տեղաշարժերի հետ Խարբերդի դաշտի աղյուսաշեն ավանդական ճարտարապետության ոլորտում տարածվել է կավածեփ հյուսածո հիմնակմախքի շինարարական տեխնիկայի ավանդույթը։ Վերջինս կարող էր մուծվել Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիսարևմտյան մասերից, ինչպես նաև Արևելյան Վրաստանի տարածքից, որտեղ ներկայացված են այդ տեխնիկայի զարգացման մի քանի փուլեր։ Եկվորները օգտագործել են Խարբերդի դաշտի պայմաններում առավել հարմարավետ աղյուսաշեն ճարտարապետության ժառանգությունը, սակայն իրենց համար կառուցած նոր՝ հում աղյուսե բնակարանների կողքին պահպանել են նախահայրենիքից բերված հյուսված հիմնակմախքով կավածեփ տան տիպերը։

Հայկական լեռնաշխարհի ճարտարապետության պատմության համար առաջնակարգ հետաքրքրություն է ներկայացնում հյուսված հիմնակմախքով կավածեփ կառույցների տարածման փաստը դաղստանա-պաղեստինյան հնամշակութային ընդհանրության գոյության զարգացած և ուշ փուլերում։ Շինարարական այս տեխնիկան մասնավորապես լավ է ներկայացված Ներքին Քարթլիի (Շիդա-Քարթլի) բնակավայրերում (Խիզանաանթ-գորա, Կվացխելեբի, Գուդաբերտկա)։ Այն տարածված էր նաև Աղստևի ստորին հոսանքի շրջանում (Բաբա-Դերվիշ՝ Ղազախի մոտ), ինչպես և Կուրի միջին հոսանքի հովտի ավելի ստորին շրջաններում (Մինգեչաուր)։ Ուշագրավ է Դաղստանի և Չեչենո-Ինգուշեթիայի վաղբրոնզեդարյան մշակույթում նույն եղանակով կառուցված շինությունների հանդես գալու փաստը[23]։ Հյուսածո հիմնակմախքի կավածեփման շինարարական տեխնիկան միանգամայն խորթ էր Հայկական լեռնաշխարհի վերը ներկայացված վաղ երկրագործական բոլոր մշակույթների ճարտարապետական ավանդույթներին։ Այն կապում է Հայաստանի վաղ բրոնզեդարի ուշ փուլերի ճարտարապետությունը Փոքր Ասիայի հյուսիսային շրջանների և Բալկանյան թերակղզու ճարտարապետական հնագույն ավանդույթների հետ։

Խարբերդ—Մալաթիայի վաղբրոնզեդարյան մշակույթի զարգացման վերջին փուլի սկզբից լայնորեն տարածվում է բնակելի տան մի նոր ձև, որը տարբեր բնակավայրերում աչքի է ընկնում միօրինակությամբ (տիպօրինակությամբ)։ Նրա հատակաձևը քառակուսու մոտեցող ուղղանկյունն է, որն իր մեջ ամփոփում է մեկ սենյակ։ Սենյակի մակերեսը տարբերակվում է 10-ից մինչև 22—24 քառ.մ։ Այդ տների կարևոր հատկանիշներից սինիաձև կլոր կավե օջախն է, որը սովորաբար տեղադրված էր մուտքի հանդիպակաց պատի տակ, սենյակի երկայնական առանցքի վրա։ Ներկայացվող տիպի մյուս հատկանիշներից պետք է ընդգծել նրա տեղադրման եղանակը բնակավայրի կառուցապատման ընդհանրության մեջ։ Այդ տները մշտապես դիտվել են իբրև ազատ կանգնեցված առանձնացված ծավալ, որը օրգանապես չէր մտնում ավելի ընդարձակ համալիրների մեջ։ Նման եզրակացության կարելի է հանգել վերլուծելով կառուցապատման այն երկու եղանակները, որոնք բնորոշվել են այդ տների առկայությամբ։ Խիտ, բայց ոչ հոծ կառուցապատման պայմաններում դրանք հանդես են եկել իբրև քառանիստ առանձին ծավալներ, որոշ դեպքում ունենալով քառանկյուն հատակաձևով փոքրիկ կցակառույցներ։ Հոծ կառուցապատման մեջ այդ տները մեխանիկորեն կցվել են մեկը մյուսին, այնպես, որ պատերի արտաքին մակերեսները հաճախ իրար չեն հպվել. տան պատի հարթությունը կպչում էր հարևան տան անկյանը։ Ներկայացվող տիպը առանձնանում է նաև պատերի զանգվածեղությամբ։ Դրանց հաստությունը որոշ կառույցներում հավասարվում է 1,05—1,10 մ-ի, իսկ նվազագույն դեպքում 0,5—0,7 մ-ից պակաս չէ։ Թեփեջիկի պեղումների ընթացքում այս տիպի կառույցներում բացվել են միջհարկային ծածկի մնացորդներ[24]։ Այսպիսով, կարելի է ենթադրել, որ ներկայացված այդ յուրահատուկ տիպի տների մի մասը, թերևս, երկհարկանի էր։ Դրանք հավասարապես հանդես են եկել Խարբերդ—Մալաթիայի դաշտավայրերի մեծ ու փոքր բնակավայրերում՝ Նորշուն-թեփեում,

Թեփեչիկում, Խան-Իբրահիմ-Շահում, Գեյիրմեն-Թեփեում[25] և այլ հուշարձանների այն շերտերում, որոնք թվագրվում են մ.թ.ա. III հազարամյակի կեսերով և երկրորդ կեսով։

Ուսումնասիրվող տարածքի վաղ բրոնզեդարի միջին և ուշ փուլերի բնակավայրերը, ինչպես նշվեց, կառուցապատման երկու եղանակ են ներկայացնում։ Փոքր բնակավայրերում գոյատևել է նեոլիթի և էնեոլիթի դարաշրջանի վաղ երկրագործական բնակավայրերի կառուցապատման ավանդույթը։ Դրանց կառուցապատումը խիտ էր (բայց ոչ հոծ) ու ագլոմերատիվ։ Շարժումը բնակավայրի տարածքում իրագործվել է կառույցների միջև մնացած ազատ տարածությունների միջոցով (Գեյիրմեն-Թեփե, Թաշկուն-Մեկիի, Խան-Իբրահիմ-Շահ)։ Խոշոր բնակավայրերի տարածքում հոծ կառուցապատումը կատարվել է փողոցների երկայնքով (Նորշուն-Թեփե, Թեփեչիկ)։ Հատուկ ուշադրության արժանի է փողոցների ուղղաձիգ լինելը։ Նորշուն-Թեփեում բացված փողոցի լայնությունը 2—3,5 մ էր, իսկ Թեփեչիկում պեղվել է ուղիղ անկյունով հատվող փողոցներով առաջացած խաչմերուկը։

Կառուցապատման այս երկու ձևերը արտացոլում են երկրագործական գյուղական համայնքների բնակավայրերի և ձևավորվող վաղ քաղաքային կենտրոնների միջև առաջացող տարբերությունը։ Քաղաքային մշակույթը հատկանշող ճարտարապետական ձևերից էր երկհարկանի բնակելի տունը։ Երկհարկանի բնակարանի առաջացումը միշտ չէ, որ կապված էր քաղաքային մշակույթի ճարտարապետության ձևավորման հետ։ Սակայն Հայկական լեռնաշխարհի տարածքում այդ երկու երևույթները թերևս հանդես են եկել միևնույն ժամանակաշրջանում։

Հայկական լեռնաշխարհի վաղբրոնզեդարյան մշակույթի տարածման հետևանքով Սիրիայում և Պաղեստինում առաջացած քիրբեթ-կերակյան հնագիտական մշակույթի ճարտարապետությունը հայտնի է պակաս չափով։ Նրա բնակելի շինությունները պեղվել են Թել-Ջուդեյդեհում, Թայինատում, Դհահարում, Ջաբալ-Հույուքում (Անտիոքի դաշտ), Թաբարա-էլ-Աքրադում (Հալեպից հյուսիս-արևմուտք), Համայում (Օրոնտեսի ափին), իսկ պաշտամունքային ճարտարապետության մի հուշարձան բնակելի ճարտարապետության հետ մեկտեղ հայտնաբերվել է Քիրբեթ-էլ-Կերակում (Պաղեստին)։ Ուշագրավ է Թել-Ջուդեյդեհի բնակելի ճարտարապետության շերտագրությունը[26]։ Այդ բլուր-բնակավայրի մի քանի շինարարական հորիզոններով ներկայացված Ամուկի մշակութային G փուլում (մ.թ.ա. III հազարամյակի առաջին քառորդ) դեռևս հայտնի չէր հաջորդ՝ H փուլում տարածված շենգավիթյան մշակույթին ազգակից կարմրաև փայլեցված խեցեղենը, որը քիրբեթ-կերակյան մշակույթը բնութագրող կարևորագույն տարրերից է։ Սակայն G փուլի հորիզոններում բացվել է ճարտարապետական ուշագրավ պատկեր՝ կլորավուն հատակաձևով հում աղյուսից շարված կանգվածեղ պատերով կառույցը, որը ամփոփված էր քարաշեն գետնախարիսխի վրա դրված աղյուսե պատերով քառանկյուն հատակագծով շինությունների միջավայրում։ Կլոր կառույցը գոյատևել է երկու շրջանների ընթացքում, մինչդեռ նրա շրջապատում եղած քառանկյուն տները նույն ժամանակամիջոցին վերակառուցման են ենթարկվել։ Ճարտարապետական այս պատկերը, ինչպես նշվեց, նմանվում է շենգավիթյան մշակույթի բնակարանաշինության զարգացած փուլին։ Ուշագրավ է, որ Ամուկի G և H փուլերի միջև նկատվում է անընդմեջ զարգացում։ H փուլը, որտեղ ձևավորված տեսքով ներկայանում է քիրբեթ-կերակյան մշակույթը, նախորդ փուլից սահմանազատվել է կարմրաև խեցեղենի տարածմամբ։ Այսպիսով, Թել-Ջուդեյդեհի շերտագրությունը հուշում է, որ Հայկական լեռնաշխարհի վաղ բրոնզեդարյան մշակույթի ազդեցությունը Սիրիայի տարածքում սկսվել է քիրբեթ-կերակյան մշակույթի տարածմանը անմիջականորեն նախորդող շրջանում և առաջին հերթին արտացոլվել է ճարտարապետական ավանդույթներում։

Ամուկի H փուլում (քիրբեթ-կերակյան մշակույթ՝ մ.թ.ա. III հազարամյակի կեսը) Անտիոքի դաշտում տարածվում է ոչ միայն կարմրաև փայլեցված խեցեղենը, այլև պաշտամունքային օջախի այն տիպը, որը բացահայտվել է Հայկական լեռնաշխարհի հյուսիսային մասի շենգավիթյան մշակույթի ուշ փուլի բնակավայրերում (Շիրակավան, Սխալթխալի Ամիրանիս-գորա)։ Այս փուլի բնակելի ճարտարապետությունը Թել-Ջուդեյդեհում ներկայացնում է ուղղանկյուն հատակաձևով երկարավուն տունը, որի երկու հիմնական, քառակուսի հատակաձևին հարող սենյակները տեղադրված էին հյուսիս—հարավ առանցքով (գծագր. աղ. 7 Գ)։ Տան մուտքը գտնվում էր










*Աղ. 8 ա) Յանիկ-Թեփե. բնակատեղիի հատակագիծ, բ) Թեփեջիկ. միջին բրոնզդարյան շերտի ընդհանուր հատակագիծ, գ) Նորշուն-Թեփե. պալատական կառույցի ընդհանուր հատակագիծ*

երկայնական պատի մեջ։ Այն բացվում էր հարավային սենյակից։ Հյուսիսային սենյակը դեպի դուրս բացվող դուռ չի ունեցել, նրա մուտքը հարավային սենյակից էր։ Այդ տան աղյուսաշեն պատերը դրվել են քարե գետնախարիսխի վրա և կառուցվել են մեծ խնամքով։ Արտաքին կողմից տունն ունեցել է շինարարական նույն տեխնիկայով կառուցված քառանկյուն հատակաձևով փոքրիկ կցակառույցներ։

Քիրբեթ-կերակյան մշակույթի նմանօրինակ մեկ ուրիշ տուն բացվել է Թաբարա-էլ-Աքրադի պեղումների ընթացքում[27]։ Այստեղ 7-րդ շինարարական հորիզոնում պեղվել է ուղղանկյունաձև ձգված մի կառույց, որը միջնորմների միջոցով ուղղանկյուն մի քանի սենյակների էր բաժանվում (գծագր. աղ. 7 բ)։ Սենյակներից մեկի մուտքը գտնվում էր տան երկայնական պատի մեջ, իսկ հարևան սենյակի հետ այն հաղորդակցվել է միջնորմի մեջ գտնվող դռան միջոցով։ Տան աղյուսաշեն պատերը զանգվածեղ էին, երկայնական պատերից մեկի հաստությունը կազմել են երեք շարք, իսկ մյուսինը՝ բարդ շարվածքի երկու շարք աղյուսներ։

Համայում քիրբեթ-կերակյան մշակույթը ներկայացված է K5—K1 հորիզոններով[28]։ Այդ հորիզոններում պեղված բնակարանների գերիշխող տիպը մեկ հիմնական քառանկյուն սենյակից և նրա կողքերին կցված մեկ կամ երկու փոքր սենյակներից կազմված տունն է։ Հում աղյուսից կառուցված պատերը կանգնեցվել են անմշակ քարից շարված գետնախարիսխի վրա, հատակները ծեփվել են կավով կամ պատվել են կոպիճով։ Տներից մեկը սալահատակ է ունեցել։ Միօրինակ այդ տներից տարբերվում են երկուսը։ Մեկը սեղանաձև հատակագծով կլորացված անկյուններով տուն էր, որը միջնորմի միջոցով երկու մասի էր բաժանվում։ Մյուս կառույցի հատակագիծը առանձնանում է մի կողմից կիսաշրջանաձև տեսքով։ Ապսիդային հատակաձևի այդ սենյակը միանում էր մեկ ուրիշ՝ քառանկյուն հատակագծով սենյակի։ Համայի K4 հորիզոնում բացվել է մի փողոց, որի երկու կողմը կառուցապատված էր բնակելի տներով։

Քիրբեթ-էլ-Կերակում (Բեթ-Յերահ), որը գտնվում է Գալիլեյան լճի ափին՝ Պաղեստինում, ուսումնասիրվել է այդ հնավայրի անունը կրող հնագիտական մշակույթի 2 մ հաստությամբ շերտը։ Այդ շերտը, ինչպես և ամբողջությամբ դիտված քիրբեթ-կերակյան մշակույթը համապատասխանում է Պաղեստինի վաղ բրոնզեդարի 3-րդ փուլին (մ.թ.ա. XXVI—XXIV դդ.)[29]։ Քիրբեթ-էլ-Կերակում բացված կառույցների մնացորդները ներկայացնում են Հայկական լեռնաշխարհում առաջացած դաղստանա-պաղեստինյան հնամշակութային մարզի ճարտարապետության զարգացման այն աստիճանը, որը բնորոշում է ուսումնասիրվող մշակութային ընդհանրության աշխարհագրական ամենալայն տարածման ժամանակահատվածը։

Քիրբեթ-էլ-Կերակում պեղված բնակելի կառույցների մեծ մասը կառուցվել է կավաշաղախով շարված անմշակ որձաքարերից, առանց հում աղյուսի օգտագործման։ Հում աղյուսե կառուցվածքները թեև հայտնի էին, սակայն երկրորդական նշանակություն են ունեցել։ Ուղղանկյուն և քառակուսի հատակաձևով սենյակներից կազմվել են բնակելի բազմասենյակ համալիրներ։ Սենյակների չափերը տարբեր են՝ 2×2 մ-ից մինչև 7×8 մ։ Քառանկյուն սենյակներից բաղկացած բազմասենյակ համալիրների կողքին բացվել է կլոր հատակագծով բնակելի շինության պատի մի հատված՝ ներսի կողմից պահպանված աղյուսաշեն նստարանով։ Սենյակներից մեկը որձաքարերից շարված սալահատակ է ունեցել։ Այսպիսով, Քիրբեթ-էլ-Կերակի բնակելի ճարտարապետության համար բնորոշ է քառանկյուն հատակագծման բացարձակ գերակշռությունը, որի կողքին հատուկենտ հանդես են եկել կլոր հատակաձևով շինությունները։ Նման պատկերը, ինչպես նշվեց, բնորոշում է Էջմիածնի Մոխրաբլուրի բնակարանաշինության զարգացման վերջին փուլը, ինչպես նաև Շենգավիթի վերին շինարարական հորիզոնը։ Այս համադրությունը ցույց է տալիս տվյալ շերտերի ճարտարապետության ընդհանրությունը և հնարավորություն է ընձեռում ենթադրելու նրանց ժամանակակից լինելը։

Այժմ հնարավոր է նաև բացահայտել շենգավիթյան մշակույթի բնակարանաշինության զարգացման ընդհանուր օրինաչափությունը Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիսարևմտյան մասում։ Այդ տարածքի վաղբրոնզեդարյան հնավայրերը անհամաչափ են պեղված։ Դրանք կազմում են տարածական երկու խումբ։ Մեկին ընդգրկում է Ջավախքը, Թռեղքը, Շիրակն ու Գուգարքը, մյուսը՝ Կարնո դաշտում Էրզրումի

շրջակայքը։ Այդ շրջանների հուշարձաններում դեռևս չի բացահայտվել շենգավիթյան մշակույթի վաղագույն փուլերի ճարտարապետությունը. պեղված կառույցները պատկանում են այդ մշակույթի զարգացման միջին և ուշ շրջանին։

Փամբակ գետի ձախ ափին, Կիրովական քաղաքում պեղված Քոսի-Ճոթեր բնակավայրում բացվել է Շենգավիթի բնակավայրին ժամանակակից մի կառույց (որը թերևս պետք է վերագրել մ.թ.ա. III հազարամյակի երկրորդ քառորդին)։ Սա կլոր հատակաձևով բնակելի շինություն էր, որի քարաշեն պատը պահպանվել է մոտ 1 մ բարձրությամբ։ Պատի հաստությունը 0,45 մ էր։ Հատուկ ուշադրության արժանի է այն փաստը, որ պատը շարվել է չոր շարվածքով՝ միջին մեծության անմշակ քարերից։ Ներսից այն սվաղված էր կավով։ Կացարանը հավանաբար ունեցել է փայտից և եղեգնից շինված հողածածկ կտուր, կավածեփ հատակ[30]։ Ծաղկաձորի շրջանում գտնվող Օղնի հնավայրում պեղվել է կլոր հատակաձևի մեծ տրամագծի շինության պատի ստորին քարե շարքը[31]։ Շինարարական մի ուշագրավ համալիր պեղվել է Սամշվիլդեի բնակավայրում[32]։ Նրա կենտրոնական մասը զբաղեցնում են կիսաշրջանաձև համակենտրոն քարաշեն երեք գետնախարիսխներ, որոնց հատակաձևը հիշեցնում է Նորաբացի, Յանիք-Թեփեի և Խիզանանտ-գորայի համակենտրոն շրջանաձև կամ կոր պատերը։ Կիսաշրջանների երկու կողմերին կցված էին քառանկյուն հատակաձևով սենյակներ, որոնք բնակելի և տնտեսական նշանակություն են ունեցել։ Դժվար է վերականգնել Սամշվիլդեի կիսաշրջանաձև պատերով կառուցվածքի ճարտարապետական նախնական ձևը, ինչպես և որոշել նրա օգտագործման եղանակը։ Կարևոր է, սակայն, այդ բնակավայրում կլորավուն և քառանկյուն հատակաձևերի ներդաշնակ համադրման փաստը։ Հետաքրքրություն է ներկայացնում Սամշվիլդեի բնակավայրում պեղված կառույցների շինարարական տեխնիկան։ Կավաշաղախով շարված քարաշեն գետնախարիսխի վրա դրվել է գերանային հիմնակմախքը, որի վրա ամրացվել է ճյուղերից հյուսված կառուցվածքով կավածեփ պատի զանգվածը։ Նմանվող շինարարական տեխնիկան, ինչպես նշվեց, հատկանշական է Սաքչոլ-Փուլուրի 5-րդ շինարարական հորիզոնի համար։ Թեթրի-Ծղարոյում[33] պեղված շենգավիթյան մշակույթի բնակավայրում իրարից ու հեռու բացվել են կլոր և քառանկյուն հատակաձևով բնակելի կառույցներ։ Շինությունների պատերի պահպանված մասը շարված է անմշակ քարերի չոր շարվածքով։ Կլոր կացարանի տրամագիծը 6 մ էր, իսկ ուղղանկյուն շինություններից մեկը՝ 4×9 մ։ Ուղղագիծ պատերի պահպանված հատվածների երկարությունից ելնելով ենթադրվում է, որ քառանկյուն տների լայնությունը 5 մ-ից չէր անցնում, մինչդեռ երկարությունը հասնում էր 9—10 մ։ Այսպիսով, Թեթրի-Ծղարոյի բնակավայրի բնակարանաշինական պատկերը մի շարք հատկանիշներով նմանվում է Շենգավիթի 1-ին (վերին) շինարարական հորիզոնին։

Ներկայացված նյութը ցույց է տալիս, որ Ճորոխ-Ջավախք-Շիրակ-Լոռվա տարածքի վաղբրոնզեդարյան մինչ օրս հայտնի հնագույն բնակավայրերը, որպիսիք պատկանում են շենգավիթյան մշակույթի զարգացած փուլին, ներկայացնում են կլոր և քառանկյուն շինությունների համադրությունը։ Շենգավիթյան մշակույթի ուշ փուլերում (մ.թ.ա. III հազարամյակի կեսը և երրորդ քառորդը) կլոր կառույցներն իսպառ վերանում են նաև այս տարածքից։ Այդ ժամանակաշրջանի բնակարաններ պեղվել են Շիրակավանում, Կառնուտում, Հառիճում (Շիրակ), Ախալցխայի Ամիրանիս-գորայում (Ջավախք)։

Շիրակավանի շենգավիթյան մշակույթի բնակավայրի մնացորդները[34] բացվել են բլրի թեք լանջին։ Շինությունների տեղադրման համար լանջի վրա ստեղծվել են արհեստական դարավանդներ։ Դարավանդներից մեկի վրա բացվել է ուղղանկյուն հատակաձևով խոշոր մի կառույց, որին կցված էին նույնպես քառանկյունի ավելի փոքր կցակառույցներ։ Այդ տան պատերը ամբողջությամբ շարվել են հողաշաղախով ամրակցված միջին ու փոքր մեծության անմշակ քարերով։

Հառիճում գտնվող շենգավիթյան մշակույթի ընդարձակ բնակավայրը զբաղեցրել է երկու ձորերով եզերված լեզվակաձև հրվանդանի մակերեսը[35]։ Հրվանդանը երեք աստիճաններով իջնում է հարավ-արևելքից դեպի հյուսիս-արևմուտք։ Զգալի թեքություն ունի միայն առաջին (ստորին) աստիճանի մակերեսը, մինչդեռ միջին (երկրորդ) և վերին (երրորդ) աստիճանների թեքությունը փոքր է։ Նկատի ունենալով աստիճանների մեծ տարածքը (առաջին աստիճանի մակերեսը 2,5 հա է, երկրորդինը՝ 2,8 հա, երրորդինը՝ 0,5 հա,

իսկ բնակավայրի ամբողջ տարածքը շուրջ 6 հա էր), պետք է ենթադրել, որ այստեղ վաղբրոնզեդարյան շինարարության համար արհեստական դարավանդներ չեն ստեղծվել, ուստի բնակավայրի կառուցապատումը դարավանդային չէր և պետք է արտացոլեր հարթավայրային բնակավայրերի կառուցապատման սկզբունքները: Հարինճի պեղումների ընթացքում բացվել են ուղղանկյուն հատակածով կառույցների պատերի հիմքերի քարաշեն շարքերը: Ավելի մանրամասն են հրապարակված Ախալցխայի Ամիրանիս-գորայի պեղումների արդյունքները[35]: Ախալցխայից 2,5 կմ դեպի հյուսիս-արևելք գտնվող այդ բնակավայրը զբաղեցնում է փոքրիկ սարի գագաթը և նրա հարավային ու հարավարևելյան լանջը: Ենթադրվում է, որ բնակավայրի կառուցապատված տարածքը մոտ 3 հեկտար էր: Հաջողվել է բացել միայն մեկ շինարարական հորիզոն (գծագր. աղ. 6 ա): Պեղումները հիմնականում կատարվել են սարալանջին, որի թեքությունը 10 աստիճան է: Լանջի թեքությամբ և հարավային ու հարավարևելյան կողմնորոշմամբ էր պայմանավորված բնակավայրի կառուցապատման ընդհանուր պատկերը: Շինարարության նպատակով լանջը փորելու միջոցով ստեղծվել են իրար հաջորդող արհեստական դարավանդներ: Յուրաքանչյուր դարավանդի լայնությունը 7—10 մ էր, իսկ բարձրությունը՝ 1—1,35 մ: Կառույցները տեղաբաշխվել են ըստ դարավանդների, որի միջոցով կատարվել է առանձին շինությունների խմբավորում: Մի դարավանդի կառույցները սովորաբար չեն հպվել մյուս դարավանդի շինություններին: Բացառություն են կազմում VI և VII կառույցները: Ստորին դարավանդում կառուցված VI շինության սարալանջին հպված պատը հիմք է ծառայել նրանից վերև ընկած դարավանդում տեղադրված VII կառույցի երկայնական պատի համար:

Ամիրանիս-գորայում պեղվել են միայն բազմանկյուն հատակագծով շինություններ, որոնք ներկայանում են հատակագծային լուծման և տեղադրման եղանակի երկու տիպերով: Առաջին տիպը միավորում է բավականաչափ լայն (3—4 մ լայնությամբ) ուղղանկյունաձև՝ 20-ից 54 քմ մակերեսի սենյակով, բնակելի կառույցներ (տես. աղ. 3 ա), որոնք տեղադրվել են դարավանդի երկարությանը ուղղահայաց: Այսպիսով, այդ տների երկայնական պատերը հատել են դարավանդը, ընդլայնական հետին պատը հպվում էր սարալանջի կտրվածքին, իսկ մուտքը պետք է գտնվեր ճակատային ընդլայնական պատի մեջ, որոնց մեծ մասը չի պահպանվել: Դատելով ամբողջությամբ պահպանված XXIII տան հատակածից, կարելի է ենթադրել, որ տների այս տիպը ներսում ընդլայնական միջնորմի միջոցով երկու մասի էր բաժանվում: Տան ճակատային մասում գտնվում էր լայն, ոչ խոր նախասենյակը, որի միջոցով հնարավոր էր մտնել հիմնական սենյակը: Նախասենյակի և հիմնական սենյակի դռները գտնվել են տան երկայնական առանցքում: Կառույցների նման հատակագիծը, ինչպես տեսանք, բնորոշում է Սաքյոլ-Փուլուրի XI—IX հորիզոնների բնակելի ճարտարապետությանը: Այն խիստ հատկանշական է նաև Կվացխելեբիի մեգարոնաձև տների համար:

Երկրորդ տիպը ներկայացված է նեղ, երկար, ուղղանկյունաձև շինություններով (XXV, XXIV, XXVII և այլն), որոնց երկայնական առանցքը համապատասխանում է դարավանդի երկարությանը, հետևաբար այն ուղղահայաց է առաջին տիպի տների առանցքին: Այդ կառույցները թերևս ծառայել են իբրև պահեստներ կամ էլ՝ գոմեր: Առաջին և երկրորդ տիպի կառույցները, հպվելով մեկը մյուսին կամ առանձնացված դիրքում գտնվելով, հավանաբար, կազմել են գործառական միասնական համալիրներ: Այսպիսով բնակավայրի կառուցապատումը կազմվել է այդ երկու տիպերի շինություններից, որոնց տեղադրման վրա ազդել են արհեստական դարավանդավորման և լանջի բնաաշխարհագրական կողմնորոշման գործոնները:

Առաջին տիպի շինությունների նախասենյակների մուտքերն ուղղվել են դեպի դարավանդի եզրը, որը համապատասխանել է հարավարևելյան կողմին: Մուտքերի հարավարևելյան ուղղվածությունը ցույց է տալիս, որ Ամիրանիս-գորայի բնակելի տները կանխամտածված կերպով ուղղվել են դեպի տաք, լուսավոր կողմը: Այս տեսանկյունից օրինաչափ է նաև ամբողջ բնակավայրի տեղադրումը Ամիրանիս-գորայի հարավային լանջին:

Կառույցների այն պատը, որն ուղղված էր դեպի սարալանջը, համընկնում էր դարավանդների սահմանի հետ: Այստեղ պատը հենվում էր լանջի կտրվածքին, խորացված լինելով 1,3—1,5 մ-ով, սարալանջի բնական մակերեսից ներքև:

Շինությունների բարձրությունը առնվազն 2,5 մ էր, ուստի լանջակողմյան պատը ստորգետնյա հատվածից բացի, անկասկած, ունեցել է նաև վերգետնյա մաս։ Լանջի թեքության ուղղությամբ դրված պատերի լանջակողմյան մասը նույնպես պետք է որոշ չափով հողով ծածկված լիներ։ Այսպիսով, Ամիրանիս-գորայի կառույցների մի կողմը խարսխված էր հողի մեջ։ Դարավանդների փոքր բարձրության հետևանքով, առաջին շարքում գտնվող տների ծածկերի մակարդակը չէր կարող համընկնել նրան վերևից հաջորդ շարքի կառույցների հատակների մակարդակին։ Քանի որ առաջին շարքը կազմող տների տանիքները բարձր էին վերին դարավանդից, պետք է ենթադրել, որ տների շարքերի միջև, դարավանդների եզրին պահպանվում էին փոքրիկ նրբանցքներ՝ անցուղարձի համար։

Այսպիսով, բնակավայրի կառուցապատումը խիտ էր, բայց հոծ չէր։ Նույն շարքում գտնվող գործառական միևնույն նշանակության կառույցները հազվադեպ էին կցվում մեկը մյուսին։ Դրանց միջև մնում էին նեղ անցուղիներ։ EG և EE քառակուսիներում պեղված բազմասենյակ երկու համալիրները կազմվել են առաջին և երկրորդ տիպի կառույցների մեխանիկական հարակցման եղանակով։ Դարավանդների վրա տեղ-տեղ մնում էին տներից ազատ տարածություններ, որոնք օգտագործվել են տարբեր նպատակների համար։ Նրանցից երկրորդ դարավանդում բացվել է տների միջև գտնվող 120 քառ. մ մակերեսով բակը, որը եզերվում էր քարե ցանկապատով։ Պեղումների ընթացքում չի հաջողվել պարզել՝ ո՞րն էր բնակավայրի կառուցապատման միջուկը, դարավանդներից բացի նրա կառուցապատումը արդյոք նաև ուրի՞շ կառուցվածք է ունեցել։

Ամիրանիս-գորայի տների պատերն ամբողջությամբ կառուցվել են կավաշաղախով ոչ մեծ չափի անմշակ քարերից։ Պատի շարվածքը երկու մասի է բաժանվել։ Ստորգետնյա հատվածում պատը լանջի կտրվածքն ամրացնող հենապատի նշանակություն է ունեցել։ Այդ մասի հաստությունը մոտ 30 սմ է, որը կազմված է քարերի մեկական շարքից։ Պատերի վերգետնյա շուրջ 70 սմ հաստությամբ մասը շարված է կրկնակի շարվածքով։ Ներսից պատերը սվաղվել են կավով։ Տների մեծ մասը ծածկված էր հողային հարթ տանիքով, որի հիմքն էր կազմում երկայնական պատերի միջև ձգված գերանների շարքը։ Կառույցների տանիքը կրող կենտրոնական սյան հետքեր չեն հայտնաբերվել (XIII տան կենտրոնում դրված սանդի օգտագործումը իբրև սյան խարիսխ շատ կասկածելի է), ուստի ենթադրվում է, որ տների մեծ մասը միաթեք ծածկեր ուներ։ Յուրահատուկ կառուցվածք է ունեցել է III կառույցի ծածկը։ Քառակուսի հատակաձևով 3×3 մ չափի այդ շինության պատերի հաստությունը կազմված էր քարերի մեկ շարքից։ Սենյակի ներսում, պատերի առջև, անկյուններում և պատի կենտրոնական մասին կից բացվել են տափակ սալեր, որոնք պեղողի կարծիքով, ծառայել են իբրև սյան խարիսխներ։ Եթե այդ ենթադրությունը համապատասխանում է իրականությանը, ապա պետք է եզրակացնել, որ ծածկի հիմնական ծանրությունը կրել են պատերի կողքին դրված սյուները։ Սյուների նմանօրինակ տեղադրությունը բնորոշ է հայկական գլխատուն կառուցվածքին։

Շենգավիթյան մշակույթի մյուս բնակավայրերի նմանությամբ Ամիրանիս-գորայի տներում մուտքի հանդիպակաց պատի տակ գտնվում էր սպասքի տեղադրման համար օգտագործված հարթակը կամ «նստարանը», իսկ կենտրոնական մասում՝ օջախը, որի գլխավերևում պետք է եղած լիներ լուսածխնելույզային անցք՝ երդիկը։ Հորդառատ անձրևների ժամանակ երդիկից կամ այլ անցքերից սենյակը լցվող ջրի հեռացման նպատակով տափանված կավից հատակները շինվել են աննշան թեքությամբ, որը ուղղված էր հետևի պատից դեպի մուտքը։

Այսպիսով, Ախալցխայի Ամիրանիս-գորան ներկայացնում է հարթավայրային կառուցապատման և լեռնային դարավանդային հոծ կառուցապատման բնակավայրերի միջանկյալ տիպը։ Այստեղ առկա են լեռնային բնակավայրի կարևորագույն հատկանիշները՝ արհեստական դարավանդացում շինարարության նպատակով, կառուցապատման կազմակերպում ըստ դարավանդների, կառույցների հարակցում բնական լանջի կտրվածքին։ Սակայն չի վերակազմվում լեռնային բնակավայրի մեկ այլ՝ ստորին դարավանդների կառույցների տանիքների հարթության վերին դարավանդների հետ գործառական կապվածության կարևոր հատկանիշ։ Անցումնային այս տիպի կառուցապատում դիտեցինք Էլարի բնակավայրում, որը ինչ-որ չափով վաղ է Ամիրա-

նիս-գորայից։ Ամիրանիս-գորան բնութագրում են նաև ճարտարապետական այլ հատկանիշներ, որոնք ցույց են տալիս այդ բնակավայրի տիպաբանական յուրահատկությունը՝ բազմակողմանի հարմարվածություն բնակլիմայական գործոններին (լանջի կողմնորոշման ընտրություն, մուտքերի ուղղվածություն, հատակների թեքություն, կենցաղային գործառական համալիրների կազմակերպում երկու տիպի կառույցներից, տան ծածկի տեղադրում պատերին կցված սյուների վրա)։

Կարնո դաշտում՝ Էրզրումի շրջակայքում, պեղվել է շենգավիթյան հնագիտական մշակույթի երեք բնակավայր՝ Կարազը, Հյուսիսային (Կարնո) Փուլուրը (բլուրը) և Գյուզելոված[37]։ Այդ հուշարձանները հզոր շերտերով արհեստական բլուրբնակավայրեր են։ Կարազում և Գյուզելովայում շենգավիթյան մշակույթի շինարարական հորիզոններում բացվել են քարաշեն գետնախարիխներով, հում աղյուսե պատերով, ուղղանկյուն հատակաձևով շինություններ։ Գյուզելովայի կառույցները աչքի են ընկնում խոշոր չափերով։ Կարազի 12-րդ և 15-րդ հորիզոններում պեղված շինությունների աղյուսների չափերն են՝ 30×35×12 սմ։

Շենգավիթյան մշակույթի միջին և ուշ փուլերի զարգացման կարևոր օջախներից էր Հարավային Կովկասի կենտրոնական մասը, հատկապես՝ Ներքին (Շիդա) Քարթլին։ Այստեղ ուսումնասիրվել են Խիզանաանտ-գորա և Կվացխելեբի բնակավայրերը։ Խիզանաանտ-գորայի ստորին շերտերը վաղ են Կվացխելեբիի հնագույն հորիզոններից։ Հորիզոնների ամբողջությունը ընդգրկում է այդ տարածքում շենգավիթյան մշակույթի չորս—հինգհարյուրամյա զարգացման ժամանակաշրջանը։ Այդ երկու բնակավայրերի ճարտարապետությունը մանրամասն ուսումնասիրված է[38], ուստի նշենք միայն նրա հիմնական գծերը։

Կվացխելեբիի $C_1$ հորիզոնի բնակավայրը հնում ամբողջությամբ բաղկացած էր 35—40 տներից, որոնք տեղադրվել են կանոնավոր շարքերով (գծագր. աղ. 6 գ)։ Այդ շարքերը ուղղված են ինչպես հյուսիս-արևելքից հարավ-արևմուտք, այնպես էլ՝ հարավ-արևմուտքից դեպի հյուսիս-արևմուտք։ Շարքերի միջև մնում էին ազատ տարածություններ կամ փոքրիկ հրապարակներ։ Ուշագրավ է այդ հորիզոնում պեղված տների կողմնորոշումը։ Պեղված 25 կառույցներից 13-ի մուտքերը ուղղված են դեպի հարավ-արևմուտք, 7-ինը՝ դեպի հյուսիս-արևելք։ Ուսումնասիրողները նկատել են, որ նման կողմնորոշումը պայմանավորված էր գետահովտի այդ մասում տարվա բոլոր եղանակներին փչող արևելյան կամ արևմտյան քամիներով։ Մուտքերն այնպես են ուղղվել, որպեսզի քամին չներխուժի տունը՝ սառեցնելով սենյակը կամ տարածելով օջախի կայծերը, որը շատ վտանգավոր էր Կվացխելեբիի տների փայտաշեն կառուցվածքների առկայության պայմաններում։

Խիզանաանտ-գորայի և Կվացխելեբիի շինարարական հորիզոնների հաջորդականությունը ներկայացնում է բնակարանների հատակագծերի փոփոխության ուշագրավ պատկերը։ Խիզանաանտ-գորայի ներքևից երկրորդ հորիզոնում բացվել են կլոր և ձվածիր հատակաձևով կացարաններ, որոնք օղակված էին տան պատի հետ համակենտրոն նեղ շրջանցքներով (գծագր. աղ. 6 ե)։ Պեղավայրի տարածքում կառույցների ամբողջական հատակաձևեր չեն բացահայտվել, բայց եղած տվյալներից կարելի է եզրակացնել, որ շրջանցքը օղակում էր տան պարագծի առնվազն կեսը (տուն № 15), կամ կցված էր նրան մի կողմից (տուն № 16)։ Համանման շրջանցքները, ինչպես տեսանք, բնորոշում են նաև Նորաբացի բնակավայրի ճարտարապետությունը։ Խիզանաանտ-գորայի հաջորդ՝ $C_3$ և $C_2$ հորիզոններում կլոր կառույցներն իրենց տեղը զիջում են կլորացված անկյուններով ուղղանկյուն տներին, որոնք հանդես են եկել իբրև մեկսենյականի ազատ կանգնեցված շինություններ (տուն № 13) կամ ունեցել են տան երկայնական պատին դրսից կցված կցակառույցներ։ Այդ երկու կառույցները թերևս նախորդ՝ D հորիզոնում հայտնի շրջանցքների ձևափոխումն են։ Խիզանաանտ-գորայի և Կվացխելեբիի C և B շերտերի բոլոր հորիզոններում տարածված էր տան մեկ այլ հատակաձև, որը միօրինակ վերարտադրվել էր կառույցների բացարձակ մեծամասնությամբ։ Այս «տիպօրինակ» տները ուղղանկյունաձև էին, կլորացված անկյուններով։ Ընդլայնական միջնորմի միջոցով տան ճակատային կողմում առանձնացվել է նախասենյակը։ Այսպիսով, տունը բաղկացած էր նախասրահից և հիմնական սենյակից (գծագր. աղ. 6 զ)։ Տան և հիմնական սենյակի մուտքերը դրվել են երկայնական նույն առանցքում։ Այսպիսով, Կվացխելեբիի և Խիզանաանտ-գորայի

«տիպօրինակ» տները մեգարոնաձև հատակագծով նման են Ախալցխայի Ամիրանիս-գորայի և Սաքյոլ-Փուլուրի 11-րդ—9-րդ հորիզոնների կառույցներին, որտեղ մեգարոնի նախասրահի արտաքին ճակատային կողմը բաց է եղել, մինչդեռ Խիզանաանտ-գորայի և Կվացխելեբիի կառույցներում նախասենյակը այդ կողմից հոծ պատ է ունեցել։ Այսպիսով, Շիդա-Քարթլիում դիտվում է շենգավիթյան մշակույթի բնակարանաշինական հատակաձևերի նույն փոփոխությունը, որը բնորոշ է այդ մշակույթի տարածման մյուս շրջանների ճարտարապետությանը։ Այստեղ նույնպես անցում է կատարվել կլոր հատակաձևից դեպի ուղղանկյունը, որին միայն հաջորդել է մեգարոնաձև «տիպօրինակ» տների տարածումը։

Հատուկ ուշադրության է արժանի Խիզանաանտ-գորայի և Կվացխելեբիի բնակավայրերի շինարարական տեխնիկան։ Տների մեծամասնությունը ունեցել է ուղղահայաց ձողանների շարքի վրա ճյուղերից հյուսված, երկու երեսներից կավով ծեփված հիմնակմախքով պատեր (լուսանկ. աղ. 3 Բ)։ Բարակ գերաններից և ճյուղերից կազմված հարթ տանիքի կառուցվածքը ծածկվել է հողով։ Պատերից բացի, տանիքը հենվում էր հիմնական սենյակում տան երկայնական առանցքի վրա տեղադրված քառակող սյան վրա։ Սյունը սենյակի կենտրոնում դրված չէր, այլ նրանից մի փոքր տեղաշարժված էր տան հետին պատի ուղղությամբ։ Սյունը հանդես է եկել իբրև կառուցվածքի միմիայն կրող տարր՝ նրա հիմքը ամրացված էր 30—40 սմ տրամագծով փոսի մեջ։ Կվացխելեբիի $C_1$ հորիզոնի հրդեհման հետևանքով կառույցների հատակին բացվել են ծածկերի ածխացած մասեր, որոնց պրեպարացիան թույլ է տվել վերակազմելու տանիքի կառուցվածքի մանրամասնությունները։

Հյուսված հիմնակմախքով կավածեփ պատերի շինարարական տեխնիկայով կառուցված տների կողքին բացվել են նաև հում աղյուսով կառուցված փոքրաթիվ շինություններ։ Միատեսակ՝ 43×17×11 սմ չափի աղյուսները պատրաստվել են կաղապարման միջոցով։ Որոշ կառույցներում զուգորդվել են շինարարական երկու տեխնիկաները։

Խարբերդ-Մալաթիայի շրջանի վաղբրոնզեդարյան բնակավայրերում բացված՝ հյուսված հիմնակմախքով կավածեփ պատերով վերոհիշյալ տները առավելապես նման են Խիզանաանտ-գորայի $C_2$ հորիզոնի կառուցվածքներին։

Հայկական լեռնաշխարհի ճարտարապետության պատմության տեսանկյունից մեծ հետաքրքրություն են ներկայացնում Կվացխելեբիի մեգարոնաձև տները։ Բնակարանի այդ ձևը Հարավային Կովկասում թերևս տարածվել է Հյուսիսային Բալկաններից մ.թ.ա. III հազարամյակի երկրորդ քառորդում, էթնիկական տեղաշարժերի հետ միասին[39]։

Կլոր և քառանկյուն հատակաձևերի փոփոխությունը վկայված է նաև Դաղստանի վաղբրոնզեդարյան բնակավայրերում, որոնք ներկայացնում են շենգավիթյան մշակույթի տեղայնական տարբերակը։ Սակայն այդ փոփոխությունների ժամանակագրությունը ճշտված չէ[40]։

Այսպիսով, դաղստանա-պաղեստինյան հնամշակութային մարզի և հատկապես՝ շենգավիթյան հնագիտական մշակույթի բնակավայրերի և բնակարանաշինության ուսումնասիրությունը ուշագրավ պատկեր է ներկայացնում։ Զարգանալով նեոլիթ-էնեոլիթյան մշակույթների ճարտարապետական ավանդույթների հիմքի վրա, շենգավիթյան մշակույթի ճարտարապետությունը հասել է զարգացման միանգամայն նոր մակարդակի։ Ձևավորվել են բնակավայրերի կառուցապատման նոր սկզբունքներ։ Առաջացել են բնակարանների նոր ձևեր, որոնց ստեղծումը պայմանավորված էր հասարակական-տնտեսական փոփոխություններով, բնակլիմայական նոր շրջանների յուրացմամբ, էթնիկական տեղաշարժերով։

Շենգավիթյան մշակույթում առաջացել և զարգացել է Հայկական լեռնաշխարհի հնագույն մոնումենտալ ճարտարապետությունը, որը հետևանք էր սոցիալական որոշակի գործոնների ազդեցության։ Մոնումենտալ առաջին կառույցները վերաբերում են ամրոցաշինությանն ու պաշտամունքային ճարտարապետությանը։ Թեև չի բացառվում Հայաստանում նեոլիթյան կամ էնեոլիթյան ժամանակաշրջանների ամրոցաշինական հուշարձանների հայտնաբերումը, սակայն առ այսօր հայտնի այդ կարգի մնացորդներ մ.թ.ա III հազարամյակի սկզբից վաղ չեն։

Վաղ բրոնզեդարի հենց սկզբից միջցեղային ընդհարումների ուժեղացման պատճառով անհրաժեշտություն է դառնում բնակատեղիների ամրացումը։ Վաղագույն փուլի՝ մ.թ.ա. 3-րդ հազարամ-

յակի առաջին քառորդի ամրոցաշինությունը տարբերվում է Հայաստանի ավելի ուշ դարաշրջանների պաշտպանական համակարգերից հիմնական երեք հատկանիշներով. Ա) Պաշտպանական կառույցների առաջին համակարգերը ստեղծվում են բնակավայրերի ռազմա-տնտեսական առաջընթաց զարգացող դիֆերենցիացիայի պայմաններում: Ուստի առաջինը պարիսպներ ունեցել են ամրացված խոշոր բնակավայրերը, որտեղ սկիզբ էին առնում քաղաքային քաղաքակրթության տարրերը: Այդ ժամանակաշրջանում բնակատեղիների մեծ մասը դեռևս ամրացված չէր: Բ) Սկզբնական շրջանում բնական ամրությունները չէին օգտագործվել: Պարսպապատ առաջին բնակավայրերը հարթավայրային էին և հեշտությամբ մատչելի թշնամու հարձակման համար, քանի որ նրա ճանապարհին բնական արգելքներ չեն եղել: Շենգավիթյան մշակույթի վաղ փուլի խոշոր բնակավայրերի բնակիչները իրենց անվտանգությունն ապահովելու համար ապավինել են միայն արհեստական ամրություններին՝ պարիսպներին, խանդակներին: Գ) Ամրոցաշինությունը առաջացել է կավակերտ ճարտարապետության ավանդույթի սահմաններում: Վաղագույն պարիսպների համար օգտագործված հիմնական կամ գրեթե միակ շինանյութը հում աղյուսն էր: Այդ առանձնահատկությունները որոշակիորեն բացահայտվում են Մոխրաբլուրի, Գյոյ-Թեփեի և Յանիկ-Թեփեի[41] ամրոցաշինական կառույցների բնույթյամբ:

Մոխրաբլուրի մ.թ.ա. III հազարամյակի սկզբի շինարարական հորիզոնների օղակող 1,8—2 մ հաստությամբ պարիսպը ամբողջությամբ շարված էր հում աղյուսից: Այստեղ միայն տեղ-տեղ շարվածքի ստորին շարքերի ամրացման համար օգտագործվել է մանր գետաքարը: Գյոյ-Թեփի $K_2$ ենթաշերտում պեղված 1,7 մ հաստությամբ վերոհիշյալ պարսպի համար նույնպես օգտագործվել է միայն հում աղյուսը:

Քարը որոշ չափով օգտագործվել է Յանիկ-Թեփեի 4-րդ հորիզոնի պարսպի շարվածքում: Ընդարձակ հարթավայրում ընկած այդ բնակավայրը տվյալ ժամանակահատվածում նախաքաղաք էր շուրջ երկու հազար բնակիչներով: Նրա պաշտպանության համար կառուցվել է հսկայածավալ պարիսպը, որը հայտնաբերված մասի հատվածում 4,6 մ հաստություն է ունեցել: Պարսպի ստորին մասը կազմել է մանր ու միջին չափի անմշակ գլաքարերից կավաշաղախով շարված գետնախարիսխը, որը բոլոր կողմերից ավաղված էր կավի հաստ շերտով: Գետնախարիսխի վրա դրված էր հում աղյուսից պատը: Առանձին ուշադրության արժանի են մուտքի մնացորդները: Նրա երկու եզրերում գտնվող վերին պահպանված քարերի շարքերը առաջ են եկած, ուստի ենթադրվում է, որ մուտքը ծածկված էր կեղծ թաղով:

Հին Հայաստանի բնակիչները հայտնագործել են իրենց համար քարի առավելությունը ամրոցաշինական գործում կավի նկատմամբ: Տյուլին-Թեփեի դաշտավայրային վաղբրոնզեդարյան բնակավայրի կենտրոնական թաղամասը, թերևս՝ միջնաբերդը, զատված էր անմշակ մանր քարերից կավաշաղախով շարված մոտ 2 մ հաստությամբ պարսպով: Քարե շարվածքի պահպանված բարձրությունը 1,23 մ է[42], ուստի դժվար է եզրակացնել՝ արդյոք պարիսպը ամբողջապես քարաշեն էր, թե՞ բարձր գետնախարիսխ է ունեցել:

Հայկական լեռնաշխարհի բնական պայմաններում մանր ու միջին չափի քարերից կազմված շարվածքները չէին կարող այնպես համապատասխանել ամրոցաշինության պահանջներին, ինչպես խոշոր սալերից կամ ժայռաբեկորներից կառուցվածքները: Ուստի պատահական չէ, որ դեռևս մ.թ.ա. III հազարամյակի առաջին կեսին Շրեշ-բլուրի (Էջմիածնի մոտ) բնակավայրը ամրացվել է պարսպով, որից անմշակ հսկայական ժայռաբեկորներ էին մնացել[43]: Թերևս այդ ժայռաբեկորները գետնախարսխի են պատկանել և կապակցվելով միմյանց կավաշաղախի միջոցով կրել են հում աղյուսից շարված պատի զանգվածը: Այստեղ, ուշագրավն այն է, որ Շրեշ-բլուրի պարիսպը հարթավայրային բնակավայր է պաշտպանել, որտեղ անհրաժեշտ շինանյութը՝ խոշոր չափի քարը, թեև անմատչելի չէր, սակայն դժվարությամբ հայթայթելի (քարը պետք էր փոխադրել մի քանի կիլոմետր հեռավորությամբ): Հակառակ շինարարության համար անբարենպաստ պայմաններին, այստեղ ապրել է մարդկանց բավականաչափ խոշոր կոլեկտիվ, որը կարող էր իրականացնել հասարակական համապատասխան աշխատանք և լավատեղյակ էր հարթավայրային ամրոցաշինության ավանդույթին ու գիտակ էր լեռնային շինանյութի օգտագործման առավելության: Նմանապես խոշոր ան-

մշակ քարերից կառուցված էր Շենգավիթի բնակավայրի պարսպի[44] գետնախարիսխը։ Այդ պարիսպը թեև վերակառուցվել է վաղ երկաթեդարում, սակայն նրա հիմնադրումը մ.թ.ա. III հազարամյակի երկրորդ քառորդում, կասկած չի հարուցում։

Շենգավիթյան մշակույթի ուշ փուլում սկսվում է պաշտպանության համար հարմարավետ բնական ռելիեֆի լրացումն ու հզորացումը հմտորեն կառուցված արհեստական ամրություններով։ Այդ շրջանում ձևավորվում են ամրոցների տեղադրության և դրան համապատասխանող պաշտպանական համակարգի հիմնական երկու տիպեր, որոնք այնուհետև գոյատևել են Հայաստանում մինչև զարգացած միջնադարը. Ա) Ամրոցի կամ ամրացված բնակավայրի տեղադրումը կիրճերով եզերված ժայռային հրվանդանի վրա։ Այս դեպքում սովորաբար հրվանդանը հատել են պարսպով (կամ մի քանի պարիսպներով), որը դրվել է սարահարթին միանալու տեղում։ Բ) Ամրոց-բնակավայրը կառուցվել է անառիկ, բարձր բլրի գագաթին և նրա լանջերին, իսկ պարիսպները օղակել են գագաթը, ինչպես նաև կարող էին գոտևորել բլուրը նրա լանջերի տարբեր մակարդակներում։ Առաջին տիպի ամրացված բնակավայրերի օրինակ է Գառնին, երկրորդ տիպի՝ Ջյանբերդը (Հարավային Ղոյթուր)[45]։

Գառնիում շենգավիթյան մշակույթի բնակավայրի պարիսպը կառուցվել է գրեթե այն ուրվագծով, որը հետագայում ունեցել է անտիկ ժամանակաշրջանի պարիսպը՝ հիմքի մոտ կտրելով սարահարթից եռանկյունաձև հրվանդանը, որի վրա կառուցված էր բնակավայրը։ Գառնիի վաղ բրոնզեդարյան պարիսպը շարվել է ժայռից պոկված, առանց կրկնակի մշակման բազալտե հսկայական քարերից, որոնք դրվել են այնպես, որպեսզի յուրաքանչյուր քարի ճեղքված, համեմատաբար հարթ կողմը շարվածքում, ուղղված լինի դեպի դուրս։ Այսպիսով, ստացվել է պարսպի միաձույլ մակերեսը։ Քարերի միջև եղած արանքները լցվել են կավաշաղախով։

Ջյանբերդը զբաղեցնում է Արագածի լեռնազանգվածից զատվող բարձրադիր ելուստներից մեկը, որն իրենից ներկայացնում է երկաստիճան կոնաձև լավային բլուր։ Այն հյուսիսարևմտյան կողմում իջվածքի միջոցով միանում է լեռնազանգվածին, իսկ հարավային ուղղությամբ կտրուկ իջնում է դեպի Արարատյան դաշտը։ Ջյանբերդի տեղանքը ամբողջությամբ իշխում է Արարատյան դաշտին հարող Արագածի ողջ նախալեռնային գոտու վրա։ Շենգավիթյան մշակույթի ուշ փուլի (մ.թ.ա III հազարամյակի կեսի) ամրոց-բնակավայրը զբաղեցնում է լավային կոնի երկու աստիճանները և նրա արևմտյան ու հարավային ստորոտները։ Գագաթի հարթակի և նրան օղակող ստորին դարավանդի ընդհանուր մակերեսը մոտ 0,5 հա է, իսկ ամբողջ բնակավայրի տարածքը 1,5—2 հա-ից չի անցնում։ Բնակավայրը որոշակիորեն երեք մասի է բաժանվում. ա) հյուսիսարևմտյան և հարավային ստորոտներին ու լանջերին տեղադրված անպաշտպան շինություններ, բ) ստորին դարավանդը, որի եզրի պարագծով հզոր պարիսպ է կառուցվել, գ) բլրի գագաթը, որը նույնպես պարսպապատ էր։ Երկու պարիսպների հատակագծման սկզբունքն էլ ենթարկված էր և կրկնօրինակում էր գագաթի և ստորին դարավանդի ռելիեֆի ուրվագծին։ Երկու պարիսպներն էլ զերծ են ամրոցի պաշտպանունակությունը հզորացնող որմնահեցերից կամ աշտարակներից։ Երկուսն էլ կատարել են ինչպես պաշտպանական կառույցների, այնպես էլ՝ հենապատերի դերը։

Ջյանբերդի վաղ բրոնզեդարյան պաշտպանական կառույցների շինարարական տեխնիկայի համար բնորոշ է բազալտե հսկայական քարերի օգտագործումը, որոնք իրենց վրա չեն կրում մշակման որևէ հետք։ Իրենց բնական ձևերով քարերը շարվածքի մեջ հարմարեցված են մեկը մյուսին։ Պատերի հաստությունը կազմված է հիմնականում քարերի մեկ, իսկ առանձին հատվածներում՝ երկու շարքերով։ Այս դեպքում երկու շարքերի քարերն էլ պատի հաստության մեջ թափանցում են մի շարքից մյուսը և այս եղանակով ագուցվում են միմյանց։ Շարվածքը հավանաբար չոր էր, առանց կապակցող շաղախի։ Նկարագրված շարվածքի տեխնիկան, որը դիտվում է հնագույն մի շարք ամրոցներում, իրավամբ կարելի է «կիկլոպյան» անվանել։ Այսպիսով, Հայաստանում վկայված են շինարարական այդ եղանակի ձևավորման տարբեր փուլեր, որոնք ընդգրկել են մ.թ.ա. III հազարամյակի առաջին—երրորդ քառորդները։ Այնուհետև «կիկլոպյան» տեխնիկան պարբերաբար կիրառվել է Հայաստանում մինչև ուշ բրոնզի դարաշրջանի վեր-

չը (մ.թ.ա. XIII—XII դարեր), երբ աստիճանաբար փոխարինվել է «միդիս» շարվածքներով և կոպտատաշ քարի օգտագործմամբ։

Շենգավիթյան մշակույթի մոնումենտալ հոգևոր ճարտարապետությունը ներկայացված է տաճարներով և դամբարանային կառույցներով։ Այժմ հայտնի են դաղստանա-պաղեստինյան հնամշակութային ընդհանրության մոնումենտալ երկու տաճարներ՝ Մոխրաբլուրի (մ.թ.ա. III հազարամյակի առաջին քառորդ) և Քիրբեթ-էլ-Կերակի (մ.թ.ա. III հազարամյակի կեսը)։ Մոխրաբլուրի տաճարը[46] շերտագրորեն համապատասխանում է մոխրաբլուրյան բնակարանաշինության երկրորդ և երրորդ փուլերին։ Տաճարը կառուցվել է բնակավայրի կենտրոնական հրապարակում, որտեղից ճյուղավորվել են բնակելի առանձին համալիրներ միավորող փողոցները։ Պաշտամունքային այդ համալիրը բաղկացած էր հիմնական երկու մասից՝ հրապարակային ծիսակատարությունների համար կառուցված տաճարական քարաշեն աշտարակից և նրան կից գտնվող ոչ այնքան բարձր աղյուսաշեն կառույցներից։ Տաճարի իմաստային, ֆունկցիոնալ և ծավալային միջուկը կազմող քառակող աշտարակը պահպանվել է 4,5 մ բարձրությամբ (գծագր. աղ. 4 գ)։ Այն կառուցվել է հզոր բարձի վրա, որը տոփանված կավածեփից է։ Աշտարակը ենթարկվել է մի քանի վերակառուցումների, սակայն պահպանել է ուղղանկյուն հատակաձևը, որի երկայնական առանցքը ճշգրիտ համընկնում է արևելք—արևմուտք ուղղությանը։ Բարձի վրա անմիջականորեն դրված հնագույն աշտարակի երկարությունը 5,4 մ էր։ Այն շարվել է կավաշաղախով կապակցված տուֆի տափակ սալերից։ Այնուհետև, երբ կառույցի ստորին երեք շարքերը թաղվել են մշակութային աճող շերտի մեջ, աշտարակը բարձրացվել է ավելի խոշոր քարերով, որոնց մեծ մասը տուֆ է, սակայն հանդիպում է նաև բազալտը։ Մոխրաբլուրի տաճարի կառուցողական այդ շրջանում, աշտարակի պատերի տակ, հրապարակի մակերեսին կանգնեցվել են տափակ սալերից ուղղահայաց փոքրիկ կոթողներ, որոնց հիմքը ամրացվել է գլաքարով։ Կառուցողական երրորդ շրջանում աշտարակը ավելի է ձգվել արևելք—արևմուտք ուղղությամբ։ Այդ շրջանում նրա երկարությունը 7,4 մ էր, լայնությունը՝ 5,5 մ, իսկ բարձրությունը՝ 4—5 մ-ից պակաս չէր։ Երեք շրջաններում էլ աշտարակի գագաթին տեղադրված էր հսկայական զոհասեղանը։ Սա բազալտե միթխարի կոթող է 3,9 մ երկարությամբ և 0,7—1 մ լայնությամբ, որի մակերեսին պարզորոշ նկատվում են քարի երկայնական առանցքին գրեթե ուղղահայաց 8—12 սմ լայնությամբ ակոսներ։ Դրանք կոթողը փայտե սեպերի և ջրի միջոցով բազալտի ժայռից կտրելու հետքերն են։ 6—7 տոննա կշռող այդ միակտուրը բերվել է Մոխրաբլուր առնվազն 8—12 կմ հեռավորությունից։ Տաճարի գոյության վերջին շրջանում այն օգտագործվել է որպես զոհասեղան և դրված էր հորիզոնական դիրքով աշտարակի լայնական պատին զուգահեռ։ Չի բացառվում, որ առաջին և երկրորդ կառուցողական շրջաններում կոթողը կանգնեցված էր աշտարակի գագաթին, որի հետ միասին ստեղծում էր 9—10 մ բարձրությամբ ուղղահայաց առանցքը՝ նախաքաղաքի կենտրոնում։

Այսպիսով, Մոխրաբլուրի տաճարի ճարտարապետական ձևերը նպատակաուղղվել են ամբողջ համայնքի կողմից կատարվող բացօթյա ծիսակատարությունների ապահովմանը։ Դրանով բացատրվում է աշտարակի արտաքին ծավալի շեշտումը, ինչպես նաև ամբողջ կառույցի ճարտարապետական ձևի միջոցով երկիր-երկինք առանցքը վերարտադրելու բացահայտ միտումը։ Արտաքին ծավալների նկատմամբ նախապատվության առաջացումը նշանավորել է վաղ երկրագործական մշակույթների ճարտարապետական մտքի խոշոր թռիչքը։ Այդ մշակույթներում պաշտամունքային ճարտարապետությունը ավանդաբար զարգացել է ներքին ծավալի ձևափոխման ճանապարհով, որը վկայված է նեոլիթի և էնեոլիթի դարաշրջանների բազմաթիվ սրբարաններով։ Նույն ավանդույթին հետևել են Քիրբեթ-Կերակի տաճարի կառուցողները[47]։

Այդ տաճարի ճարտարապետական ձևը արդյունք է ներքին առանձին ծավալների գումարման ու համադրման։ Ուղղանկյուն հատակաձևով կառույցը զբաղեցրել է մոտ 1200 քառ.մ մակերես (30×40 մ)։ Այն կազմվել է ներքին բակը եզրափակող բազալտե 10 մ հաստությամբ պատի միջոցով, որի մեջ իրար կողքի գտնվել են կլոր հատակագծով 7—9 մ տրամագծով 9 սենյակներ։ Յուրաքանչյուր սենյակը քարաշեն որմնահեցերի միջոցով չորս հավասար մասի է բաժանվել։ Ենթադրվում է, որ որմնահեցերը պահել են հում աղյուսից շարված կեղծ գմբեթներ։

Թեև հետազոտողների մեծ մասը դիտում է Քիրբեթ-էլ-Կերակի հսկայական շենքը որպես տաճար, սակայն չի բացառվում նաև նրա շտեմարան լինելը։

Նկարագրված հուշարձաններով չեն սահմանափակվում շենգավիթյան մշակույթին վերաբերող հասարակական շինարարական խոշոր աշխատանքների վկայությունները։ Այստեղ անհրաժեշտ է նաև թվարկել Յանիք-Թեփեի հասարակական շտեմարանը, Նորաբացի խանդակը, Մոխրաբլուրի մեծածավալ արհեստական ջրամբարը իր պատվարով[48]։

Շենգավիթյան մշակույթի գոյության ժամանակաշրջանում առաջանում է Հայկական լեռնաշխարհի ճարտարապետության մինչ այդ անհայտ մի բնագավառ՝ դամբարանային ճարտարապետությունը։ Թեև Հայաստանում ուշ էնեոլիթի դարաշրջանում թաղման ծեսը շատ է բարդանում նախորդ ժամանակաշրջանների համեմատությամբ (Քորուշու-Թեփե), սակայն թաղումը կատարվել է տարբեր չափի հասարակ փոսերում կամ կարասներում, որպիսիք չի կարելի դիտել իբրև ճարտարապետության հուշարձաններ։ Դամբարանային ճարտարապետությունը առաջանում է վաղ բրոնզեդարի սկզբից, երբ տարածվում են դամբանաբլրային կառույցները և նրանց մեջ ամփոփված քարաշեն բարդ կառույցվածքները։ Դամբանաբլուրները Հայկական լեռնաշխարհի բնական լանդշաֆտի մեջ մարդու կողմից մտցված նոր տարր էին։ Շենգավիթյան մշակույթին վերաբերելի դամբանաբլուրներ պեղվել են Թռեղքում (XIX և XXIV դամբանաբլուրներ)[49], իսկ Արագածի հարավային ստորոտին՝ Մայիսյանում պեղված № 10 դամբանաբլուրի տակ[50] (մ.թ.ա. III հազարամյակի սկիզբ) հայտնաբերվել է մեծ խնամքով կառուցված քարաշեն դամբանախուցը, որը բրգաձև ծածկ է ունեցել և դեպի հարավ ուղղված՝ մուտք։ Մուտքից ներս կառուցված էին քարաշեն երկու աստիճաններ։ Շատ բարդ կառուցվածք են ունեցել Մայիսյանի դամբարանաբլուրների երկրորդ խմբի դամբարանաթմբերը (մ.թ.ա. III հազարամյակի կես)։

Այսպիսով, շենգավիթյան մշակույթի գոյության ժամանակաշրջանում Հայկական լեռնաշխարհի ճարտարապետությունը արմատապես վերափոխվում է։ Այդ որակական ձևափոխության սոցիալական հիմնական գործոններից էր՝ հայրիշխանական կարգերի հաստատում, քաղաքային քաղաքակրթության տարրերի ձևավորում, կյանքի ռազմականացում։ Նոր փուլում սաղմնավորվել են ամբողջ բրոնզեդարին հատուկ ճարտարապետական ավանդույթներ, որոնք սակայն հետագայում աստիճանաբար չեն զարգացել, քանի որ մ.թ.ա. XXIV—XXIII դդ. դաղստանա-պաղեստինյան համշակութային ընդհանրությունը և նրա միջուկը կազմող շենգավիթյան մշակույթը տրոհվել են։ Ուստի պատմական նոր պայմաններում Հայաստանի ճարտարապետությունը նոր ուղիներ է գտնում։

# ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՎԱՂԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

**(Մ. թ. ա. III հազարամյակի վերջին քառորդից մինչև մ.թ.ա. I հազարամյակի սկիզբը)**

Մ.թ.ա. III հազարամյակի վերջում և II հազարամյակի սկզբին Հայկական լեռնաշխարհի սոցիալ-տնտեսական և էթնիկական պատմության մեջ եղել են շրջադարձային փոփոխություններ։ Մ.թ.ա. III հազարամյակով ավարտվում է Հայաստանի պատմության նախնադարյան-համայնական հասարակարգի ժամանակաշրջանը։ III հազարամյակի վերջին քառորդից սկսած լեռնաշխարհի տարբեր մասերում զարգացել են վաղդասակարգային հասարակություններ, ձևավորվել են պետական հնագույն կազմավորումներ։ Լեռնաշխարհի պատմական և տնտեսամշակութային զարգացումը այնևս միասնական չէր։ Եթե հարավարևմուտքում շարունակվել է երկրագործական բնակավայրերի ելևէջներով զարգացումը (գծագր. աղ. 8 բ), ապա հյուսիսային և հյուսիս-արևելյան մասերում վաղ բրոնզեդարի վերջին փուլում (մ.թ.ա. III հազարամյակի վերջին քառորդ) և միջին բրոնզեդարում (մ.թ.ա. II հազարամյակի առաջին կես) նստակյաց կյանքի առանձին օջախներ շրջապատված էին զարգացման բարձր մակարդակի հասած կիսաքոչվորական անասնապահական հասարակություններով:

Մ.թ.ա. III հազարամյակի վերջին քառորդում Խարբերդի դաշտում գոյություն է ունեցել քաղաքային կյանքի խոշոր կենտրոն՝ Նորշունթեփեն։ Վաղ բրոնզեդարի երրորդ փուլում (6-րդ շինարարական հորիզոն) նրա միջնաբերդում կառուցվել է պալատական տնտեսության պահեստային համալիրը[1], որը աստիճանաբար ձևավորվել է հում աղյուսից կառուցված չորս խոշոր շենքերից (գծագր. աղ. 8 գ)։ Համակարգես ուշադրավ են այդ համալիրի մասանները։ Ամենախոշոր շենքը ունեցել է չորս մասան, որոնց մեջ տեղավորված էր 98 կարաս։ Կարասներ եղել են նաև մյուս կառույցներում։

Կուրի և Արաքսի միջագետքում մ.թ.ա. III հազարամյակի վերջին քառորդի և II հազարամյակի առաջին կեսի ճարտարապետությունը ներկայացված է հիմնականում դամբարանային կառույցներով։ Հայ ճարտարապետության պատմության տեսանկյունից առավելապես հետաքրքիր են բարդ կառուցվածքի դամբանախցերի ձևակազմավորման ընթացքը։ Միջին բրոնզեդարի առաջին փուլի բեդենյան մշակույթում տարածում են գտել գերանակապ պատերով և ծածկով դամբանախցերի կառուցվածքներ[2]։ Միջին բրոնզեդարում, մ.թ.ա. XXI—XIX դարերում, Թռեղքի հրակայածավալ դամբարանաբլուրները ամփոփել են մինչև 175 ք.մ. մակերեսով դամբանասրահներ, երկար ու լայն դամբանամուտքերով (դրոմոսներով), տափակ սալերից չոր շարվածքով կառուցված մինչև 6 մ բարձրությամբ պահպանված պատերով։ Այդ դամբանասրահների գերանային ծածկը հենվում էր փայտե սյուների և քարաշեն որմնահեցերի բարդ կառուցվածքի վրա[3]։ Միջին բրոնզեդարում և ուշ բրոնզեդարի վաղագույն փուլում (ներառյալ մ.թ.ա. XV դարը) կազմա-































*Աղ. 9 ա) Լոռի բերդ. դամբարան, հատակագիծ և կտրվածք, բ) Ճաշեն. կուրգանի կտրվածք, գ) Զորաց-քար (Դուշուն-դաշ), դ) Արթիկ. կատակոմբային դամբարան, ե) Օշական. «Օղուզի տնեյը», դամբարան, հատակագիծ և կտրվածք։*

վորվել է բարաշեն պատերով և սալային ծածկով երկարավուն և համեմատաբար նեղ դամբանասրահի ձևը, որը հանդես է եկել ծածկերի երեք տարբերակներով. Ա) Ուղղահայաց պատերի վրա հենված սալային հարթ ծածկը: Այս տարբերակում դամբանասրահի լայնությունը պայմանավորված էր ծածկասալերի երկարությամբ: Բ) «Կեղծ թաղով» ծածկված դամբանասրահներ, որոնք առաջին անգամ մանրամասն նկարագրվել են Թ. Թորամանյանի կողմից և գրականության մեջ հայտնի են «օղուղի տներ» անունով՝ (գծագր. աղ. 9 ե): Այդ դամբանասրահների տափակ սալերից կառուցված պատերի շարվածքի շարքերը բարձրանալով աստիճանաբար առաջ են գալիս փոքրացնելով ծածկի թռիչքը, որը փակվում է առաստաղի սալերով: Գ) Ուղղահայաց պատերով դամբանասրահներ, որոնք ծածկված են երկթեք ծածկի տարբերակով՝ երկայնական պատերի վերին շարքի վրա իրար դիմաց թեքությամբ դրվել են խոշոր սալերի մեկական շարք, որոնք կախվել են դամբանասրահի ներքին տարածության վրա և միացվել են իրար առաստաղի հորիզոնական դրված սալերի շարքով (գծագր. աղ. 9 գ):

Մասնագիտական գրականության մեջ երկար ժամանակ տիրել է չհիմնավորված այն կարծիքը, որ «օղուղի տները» կացարաններ են և դրանք վերագրվել են չափազանց վաղ ժամանակաշրջանին: Սակայն վերջին երկու տասնամյակներում կատարված պեղումները հիմնովին ժխտել են այդ ենթադրությունը, ապացուցելով, որ բոլոր «օղուղի տները» առանց բացառության դամբանասրահներ են և դրանց վաղագույն օրինակները ստեղծվել են միջին բրոնզեդարում և մ.թ.ա. II հազարամյակի առաջին կեսից հին չեն: Դրա վկայությունն է Լոռի-բերդի № 6 դամբարանը և Ջավախքի մի շարք հուշարձաններ[5]:

Միջին բրոնզեդարում դամբարանային մոնումենտալ կառույցներից կազմավորվել են ամբողջական «մեռյալների քաղաքներ», որոնց լավագույն օրինակը Զանգեզուրում Սիսիանից մոտ 3 կմ դեպի հյուսիս-արևմուտք գտնվող Զորաց-քարն է (Ղոշուն-դաշ): Այդ հուշարձանի վերաբերյալ նույնպես արվել են թյուր ենթադրություններ[6]: Իրականում հուշարձանը իրենից ներկայացնում է հրվանդանաձև բարձունքի վրա գտնվող շենգավիթյան մշակույթի բնակավայր, որի տարածքում միջին բրոնզեդարում առաջացել է «մեռյալների քաղաքը»: Շրջակայքից հայտնի են նաև ավելի ուշ ժամանակաշրջանների դամբարաններ: Գրականության մեջ հիշատակվող Զորաց-քարի մեգալիթյան կառույցները առանց բացառության միջին բրոնզեդարյան դամբարաններ են կամ նրանց հետ առնչվող պաշտամունքային շինություններ:

Զորաց-քարի միջին բրոնզեդարյան «մեռյալների քաղաքի» տարածքը շուրջ 7 հեկտար է: Այն սահմանագատվում է սարահարթից շղթայաձև անցկացված բազալտե ցից կոթողներով («մենհիրներով»), որոնք սիմվոլիկ ցանկապատ են կազմում: Առանձին «մենհիրների» բարձրությունը 2,5—3 մ-ի է հասնում: Հուշարձանի ամենաբարձր մասում, կոթողների շարքում նկատվում է բացվածք-մուտքը: Վերջինիս մոտ ցից քարերի մի ուրիշ շարք կազմում է շրջանագիծ, օղակելով «երկթեք» ծածկով քարաշեն մի հսկա դամբարան: «Մեռյալների քաղաքը» խտությամբ լցված է դամբարաններով, որոնք դասավորված են անցուղիների երկարությամբ և տեղ-տեղ առանձին խմբերն են կազմում: Բաց վիճակում գտնվող ամենախոշոր դամբանասրահների երկարությունը հասնում է 11—13 մ-ի (գծագր. աղ. 9 Գ): Դամբարանային նշված ձևերի կողքին ուշ բրոնզեդարում տարածում են գտել քարե ծածկ (հաճախակի՝ կեղծ թաղը) կրող գերանային կառուցվածքներ (Լոռի-բերդ, Լճաշեն) (գծագր. աղ. 9 ա, բ) և ժայռի մեջ փորված խցադամբաններ (Արթիկ) (գծագր. աղ. 9 դ):

Մ.թ.ա. II հազարամյակի երկրորդ կեսին վերսկսվում է քաղաքային քաղաքակրթության զարգացումը Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիս-արևելյան շրջաններում: Այդ մասին վկայում են Արարատյան դաշտի և նրան եզերող նախալեռնային շրջանների մի շարք հուշարձաններ՝ Դվինը, Լազարավանը, Մեծամորը, Ավանը, Մոտկանը, Լանջաղբյուրը, Լճաշենը և այլն: Մեծ հետաքրքրություն է ներկայացնում Լազարավանը (տեղական անվանում՝ Գյավուր-ղալա)[7], որը գտնվում է Աշտարակի շրջանի Նապրվան գյուղից 1,5 կմ հյուսիս և զբաղեցնում Շահվերտ գետի կիրճի արևելյան (ձախ) ափին տարածվող զառիվանդը: Քաղաքատեղիի տարածքը մոտ 35—40 հա է, որից 1,5 հա զբաղեցնում է միջնաբերդը: Այն գտնվում է քաղաքատեղիի կենտրոնական մասում՝ արևմտյան կողմով հպված Շահվերտի կիրճին, որի եզրով մի պարիսպ է անց-

նում։ Մնացած երեք կողմերից միջնաբերդը պաշտպանված է հզոր պարիսպներով, որոնք հարավային կողմում եռաշարք են։

Միջնաբերդի անառիկությունը ապահովել են դեպի քաղաքն ուղղված տասը հսկա աշտարակները, որոնք ունեն ուղղանկյուն հատակագիծ և պարսպաշղթայի հիմնական զանգվածից դուրս են խոյանում 4—5 մ։ Նրանց ճակատային երկարությունը հասնում է մինչև 17 մ։ Միջնաբերդի ներսում նկատվում են մոնումենտալ ճարտարապետության մնացորդներ։

Քաղաքատեղին ունեցել է կանոնավոր հատակագիծ, ուղիղ փողոցների երկու կողմերում տեղադրված են եղել բնակելի տներ, որոնց ավերակները առանձնապես լավ են նկատվում քաղաքի հյուսիսային կողմում։ Ամենախոշոր փողոցների լայնությունը հասնում է 6 մ-ի։ Առանձին տեղերում դիտվում են առանձնացող թաղամասեր և փողոցները միավորող հրապարակներ։

Ամբողջությամբ վերցրած՝ քաղաքատեղին ունի հյուսիսից հարավ ձգված տեսք, եղել է պարսպապատ, որի հետքերը պարզորոշ նկատվում են արևելյան և հարավային կողմում։

Ուշ բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանի (մ.թ.ա. II հազարամյակի երկրորդ կես և I-ի սկիզբ) բնակարանաշինության մասին եղած տեղեկությունները սահմանափակ են։ Կցկտուր տվյալներ հայտնի են լեռնաշխարհի հարավարևմտյան մասի և Պարսկահայքի վերաբերյալ։ Այրարատի տարածքում այդ ժամանակաշրջանի բնակարաններ պեղվել են Մեծամորում, Լենինականում, Կարմիր-բերդում, Գեղարքունիքում՝ Լճաշենում[8]։ Առավելապես ուսումնասիրված է Կարմիր բլուրի վաղերկաթեդարյան նախաուրարտական բնակավայրը[9]։ Պեղվել են նախաուրարտական շինարարական 4 հորիզոններ։ Դրանցից 3-ում բացվել են կառույցների ավերակներ։ Ուսումնասիրված կառույցները պատկանում էին բնակելի համալիրներին, որոնք բաղկացած էին անկյունավոր հատակագծով մեկ ընդարձակ (մինչև 120 քմ մակերեսով) և 5—6 ավելի փոքր սենյակներից։ Տները եղել են վերգետնյա, մի փոքր խորացված արտաքին մակերեսից։ Դրանք կառուցվել են նախապատրաստված հարթակների վրա, որոնց մակերեսը հարթեցված էր մանր գլաքարերի, բարեկորների, խճի և մարուր կավի լիցքով։ Հարթեցման շերտի հաստությունը 6—13 սմ է։ Պատերը կառուցվել են միջին և մանր չափի անմշակ քարաբեկորներից ու գլաքարերից՝ կավաշաղախով և ունեցել են 0,75—1,20 մ հաստություն։ Բնակելի 1-ին համալիրում բացվել է 2,20 մ հաստությամբ կարճ պատը, որի հաստացումը, հավանաբար, համալիրի ընդարձակման արդյունք է։ Հատակները ծեփվել են 2—7 սմ հաստությամբ հարդախառն կավաշաղախով։ Հաղորդակցական տարբեր նշանակության մուտքեր ունեցել են 0,80—3,70 մ լայնությամբ բացվածքներ։ Ծածկերի համար օգտագործվել են փայտը, եղեգնը, կավը։ Մեծ սենյակներում հայտնաբերվել են օջախներ, ցորենի մեծ հորեր և քարե մարդակերպ կուռքեր։ Հավանաբար, պեղված համալիրները մեծ ընտանիքների՝ գերդաստանների բնակարաններ էին։ Նախաուրարտական բնակավայրի միջնաբերդը թերևս գտնվել է ուրարտական Թեյշեբաինի քաղաքի միջնաբերդի տեղում։

Ուշ բրոնզի և վաղ երկաթի ժամանակաշրջաններում թեև բացահայտվում է բնակավայրերի սոցիալ-տնտեսական արագընթաց շերտավորման պրոցեսը, սակայն դրանց ամենատարածված տիպերը ներկայացված են ամրոց-բնակավայրերով, որոնք նախկինում ուսումնասիրվել են որպես, այսպես կոչված՝ «կիկլոպյան ամրոցներ»[10]։

Հայկական լեռնաշխարհի հնագույն ամրոց-բնակավայրերի թվագրման և ժամանակագրության ստույգ տարբերակման խնդիրը նրանց ուսումնասիրության դժվար հարցերից մեկն է։ Կառուցված լինելով պաշտպանական տեսակետից հարմար դիրքերում, նրանք դարերի ընթացքում չեն կորցրել իրենց դերը, ենթարկվել են տարբեր ժամանակների շինարարական վերանորոգումների և արմատական վերակառուցումների։ Այդ վիճակով նրանք մեծ մասամբ պահպանել են իրենց գոյատևման վերջին շրջանի հատակագծային պատկերը, որը, ըստ հնագիտական նյութերի, համապատասխանում է գերազանցապես ուշ բրոնզի և վաղ երկաթի դարաշրջաններին։ Այս ամրոցների դիմագրությանն են հանդիպել ուրարտացիները՝ Անդրկովկասի տարածքում իրենց տիրապետության ընդարձակման ժամանակ։

Ամրոց-բնակավայրերի տարածման հյուսիսային սահմանն է Խրամի գետի ավազանը, իսկ













Նկ. 10. ա) Սառնաղբյուր. Վերի բերդ, բ) Սառնաղբյուր. Թոփ-քար ամրոց, գ) Ամրոցների համակարգ (սխեմա)

արևելյան սահմանը՝ Գյանջաչայ գետը։ Անհամեմատ դժվար է եզրագծել նրանց տարածման հարավային և արևմտյան սահմանները։

Ամրոց-բնակատեղիները համեմատաբար խիտ են տեղաբաշխված Արագած լեռան, Գեղամա և Սևանի լեռնաշղթաների լանջերին, որն արդյունք է այս շրջանների ունեցած կենսական և պաշտպանական շահեկան պայմանների։ Դրանք, առաջին հերթին, ընդարձակ արոտավայրերն են և աղբյուրների առատությունը։ Հաճախ կարելի է հանդիպել ամրոց-բնակատեղիների, որոնք միմյանցից ոչ մեծ հեռավորությամբ և մեկ շարքով կառուցված են լեռան լանջն ի վար իջնող միևնույն գետակի կամ հեղեղատի եզրին։ Մեծ նշանակություն է ունեցել նաև թիկունքում ընկած լեռը, որն ինքնին բնական հզոր պատնեշ է հանդիսացել այդ կողմից թշնամու հարձակման դեմ։

Հայկական լեռնաշխարհի հնագույն ամրոց-բնակատեղիները, որոնց թիվը մի քանի հարյուրի է հասնում, պատկանում են համեմատաբար քիչ ուսումնասիրված հուշարձանների թվին։ Նրանց նվիրված աշխատությունները հիմնականում արդյունք են նախնական, հետախուզական ուսումնասիրությունների և քանակական առումով ընդգրկում են հուշարձանների փոքր մասը։ Ի տարբերություն նույն դարաշրջանի հնագիտական այլ նյութերի, այս կառույցները դեռևս չեն ներգրավվել գիտական շրջանառության մեջ և հազվադեպ են քննարկվել պատմաճարտարապետական խնդիրների առումով, որը շատ կարևոր է հետագա դարաշրջաններում կիրառված ամրաշինական և քաղաքաշինական սկզբունքների ծագումնաբանության համար։

Մասնագիտական գրականության մեջ ընդունված է այս հուշարձանները անվանել «կիկլոպյան ամրոցներ»։ Ենթադրվում է, որ նրանք կառուցված են առանց կապակցող շաղախի, այսինքն, ի սկզբանե եղել են այնպիսին, ինչպիսին են այժմ։ Այս անվանումը պետք է վերագրել խիստ պայմանական բնույթ։ Կավե շաղախի գործածությունը և հում աղյուսի տեխնիկան, որ ծագում են նոր քարեդարյան ժամանակներից, վաղ բրոնզի և հետագա դարաշրջաններում Հայկական լեռնաշխարհում ունեին համընդհանուր կիրառություն (աղյուսաշեն են վերը նշված Մոխրաբլուրի, Գյոյ-թեփեի վաղբրոնզեդարյան պարիսպները)։ Ամենայն հավանականությամբ, պարիսպների մեծ մասի երբեմնի աղյուսաշեն վերին մասերը և քարե գետնախարիսխների ու ամբողջովին քարից շարված պարիսպների կավե շաղախը դարերի ընթացքում իսպառ հողմահարվել և քայքայվել են։ Սա չի նշանակում, իհարկե, որ ամենևին չեն եղել չոր «կիկլոպյան» շարվածքներ։ Այդպիսիք են եղել առավելապես արհեստական կամ բնական դարավանդների եզրով կառուցված հենապատերը, որոնք շարված են խոշոր ու տձև ժայռաբեկորներով և հիշեցնում են քարակույտեր։ Այդպես են կառուցված Հոռոմի, և մասամբ Սառնաղբյուրի Վերի և Թափ-ղար ամրոցները, որոնցից վերջին երկուսը այլ ամրոցների թվում կներկայացվեն ստորև։

Հայկական ԽՍՀ Անիի շրջանի Սառնաղբյուր գյուղի տարածքում գտնվում են չորս ամրոց-բնակատեղի, որոնք պատկանելով բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանների տարբեր ժամանակահատվածների, բնորոշ օրինակներ են նույն շրջանների այլ հուշարձանների թվում։ Այս հուշարձանները համեմատաբար լավ են պահպանված և ունեն մեկ կամ երկու հնագիտական մշակութային շերտ, որը, ի տարբերություն բազմաշերտ հուշարձանների, պարզեցնում է ամրոցի գոյատևման ժամանակը որոշելու հարցը։ Հուշարձանների միմյանց մոտ գտնվելու հանգամանքը բացառում է նրանց՝ համեմատական վերլուծության ժամանակ տեղայնական առանձնահատկությունների վերագրելը, որոնք պարզորոշ դրսևորվում են տարածքային տարբեր շրջանների համաժամանակյա հուշարձանների համադրման ժամանակ։ Այս ամենը թույլ են տալիս ստորև ներկայացվող հուշարձաններում դիտելու ամրաշինական ձևերի զարգացման որոշակի միտումներ ժամանակի ընթացքում, որ սկզբունքորեն ընդհանրական կարելի է համարել Հայկական լեռնաշխարհի հնագույն ամրոցների համար։

Վերի բերդ կամ Ղալաիչի կոչվող ամրոցը գտնվում է գյուղի արևմտյան կողմում, մոտ 1 կմ հեռավորությամբ, սարահարթի հրվանդանաձև ելուստի վրա (գծագր. աղ. 10 ա)։ Բարձունքի հարթ գագաթը, որ գրավում է մոտ քառորդ հեկտար տարածություն, եզրագծված է պաշտպանական պարսպով։ Վերջինիս արևմտյան հատվածը հատակագծում ունի ներճկվածք՝ մուտքի բացվածքի համար, պաշտպանական առումով հարմար, ոչ ճակատային դիրքորոշում ստեղծելու նպատակով։ Պարսպի ներսում նկատվում են ուղղանկյուն հատակագծով կառույցների հետքեր,

*իսկ հրվանդանի արևելյան ծայրին կանգնեցված է մենհիր։ Հրվանդանի լանջերին, հիմնական պարսպին մոտավորապես զուգահեռ, պահպանվել են երկու, իսկ մի հատվածում՝ երեք այլ պարիսպներ, որոնք ստեղծելով արհեստական դարավանդներ, այս հատվածում աղեղնաձև շրջափակում են կենտրոնական ամրությունը։ Եթե հիմնական պարիսպը կառուցված է կոպիտ մշակված քարերով, ապա դարավանդների հենապատպարիսպները շարված են բոլորովին անմշակ, խոշոր ժայռաբեկորներով, նման են հսկա քարակույտերի, որոնք տեղ-տեղ հասնում են մինչև 2,5 մ բարձրության։ Հատակագծում բոլոր պարիսպներն ունեն անկանոն կորաձև հատակագիծ՝ հարմարեցված բարձունքի ռելիեֆի պայմաններին։ Պարիսպներից դուրս ամրոցը ունեցել է նաև բնակելի կառուցապատում, որից գետնի մակերեսին պահպանվել են աննշան մնացորդներ և վերգետնյա հնագիտական հարուստ նյութ։ Ելնելով վերջինից, նկատի ունենալով նաև ամրոցի պարզունակ հատակագծային ձևերը և շինարարական տեխնիկան, հուշարձանի հիմնադրումը կարելի է վերագրել մ.թ.ա. III հազարամյակի կեսերին, որ վերակառուցված և բնակեցված է եղել նաև ուշ բրոնզի ժամանակաշրջանում։ Այդ են վկայում նաև ներքին ուղղանկյուն կառույցները և պարիսպը՝ ամրոցի մուտքի հատվածում։*

*Վերի բերդից դեպի արևմուտք, կես կիլոմետր հեռավորությամբ, սարահարթի վրա բարձրանում է մի այլ բլուր, որի վրա կառուցված է* Թոփ-Քար *կոչվող փոքրիկ ամրոցը (գծագր. աղ. 10, բ)։ Բլրի ժայռոտ գագաթը պարուրում է մի պարիսպ, որը անկանոն գծագրությամբ հատակագծով և մեծածավալ, անմշակ քարերի անկանոն շարքով նման է Վերի բերդի դարավանդների պարիսպ-հենապատերին։ Ամրոցի մուտքը, որի երկու կողմերում կանգնեցված են քարե հսկայական երկու զանգված, ուղղված է արևելք՝ դեպի Վերի բերդը։ Այստեղ, ի տարբերություն նախորդ ամրոցի, ո՛չ պարսպի ներսում, ո՛չ շրջակայքում չի հայտնաբերվել որևէ հնագիտական վերգետնյա նյութ, որը վկայեր բնակատեղիի գոյության մասին։ Այս հանգամանքը հիմք է տալիս ենթադրելու, որ Թոփ-քար ամրոցը չի ունեցել առանձին, ինքնուրույն նշանակություն, չի եղել բնակեցված, այլ Վերի բերդի համար հանդիսացել է պաշտպանական պահակակետ։ Այդ են վկայում նաև նրա համեմատաբար փոքր չափերը և սարահարթի նկատմամբ գերիշխող դիրքը, որ ունի Վերի բերդը։*

*Մի այլ փոքր ամրոց, հավանաբար դարձյալ Վերի բերդին ժամանակակից և նրա պահակակետը հանդիսացող, գտնվում է նրանից հյուսիս՝ մոտ 700 մ հեռավորությամբ, նույն սարահարթի մի այլ հրվանդանաձև ելուստի վրա։ Այստեղից հնարավոր է հսկել և անհրաժեշտության դեպքում պաշտպանել ձորով դեպի բնակատեղի տանող ճանապարհը։ Համարյա լրիվ ավերված այս ամրոցի փոքր չափերը և վերգետնյա հնագիտական նյութի սակավությունը դարձյալ բացառում են նրա բնակատեղի լինելու հավանականությունը։*

*Սառնաղբյուրի վերոհիշյալ երեք ամրոցները դիտելով մի ընդհանուր միասնության մեջ, որի համար հիմք են ծառայում շինարարական տեխնիկայի և հատակագծային սկզբունքների նույնությունը, պաշտպանական տեսակետից նպատակահարմար փոխադարձ դիրքորոշումը և հավանական ֆունկցիոնալ փոխհարաբերությունը, մեր առջև բացվում է քաղաքաշինական և պաշտպանական մի հետաքրքիր համակարգ՝ կենտրոնական ընդարձակ ամրոց-բնակատեղիով և երկու ամրացված պահակակետերով, որոնք տեղադրված են ընդհանուր տարածքի լայն տեսանելիություն ունեցող և առավել խոցելի հատվածներում (գծագր. աղ. 10, դ)։*

*Պաշտպանական այսպիսի համակարգեր կարելի է դիտել բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանների ամրաշինական այլ հուշարձաններում ևս. Հոռոմ գյուղի մոտ գտնվող բնակատեղիում, որի տարածքում գտնվող երեք բլուրներն էլ ամրացված են պարիսպներով, Տեղեր գյուղի հուշարձանում, որտեղ բարձրադիր կենտրոնական ամրոց-բնակատեղիից ավելի ցածր գտնվող հրվանդանաձև երեք ելուստների վրա տեղադրված են փոքր ամրոց-պահակակետեր, և այլուր։*

*Ընդհանրապես, հավանական պետք է համարել այս հուշարձանների տարբեր ուսումնասիրողների արտահայտած այն կարծիքը, որ պաշտպանական համագործակցություն է գոյություն ունեցել նաև առանձին ամրոց-բնակատեղիների միջև՝ առավել մեծ մասշտաբներով։ Կառուցված լինելով բարձունքների վրա, նրանք հնարավորություն ունեին միմյանց հետ անմիջական կապի*




0 20 40 60 80մ

Բ

Նկ. 11 ա) Սառնաղբյուրի Փոքր բերդ, բ) Սառնաղբյուրի Մեծ բերդ

և վտանգի դեպքում պայմանական ազդանշանի միջոցով ընդհանուր ուժերով դիմագրավելու թըշնամուն։

Պաշտպանական-ամրաշինական համակարգերը, որոնց ծագումը և առաջին նմուշները տեսնում ենք քննարկվող ժամանակաշրջանում, հետագայում՝ պետականության պայմաններում, պաշտպանական ճարտարապետության և շինարարական տեխնիկայի կատարելագործմանը զուգահեռ, ունեցան իրենց զարգացումը և առանձին բաղադրիչների որոշակի ֆունկցիոնալ տարբերակումը։

Շիշբլուր ամրոցը գտնվում է Սառնաղբյուր գյուղից հյուսիս, 3,5 կմ հեռավորության վրա, ձորի հյուսիսային կողմում։ Ամրոցը երեք կողմից շրջապատված է թեք լանջերով և միայն արևելյան կողմից է հաղորդակցվում սարահարթին։ Այս կողմից ևս, հնարավորին չափ դժվարամատչելի դարձնելու համար, ամրոցը սարահարթի հետ միացման պարանոցի նեղ մասում, ժայռերի մեջ, փորված է բավական խոր ու լայն մի խանդակ։ Վերջինիս նկատմամբ գերիշխող դիրք է գրավում ամրոցի արևելյան ծայրին կառուցված շինությունը, որն ունեցել է նաև պաշտպանական հզոր աշտարակի դեր։ Նրա հարավային՝ թեք լանջին կից մասում թողնվել է ամրոցի մուտքը՝ աստիճանաբար նեղացող միջանցքի նմանությամբ, որը հնարավորություն է ստեղծում մոտեցող թշնամուն հարվածելու միաժամանակ երեք կողմից։ Պարիսպը, որի արտաքին շարքերն են պահպանվել, հատակագծում ունի կլոր, ռելիեֆին խիստ համապատասխան գծագրություն և միայն բարձունքի հյուսիսարևելյան համեմատաբար փոքր թեքություն ունեցող լանջի կողմից ամրացված է երկու՝ փոքր և մեծ աշտարակներով։

Ամրոցի ներսում պահպանված կացարանները, ինչպես և արևելյան կառույցի սենյակների պատերն ունեն անկյուններում կորացված, կամ լրիվ կոր հատակագիծ։ Միայն հյուսիսային պարսպի կենտրոնական մասում, նրան կից մի շարքով կառուցված սենյակներն ունեն ուղղագիծ և մոտավորապես փոխուղղահայաց հատակագծային ցանց։

Ըստ հնագիտական հետախուզական ուսումնասիրությունների, ամրոցը հիմնադրվել է միջին բրոնզի դարաշրջանում, սակայն կյանքը այստեղ հարատևել է մինչև մ.թ.ա. XI—X դարերը։ Նախնական թվագրմամբ միջին բրոնզի դարաշրջանին են պատկանում նաև Լեռնակերտ գյուղի մոտ գտնվող Վերի բերդ և Վարի բերդ ամրոցները, որոնք Շիշբլուր ամրոցի հետ որոշակի ընդհանրություններ ունեն պաշտպանական կառույցների հատակագծային լուծումներում։

Փոքր բերդ ամրոցը գտնվում է Սառնաղբյուր գյուղից մոտ 2 կմ դեպի արևելք, երկու՝ մեծ և փոքր ձորերի միացումից առաջացած հրվանդանի վրա (գծագր. աղ. 11, ա)։ Մեծ ձորի կողմից նա բացարձակապես անմատչելի է, շնորհիվ մոտ 70 մ բարձրությամբ քարափի և, բնականաբար, այս մասում ամրացված չէ պաշտպանական պարսպով։ Հրվանդանի արևմտյան բարձրադիր մասում կառուցված է միջնաբերդը, իսկ նրանից արևելք, հրվանդանի լայնացող տարածքում՝ ստորին բերդը։ Երկուսն էլ եզերված են 3—3,5 մ հաստությամբ պարիսպներով, որոնք, ի տարբերություն նախորդ ամրոցների, ունեն որոշակի ռիթմով, կանոնավոր կառուցված ուղղանկյուն աշտարակներ։ Երկու դեպքում էլ մուտքերը թողնված են պարիսպների հարավային՝ քարափին հարող ծայրերում, որ պաշտպանական տեսակետից առավել նպատակահարմար է համարվել։ Ամրոցի ներսում պահպանվել են մեծ մասամբ ուղղաձիգ պատերով բնակելի կառույցների հետքեր։ Հետախուզական աշխատանքներով հայտնաբերված հնագիտական նյութը միատարր է, և ամրոցը թվագրվում է մ.թ.ա. XI—X դարերով։

Փոքր բերդին մոտավորապես ժամանակակից է (մ.թ.ա. X—IX դդ.) Մեծ բերդը, որ գտնվում է նույն ձորում՝ 1,5 կմ ավելի հյուսիս, սարահարթի վրա, նույն քարափի եզերքին (գծագր. աղ. 11, բ)։ Ամրոցի մուտքը թողնված է պարսպի կենտրոնական մասում, սարահարթի կողմից, որտեղ և տարածված են եղել ամրոցից դուրս գտնվող բնակելի կառուցապատումը և քարարկղային դամբարանադաշտը։ Համեմատելով վերջին երկու ամրոցները, տեսնում ենք նրանց պարիսպների հատակագծային ձևերի սկզբունքային նմանություն, որն ընդհանուր է ուշ բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանների ոչ միայն Արագածի, այլև Սևանի ավազանի և որոշ այլ շրջանների ամրոցների համար։

Հայկական լեռնաշխարհի համաժամանակյա ամրոց-բնակատեղիներում, ընդհանրապես, պարզորոշ նկատելի են նաև տեղայնական յուրահատկություններ, որոնք դրսևորվում են ինչպես հուշարձանների ընդհանուր հատակագծերի կառուցված-







Աղ. 12 ա) Շամշադին. Ղոզլու ամրոց, բ) Շամշադին. Մասմալար ամրոց

*քում, այնպես էլ առանձին պաշտպանական կառույցների՝ պարիսպների, մուտքերի հատակագծային և ծավալատարածական լուծումներում: Այս երևույթն առավել ցայտուն է երևում, երբ վերը ներկայացված հուշարձանները համեմատվում են Հայաստանի հյուսիսարևելյան շրջանների նույնատիպ հուշարձանների հետ, որտեղ պարիսպները գերազանցապես չունեն հատակագծային ուղղագիծ ձևեր և զուրկ են պաշտպանական աշտարակներից:*

*Ստորև, որպես նմուշ, համառոտակի ներկայացվում է Շամշադինի շրջանի երկու ամրոց-բնակատեղի:*

**Ղոզլու ամրոցը** *գտնվում է Դրղի գյուղից արևելք, 15 կմ հեռավորության վրա, Աղնջի գետի աջ ափին, մի փոքր բլրի վրա, որը հյուսիսարևելյան կողմից սահմանակից է հարթավայրին և նրա նկատմամբ ունի 20—25 մ բարձրություն (գծագր. աղ. 12, ա): Ամրոցը գրավում է բլրի եռանկյունաձև հարթ գագաթը և, բացառությամբ հյուսիսարևմտյան կողմի, ունի գագաթը եզրագծող մեկ պարիսպ: Այս, համեմատաբար հարթ կողմում կառուցված են հենապատ-պարիսպներով ամրացված երկու դարավանդ, ուր և բացվում է ամրոցի մուտքը:*

**Մասմալար ամրոցը** *գտնվում է Դրղի գյուղից 3 կմ հյուսիս-արևմուտք, սարահարթի նկատմամբ մոտ 45 մ բարձրություն ունեցող բլրի վրա, որի լանջերը երեք կողմից զառիվայր են և մասամբ պատված ժայռերով (գծագր. աղ. 12, բ): Հյուսիսարևմտյան կողմում, որտեղ լանջի թեքությունը փոքր է, տեղադրված է ամրոցի մուտքը: Բլրի լանջերը ցլատված են երեք օղակաձև արհեստական դարավանդով՝ հենապատ-պարիսպներով եզերված: Հետաքրքիր և այս շրջանների հուշարձաններին բնորոշ կառուցվածք ունի ամրոցի մուտքը: Բլրի հյուսիսային լանջին դարավանդների պարիսպները մի փոքր շեղվելով մեկը մյուսի նկատմամբ՝ իրենց միջև ստեղծում են դեպի ամրոցի միջուկը տանող գալարապտույտ ճանապարհ, որն ամբողջ երկարությամբ երկկողմանի հարվածի տակ կարող են առնել ամրոցի պաշտպանները:*

*Նկարագրված երկու ամրոցներն էլ գոյություն են ունեցել մ.թ.ա. II հազարամյակի վերջին և մ.թ.ա. VIII—VI դարերում արդեն եղել են լքված:*

*Չնայած բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանների ամրոցների դեռևս անբավարար ուսումնասիրությանը, հնարավոր է ընդհանուր գծերով պատկերել Հայկական լեռնաշխարհում ամրաշինական մտքի, պաշտպանական կառույցների ձևերի զարգացման ընդհանուր նկարագիրը: Այս դեպքում, իհարկե, պետք է նկատի առնել նաև այն, որ հուշարձանների հատակագծային առանձնահատկությունները, արտահայտելով նրանց զարգացման ընդհանուր պատկերը, ինքնին չեն կարող լինել որոշիչ կամ չափանիշ ժամանակագրության որոշման հարցում: Փաստ է տարբեր տիպերի միաժամանակյա գոյությունը, որ արդյունք է տեղայնական ավանդների կարևորության աստիճանի, ֆունկցիոնալ տարբերությունների և այլն:*

*Հնագույն ամրոց-բնակատեղիների պարիսպները կառուցված են բարձունքի հարթ (կամ հարթեցված) գագաթի եզրագծով, ռելիեֆին համապատասխան անկանոն կոր գծագրությամբ (գծագր. աղ. 13, 1Ա): Շինանյութը պայմանավորված է տեղի հնարավորություններով: Լեռնային շրջաններում պարիսպներն ամբողջովին կամ մասամբ քարաշեն են՝ կառուցված մեծ և անմշակ ժայռաբեկորներից (Սառնաղբյուր գյուղի Վերի բերդ և Թոփ-քար ամրոցները, Հոռոմ գյուղի բնակատեղին), դաշտային շրջաններում աղյուսաշեն են՝ լրիվ կամ քարե գետնախարիսխից վեր (Մոխրաբլուր, Յանիք-թեփե): Պարսպի հատակագծի այս ձևը պաշտպանական կառույցների զարգացման շղթայում բնորոշ պետք է համարել վաղ բրոնզեդարյան ժամանակաշրջանին, չնայած շատ հուշարձաններում ավանդաբար այն գոյատևում է բրոնզի և վաղ երկաթի ողջ դարաշրջաններում:*

*Ավելի ուշ պարիսպը ստանում է կանոնավոր շարվածքի ձև, հատակագծում որոշ ուղղագծություն կամ երկրաչափական կոր գծագրություն և, օգտագործելով ռելիեֆի ընձեռած հնարավորությունները, արդյունավետ պաշտպանության նպատակով արվում են հատակագծային զիգզագաձև կամ աշտարակաձև ելուստներ, որոնց մեջ կարելի է տեսնել պաշտպանական աշտարակի կամ որմնահեցի գաղափարը (Սառնաղբյուր գյուղի Շիշբլուր, Լեռնակերտ գյուղի Վերի բերդ և Վարի բերդ ամրոցները, գծագր. աղ. 13, 1 Բ): Հետագայում այդ ելուստներն ընդունում են ուղղանկյուն կանոնավոր ձևեր, որոշակի համաչափություն և ռիթմ՝ ելնելով ֆունկցիոնալ պաշտպանական և,*




Աղ. 13 Ամրոցների պարիսպների սխեմաներ՝ մուտքերի, պատերի ձևեր

*հավանական է, արդեն գեղագիտական նկատառումներից: Պարսպի հատակագծային այս ձևը բնորոշ է ուշ բրոնզի և վաղ երկաթի ժամանակաշրջանին, սակայն, ինչպես վերը նշվեց, կարելի է նկատել նաև տեղայնական որոշ յուրահատկություններ: Եթե Սևանի ավազանի ամրոցներում աշտարակները զանգվածային են (գծագր. աղ. 13, 1 Գ), իսկ Արագածոտնում, Արարատյան և Շիրակի հարթավայրերում՝ համեմատաբար փոքր են (գծագր. աղ. 13, 1 Դ), ապա Հյուսիսարևելյան շրջաններում այդպիսիք հանդիպում են հազվադեպ:*

*Ուղղանկյուն աշտարակներով ամրացված և կոր հատակագծով պարսպի ձևը համընդհանուր և լայն տարածում է ունեցել ընդհանրապես Առաջավոր Ասիայի մ.թ.ա. II հազարամյակի երկրորդ կեսի և I հազարամյակի սկզբի ամրաշինության մեջ (Խաթթուշա, Աշշուր, Սամալ և այլն): Ավելի ուշ՝ պարսպի հատակագիծը դառնում է կանոնավոր ուղղաձիգ, փոխուղղահայաց հատումներով (գծագր. աղ. 13, 1 Ե), մի երևույթ, որի արտահայտիչը Հայկական լեռնաշխարհում Վանի թագավորությունն էր: Վերջինիս ամրաշինությունը խարսխվեց տեղական, բրոնզեդարյան ավանդների վրա՝ կազմելով նրա զարգացման հաջորդ օղակը և իր զարգացումն ապրեց Առաջավոր Ասիայի մշակույթի փոխազդեցության ոլորտում:*

*Մուտքն ամրոցի պաշտպանական համակարգի ամենախոցելի հատվածն է: Ամենաանառիկ ամրոցն անգամ ունի առնվազն մեկ մուտք՝ դեպի այն տանող ճանապարհով, որից կարող էր օգտվել նաև թշնամին: Հետևաբար, մուտքի կառուցման ժամանակ անհրաժեշտ էր առավելագույն խնամք և հնարամտություն՝ ստեղծելու պաշտպանական ուժերի հզոր կենտրոնացում և լայն ճակատով բազմակողմանի հարվածի հնարավորություն:*

*Հայկական լեռնաշխարհի և, ընդհանրապես, Առաջավոր Ասիայի ամրաշինական կառույցներում կարելի է տեսնել այս նույն խնդիրների լուծման միմյանցից տարբեր և դարերի ընթացքում զուգահեռաբար զարգացող երկու սկզբունք: Առաջինը մուտքի ճակատային սիմետրիկ տեղադրումն է, որի դեպքում նրա երկու կողմերում կառուցվում են պաշտպանական աշտարակներ կամ մուտքի բացվածքը արվում է մեկ այդպիսի հզոր աշտարակի առանցքով: Աշտարակների կամ որմնահեցերի հավասարաչափ ռիթմով բաժանված պարսպի միապաղաղ ֆոնի վրա մուտքի այսպիսի հորինվածքը նրան հաղորդում է շեշտված վեհություն, հանդիսավորություն, հզորություն: Մոտեցումը կամ ճանապարհն այս դեպքում մուտքի առջև սովորաբար լինում է ճակատային՝ պարսպին ուղղահայաց (գծագր. աղ. 13, 2 Ա—Ե):*

*Ամրոցի մուտքի կառուցման երկրորդ սկզբունքի դեպքում, որի առաջացումը պետք է վերագրել այն շրջանին, երբ արդեն մշակված էին ռազմագիտական որոշակի փորձ և հմտություն, արդյունավետ պաշտպանության հարցերը լուծվում են ավելի հնարամիտ միջոցներով: Մուտքը տեղադրվում է պարսպի՝ առաջին հայացքից աչքի չընկնող անկյունային մասում, թեք լանջին կամ քարափին կից, իսկ երբեմն՝ այդ նպատակով պարսպի հատակագծում արված շրջադարձային հատվածի խորքում: Մուտքի այսպիսի կառուցվածքը հնարավորություն է տալիս սահմանափակել թշնամու գործունեության դաշտը և, հետևաբար, մուտքի առջև նրանց ուժերի կենտրոնացումը, երկու կամ երեք կողմից խաչաձև հարվածի տակ առնել հարձակվողներին: Բացի այդ, դեպի ամրոց տանող ճանապարհը մուտքի մոտ անհրաժեշտաբար անցնում է պարսպի որոշակի հատվածին զուգահեռ կամ նրա նկատմամբ փոքր անկյան տակ և միշտ կարող է պաշտպանվել այդ կողմից (գծագր. աղ. 13, 3 Ա—Գ):*

*Ինչպես մուտքի տեղադրության, այնպես էլ ամբողջ հուշարձանի հատակագծային հորինվածքի ձևավորման հարցում որոշիչ դեր ունեն տեղագրական յուրահատկությունները:*

*Ամրոցները, ինչպես նշվեց, կառուցված են բարձրադիր և դժվարամատչելի վայրերում, որոնք, ըստ ռելիեֆի բնույթի, կարող են դասվել երեք հիմնական տիպի՝ բլուր, սարահարթ և լեռնային հրվանդան: Այս տիպերից յուրաքանչյուրը կարող է ստեղծել միայն իրեն բնորոշ հատակագծային հորինվածք և քաղաքաշինական բաղադրիչների որոշակի փոխդասավորություն:*

**Բլրի վրա կառուցված ամրոցներ:** *Այս խմբին պատկանող պարզագույն հուշարձաններում (գծագր. աղ. 15, 1—7) ամրոցը գրավում է բլրի միայն գագաթի տարածքը, որն ունի մեծ մասամբ շրջանաձև կամ ձվածիր եզրագիծ, իսկ պարսպից դուրս գտնվող բնակելի կառուցապատումը, եթե այդպիսին կա, տարածվում է նրա համեմատա-*




*Նկ. 14 Ամրոցների դասակարգման սխեմա*

բար հարթ լանջերին և ստորոտում։ Ընդհանուր հատակագծային այս սկզբունքը, անկախ հուշարձանի բացարձակ չափերից և կառուցողական մանրամասներից, սիմվոլիկ կերպով կարելի է արտահայտել երկու համակենտրոն շրջանների ձևով, որոնցից կենտրոնականը կպատկերի ամրոցը կամ միջնաբերդը, իսկ արտաքինը՝ նրանց շրջապատող բնակելի թաղամասերը։ (Հատակագծերի սխեմատիկ կառուցվածքն արտահայտող սիմվոլները այս և հաջորդ աղյուսակներում գծագրված են նրանց աջ կողմում)։

Աղյուսակում պատկերված ամրոցների հատակագծերը սկզբունքային այս ընդհանրության հետ ունեն նաև զգալի տարբերություններ. կան կրկնակի մուտքերով ամրոցներ (Ջոլակ, Վարդաձոր—2, գծագր. աղ. 15, Գ, Զ) և կան ամրոցներ, որոնց պարիսպները և, հատկապես, մուտքերը ամրացված են աշտարակաձև ելուստներով կամ որմնահեցերով։

Բլրի վրա կառուցված մեկ պարիսպով հուշարձանների բնորոշ օրինակներ են Թոփ-քար և Տուֆաշի ամրոցները, որտեղ բլրի գագաթի եզրագծով կառուցված պարիսպներն ընդհատվում են այն մասերում, ուր անմատչելի ժայռերը բնականորեն ապահովում են այդ հատվածի անհրաժեշտ պաշտպանությունը։ Թոփ-քար ամրոցի միակ մուտքը, որ գտնվում է արևելյան կողմում, ճակատային մի պարզ բացվածք է՝ երկու կողմերում տեղադրված խոշոր ժայռաբեկորներով (գծագր. աղ. 15, Ա)։ Տուֆաշեն ամրոցն ունի երկու մուտք՝ կառուցված նրա հյուսիսարևելյան և հարավարևելյան անկյուններում։

Համեմատաբար բարդ հատակագծային կառուցվածք ունեն այն հուշարձանները, որտեղ պարսպի կամ հենապատի մի երկրորդ շարքով եզրագծվում է նաև բլրի լանջի բնական կամ արհեստականորեն ստեղծված դարավանդը (գծագր. աղ. 15, Ը—ԺԴ)։ Միջնաբերդը այս դեպքում զբաղեցնում է ոչ միայն բլրի գագաթի տարածքը, այլև լանջերի վերին հատվածը։ Ընդհանուր հատակագծի այս պատկերը սիմվոլիկ կերպով կարող ենք ներկայացնել համակենտրոն երեք շրջանների ձևով, որոնք համապատասխանաբար կարտահայտեն միջնաբերդի, դարավանդի և բնակելի թաղամասերի փոխադարձ դասավորությունը։

Աղյուսակում ներկայացված հուշարձաններից առանձնանում է Շամխորի մոտ գտնվող ամրոցը (գծագր. աղ. 15, Ժ), որը, չնայած փոքր չափերին, ունի չորս մուտք։ Սա եզակի երևույթ է՝ թելադրված, հավանաբար, մեզ անհայտ ֆունկցիոնալ պահանջներով։

Հուշարձանների այս խմբին ենք դասել նաև Լենինակերտ գյուղի Վերի բերդ ամրոցը (գծագր. աղ. 15, ԺԴ), որտեղ դարավանդը կառուցված է միայն առանձին հատվածներում։ Նրա ամբողջականությանը խանգարել են բլրի լանջերի ժայռային ելուստները։

Կան ամրոցներ, որոնք մի քանի շարք դարավանդներով զբաղեցնում են բլրի լանջերի զգալի մասը, երբեմն, ամբողջը՝ մինչև ստորոտ (գծագր. աղ. 15, ԺԵ—ԺԸ)։ Այսպիսի հուշարձանները հիշեցնում են աստիճանաձև բուրգ, որի յուրաքանչյուր հատվածը պարագծվում է պարսպով կամ հենապատով։ Նրանց հատակագիծը կազմվում է բլրի գծագրությանը համապատասխան մի քանի համակենտրոն շրջաններից, որոնք միմյանց հետ հաղորդվում են մուտքերի հաճախ բավական բարդ համակարգով։

Հատակագծային այս կառուցվածքն արտահայտելու համար սխեմայում ավելացված է ևս մեկ միջանկյալ օղակ, պայմանականորեն պատկերելով մեկից ավելի դարավանդներ ունեցող ամրոցներ։

Այս հուշարձաններում ստորոտից դեպի բլրի գագաթը տանող ճանապարհը անհրաժեշտաբար մի քանի տեղում պետք է հատեին դարավանդները եզերող հենապատերը։ Բերենք այս հանգույցների լուծման միմյանցից տարբեր երկու օրինակ։

Ծաղկահովտի ամրոցում (գծագր. աղ. 15, ԺԹ) այդ ճանապարհը ձգվում է արևելյան լանջի երկարությամբ, հարավից հյուսիս՝ մոտավորապես նույն անկյան տակ հատելով բլուրն օղակող դարավանդները։ Ճանապարհն իր ողջ երկարությամբ ամրացված է հատուկ հենապատով, որը վերևում միանում է առաջին դարավանդի պարսպին։ Արդեն ներկայացված Մամալար ամրոցում (գծագր. աղ. 15, ԺԸ) դարավանդների հենապատերը չեն փակվում և ստեղծում են բլրի գագաթը տանող ոլորապտույտ ճանապարհ։

Ամփոփելով բլրի վրա կառուցված ամրոցների վերաբերյալ ներկայացված նյութը, կարելի է նշել, որ այս դեպքում ռելիեֆը, անկախ ամրոցի բնույթից և չափերից, ստեղծում է հատակագծային համակենտրոն հորինվածք։ Այսպիսի ամրոցը սկզբունքորեն նախատեսված է բոլորաձև պաշտ-




Աղ. 15 Ամրոցների դասակարգման սխեմա

պանության համար, որտեղ չկան պաշտպանական ուժերի որոշակի կողմնորոշում և նրանց տեղաբաշխման տարածքային տարբերակում։

**Սարաճարքի վրա կառուցված ամրոցներ:** *Այս հուշարձաններում որպես կանոն ամրոցը կառուցված է ձորի կամ կիրճի եզրին, իսկ պարսպից դուրս գտնվող բնակելի կառույցները գրավում են սարահարթի ամրոցին առընթեր տարածությունը (գծագր. աղ. 14)։ Հուշարձանների հատակագծային ընդհանուր կառուցվածքը պատկերող սխեմայում այն արտահայտված է համակենտրոն կիսաշրջանների ձևով, որոնց հատող ուղիղ գիծը պայմանականորեն ներկայացնում է սարահարթի եզրը։ Հատակագծային ավելի բարդ հորինվածքի դեպքում, ըստ ընդունված սկզբունքի, ավելացվում են պաշտպանական պարիսպների շարքերի քանակն արտահայտող միջանկյալ կիսաշրջաններ։*

*Դիտելով աղյուսակում բերված հատակագծերը, կարելի է նկատել, որ ամրոցների կառուցման համար միշտ ընտրվել են սարահարթերի հրվանդանաձև ելուստավորվող հատվածները։ Ամրոցի այսպիսի տեղադրությունը հնարավորություն է տվել գրավել առավելագույն տարածություն պաշտպանության ճակատի, այսինքն՝ պարսպի նվազագույն երկարության պայմաններում։ Սա ընդհանուր սկզբունք է այս խմբի ամրոցների համար։*

*Սարահարթերի վրա կառուցված ամրոցները պաշտպանական տեսակետից ունեն այն առավելությունը, որ ձորի կամ կիրճի կողմից մեծ մասամբ անմատչելի են և այդ հատվածում կարիք չունեն պաշտպանական պարսպի։ Սակայն այս առավելությունը փոխհատուցվում է այն հանգամանքով, որ սարահարթի կողմից ամրոցի հարաբերական բարձրությունը շրջապատի նկատմամբ աննշան է, որ պահանջում է հզոր պաշտպանություն։ Ներկայացված հուշարձաններից միայն Աշկալա ամրոցն է (գծագր. աղ. 14, Բ), որ պարսպապատված է նաև սարահարթի եզրով։*

*Այս խմբի հուշարձանների տիպական օրինակ է Սառնաղբյուր գյուղի Մեծ բերդի ամրոցը (գծագր. աղ. 14, Գ), որի միակ մուտքը գտնվում է աշտարակներով ամրացված պարսպի միջին մասում։ Սակայն ավելի ընդունված էր մուտքը կառուցել սարահարթի եզրին մոտ, ինչպես այդ տեսնում ենք Ցողամարգ—2 ամրոցի հատակագծում (գծագր. աղ. 14, Ե)։ Ամրոցի մուտքի այսպիսի տեղադրությունը պայմանավորված է, իհարկե, պաշտպանական նկատառումներով, քանի որ սարահարթի եզրի առկայությունը նրա մի կողմում նույնպես պաշտպանական արգելք է, որ սահմանափակում է թշնամու հարձակման ճակատը։*

*Մուտքի հատակագծային այսպիսի լուծում ունի նաև Բանդևան—2 ամրոցը (գծագր. աղ. 14, Զ), որ պատկանում է սարահարթի վրա կառուցված և կրկնակի պարիսպ ունեցող ամրոցների թվին։ Հուշարձանների այս վերջին խմբում գոյություն ունի պարիսպների հարաբերական դիրքի երկու սկզբունք։ Մի դեպքում, որ պատկերված է այս գծագրում, երկրորդ պարիսպը ամրողջովին չի ընդգրկում միջնաբերդը, այլ սկիզբ առնելով առաջինից, ընդլայնում է սարահարթի պարսպապատ տարածությունը միայն մեկ ուղղությամբ։ Մյուս դեպքում երկրորդ պարիսպն ավելի մեծ շառավիղով ձգվելով սարահարթի մի եզրից մյուսը, իր մեջ է ընդգրկում միջնաբերդն ամբողջությամբ։ Այսպիսի հատակագծով է կառուցված Արծվաքար—1 ամրոցը (գծագր. աղ. 14, Է)։*

*Այս խմբի հուշարձաններից առավել բարդ հատակագծային հորինվածք ունեն Աղթամիր և Լանջաղբյուր ամրոցները (գծագր. աղ. 14, Ը, Թ), որոնք գրավում են մի քանի հեկտար տարածություն։ Այստեղ առանձին պարիսպներով ամրացված են և՛ միջնաբերդը, և՛ դարավանդները, և՛ բնակելի թաղամասերն ամբողջությամբ։ Լանջաղբյուր ամրոցը, ի տարբերություն մյուսների, պարսպապատ դարավանդ ունի նաև ձորի կողմում, և այդ պատճառով նրա հատակագիծը որոշ չափով հիշեցնում է բլրի վրա կառուցված և հատակագծային բարդ կառուցվածք ունեցող ամրոցները։*

**Լեռնային հրվանդանի վրա կառուցված ամրոցներ:** *Լեռնային հրվանդանը առաջանում է երկու ձորերի կամ հեղեղատների միացման հետևանքով։ Առաջին դեպքում այն ունենում է մեծ, իսկ երկրորդ դեպքում՝ փոքր չափեր։ Սակայն անկախ նրա գրաված տարածության մեծությունից, առաջվում է մոտավորապես եռանկյունաձև հատակագծով մի տարածք, որտեղ ամրոցը զբաղեցնում է նրա ծայրամասը, իսկ բնակելի թաղամասերը տարածվում են հրվանդանի լայն մասում։*

*Երկրաչափական նման պատկերն էլ կարող*




Նկ. 16 Ամրոցների դասակարգման սխեմա

է արտահայտվել այս խմբի հուշարձանների հատակագծային ընդհանուր կառուցվածքը պատկերող սխեմայի վրա։

Այս խմբի հուշարձանների հատակագծերը պատկերող աղյուսակում (գծագր. աղ. 16) առաջին հայացքից անգամ կարելի է նկատել, որ պաշտպանական տեսակետից առավել հզոր են կառուցված դեպի սարահարթն ուղղված պարիսպները, որոնք մեծ մասամբ ամրացված են նաև որմնահեցերով և ղանգվածեղ աշտարակներով։ Ինչպես սարահարթի վրա կառուցված ամրոցներում, այս հուշարձաններում ևս նկատվում է որոշակի ձգտում՝ մուտքերը կառուցելու ձորի կամ հեղեղատի եզրին։ Այսպիսի հուշարձանի պարզ և տիպական օրինակ է Յողամարգ—1-ը (գծագր. աղ. 16, Գ)։ Շիշբլուր ամրոցում (գծագր. աղ. 16, Ը), որտեղ հրվանդանը սարահարթին կապող պարանոցը ժայռոտ է և նեղ, այս կողմից պաշտպանությունը ուժեղացնելու նպատակով ժայռի մեջ, պարսպին զուգահեռ, լայնական ուղղությամբ փորված է խրամատ։

Լեռնային հրվանդանի վրա կառուցված ամրոցներում երկրորդ պարիսպը ընդհանրապես իր մեջ է ընդգրկում նրա տարածքի մի նոր հատված՝ սարահարթի կողմում (գծագր. աղ. 16, Թ)։ Սակայն, երբեմն, երբ լանջերի թեքությունը մեծ չէ, նա շրջանցում է հրվանդանի գագաթը բոլոր կողմերից, առաջին պարսպից որոշ հեռավորության վրա և նրան զուգահեռ՝ սահղծելով օղակաձև դարավանդ (Ուջան, Լուսակերտ, գծագր. աղ. 16, ԺԱ, ԺԲ)։ Կրկնակի պարսպով հուշարձանների բնորոշ օրինակներ են Բեշտաշենի ամրոցը (Վրաց. ԽՍՀ, գծագր աղ. 16, Ժ), որն ունի ամրաշինական կառույցների ու, հատկապես, մուտքերի բարդ և կատարյալ համակարգ, և Նառնաղբյուր գյուղի Փոքր բերդի ամրոցը (գծագր. աղ. 16, Ժ), որտեղ մասամբ պահպանվել են ամրոցի ներքին կառույցների հիմքերը։

Հատակագծային հորինվածքի բազմաթիվ տարբերակներ կարող են ունենալ առավել մեծ ամրոցները և բնակատեղիները՝ լեռնային հրվանդանի ռելիեֆի պայմաններում։ Այս կարգի հուշարձաններից նշանավոր է Մոտկան ամրոցը (գծագր. աղ. 16, ԺԶ), որի միջնաբերդն ունի մոտ կես կիլոմետր երկարություն, լայնական միջնապարիսպներով բաժանված ութ հատվածների, լանջերին ունի պարսպապատ մի քանի դարավանդ և բնակատեղիի հետ միասին գրավում է մոտ 40 հա մակերես։

Ներկայացված ամրոցների ընդհանուր հատակագծային հորինվածքը, ինչպես տեսանք, հիմնականում պայմանավորված է ռելիեֆի բնույթով (բլուր, սարահարթ, հրվանդան) և հուշարձանի մեծությամբ կամ կառուցվածքային բարդությամբ, որ պայմանականորեն բաժանված է նույնպես երեք տիպի. պարզ՝ մեկ պարսպով, միջին՝ երկու պարսպով և բարդ՝ երեք և ավելի պարիսպներով։

Այս գործոնների տարբեր համադրություններով են ստեղծվել ամրոցների հատակագծերի բոլոր հնարավոր սկզբունքային տարբերակները, որ բնորոշ են ոչ միայն իրենց առաջացման և նախնական զարգացման՝ բրոնզի և վաղ երկաթի դարաշրջաններին, այլև ունենալով քաղաքաշինական և պաշտպանական ռացիոնալ բնույթ, ընդհանուր գծերով պահպանվել և զարգացել են հետագայում՝ Վանի թագավորության, անտիկ և միջնադարյան դարաշրջաններում։

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Հինարևելյան աշխարհը, որը ժամանակին տարածվում էր Առաջավոր Ասիայից մինչև Խաղաղ օվկիանոսի հեռավոր ափերը, իր կազմում ընդգրկում էր նաև Հայկական բարձրավանդակի երբեմնի հզոր և մշակույթի տեսակետից զարգացած ուրարտական երկիրը։ Այդ են վկայում, պատմական հին տարեգրություններից բացի, նաև հնագիտական նորագույն պեղումների հայտնագործությունները, որոնք պարբերաբար կատարվում են Հայկական ԽՍՀ-ում, ինչպես նաև նրա սահմաններից դուրս՝ երբեմնի Ուրարտուի պատմական տարածքում։

Ասորեստանյան տարեգրությունները, որոնք Ուրարտուի պատմության հետազոտության վաղ շրջանի հիմնական, իսկ որոշ դեպքերում նաև միակ աղբյուրներն էին, Ասորեստանից հյուսիս փռված տարածքներն անվանում էին հավաքական և ինչ-որ չափով նաև ընդհանրացված ձևով՝ Նաիրի երկիր կամ երկրներ։ Նաիրին կազմված էր բազմաթիվ ցեղախմբերի միավորումներից։ Այդ երևում է թեկուզ այն փաստից, որ Ասորեստանի Թուկուլթինինուրտա Ա (1243—1221) թագավորի օրոք Նաիրին կարողացավ ռազմի դաշտ դուրս բերել 43 թագավորների զորքերը։

Այսպիսով Ուրարտուի նախապատմությունը թաղված է խոր անցյալի՝ նաիրի-ուրարտական բազմաթիվ ցեղախմբերի համատեղ գոյակցման վաղնջական ժամանակաշրջանում։ Դեռևս մ.թ.ա. II հազարամյակում Նաիրի-Ուրարտուի այդ ցեղախմբերը, իսկ նրանցից հետո նաև Ասորեստանը, պատմական ժամանակաշրջանի որոշ հատվածում, մտնում էին հինարևելյան Միտանիական հզոր թագավորության կազմի մեջ։ Միտանին եգիպտական աղբյուրների «Նախարինա» երկիրն էր, իսկ ասորեստանյան սեպագրերի «Խանիգալբաթը» գրավում էր Վերին Միջագետքի տարածքը՝ Խաբուր և Բալիխ գետերի հովիտները, իր Վաշշուգանե մայրաքաղաքով[1]։

Նաիրի-ուրարտական ցեղախմբերի ու Ասորեստանի պատմական համատեղ գոյակցումը Միտանիական թագավորության կազմում չէր կարող չանդրադառնալ նրանց մշակույթների միջև գոյություն ունեցող ընդհանուր գծերին։ Այդ է պատճառը, որ հետագայում, երբ կազմավորվում են ինքնուրույն ու անկախ ուրարտական և ասորեստանյան պետական միավորումները, նրանց մշակույթների տարբեր ոլորտներում տեսանելի են դառնում որոշակի զուգահեռներ։ Մենք մասնավորապես նկատի ունենք քաղաքաշինության, որմնանկարչության և շինարարական արվեստի բնագավառները։

Տվյալ զուգահեռների առումով արժանի է ուշադրության Ա. Խաչատրյանի՝ նույն հարցին վերաբերող հետազոտությունը, որի եզրակացությունները հանգում են նրան, որ Ուրարտուի պատմությունը, որպես այդպիսին, Խուրի-Միտանի պետության պատմական կյանքի շարունակությունն է, որի համար, ինչպես կարծում ենք, առկա են օբյեկտիվ հիմքեր[2]։

Նաիրի-Ուրարտուի դարաշրջանում պետական մի այլ միավորում էր Հայասա-Ազզին, որը նույնպես իր նշանակալից պատմական դերով գրանցվեց Առաջավոր Ասիայի այս հատվածում։ Դեռևս Սուպպիլուլիումաս Ա թագավորի ժամանակներից լինելով խեթերին ենթակա երկիր, միաժամանակ այն ուղիներ էր փնտրում ազատագրվելու այդ հզորագույն հարևանի կախյալ վիճակից։ Հայասան հայերի բնօրրանն էր, ինչպես գրում է Գր. Ղափանցյանը։ Նրա կարծիքով, հայասացիները կարողացան հայացնել Վե-

*րին Եփրատի շրջանում ապրող մի շարք ցեղախմբերի, այդ թվում՝ խեթերին, ինչպես և իրենց՝ ուրարտացիներին*[3]*։*

*Սակայն, պատմական տվյալ փոխակերպումների բովում մշակութային արժեքները, մասնավորապես ճարտարապետությունը, չէին կարող անհետ կորչել դարերով ստեղծված իրենց հարուստ ավանդույթները։ Խեթական ճարտարապետության ավանդները, ամենայն հավանականությամբ, Հայասա-Ազզիի մշակույթի տարածման ուղիներով իրենց փոխակերպված արտահայտությունը գտան ուրարտական շինարարական արվեստում։ Այս առումով ուրարտական ճարտարապետական մշակույթի ակունքներում, որպես կազմավորող ավանդույթներ, առկա են խեթական, խուռի-միտանիական, ասորեստանյան, ինչպես նաև Հայասա-Ազզիի ճարտարապետական մշակույթների հինարևելյան խոր արմատներ։*

*Սկսած մ.թ.ա. IX դարից Նաիրիի ցեղախմբերից անջատվում է նրանից ամենախոշորը և կազմավորվում որպես ինքնուրույն ուրարտական պետություն։ Իսկ բուն Նաիրին, հիշյալ ցեղային միավորման մեջ կորցնելով իր քաղաքական կշիռն ու ազդեցությունը, զրկվում է տարածքի զգալի մասից, փոքրանում և իր անհետացման շրջանում պարփակվում Խուբուշկիա երկրի սահմաններում, Վանա լճից հարավ՝ Արևելյան Տիգրիսի (Բոհտան) ափերին*[4]*։*

*Եվ այսպես, արդեն կազմավորված Ուրարտուն, որի մասին առաջին հիշատակությունը «Ուրուատրի» անվամբ տրված է Սալմանասար I-ի (մ.թ.ա. 1280—1261 թթ.) սեպագիր արձանագրության մեջ*[5]*, գրավում էր Վանա լճի հարավ-արևելյան տարածքները։*

*Ասորեստանյան աղբյուրները, որոնք թեև կցկտուր տեղեկություններ են հաղորդում իրենց հյուսիսային հարևանի մասին, այնուամենայնիվ հուշում են, որ Ուրարտուն, կամ այն ժամանակ դեռ Նաիրի-Ուրարտուն, ռազմական տեսակետից ներկայացնում է բավական թույլ միավորում, որը հաճախ էր ենթարկվում Ասորեստանին։*

*Ուրարտուի միավորմանն ու հզորացմանն անուղղակիորեն օժանդակում էին նաև Ասորեստանի բազմաթիվ արշավանքներն այդ երկրի վրա*[6]*։*

*Ուրարտական թագավորները հզորության իրենց վերելքի տարիներին կազմակերպում են մի շարք արշավանքներ, որոնցից ռազմաստրատեգիական առումով կարևորագույններն ուղղված էին դեպի հարավ-արևելք՝ Ուրմիա լճի շուրջը, արևմուտք, և դեպի հարավ-արևմուտք՝ հյուսիսային Սիրիա*[7]*։ Վերջիններս նպատակ ունեին տիրանալ Սիրիայի երկաթի հանքերին ու մետալուրգիական կենտրոններին*[8]*։*

*Արգիշտի Ա-ի և Սարդուրի Բ-ի օրոք արդեն բավական հզորացած Ուրարտուն ծրագրում էր, ներթափանցելով թևերից՝ աստիճանաբար շրջապատել Ասորեստանը։ Ուրարտացիները նախապես գրավում են Մանա, Մելիդ ու Կումախա երկրները ու հասնում մինչև Բաբելոնի տարածքի Դիալա գետի հովիտը։*

*Խափանելով Ասորեստանի առաջխաղացումը դեպի հյուսիս, ուրարտական թագավորները սկսում են ընդլայնել իրենց պետության սահմանները, հիմա արդեն, ի հաշիվ Ազա երկրի, որը գտնվում էր Արարատյան դաշտավայրում և որը հետագայում նշանակալից դեր խաղաց Ուրարտուի տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքում։ Ազա երկիրը նվաճելու գործում առաջին քայլերը կապված են Մենուա թագավորի անվան հետ։ Իր գահակալության տարիներին նա հասավ Արարատ լեռան հյուսիսային ստորոտները և դուրս եկավ Արաքսի աջ ափը։ Գրավելով այս նոր տարածքները, ուրարտացիք այնտեղ հիմնադրում են իրենց ռազմաստրատեգիական հենակետերը քաղաք-ամրոցի ձևով, որոնք միևնույն ժամանակ հանդիսանում էին նվաճված նահանգների նաև վարչական կենտրոնները։*

*Վաղագույն նման կենտրոններից մեկը՝ Մենուախինիլին, հիմնադրված է Մենուա թագավորի կողմից՝ Արաքս գետի աջ ափին, ժամանակակից Տաշբուրունի շրջակայքում*[9]*։ Անշուշտ, Մենուայի ռազմաստրատեգիական հեռատես քաղաքականությունն էր, որ հետագայում տվեց իր ցանկալի արդյունքները։ Այսպես, Արգիշտիի օրոք (VIII դարի առաջին կես) ուրարտացիք շարժվում են դեպի հյուսիս, անցնելով Արաքսի ձախ ափը, հասնում մինչև Սևանա լիճ ու Արագած լեռան շրջակայքը։ Այս գրավված տարածքների իրացումը ընթանում էր այնքան արագ, որ միայն Արգիշտիի ժամանակ այստեղ հիմնադրվեցին այնպիսի խոշոր քաղաքներ, ինչպիսիք էին Էրեբունին ու Արգիշտիխինիլին։ Ուրարտացիք այստեղ հիմնավորվել էին բավականաչափ երկարատև ու ամուր, մինչև իրենց պետության վերջ-*

նական անկումը, այդ ընթացքում արմատապես հեղաբեկելով տեղական ցեղերի պատմական ճակատագիրը և աստիճանաբար ու խորապես ենթարկելով նրանց իրենց մշակույթի ազդեցությանը:

Արգիշտի Ա-ից հետո Արաքս գետից հյուսիս կատարվող նվաճումները շարունակում էր նրա որդին՝ Սարդուրի Բ-ն, որն այդ ժամանակ արդեն իր ձեռքում էր պահում Միջերկրական ծովի առևտրական հիմնական տարանցիկ ճանապարհները, իսկ նրանից հետո էլ այդ նույն քաղաքականությունը շարունակում էր Արգիշտիի թոռը՝ Ռուսա Ա-ն:

Սակայն, Ռուսա Ա-ի օրոք ուրարտացիները ստիպված էին ճաշակել նաև ռազմական անհաջողություններ մ.թ.ա. 714 թ. Սարգոն Բ-ի հայտնի արշավանքի ժամանակ: Այնուամենայնիվ ուրարտացիք շարունակում էին ամուր պահել իրենց ձեռքում ինչպես երկրի կենտրոնական մարզերը, այնպես էլ ծայրամասերը: Ավելին, նրանք շարունակում էին բերդաշինական նշանակալից աշխատանքներ ծավալել երկրի տարբեր վայրերում:

VII դարի (մ.թ.ա.) կեսերին Ռուսա Բ թագավորը Արարատյան դաշտում կառուցեց մի հոյակապ ամրոց-քաղաք՝ Թեյշեբաինին, որի հնագիտական ուսումնասիրությունը Ուրարտուի պատմության և մշակույթի, այդ թվում նաև ճարտարապետության համար շատ կարևոր է:

Մ.թ.ա. VII դ. վերջերին Ուրարտուն, ինչպես նաև Ասորեստանը զգալիորեն սկսում են թուլանալ ու երկյուղ կրել բարձրացող Մարաստանի ու բաբելոնական նոր ու հզորագույն ռազմաքաղաքական միավորումից: Եվ, իրոք, կարճ ժամանակից հետո այդ միավորումը մահացու հարված հասցրեց Ասորեստանին ու, չնայած նրան օգնության հասնող երբեմնի նրա ախոյաններ Ուրարտուի ու Մանայի մեծագույն ճիգերին, Ասորեստանը վերջնականապես անհետանում է պատմության ասպարեզից: Ուրարտուի երկյուղը անհիմն չէր, քանի որ նրան ևս շուտով վիճակվեց նույն ճակատագիրը: 590—585 թթ., ըստ Լեման-Հաուպտի, Մարաստանի հուժկու հարվածների ներքո կործանվում է Ուրարտուի թագավորությունը:

Այդ իրադարձությունները շրջադարձային էին Հին արևելքի պատմական կյանքում: Կյուրոսի հիմնադրած, իսկ հետագայում Կամբիզեսի ու Դարեհի կողմից ընդարձակված աքեմենյանների պետությունն իր գերիշխանությանը ենթարկեց հին աշխարհի մի զգալի մասը: Նվաճված երկրների շարքում էր նաև Հայաստանը, որը պատմական ասպարեզում նոր էր փոխարինել Ուրարտուին ու դեռևս լիովին չէր կազմավորվել որպես ինքնուրույն հզոր պետություն:

Ուրարտական երբեմնի հզոր պետությունը հինարևելյան երկրների շարքում առաջավոր էր նաև իր մշակույթով, մասնավորապես ճարտարապետության զարգացման բարձր մակարդակով: Դրա վկայությունն են այն հուշարձանները, որոնք հայտնաբերվել են երկրի կենտրոնական մասում՝ Վան քաղաքի շրջակայքում, Թոփրախ-կալեում, Ալթըն-թեփեում, Կայալիդերեում, Կեֆ-Կալեսիում, Արծկեում (Ադիլջևազում), ապա Էթիունի երկրում, ինչպես նաև Ուրարտուի արևելյան մարզերում:

Վերջին տարիների հնագիտական հետազոտությունների նշանակալից արդյունքները զգալիորեն ընդարձակեցին մեր պատկերացումները Ուրարտուի արևելյան մարզերի ճարտարապետական մշակույթի մասին: Այստեղ հայտնաբերվեցին մի շարք քաղաքների ու բերդերի մնացորդներ՝ Ռուսա Բ-ի կառուցած նշանակալից Ռուսախինիլիում (Բաստամ), Վերախրամում, Ալավերդիքենդում, Կալե-Թազարուլադում, Դաշաթլույում, Ազրար-թեփեում, բազմաթիվ փոքր կառույցներ, որոնք աչքի են ընկնում իրենց ճարտարապետական յուրահատուկ հորինվածքներով:

Արևելյան մարզերի ճարտարապետական մշակույթն իր տաճարային կառույցների հորինվածքների առումով որոշակիորեն առնչվում է կենտրոնական մարզերի տաճարների ձևերի հետ, միաժամանակ տարբերվելով Էթիունի երկրի ուրարտական նույն կառույցներից:

Ուրարտական ճարտարապետության հայտնի կառույցվածքներից ուշագրավ են աշխարհիկ ու պաշտամունքային շենքերը, բազմաթիվ փոքր կառույցները, ոռոգման ջրանցքները, թունելներն ու մեմորիալ կոթողները:

Վերջին տասնամյակում կատարված պեղումները պարզում են այդ կառույցների ձևերը, չափերն ու ծավալները, հորինվածքների ու կառուցվածքային տարրերի բնորոշ կողմերը, շինարարական նյութերի յուրահատկությունները: Իսկ Արինբերդում հաջողվեց հայտնաբերել նաև մի

շարք ուրարտական տերմինների ճարտարապետական արտահայտությունները, ինչպես, օրինակ, Ari; Susi, E-gal, burgana և այլն:

Ուրարտական մշակույթի կարևոր հայտնագործությունները դարձան նաև նրա բարձրարվեստ որմնանկարները՝ աշխարհիկ ու պաշտամունքային թեմաներով, որոնք ընդլայնեցին մշակույթի այդ բնագավառի մասին եղած պատկերացումները:

Ուրարտուի մշակույթի հետ մեկտեղ, Հայկական լեռնաշխարհում դեռևս անհիշելի ժամանակներից սկսած ծաղկում էր տեղական ցեղերի մշակույթը, որը, եթե դատելու լինենք պեղումներից հայտնաբերված նյութերով, գտնվում էր իր ժամանակի զարգացման բարձր մակարդակին: Տեղական ցեղերի շինարարական տեխնիկային կարելի է հետամուտ լինել մեգալիթյան մշակույթից, որից Հայաստանում պահպանվել են ինչպես առանձին կանգուն կոթողներ, այնպես էլ հուշարձանախմբեր (Ղոշուն-դաշ, Ուզ, Օշական և այլն): Մեգալիթյան այս կոթողներում դրսևորվում են կեղծ թաղի հստակ պատկերացումներ, դոլմենների կատարյալ ձևեր, մոնումենտալ կրոմլեխներ: Սակայն, հատկապես բազմազան են պահպանված բնակատեղերը կամ, այսպես կոչված, «բերդշենները», որոնք սովորաբար կառուցվում էին բարձր բլուրների գագաթներին, ժայռոտ ձորերի ափերին կամ այլուր, որտեղ ապահովված կարող էր լինել նրանց անառիկությունը:

Ուրարտուի ու էթիունի երկրի տեղաբնիկների (որոնք էթնիկական առումով մոտ էին իրար) մշակույթների երկու դար տևող համագոյակցության պայմաններում պետք է որ ստեղծվեին այդ մշակույթների միաձուլված տարրեր, իսկ ճարտարապետության բնագավառում կատարյալ մի փոխներթափանցում:

Ելնելով այդ համոզմունքից, կարծում ենք, որ ուրարտական ճարտարապետության բազմաթիվ կոթողներում պետք է տեսնել նաև տեղական ծագում ունեցող ձևերի արտահայտություններ:

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

### ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ

*Ուրարտական քաղաքները, որպես կանոն, փռված էին բարձր բլուրների ստորոտներում, որոնց գագաթներին, շրջապատված հզոր պարիսպներով, վեր էին խոյանում նրանց միջնաբերդերը։*

*Բարձր բլուրները ռազմական արշավանքների ժամանակ միակ հզոր ու հուսալի ապաստարաններն էին հնամենի բնակավայրերի բնակիչների համար։ Միջնաբերդերի իշխող բարձր դիրքը իրենց առաջ փռված հարթավայրերի նկատմամբ նպատակ ուներ տեսադաշտում պահել բոլոր այն ճանապարհները, որոնք տանում էին դեպի տվյալ բնակավայրը։ Մյուս կողմից, բլուրների գագաթները պարփակող հզոր պարիսպները բնակավայրերի պաշտպանության հենակն էին։ Բնակավայրերի մակերեսները սկզբնական շրջանում նվազագույն չափերի էին հասցվում, քանի որ դրանով համապատասխանաբար կարճացվում էին բերդապարիսպների երկարածները, որով առավել խտացված էր դառնում բերդերի պաշտպանունակությունը։*

*Բերդերի հետագա հզորացումն արտահայտվում էր մի քանի շարք արտաքին պաշտպանական պարիսպների կառուցմամբ։*

*Թ. Թորամանյանի կատարած մի շարք հին-լոպյան բերդերի հետազոտություններից պարզվում է, որ նրանց պարիսպները, հատելով բլուրները տարբեր մակարդակների վրա հորիզոնական ուղղությամբ, միևնույն ժամանակ հատում էին բլուրների գագաթներից դեպի ստորոտը իջնող տարածքը՝ բլուրների ամբողջ բարձրությամբ առեղծելով պաշտպանական ինքնուրույն բջիջներ։ Սակայն զարգացման նախնական շրջանում բնակչությունը ամբողջովին ապավինում էր լոկ պարիսպների անառիկությանը։ Այդ կապակցությամբ էլ բլուրների կառուցապատման համակարգում պարիսպները դառնում էին արտաքնապես շեշտված նրա հիմնական տարրը, իսկ բոլոր կենցաղային շինությունները նախատեսվում էին երկրորդ պլանի վրա։ Թ. Թորամանյանը որպես նման բնակավայրերի օրինակ բերում է ժամանակագրությանը դժվարությամբ որոշվող, թերևս ուրարտական կամ ավելի վաղ դարաշրջանից՝ Հաջի-Խալիլը, Հասանը և մյուսները[1]։*

*Զարգացման հետագա փուլին վերաբերող օրինակ կարող են ծառայել Սևանի հյուսիսարևմտյան ափերին, Լճաշեն գյուղի մոտ փռված բերդի մնացորդները։ Այստեղ երևում են պաշտպանական հզոր պարիսպների երկու շարք, որոնք շրջապատում են բլուրը, ինչպես նաև այնպիսիք, որոնք հատում են բլուրը շառավիղային ուղղությամբ։ Այստեղ, բերդի հորինվածքում, արդեն տեսանելի է կենտրոնական բակի շեշտված տարածքը, որում նրա շինությունները, կառչելով տեղանքի ծալքերին, անկանոն ձևով կցված են արտաքին պարիսպներին։*

*Նշված օրինակներն արտահայտում են բլուրների բարձունքների վրա հիմնված բերդերի նախատիպից սկսվող զարգացումը, որը հետագայում շարունակվում է հարթավայրի տարածքներում, ուր և առեղծվում էին վաղնջական բնակատեղերի նախնական ձևերը։*

*Քաղաքաշինական նման սկզբունքը օրինականացված չէր Միջագետքում, որ պայմանավորված էր երկրի գերազանցապես հարթավայրային տեղանքով։ Դրա մասին է խոսում Միջա-*










*Աղ. 17 Բաստամ. ընդհանուր հատակագիծ, մուտքի հատակագիծ, սյունազարդ դահլիճի համալիր*

գնարի հավվագեպ բլուրներից մեկը՝ Թել-Ակուրը, որն իր ռազմաստրատեգիական մեծագույն առավելություններով Կալխուի (Նեմրուդ) հուսալի պաշտպանության նեցուկը կարող էր լինել։ Սակայն ժամանակին այն չգրավեց այդ քաղաքի հիմնադիրների ուշադրությունը և ասորեստանյան այդ մայրաքաղաքը զրկվեց 6 կմ հեռավորության վրա հարթավայրի տարածքում վեր խոյացող հիանալի պաշտպանական հենակետից։ Նման բլուրը, որը հենց այդ առումով էլ գրավեց մեր ուշադրությունը, իր արժանիքներով երբեք դուրս չէր մնա ուրարտական քաղաքաշինարարների տեսադաշտից։

Ուրարտական քաղաքները, որոնք սեպագիր արձանագրություններում նշվում են URU-գաղափարագրով (patari), բավական հաճախ հիշատակվում են ուրարտական, ինչպես նաև ասորեստանյան տարեգրություններում։ Այդ տարեգրությունների հետազոտությունները համոզում են, որ URU-ն նրանցում նշանակում է «բնակավայր» ընդհանրապես, անկախ նրա մեծությունից կամ նշանակությունից։ Միայն այսպես կարելի է հասկանալ URU-ների մեծաքանակ գրավումները։ Սարդուրի Բ-ն հաղորդում է, որ մեկ օրում Իգանի երկրում գրավել է 200 քաղաք ու 35 բերդ։

Նույն Սարդուրի Բ-ն Սեկենդելի արձանագրության մեջ հայտնում է. «մեկ օրում հաղթեցի ես 55 քաղաք», միևնույն ժամանակ ավելացնելով. «թագավորական Լիբլիանի քաղաքը, որը ամրացված էր, ես գերեցի մարտում»։ Պարզվում է, որ մեկ օրում գրաված բազմաքանակ այդ քաղաքները փաստորեն ամրացված բնակավայրեր էին և, հետևապես, բոլորը չէ, որ գրավվում էին մարտական գործողությունների հետևանքով, ինչպես այդ ասվում է Լիբլիանիի մասին[2]։

Մյուս կողմից, ինչպես երևում է նշված թվերից, ավելի քիչ թվով բերդեր էին գրավվում, քան քաղաքներ։ Հետևապես, միշտ չէ, որ քաղաքներն ունեին բերդեր։ Բերդերը կազմում էին այն միջուկը, որոնց շուրջը փռված էին քաղաքները։ Այդ հաստատվում է բազմաթիվ բերդերի, մասնավորապես՝ Անիաշտանիա բերդի օրինակով, որն իր շուրջն ուներ 17 քաղաք։

Սակայն, բացի քաղաքներից, նրանց տարածքում էին գտնվում նաև ոռոգման ջրանցքներ, մշակվող դաշտեր, այգիներ, անտառներ, որոնք միասին կազմում էին գյուղատնտեսական խոշոր միավորումներ։ Հասկանալի է, որ նման տարածքների պարսպապատումներն անիմաստ միջոցառումներ կլինեին։ Նրանցում ամրացված էր միայն կենտրոնական քաղաքն իր բերդով (E—gal)։ Այդ ամբողջ տարածքը, ինչպես կարծում ենք, Asuni էր, կամ «մարզ», ինչպես դա վերծանում է Ի. Դյակոնովը[3]։ Կարելի է նաև պնդել, որ նման միավորումը արտահայտում էր տնտեսական մի ամբողջ համակարգ։ Տարածական առումով այն պատկերում է կենտրոնական ամրացված քաղաք E—gal-ով, որի շրջակա տարածքներում փռված էին URU-ները կամ գյուղական այն միավորումները, որոնք կազմում են համակարգի տնտեսական հիմքը։

Միայն այդ կենտրոնական քաղաքների մակերեսները, ելնելով պեղումների տվյալներից, հավանաբար կազմում էին շուրջ 100—200 հեկտար։ Սակայն այդ թվերը չեն կարող հաստատուն համարվել, քանի որ հինարևելյան քաղաքների մակերեսները խիստ տարբեր են։ Մեգիդոն, օրինակ, սահմանափակվում էր ընդամենը 5 հեկտար տարածքով, Կախունը (Եգիպտոս)՝ 10 հեկտարով, Դուռ-Շառուկինի տարածքը 274 հեկտար էր։ Արտակարգ մեծ չափերի էր Արգիշտիխինիլին, որն ուներ շուրջ 400—500 հեկտար տարածք[4]։

Նման տարբերությունները գուցե հետևանք են այն բանի, որ հինարևելյան ոչ բոլոր քաղաքներն են պեղված իրենց իրական տարածքների լրիվ սահմաններում։ Ինչ վերաբերում է Արգիշտիխինիլիին, կարծում ենք, այդ սահմաններում նկատի են ունեցել քաղաքի նաև գյուղական մոտակա բնակավայրերի տարածքները։

Քաղաքների տարածքները որոշ առումով արտահայտում են նաև քաղաքների ազգաբնակչության քանակը։ Թեյշեբաինին, օրինակ, իր կառուցապատման խտությամբ, եթե այն համեմատելու լինենք համանման քաղաքների հետ, պետք է ունենար շուրջ 20 հազար բնակիչ։

Հարկ է, սակայն, ավելացնել, որ ամրացված քաղաքների ընդլայնմանը խոչընդոտում էին դրանք պարփակող ռազմական պահանջներով կառուցված արտաքին պարիսպները։ Այս պատճառով է, որ ուրարտական քաղաքներում առանձնապես սուր էին դրված հողատարածությունների նպատակահարմար օգտագործման հետ կապված հարցերը։ Հավանաբար, այս պրոբլեմը ևս

իր հերթին մեծապես խթանել է ուրարտական քաղաքներում բազմահարկ բնակելի շենքերի առաջացմանը։ Պարզ է նաև, որ բացի այդ հանգամանքից, բազմահարկ շենքերով հարստացվում էին փողոցների ծավալատարածական հորինվածքների ճարտարապետական արտահայտությունները, որոնց բարձր արժանիքները, ի դեպ, տեղ են գտել Մովսես Խորենացու մոտ՝ Տուշպայի նկարագրություններում։

Կարծում ենք, ուրարտական քաղաքաշինության այդ սկզբունքները ժամանակին ավելի սերտ պետք է կապված լինեին նաև խեթական, ինչպես և հարևան Հայասա-Ազզիի քաղաքաշինության ավանդույթներին։ Այն, որ քաղաքները բլուրների գագաթներին ունեին ամրացված միջնաբերդեր, օրինաչափ էր խեթերի մոտ, և դրսևորվում է ոչ միայն երկրի մայրաքաղաք Խաթթուսայի ցայտուն օրինակով, այլև վկայում է Թագավոր Մուրսիլիս Բ-ի տարեգրությամբ, որի մեջ, ի դեպ, նա զարմանք է հայտնում այն բանի համար, որ հարևան Պալա երկիրը չուներ ամրացված քաղաքներ կամ պարսպապատված հենակետեր։ Տեղանքի առումով բարդ պայմաններում էր գտնվում Հայասայի գլխավոր քաղաք Ուրան, որի բլրի գագաթին կառուցված բերդից, ինչպես նման դեպքերում նաև բոլոր ուրարտական բերդերից, դիտվում էր հեռուները տարածվող ստրատեգիական կարևոր մայրուղին[5]։

Ուրարտական քաղաքների պատմական կազմավորումը, մասնավորապես նրանց տեղի ընտրության տեսակետից, համաձայն ասորեստանյան աղբյուրների, պայմանավորված էր քաղաքների այնպիսի փոխադարձ դասավորությամբ, որոնք իրար հետ առնչվում էին տեսողական կապով։ Ռազմական կամ այլ վտանգի դեպքում քաղաքների բարձր բլուրների վրա գտնվող միջնաբերդերից, որոնք պահպանում էին տեսողական այդ կապը, վտանգը ազդարարվում ու իրար էր հաղորդվում խարույկներից բարձրացող կրակի պայմանական նշաններով, և դրանով փոխադարձաբար համաձայնեցվում էին քաղաքների անհրաժեշտ ռազմական գործողությունները։

Սարգոն Բ-ի նկարագրություններից երևում է, որ ուրարտական ամրացված վայրերը այդ ձևով կապակցվելով իրար հետ, կազմում էին մեկ ընդհանուր շղթայաձև համակարգ[6]։

Ի դեպ, կրակի ազդանշանները կիրառվում էին նաև Ասորեստանում՝ հույժ կարևոր տեղեկությունները շտապույթ փոխանցելու համար։

Այսպիսով, ուրարտական քաղաքաշինական ծրագիրը թելադրվում ու պայմանավորվում էր հիմնադրվող քաղաքների ոչ միայն տարածքների արժեքավորման տեղային հանգամանքներով, այլ հիմնականում ու առավելապես տվյալ տարածքի համակարգում փոխադարձաբար շաղկապված նրանց ռազմաստրատեգիական դիրքով։

Սակայն ամեն դեպքում չէ, որ հնարավոր էր քաղաքների միջև տեսողական կապ ստեղծել։ Նման դեպքերի համար որպես կապակցող անհրաժեշտ օղակներ քաղաքների միջև վեր էին խոյանում աշտարակաձև կառույցներ՝ սահմանափակ ներքին տարածությամբ, ինչպիսիք էին Դանաթլուն, Ագրար-Թեփեն (Իրան) և այլն, կամ սովորական աշտարակներ, որոնք պատկերված են ուրարտական արվեստի տարբեր ձևերում՝ նրանցից վեր խոյացող՝ նիզականման կրակ պատկերող նշանով։

Պաշտպանական միջոցառումներն ուրարտական քաղաքաշինության բնագավառում չէին սահմանափակվում մեր բերած օրինակներով։ Ռազմական միջոցառումներ ձեռնարկվում էին նաև քաղաքների ներքին տարածքներն ապահովելու համար, այն հնարավոր իրավիճակների պահին, եթե այնտեղ ներխուժեին թշնամու զորաբանակները։ Այդ դեպքերի համար է, որ քաղաքների հատվածները բաժանվում էին հզոր պարիսպներով, որոնց նպատակն էր խափանել քաղաք ներխուժած թշնամու ազատ տեղաշարժերը և դրանով ստիպել ծանր մարտեր մղել ամեն մի թաղամասի համար։

Հատակագծման այս սկզբունքները, որոնք իրագործվել են նաև Հին Հունաստանում, իրենց տեսական հիմնավորումը գտան Արիստոտելի երկերում[7]։ Սակայն, ռազմական պրոբլեմի հետ մեկտեղ, քաղաքաշինության մեջ ոչ պակաս կարևորություն ունեին նաև սոցիալական մեկնակետերը։ Նորից անդրադառնալով քաղաքային պարիսպների համակարգին՝ կարող ենք նշել, որ դրանք կառուցվում էին ոչ միայն արտաքին թշնամիների դեմ, այլ միևնույն ժամանակ ապահովում էին պալատի մեկուսացումը քաղաքի բնակիչներից։ Ուրարտուում, օրինակ, Թեյշեբաինիում, պաշտպանական նման պարիսպները ապահովում էին պալատի մեկուսացումը քաղաքի ստորադաս ազգաբնակչությունից։ Բնորոշ է նաև, որ Թեյշեբաինիում դեպի փողոց դուրս ե-










Աղ. 18 Արգիշտիխինիլի. ա) միջնաբերդի վերակազմություն, բ) ընդհանուր հատակագիծ, գ) միջնաբերդի հատակագիծ, դ) սիտուացիոն հատակագիծ

կող բնակելի տների բոլոր արտաքին պատերը, որպես կանոն, հնէաբանական համապատասխանության նմանությամբ, խուլ էին, իսկ տների միակ դռները բացվում էին թաղամասերի փողոցների վրա:

Եթե դիտարկենք Թեյշեբաինիի, ինչպես և մյուս քաղաքների թաղամասերի կամ առանձին շենքերի հատակագծերը, չափերը, սենյակների քանակը, համապատասխանությունն ընդհանրապես, ինչպես և շենքերի դիրքը փողոցների նկատմամբ, կարելի է պատկերացում կազմել սոցիալական տարբեր խավերի տեղաբաշխման սկզբունքների մասին քաղաքներում: Այդ հարցի պարզաբանման համար առատ նյութ են տալիս Թեյշեբաինի քաղաքի պեղումները: Այնտեղ, վերնախավի բնակելի տները կառուցված են սեկցիոն սկզբունքով, բավական ընդարձակ ներքին տարածություններով ու սյունազարդ սենյակներով: Եվ այդ առումով որոշակիորեն արտահայտում են իրենց պատկանելությունը:

Սակայն նույն պեղումները սպառիչ պատկերացում չեն տալիս ուրարտական քաղաքների բարեկարգման մակարդակի մասին: Առանձին տեղեկություններից կարելի է միայն ենթադրել, որ նրանցում եղել են ջրմուղներ, ջրամբարներ, [illegible], զբոսայգիներ ու բաղնիքներ: Պահպանվել են նաև ասորեստանյան թագավորների ուղղակի վկայությունները ուրարտական քաղաքների հրապարակներում վեր խոյացող արձանների մասին:

## ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ՔԱՂԱՔՆԵՐԻ ԴԱՍԱԿԱՐԳՈՒՄԸ

Ուրարտուում կային թագավորանիստ, վարչատնտեսական, ռազմական, ինչպես նաև պաշտամունքային նշանակության քաղաքներ:

**Թագավորանիստ քաղաքներ:** Այս խմբին են պատկանում երկրի մայրաքաղաքները՝ Արզաշկուն, Տուշպան, Ռուսախինիլին: Տուշպան եղել է երկրի խոշորագույն քաղաքական, տնտեսական, ռազմական ու պաշտամունքային կենտրոնը և մայրաքաղաքը Ուրարտուի պատմության գրեթե ամբողջ ժամանակաշրջանում: Իսկ եթե իրավացի էր Լեման-Հաուպտը, ապա Ռուսայի օրոք մայրաքաղաքին որպես այդպիսին փոխարինել էր Ռուսախինիլին՝ Թոփրախ-կալեում: Սակայն Ուրարտուում չեն նշվում մայրաքաղաքների այնքան հաճախակի փոփոխություններ, որը բնորոշ էր Ասորեստանին:

**Արզաշկու:** Ադդուրու լեռան շրջակայքում գտնվող երկրի այս առաջին մայրաքաղաքի մասին (մ.թ.ա. IX դար), որը Սալմանասար III-ն (859—824 թթ. մ.թ.ա.) անվանում է Արամե ուրարտացու թագավորանիստ քաղաք, մեր պատկերացումները միանգամայն մակերեսային են: Նրանք ստացված են Բալավատյան դռների վրա կատարված բրոնզյա քանդակի սխեմատիկ գծագրությունից, որի քննությունը ցույց է տալիս, որ միջնաբերդը գտնվել է բլրի վրա, ունեցել է երկու շարք բերդապարիսպներ՝ աշտարակներով ու որմնահեցերով և մուտքերը ավարտվել են կամարներով:

Այն փաստը, որ քաղաքը հարթաքանդակի վրա պատկերված է պաշարման ընթացքում այրվող վիճակում, ցույց է տալիս, որ նրանում կային նաև փայտե կառույցներ:

Սալմանասար III-ի հաղորդումից պարզվում է նաև, որ քաղաքն իր շրջակայքում ունեցել է բազմաթիվ բնակատեղիներ, որոնք տեսել ու ավերել էր նա:

Հետևապես, Արզաշկուն բացի մայրաքաղաք լինելուց, եղել է նաև գյուղատնտեսական բնակավայրերի կենտրոն:

**Տուշպան** փռված էր Վանա լճից արևելք, առափնյա տարածքում և ուներ հզոր միջնաբերդ: Քաղաքն ամրացված էր այնքան հուսալիորեն, որ ասորեստանցիները համարյա թե իրենց բոլոր արշավանքների ընթացքում հրաժարվում էին այն պաշարելու մտքից: Այդ էր պատճառը, որ Տուշպան երբեք չի գրավվել թշնամու կողմից: Բացի դրանից քաղաքը պաշտպանվում էր նաև բերդի համակարգով, որոնք դասավորված էին Տուշպայի մոտակա ու հեռավոր մատույցներում: Դրանցից կարևորներն էին՝ Հայկաբերդը, Խորգոմը, Անզաֆը ու Արալեզքը: Դրանցից Հայկաբերդը մայրաքաղաքի այն կարևորագույն առաջապահն էր, որը գտնվում էր Ասորեստանից եկող ռազմաստրատեգիական հիմնական մայրուղիների վրա:

Տուշպան առայսօր դեռ չի ենթարկվել հնագիտական պեղումների, հետևապես նրա նյութական մնացորդների մասին շատ քիչ բան է հայտնի: Մ. Խորենացին քաղաքի շինարարությունը վերագրում էր Ասորեստանի Շամիրամ թագու-

հում։ Նա թողել է քաղաքի նկարագրությունը, որով որոշակի պատկերացում ենք կազմում այդ քաղաքի մասին։

«...Քիչ տարիներից հետո,—գրում է Մ. Խորենացին,—Շամիրամը գլուխ է բերում հրաշալի շինվածքը՝ ամուր պարիսպներով ու պղնձակերտ դռներով։ Քաղաքի մեջ շինում է նաև բազմաթիվ ընտիր ապարանքներ, կրկնահարկ ու եռահարկ, զարդարված տեսակ-տեսակ գույնզգույն քարերով, և ամեն մեկում պատուհաններ ըստ համարությունների։ Քաղաքը մասերի է բաժանում գեղեցկագույն և ընդարձակ փողոցներով։ Շինում է նաև չքնաղ ու զարմանալու արժանի բաղնիքները՝ համապատասխան քաղաքի դիրքին ու պիտույքներին։ Գետի մի մասը քաղաքի մեջ բաշխելով, անց է կացնում ամեն տեսակ պիտույքների, բուրաստանների և ծաղկանոցների ոռոգման համար, իսկ մյուս մասը (անց է կացնում) ծովակի աջ ու ձախ ափերով՝ քաղաքի և բոլոր շրջակայքի ոռոգման համար։ Քաղաքի արևելյան, հյուսիսային և հարավային կողմերը զարդարում է դաստակերտներով, վարսագեղ սաղարթախիտ ծառերով՝ զանազանակերպ պտուղներով ու տերևներով, և այնտեղ տնկում է բազմաթիվ առատաբեր և գինեբեր այգիներ։ Պարսպած քաղաքն ամեն կերպ հոյակապ ու հռչակավոր է դարձնում և մեջը բնակեցնում մարդկանց անթիվ բազմություն»։

Ինչպես կարելի է տեսնել, Մ. Խորենացին այստեղ շեշտում է քաղաքի միջավայրի կառուցապատման գեղագիտական կողմը և նրա տարածքների ռացիոնալ օգտագործված լինելը։

Դրանից հետո նա շարունակում է՝ «Իսկ քաղաքի (վերի) ծայրը և այնտեղի հրաշալի շինվածքները մարդկանց շատերին անհասկանալի են մնում և պատմելու հնարավորություն չկա։ Այդտեղ գագաթի շուրջը պարիսպ քաշելով՝ ներսը շինում է դժվար մտնելու և դժվար դուրս գալու ինչ-որ ծածուկ ու ահռելի արքայանիստ շինվածքներ։ Դրանց շինության որպիսությունը մենք ոչ ոքից ճշտությամբ չենք լսել, ուստի համար չենք դատում մեր պատմության մեջ հյուսել. այսքանը կասենք, թե, ինչպես լսել ենք, սրանք բոլոր թագավորական գործերի մեջ առաջին և վեհագույնն են համարվում։ Իսկ քարաժայռի դեպի արևգակ դարձած կողմը, որտեղ այժմ և ոչ մի գիծ կարող է մարդ գծել երկաթով այսպիսի կարծր քարի մեջ, զանազան սենյակներ, ննջարաններ, գանձարաններ և երկար վիհեր՝ հայտնի չէ ինչ բանի համար հրաշակերտեց»[8]։

Տուշպայի միջնաբերդը կառուցված էր անառիկ ժայռերի վրա և ամրացված էր այնպիսի պարիսպներով, որոնք ամբողջությամբ շարված էին բազալտ քարից, հակառակ ավանդական սովորության, երբ երկրում, գրեթե ամենուրեք նրանց որմածքի վերին շարքերը բարձրացվում էին հում աղյուսից (տեսնել. աղ. 9 ա, բ)։ Այս արտակարգ կառուցապատումը մայրաքաղաքը դարձրեց անառիկ՝ Ուրարտուի բազում պատերազմներով լի պատմական կյանքի ընթացքում։

Տուշպայի ժայռատ լեռը հնարավոր դարձրեց այնտեղ ստեղծել վիմափոր կառույցներ՝ պաշտամունքային և աշխարհիկ նշանակությամբ, որոնք գտնվելով տարբեր բարձրությունների վրա, իրար են կապված բազմաթիվ սանդուղքներով, որոնց աստիճանների բարձրությունը երբեմն հասնում է մեկ մետրի։

Տուշպան, լինելով ռազմաստրատեգիական քաղաք, հայտնի է նաև ռազմական նշանակություն ունեցող կառույցներով, որոնց մի մասը գտնվում էր մոտակա արվարձաններում, ամենայն հավանականությամբ, քաղաքից արևելք՝ Վարագա լեռան ստորոտում։

Բացի մայրաքաղաքից, Ուրարտուում գոյություն ունեին նաև թագավորներին պատկանող քաղաքներ, այդպիսին էր Ռիսարը, որը Սարդուրիինն էր, կամ Արբուն, որը Ռուսայի տոհմական քաղաքն էր։ Այդ քաղաքներից հայտնի են նաև թագավորներին պատկանող քաղաքները, որոնք, ինչպես կարծում է Գ. Ա. Մելիքիշվիլին, նրանց անձնական սեփականությունն էին[9]։

**Վարչատնտեսական նշանակության քաղաքներ:**

Այս երկրորդ խումբը կազմում է երկրի քաղաքների հիմնական մասը։ Այդպիսի քաղաքներն իրենց միջնաբերդերի շուրջն ունեին մի միասնական տնտեսական միավորում կազմող բազմաթիվ բնակատեղիներ։ Նման միավորումը բացի բնակատեղիներից ուներ նաև դաշտերի արհեստական ոռոգման համար անհրաժեշտ դարգացած համակարգ ներկայացնող բազմաթիվ ճյուղավորումներ։ Այդ համակարգի կազմի մեջ էին մտնում նաև ջրանցքները, թունելները, ինչպես նաև արհեստական մեծ ջրամբարները։

Ասորեստանյան աղբյուրները (դրանց ավելանում են նաև նորագույն հնագիտական պեղումների տվյալները) խոսում են երկրի քաղաքային










*Աղ. 19 Գյուղեր. ա) Դուշգաղի, բ) Թուրքի Բնին, գ) Կալն կամանա*

*կենտրոններում կուտակված մեծ հարստությունների մասին։ Այսպես, Սարգոն Բ-ն դեպի Ուրարտու (մ.թ.ա. 714 թ.) կատարած իր հայտնի արշավանքի ժամանակ, ավերելով երկիրն ու նրա հարուստ տնտեսական կենտրոններն իրենց պահեստներով, վերջիններիս մեջ գտնում է «անհաշիվ քանակությամբ հացահատիկ, գինի» և այլն։ Միայն մեկ այդպիսի շտեմարանում գինու տարողությունը կազմում էր 225 հազար լիտր, մյուս պահեստում տեղավորվում էր 1020000 «կապի» ցորեն։*

*Մթերքների զգալի մասը սովորաբար վերամշակվում էր տեղերում, ուր այդ նպատակի համար գոյություն ունեին համապատասխան արհեստանոցներ, որից հետո արտադրանքը տեղափոխվում էր երկրի մայրաքաղաք՝ Տուշպա։ Կարմիր բլուրի միջնաբերդում հայտնաբերված են ձիթհան, գինու և գարեջրի արհեստանոցներ և այլն։*

*Արհեստանոցների զարգացմանը քաղաքներում մեծապես օժանդակում էր երկրում իր ժամանակին հայտնի բոլոր անհրաժեշտ նյութերի առկայությունը՝ փայտը, քարը, կավը, մետաղը, նյութեր, որոնք արտահանվում էին նաև հարևան երկրներ։*

*Ուրարտական վարչատնտեսական խոշոր քաղաքներ էին Արգիշտիխինիլին, Թեյշեբաինին, Ալթին-Թեփեն, Ալավերդիբենդը, Վերախրամը և մյուսները, որոնք իրենց պարսպապատված միջնաբերդերով, շրջակա բազմաթիվ գյուղական ավաններով կազմում էին գյուղատնտեսական հզոր համակարգեր, ստեղծելով (քաղաքաշինական առումով) տարածական միասնական համակարգ։*

Արգիշտիխինիլի։ *Հիմնադրվելով մ.թ.ա. 776 թ., արդեն դարի կեսին այն դարձավ երկրի նշանավոր քաղաքներից մեկը։ Նրա հիմնադիր Արգիշտի Ա-ից հետո քաղաքը զգալիորեն բարգավաճեց նրա որդի Սարդուրի Բ-ի օրոք։ Լինելով վարչատնտեսական հարուստ կենտրոն, Արգիշտիխինիլին ուներ ոռոգման ցանցի լայնատարած համակարգ, Ազա երկրի հողերի արգավանդության պայմաններում նպաստում էր քաղաքի տնտեսական կյանքի վերելքին։*

*Այդ են հաստատում ոչ միայն ուրարտական թագավորների սեպագիր արձանագրությունները, այլև ջրանցքների մնացորդները, որոնց հետքերը տեսանելի են 50 կմ երկայնքով։ Արարատյան դաշտավայրում, որը Ազա երկրի առավել բերքառատ շրջանն էր, խոշոր քաղաքների առաջ գալը դառնում է առանձնապես հասկանալի։ Դրա վկայությունն է Արգիշտիխինիլին, որի տնտեսական կյանքը տալիս է հինավուրց հողագործության պատկերը, հաճախ իր ամենամանրամասն դրվագներով։ Հնագիտական պեղումները պարզել են, որ, իրոք, քաղաքն ունեցել է երկու տարածք՝ տարբեր շինություններով կառուցապատված։ Կենտրոնական մասը և նրա օղակաձև հատվածը ծառայում էր հողագործական տնտեսությունների համար։ Երկրորդ մասը իր մակերեսով մի քանի անգամ ավելի էր առաջինից։*

*Կենտրոնական կառուցապատված մասը բաղկացած էր իրարից 2 կմ հեռավորության վրա գտնվող բլուրների գագաթներին վեր խոյացող երկու միջնաբերդից և քաղաքի բնակելի թաղամասերից[10] (գծագր. աղ. 21)։ Սակայն, կարելի է կարծել, որ մնացած՝ թվով 6 բլուրները կառուցապատված լինելով, իրենց գագաթային մասերում կազմում էին մի միասնական համակարգ։ Արմավիրի բլուրը, որը մյուսներից ավելի բարձր էր (76 մետր) և որից պարզ տեսանելի էր լայնատարած շրջակայքը՝ մինչև հեռավոր հորիզոնն ու հեռավոր մատույցներից երևացող ճանապարհները, ուներ ռազմաստրատեգիական նշանակություն։ Սակայն, հավանական է, որ բլուրը ծառայել է ավելի պաշտամունքային նպատակների։*

*Հակառակ դրան, քաղաքի մյուս միջնաբերդը՝ Դավթի բլուրը, ինչպես այդ պարզ տեսանելի է նրա ընդհանուր հատակագծից, աշխարհիկ կարիքների համար կառուցված մի համալիր էր՝ իր պալատական շենքերով ու տնտեսական պահեստային մասերով։*

*Այսպիսով, կազմելով մեկ ընդհանուր միասնություն միևնույն քաղաքի սահմաններում, այդ միջնաբերդերը տեղ-տեղ պարփակված էին պարիսպների 3 շարքով։ Իսկ քաղաքի կառուցապատված միջին մասը, ամբողջությամբ վերցրած, պաշտպանված էր հզոր պարիսպներով, որոնց պահպանված առանձին հատվածներն այժմ էլ պարզ տեսանելի են։ Քաղաքի բնակելի շենքերը հիմնականում հայտնաբերված են բլուրների շրջապատում և նրանց թեք լանջերի վրա, որտեղ դրանք կառուցվել են՝ հարմարեցվելով ժայռոտ տեղանքին։ Հարթավայրի մասի շենքերը՝ ծածկված մնալով հողի հաստ շերտերով, անորոշ դարձրին քաղաքի բնակեցված տարածքի ընդ-*

հանուր հատակագծման սկզբունքները: Պարզ է միայն, որ հայտնաբերված շենքերը թեք լանջերի վրա կառուցապատված են, այսպես կոչված, ազատ կառուցապատման եղանակով ու գտնվելով անմիջապես պալատական շենքերի հարևանությամբ, հավանաբար, կազմում են քաղաքի ազգաբնակչության սոցիալական բարձր խավին պատկանող հատվածը: Ամենայն հավանականությամբ, տվյալ բնակչության մի մասն էլ կազմել են պետական ծառայողներն ու արհեստավորները:

Իր պատմական կյանքի ընթացքում քաղաքն անընդմեջ զարգացել ու ընդլայնվել է: Այդ է հաստատում բնակելի շենքերի նոր տարածքների առկայությունը նաև միջին քաղաքի պարիսպներից դուրս:

Արգիշտիխինիլին ուներ նաև խմելու ջրի համար հարմարավետ ջրամբար՝ 70.000 լիտր ընդհանուր տարողությամբ, ընկղմված միջնաբերդի թեք սարալանջերի խորության մեջ, պալատական շենքի սահմաններում:

Քաղաքի դամբարանադաշտը գտնվում էր նրա հյուսիսարևմտյան մասում:

Քաղաքաշինության առումով բնորոշ է ու ուշագրավ, որ Արգիշտիխինիլիի տարածքում հիմնադրվում է ու զարգանում Հայաստանի հին մայրաքաղաք Արմավիրը: Ուշադրության արժանի է, որ ներկա դեպքում երկու տարբեր դարաշրջանների քաղաքաշինարարներին ռազմաստրատեգիական, քաղաքաշինական ու այլ առումներով հավասարաչափ բավարարել են տեղանքի միևնույն պայմանները՝ բլուրն իր միջնաբերդով, իսկ ստորոտում քաղաքը՝ փռված հարթության վրա:

Արգիշտիխինիլիի շրջապատի նշանավոր ավաններից մեկը գտնվում է Արարատյան դաշտավայրի ներկայիս Արագած գյուղում: Այն բավականին փոքր է, նրա կառուցապատման հետքերի տարածքը 10—15 հեկտարից չի անցնում, մնացած մասը, ինչպես և նրա եզրագծի սահմանները, առանց հնագիտական պեղումների որոշվել չեն կարող (գծագր. աղ. 23):

Այստեղ՝ ժայռոտ ցածր բլրակի վրա, պահպանված են քառանկյուն հատակագծով, աշտարակներով ու որմնահեցերով, հավանաբար, երկհարկ պալատական կառույցի մնացորդները, որը ժամանակին իշխում էր շրջապատի վրա:

Այդ կառույցի հարավարևմտյան մասը պարսպապատված էր: Նման պարիսպների մնացորդներն այստեղ բավական շատ են, հատկապես հյուսիսարևմտյան մասում: Ընդ որում, ելնելով նրանց պատերի երկարություններից, հավանական պետք է համարել, որ նրանք պատկանում էին պահեստային կառույցների շենքերին, ուր հավաքվում էր հողատարածքներից ստացվող բերքը:

Բնակելի շենքերի տեղադրությունից կարելի է ենթադրել, որ նրանք գտնվում էին մշակելի հողամասերի վրա:

Շենքերի ներսում, ընտանի կենդանիների համար առանձնացված նշանակալից մակերեսներով հատվածները հաստատում են տվյալ ավանում նաև անասնաբուծության զարգացման մասին:

Աղա երկրի մյուս խոշոր վարչատնտեսական կենտրոնը Թեյշեբաինի քաղաքն էր:

**Թեյշեբաինի:** Ուրարտական քաղաքաշինության սկզբունքներն ավելի որոշակի են արտահայտված Թեյշեբաինիի հատակագծման մեջ, որը պարզվում է լայնատարած պեղումների շնորհիվ[11]:

Թեյշեբաինի քաղաքն իր աշխարհագրական դիրքով գտնվում էր այն մայրուղու վրա, որը Աղա երկրի սահմաններում որպես ելակետ ուներ Մենուախինիլին, և որի մի ճյուղն անցնում էր Արգիշտիխինիլիի միջով դեպի արևելք, դեպի Մեծամոր, Թեյշեբաինի, Էրեբունի և ապա հյուսիս՝ դեպի Դարանի և Սևանա լճի ափերին տարածված ուրարտական քաղաքները: Այս կապակցությամբ Թեյշեբաինի քաղաքի ամրաշինական կառույցներում պարզորոշ դրսևորված են ռազմաստրատեգիական սկզբունքները, որոնցով նրա շինարարները ղեկավարվել են սկսած դեռևս քաղաքի տեղի ընտրությունից (լուսանկ. աղ. 6 բ):

Միանգամայն որոշակի է, որ քաղաքի տեղադրումն իր միջնաբերդի հետ Հրազդան գետի բարձր ափին՝ պայմանավորված է պաշտպանական նկատառումներով: Փռված լինելով հարթավայրի տարածքում, որը երեք կողմից եզրագծված էր խոր ձորերի մեջ հոսող գետով, քաղաքը դրանով ապահովված էր դժվարամատչելի, իսկ որոշ հատվածներում էլ գետի բոլորովին անմատչելի պատնեշման ափերով: Միևնույն ժամանակ, Արարատյան դաշտավայրի կողմից, որտեղ բնական պատնեշները բացակայում էին, Թեյշեբաինին պաշտպանված էր հզոր բերդապարսպով, որի մնացորդները պահպանվել են տեղում:



0 20 40 60մ

Նկ. 20 Միջնաբերդեր. ա) Արագած միջնաբերդի ընդհանուր տեսքը, վերակազմություն, բ) Միջնաբերդի հատակագիծը, գ) Հին վերակազմություն

*Թեյշեբաինիի անուղի ընտրությունը պայմանավորված էր նաև տեղական նշանակության մի շարք ճանապարհների առկայությամբ, որոնք հանգուցավորվում էին այստեղ:*

*Ժամանակը չնչել էր նրանց հետքերը երկրի վրայից: Սակայն, ամենայն հավանականությամբ, ամենահարմար տեղը, ուր կարող էին հանդիպել Թեյշեբաինիի մոտ տարբեր տեղերից եկող ճանապարհները՝ ու բլրալանջի հարավային մասն էր, միջնաբերդի գլխավոր մուտքի դիմաց:*

*Թվում է, որ այստեղ գոյություն ունեցող ներկայիս ճանապարհը ուրարտական ճանապարհի ուղղության կրկնությունն է: Ինչ վերաբերում է քաղաքի կապին՝ Հրազդան գետի մյուս ափի հետ, ապա այն կարող էր տեղի ունենալ հարավարևմտյան մասում, ուր տեղանքը համեմատաբար նպաստավոր էր գետի անցման համար: Հատկապես այդ տեղում է, որ գտնվել են բազալտե մշակված բեկորներ, որոնց մի մասը դեռ կանգուն է որմածքի ձևով և, հավանաբար, պատկանել է ուրարտական կամրջի հենակներին:*

*Թեյշեբաինիի կառուցապատված ամբողջական տարածքը նշված սահմաններում ձգված է արևելքից արևմուտք, կազմելով շուրջ 30 հեկտար տարածություն, որից 4 հեկտարը գրավում է արևելյան մասում վեր խոյացող բլրի գագաթին գտնվող միջնաբերդը (լուսանկ. աղ. 8 ա): Այս տարածությունը համեմատաբար հարթ էր իր միջին մասում, ուր հայտնաբերված են քաղաքի թաղամասերի հիմնական հատվածները ու առավել ուղղաձիգ փողոցները: Դրանցից արևմուտք, մինչև Հրազդան գետի ափերը, տեղանքը թաղամասերի կառուցապատման համար դառնում է ավելի անհարմար: Դեպի գետը քաղաքից տանում էին մի քանի ճանապարհներ, որոնցից մեկը բավական լայն է ու միանգամայն հարմար անիվային տրանսպորտի երթևեկության համար:*

*Չնայած նրան, որ ներկայումս արդեն պեղված է քաղաքի մի զգալի մասը ու արդեն հայտնի են նրա մոտավոր սահմաններն ու եզրագիծը, սակայն առայժմ չի հաջողվել պարզել քաղաքի արտաքին պարիսպների լրիվ գծագրությունը, բացի 1948 թ. հայտնաբերված նրա 500 մետրանոց մի հատվածից: Վերջինս, որն ունի աշտարակներ, որմնահեցեր, սկսվում է միջնաբերդի հարավարևելյան անկյունից, եզրագծում է քաղաքի արևելյան մասը, ապա գրեթե ուղիղ անկյան տակ թեքվելով դեպի հարավ-արևմուտք՝ ընդհատվում է մի մեծ աշտարակի ավերակներով: Պարիսպների 200 մետր երկարություն ունեցող մյուս հատվածը, որ սկիզբ է առնում միջնաբերդի հյուսիսարևմտյան մուտքից ու անցնելով հարավարևմտյան ուղղությամբ, գծագրում է քաղաքի հյուսիսային մասը տվյալ սահմաններում, նույնպես ընդհատված է: Այդ 3 մետր հաստություն ունեցող պարիսպներից պահպանվել են միայն ստորին 1—2 շարքը (բազալտե կոպտատաշ բեկորներից):*

*Քաղաքի մյուս հատվածներում արտաքին պարիսպները նույնպես ընդհատվում են հենց այնտեղ, ուր ժայռոտ ափերի բնական եղուններն իրենցով ապահովում էին քաղաքի անառիկությունը: Այդպիսի մի հատված էր, օրինակ, քաղաքի հյուսիսարևմտյան պարիսպը:*

*Ինչպես ասվեց, քաղաքի միայն հարավային մասով կարող էին անցնել այն ճանապարհները, որոնք ժամանակին Թեյշեբաինին կապել են մյուս քաղաքների հետ, հետևապես և այստեղ պետք է գտնվի նրա գլխավոր մուտքը: Սակայն արտաքին պարսպապատն այդ մասում այնքան է ավերված, որ բոլոր հետքերն անհետ կորել են:*

*Հավանաբար այնտեղ, ուր ընդհատվում է միջնաբերդի հյուսիսարևմտյան անկյունից սկսվող պարսպապատը, քաղաքն ունեցել է ևս մի մուտք, որի տեղում ներկայումս գծագրվում են հիմքերի մնացորդներ:*

*Բացի արտաքին պարիսպներից, մի շարք պատերի հետքեր են երևում նաև քաղաքի ներքին տարածքում: Այսպես, միջնաբերդի հարավային մասում, նրա կենտրոնական մուտքի ձախ աշտարակի բազալտե խոշոր քարերից շարված բավականին լայն մի պատի մնացորդ միացած է քաղաքի արտաքին պարսպին, դրանով իսկ արգելակելով ազատ շարժումը քաղաքի մեջ: Բացի դրանից, մի շարք նույնանման պատերի հետքեր, որոնք պարզ նշմարվում են մակերեսի վրա, գծագրվում են քաղաքի այլ մասերում: Որոշակիորեն ռազմական նշանակություն ունեցող այդ պատերի զուգահեռները տեսնում ենք հինարևելյան շատ քաղաքներում:*

*Այսպես էր կառուցված նաև խեթական Խաթթուսան, սակայն նրանում, բացի դրանից գոյություն ուներ նաև ստորգետնյա ճանապարհ՝ միջնաբերդից մինչև բլրի ստորոտը՝ քաղաքի վրա գրոհող թշնամուն թիկունքից հարվածելու նպա-*

տակով։ Խեթերը հաճախ էին իրենց քաղաքները պատում կրկնակի պարիսպներով, ինչպես, օրինակ, այդ արված է Սամալում։ Նման դեպքերում ստեղծվում էր քարե միջանցք, որի միջոցով թշնամին վերցվում էր ծուղակի մեջ։ Այդպիսին էր նաև պարսպապատերի մուտքերի կառուցման համակարգը, որի սրամիտ լուծումները ծառայում էին տակտիկական մտահղացումներին։ Այդ առումով խեթական օրինակներն ավելի ցայտուն էին արտահայտում քաղաքների ամրաշինական սկզբունքները Հին արևելքում։

Սակայն ուրարտական քաղաքաշինության մեջ բավականին տեսանելի են դառնում նաև սոցիալական հանգամանքները։ Թեյշեբաինիի համար այդ կարգի կարևոր հարցերից մեկն է, օրինակ, քաղաքի սահմաններում սոցիալական տարբեր խավերի տեղավորման սկզբունքը։ Համաձայն Բ. Բ. Պիոտրովսկու, քաղաքի հիմնական ազգաբնակչությունը կազմում էին ուրարտական զինվորներն իրենց ընտանիքներով, պետական հողերը մշակող և կախյալ վիճակի մեջ գտնվող հողագործները, արհեստավորները, ինչպես նաև վարչական անձնակազմը[11]։

Կարծում ենք, որ այստեղ, քաղաքի կենտրոնական մասում, տեղավորված էին ուրարտական զորքն ու վարչական անձնակազմը, որոնց բնակարանները գտնվում էին միջնաբերդին կից։ Այդ են հաստատում մեծ չափերի սեկցիոն տներ և մյուս հարուստ մենատները (գծագր. աղ. 34)։

Քաղաքի կենտրոնական մասում գտնվող թաղամասերի փողոցներն ուղղաձիգ են ու կանոնավոր (լուսանկ. աղ. 8 բ)։ Հակառակ դրանց, քաղաքի արևմտյան մասի թաղամասերը հիմնըված են տեղանքի տեսակետից անհարմար վայրերում, անկանոն շարքերով և, հավանաբար, հենց այն մասում էր բնակվում քաղաքի աղքատ ազգաբնակչությունը, որն այստեղ էր բերված գյուղատնտեսական տարբեր աշխատանքներ կատարելու համար։ Այն հանգամանքը, որ քաղաքը հիմնադրված էր պետական ենթակայության ներքո գտնվող ուրարտական զորքի, արհեստավորների, հողագործների և վարչական կազմի համար, ասում է այն մասին, որ քաղաքի կառուցողը պետությունն էր, հետևաբար և նրա հիմնադրումը պետք է որ լիներ մի միասնական ճարտարապետական մտահղացման արդյունք։

Հայտնի է, որ հինարևելյան պետական իշխանությունների կողմից սահմանվում էին քաղաքաշինության կանոններ. օրինակ, Միջագետքում հանրահայտ էին Բաբելոնի թագավոր Համուրաբիի կամ Ասորեստանի թագավոր Սինախերիբի շինարարական օրենքները։ Փաստերը հաստատում են, որ Թեյշեբաինիի կառուցապատումը ևս իրացվում էր նախապես կազմված ինքնատիպ քաղաքաշինական որոշակի ծրագրի համաձայն, պատասխանելով նաև ժամանակի ռազմաստրատեգիական բոլոր պահանջներին։ Այսպես, քաղաքի առանձին հատվածներում երևում են ուղղաձիգ փողոցների բավական կանոնավոր կառուցապատումներ։ Քաղաքի կենտրոնական մասի երեք փողոցներից երկուսը զուգահեռ են, որոնցից առաջինն ունի մոտ 200 մետր երկարություն։ Այն սկսվում է քաղաքի կենտրոնական մասից, հասնում մինչև միջնաբերդի գլխավոր մուտքը, ձգվելով արևելքից արևմուտք՝ 5,57 մետր լայնությամբ և կառուցապատված է առանց որևէ խախտումների։ Այս երկու փողոցները հատվում են երրորդ, ավելի լայն (9,46 մետր) փողոցով, որն անցնում է հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք։

Սակայն, բացի երկկողմանի անխափան տրանսպորտի համար հարմարավետ ուղիղ ու լայն փողոցներից, Թեյշեբաինիում կային նաև այնպիսիները, որոնք նեղ ու անկանոն էին, շենքերն էլ իրենց հերթին կառուցապատված էին անխնամ։

Թեյշեբաինիում կային նաև հրապարակներ, որոնցից մեկը գտնվում է միջնաբերդի գլխավոր մուտքի առջև։ Արևելքից հրապարակը եզրագծված է պատով, արևմուտքից 50 մետր հեռավորությամբ նրան սահմանագծում են քաղաքի թաղամասերի կառույցները։ Քանի որ այստեղ էր միջնաբերդի գլխավոր մուտքն իր աշտարակներով, այն է՝ քաղաքի ճարտարապետական առավել մոնումենտալ ու շքեղ կառույցը, ուստի հրապարակը Թեյշեբաինիի գլխավոր կենտրոնը պետք է լիներ (գծագր. աղ. 25)։

Ուրարտական քաղաքների տարածական ձևերն արտահայտվում էին իրենց կառուցվածքների հարթ ծածկերի հորիզոնական ուրվագծերով։ Սակայն, դրա հետ մեկտեղ, Թոփրախ-կալեում ու Կարմիր բլուրում, բրոնզյա հարթաքանդակների, ինչպես նաև ոսկրե մանրակերտի ձևով հայտնաբերված աշտարակները հաստատում են քաղաքների կառուցապատումներում նաև վերասլաց ծավալների առկայությունը։

Թեյշեբաինիի տվյալ մանրակերտն իր բնական




*Նկ. 21 Ալթին թեփե. միջնաբերդի հատակագիծ*

չափերով, հավանաբար, ներկայացնում էր քառակուսի հատակագծով բավականին վերասլաց հորինվածք: Աշտարակն իր անկյունային մասերում ունի ելուստներ, որոնց հարթությունների վրա տեսանելի են վերին երկու հարկերի պատուհանանման խուլ բացվածքներ: Կառույցը ավարտվում է հորիզոնական բաժանումներ ունեցող հզոր գոտիներով, ավանդական աստիճանաձև բուրգերով, միջին մասում վեր խոյացող գմբեթաձև ծավալով, իսկ ներքևում, այդ բոլորը պահող, ատամնաշար հիշեցնող պահպանակների շարքով: Քիվի հզոր ձեր, ելնելով համաչափական համապատասխան կանոններից, հաստատում է, որ աշտարակի ընդհանուր բարձրությունը պետք է որ բնական վիճակում լիներ՝ շուրջ 15—20 մետր: Հիշյալ մանրակերտը, հավանաբար, պատկերում էր քաղաքի կանգուն աշտարակը:

Մեծ ընդհանրություն կա տվյալ աշտարակի և Ակսում քաղաքի (Եթովպիա) կանգուն աշտարակների միջև, որոնց բարձրությունը հասնում է շուրջ 37 մետրի և որոնցում նույնպես երևում են համանման անկյունային ելուններ, խուլ պատուհան պատկերող շարքեր՝ ըստ հարկերի և կիսակլոր վերջավորություն:

Քաղաքների նման կառույցներն իրենց վերասլաց ծավալների հակադրամիասնությամբ պետք է որ զգալիորեն հարստացնեին նրանց կառուցապատումների ճարտարապետատարածական թեմատիկայի բազմազանությունը:

Եվ այսպես, Արգիշտիխինիլին և Թեյշեբաինին, իրենց շուրջը փռված URU-ներով կազմում էին վարչատնտեսական զարգացած համակարգ կամ Asuni՝ «քաղաքի մարզը»:

Ալավերդիքենդ: Բնակավայրերի նման խոշոր կուտակումներ գոյություն ունեին նաև Ուրարտուի արևելյան մարզերում, գրեթե համանման բնույթով ու տարածական կառուցվածքով: Այստեղ նույնպես խոշոր ու ամրացված բերդերի շրջակայքերում փռված են գյուղատնտեսական բնակավայրեր, ջրանցքներ ու մշակվող դաշտեր[12]:

Տնտեսական նման մի խոշոր համալիր էր իր բնորոշ արտահայտությամբ Ալավերդիքենդը, որը գտնվում է Ուրմիա լճից հյուսիս, Կարադիբողին հարթավայրի արևելյան մասում, Բաստամից 20 կմ արևելք: Տվյալ համակարգի կենտրոնը կառուցված է 40 մետր բարձրություն ունեցող բլրի գագաթին, որն ունի պաշտպանական նշանակության կառուցապատման պարզ հետքեր: Նույն նկատառումներով Ալավերդիքենդից 3 կմ հեռու գտնվող Ուզուր-Թեփե բլրի վրա է խոյանում մի այլ, ավելի փոքր բերդ, որը իշխելով այնտեղ անցնող ճանապարհի վրա, իր տեսադաշտում պահում էր տվյալ տարածքը:

Ալավերդիքենդի՝ 134×152 մետր չափեր ունեցող ամրոցը պարփակված էր հզոր պարիսպներով: Ամրոցը օժտված է կենտրոնական բակով, ուր կանգուն է քառանկյուն հատակագծով մի շենք (24×40 մ)՝ անկյունային մասերում աշտարակներով և միջին մասում նույնպես բակով: Բերդի պարիսպներին ներսից կցված են տարբեր չափերի շինություններ, իսկ հարավարևմտյան մասում երկու շեշտված աշտարակների միջև նրա մուտքն է, որի երկու դռները դասավորված լինելով իրար նկատմամբ ուղիղ անկյան տակ, խոչընդոտում էին անցումը տվյալ պարփակված տարածքի մեջ (գծագր. աղ. 27):

Նշված երկու բլուրների միջև տարածված էին բնակելի շենքերը, այստեղից էր անցնում նաև տվյալ հողատարածքների համար շինված հնագույն ջրանցքը, որը իր 3/4 մասով մնում է առայսօր գործող ջրատար համակարգի մեջ:

Այս ջրանցքները ոռոգում էին բլուրների շրջապատի տարածքներում փռված ընդարձակ մշակվող դաշտերը, ներառյալ նաև Թուրքի-Թեփե, Գուշչաղի և մյուս գյուղատեղիների հողատարածքները (գծագր. աղ. 22):

Այդ տարածքում մշակվող դաշտերը քարե բեկորներով, խիստ կանոնավոր կերպով, բաժանված էին հավասար՝ 40/50/75 մետր չափերի հողամասերի: Մշակվող հողերի նման ճշգրիտ երկրաչափական բաժանումը առաջին օրինակն է Ուրարտուում:

Հավանաբար, այդ հողակտորները թագավորական (պետական) վարչությունը վարձակալական սկզբունքով մշակման համար հանձնում էր նույն բնակատեղիների առանձին մարդկանց[13]:

Ինչպես նշվեց, Արգիշտիխինիլի համալիրի նման կային գյուղական բնակավայրեր, մշակովի հողատարածություններ, որոնցից է Թուրքի-Թեփեն՝ Բաստամից 45 կմ արևմուտք, 180—500 մետր չափերի բլրի վրա, կառուցապատված է առանձին բազմասենյակ բնակելի տներով[14] (գծագր. աղ. 22 բ): Բլրի հարավարևմտյան մասում կանգնած է 35×60 մետր չափերով բերդ՝ իր կենտրոնական բակով (10×16 մետր), որի շուրջը, արտաքին պատերին կից են մի շարք սենյակներ:

իր հատակագծով այն նման է Շերագիե Ամիրի կառույցի հատակագծին։ Համաձայն Վ. Կլայսի հետազոտությունների, Թուրքի-թեփեն մ.թ.ա. VII դարի գյուղական տիպի բնակավայր էր, իսկ բերդը նրա տիրակալի նստատեղին էր նման բերդեր, (Տե՛ս լուսանկ. աղ 17 ա, բ, գ, դ)։

Գյուղական տիպի նման մյուս վայրը Դուշգագին է, որը գտնվում է Բաստամից 40 կմ հյուսիս։ Բնակատեղին փռված է հյուսիսից հարավ ձգվող, շրջակայքի նկատմամբ 65 մետր բարձրություն ունեցող մի բլրի վրա, որի եզրագծերը մեծ թեքությամբ անջատվում են շրջակայքից[15] (գծագր. աղ. 22ա)։

700 մետր երկարություն ունեցող այդ բնակատեղին իր միակ պարսպով անջատվում է երկու մասի, որի հյուսիսայինը նրա գլխավոր հատվածն էր (260×360 մետր մակերեսով)։ Որմնահեցներ ունեցող այս 95 մետրանոց պարիսպը կենտրոնական մասում իր միակ մուտքով գգալիորեն իշխում է հարավային հատվածի վրա։ Այս վերջինի հարավարևելյան բարձրադիր մասի վրա կանգուն էին մի քանի շենքեր, որոնցից մեկը ավանդական քառակուսի հատակագծով ու անկյունային մասերում աշտարակավոր ելուստներով, Վ. Կլայսի կարծիքով, տաճարային կառույց էր, որը միանգամայն հավանական է։ Իսկ այդ նշանակում է, որ ոչ միայն քաղաքները, այլև գյուղերը Ուրարտուում ունեին իրենց տաճարները։

Դուշգագիի մյուս նկատելի կառույցը, որը գտնվում է նրա հյուսիսարևմտյան մասում և 12,5× 19,0 մետր չափերի է, Վ. Կլայսը համարում է պահեստային շենք և դա հավանական է, քանի որ Դուշգագին, լինելով Ալավերդիքենդը շրջապատող բնակավայրերի տնտեսական հիմքը, պետք է ունենար շտեմարան։

Ալավերդիքենդի տնտեսական ազդեցության, Արգիշտիխինիլիի ու Թեյշեբաինիի օրինակով, գտնվում էր Բաստամ քաղաքի հովանավորության ներքո, որը մասնավորապես պահպանում էր Ակչայից սկզբնավորվող ջրատար համակարգը, որպես միջանկյալ բերդ ունենալով Ալավերդիքենդից 3 կմ հեռավորության վրա գտնվող Ուզուբթեփեն։

Այսպիսով, կարող ենք եզրակացնել, որ ուրարտական տնտեսական նման միավորումները ներկայացնում էին ընդարձակ մարզեր՝ իրենց կենտրոնական ամրացված քաղաքներով և նրանց շրջակայքում փռված URU-ներով, դաշտերով ու ստորման ջրանցքներով, որոնք կազմում էին մի համակարգ՝ պաշտպանված ռազմական նշանակության քաղաքներով ու նրանց ենթակա փոքր բերդերի ցանցով։

**Ալթին-թեփե:** Այս քաղաքը ուրարտական վարչատնտեսական կարևոր կենտրոններից մեկն էր, երկրի հյուսիսարևմտյան ծայրամասում, փռված Երզնկայի հարթավայրում, որը գտնվում է Էրզրումից Սիվաս տանող ճանապարհի մոտ։ Քաղաքը, որի պատմական անվանումը հայտնի չէ, հնագետ Թահսին Օզգյուչի կարծիքով, հավանաբար, հիմնադրված է մ.թ.ա. VIII դարում[16]։ Ալթին-թեփեն գտնվում է երկրի արգավանդ հողատարածությունների վրա և, որ գլխավորն է, հեռու հզոր Ասորեստանից, որից Երզնկայի դաշտն անջատված է բարձր լեռնաշղթաներով։ Այս հանգամանքի շնորհիվ քաղաքը մնաց անհասանելի ասորեստանյան բանակների համար ու չենթարկվեց ավերածությունների, որոնց ժամանակին անընդմեջ ենթարկվել են Ասորեստանին սահմանամերձ ուրարտական մյուս քաղաքները։ Դրանով էլ Ալթին-թեփեի միջնաբերդի կառույցները մեր օրերն են հասել համեմատաբար բարվոք վիճակում, տուժելով միայն ժամանակի ավերածություններից։

Հարթավայրի վրա փռված այդ հինավուրց քաղաքի միջնաբերդը կառուցված է հյուսիս—հարավ ուղղությամբ ու վեր է խոյանում բարձր բլրի գագաթին, ինչպես և գրեթե բոլոր ուրարտական քաղաքների միջնաբերդերը։ Եվ չնայած, Ալթին-թեփեի միջնաբերդը հեռու էր ռազմատրանսպորտային ճանապարհներից, այնուամենայնիվ, այն եզրագծված էր որմնահեցներ ունեցող հզոր բերդապարիսպներով։

Ինչպես կարելի է կռահել միջնաբերդում պահպանված առանձին կառույցների մնացորդների տեղադրությունից, այստեղ առկա է շինարարական մի քանի ժամանակաշրջան (գծագր. աղ. 24)։ Նախնականը տաճարային համալիրն է՝ իր հարակից շինություններով, հետո կառուցվել է սյունազարդ մի դահլիճ, որը դրականության մեջ երբեմն անվանվում է ապադանա և դիտվում որպես աքեմենյան նույնատիպ կառույցների նախատիպերից մեկը։

Բացի այդ մոնումենտալ կառույցներից, միջնաբերդից դուրս գտնվել են պահեստային ընդարձակ շինություններ։

Ալթին-թեփեն այսօրվա դրությամբ ուրարտա-





0 10 20 30 40 50մ

Նկ. 22 Թեյշեբաինի. միջնաբերդի հարավային մուտքը. վերակազմություն, հյուսիսարևելյան մուտքը. վերակազմություն, միջնաբերդի հատակագիծը

գիտությանը հաղորդակից է դարձնում ժամանակի մոնումենտալ շինարարության առանձին ձևերին, որպիսիք անհայտ էին Ուրարտուի մյուս քաղաքների ճարտարապետությանը: Խոսքը վերաբերում է նաև տարբեր ձևեր ունեցող դամբարանների կառույցներին, որոնք իրականացված են մեծածավալ քարերով և կոնստրուկտիվ ուրույն մտահղացումներով:

Սակայն տվյալներ չկան հուշարձանի քաղաքաշինական առանձնահատկությունների մասին:

**Օշականի ուրարտական կառույցները:** Աշտարակի շրջանի Օշական գյուղի կենտրոնում բարձրանում է հրաբխային ծագում ունեցող մի խոշոր բլուր: Այն տեղացիներն անվանում են Դիգիկոնդ: 1971—1983 թթ. պեղումների շնորհիվ բլրի գագաթին բացվել է մի փոքրիկ, լավ ամրացված, մ.թ.ա. VII դարի ուրարտական ամրոց, որն իր գոյությունը պահպանել է մինչև մ.թ.ա. V դարը և հետագայում նրա փլատակների վրա առաջացել է վաղմիջնադարյան բնակատեղի[17]: Բլրի հյուսիսային լանջի ստորոտներին պեղվել են նույն՝ մ.թ.ա. VII դարում կառուցված ուշ ուրարտական պալատական համալիրներ, որոնք, ինչպես և ամրոցը, հարատևել են մինչև մ.թ.ա. V դարը, իսկ նրանց փլատակների վրա մ.թ.ա. III դարից սկսած կառուցվել են անտիկ դամբարաններ[18]:

Ամրոցը ներկայացնում է մոտ 0,25 հա տարածություն ունեցող քառակուսի մի շինություն (գծագր. աղ. 36 գ): Սա ունի հզոր արտաքին պատեր՝ շարված կավե շաղախի օգտագործմամբ, լավ տաշված տուֆի խոշոր քարերից, որոնցից մի քանիսի երեսների եզրերը խնամքով հարթեցված են (ռուստովկա): Եթե քարերի նման մշակումը լավ հայտնի է Թոփրախ-կալեից և Արգիշտիխինիլիից, ապա քարերի երեսների վրա նկատվող կլորավուն ելուստները, ինչքան մեզ հայտնի են, հանդիպում են միայն Թեյշեբաինիի ներքին պարիսպների առանձին քարերի վրա[19]: Պարիսպները լրացուցիչ ամրացված են պատերից 1—1,1 մ հեռացող որմնահեցերով և փոքրիկ անկյունային աշտարակներով: Որմնահեցերի երկարությունը հասնում է 3,1 մ և իրարից հեռու են շուրջ 7 մ-ով:

Ըստ երևույթին արևմտյան պատի 2-րդ և 3-րդ որմնահեցերի միջև գտնվել է ամրոցի մուտքը, դեպի ուր տանում էր բնական ուղին:

Ամրոցի տարածական ներքին լուծումը ինքնատիպ է. Հյուսիսից հարավ անցնող պատով բաժանվում է երկու թևի՝ արևելյան և արևմտյան: Արևելյան թևի հյուսիսային մասը բաղկացած է մի խոշոր դահլիճից, որն ունի 260 մ² տարածություն, դրան կից երկու փոքրիկ սենյակներից և ներառնում է մի բնական ժայռաբլուր, որի վրա պահպանվել էին միջնադարյան մատուռի հետքեր: Մատուռի ուղղությունը խախտված է դեպի հարավ և համընկնում է ժայռի վրա կոփված հարթակի հետ: Ըստ երևույթին մատուռի տեղում հնում այս հարթակի վրա եղել է ինչ-որ պաշտամունքային կառույց և հարթակի խախտումը դեպի հարավ կատարվել է ամրոցի կառուցման ժամանակ: Ամրոցի արևելյան թևի հարավային մասը ընկած է վերոհիշյալ ժայռաբլուրից հետո և անջատված է արևելյան թևից 24,2 մ երկարություն և 2,15 մ լայնություն ունեցող մի պատով, որը արևելյան արտաքին պատը միացնում է ամրոցը երկու մասի բաժանող միջանկյալ պատի հետ: Արևելյան թևի հարավային մասում պեղվել են հինգ ոչ մեծ սենյակներ, որոնցից հնում օգտագործվել են միայն № 3 և 7-ը, իսկ մյուսները վաղ միջնադարում: № 3 և 7 սենյակների պատերը կառուցված են ամրոցի հետ միաժամանակ և շարված են նույն կարծր տուֆի մեծ քարերից: Չնայած դրանց պատերը պահպանվել են բավական մեծ բարձրությամբ, սակայն սենյակները չունեն դռներ: Այս սենյակների կոնստրուկտիվ առանձնահատկությունները հնարավորություն են տալիս ենթադրել, որ ամրոցն այս մասում եղել է երկհարկանի: Այս ենթադրությանը հիմք է ծառայում այն հանգամանքը, որ № 3 և 7 սենյակների արտաքին պատերն ունեն մեծ լայնություն և կառուցված են 2-րդ հարկի ծանրությունը կրելու համար: Սենյակները ծածկվել են լայնակի գցված գերաններով, որոնք կազմել են 2-րդ հարկի հատակի հիմքը, որի մեջ բացվել են սողանցքեր, որտեղից ձեռնասանդուղքներով կարելի էր իջնել նկուղային սենյակները:

№ 3 և 7 սենյակների միջև ընկած ազատ տարածությունը հնում ըստ երևույթին օգտագործվել է տնտեսական նպատակների համար: Այդ մեծ տարածությամբ ծածկը նույնպես կատարվել է գերաններով, սակայն թռիչքը փոքրացնելու համար այստեղ, ըստ երևույթին, կառուցվել է մույթ, ինչպես Արգիշտիխինիլիի և Թեյշեբաինիի մի շարք սենյակներում: Այս ծածկի վրա

բարձրանում էր մի դահլիճ՝ երկու փոքրիկ կողային սենյակներով, կամ ավելի ճիշտ՝ 4—5 բնակելի ավելի փոքր սենյակներով: Առաջինի դեպքում այս դահլիճի ծածկը պետք է հենվեր սյուների վրա, որի նման օրինակներ հայտնի են նույն Օշականի պալատական շինություններում կամ պետք է ունենար լայնակի գցված գերաններով կազմված տափակ տանիք:

Երկրորդ հարկի առկայությունը հնարավորություն է տալիս ենթադրելու, որ ամրոցի արտաքին պաշտպանողական պարիսպներն ավելի բարձր են եղել, քան երկրորդ հարկի տանիքի մակարդակը (8—9 մ) և կազմել են մոտավորապես 9—10 մ:

Ամրոցի արևմտյան մասը խիստ քայքայված է, նրա հարավային հատվածում պահպանվել է մի խոշոր փոս (լայնությունը՝ 3,7, խորությունը՝ 3 մ)՝ վերահիշյալ մատուռի ժայռաբլուրի և հարավային պարսպի միջև: Փոսվածքի պատերը և հատակը խիստ քայքայված են: Հետագայում կառուցված միջնադարյան շինությունների և մեր դարի սկզբին Խաչիկ Դադյանի կողմից կատարված պեղումների պատճառով դժվար է պարզել նրա նշանակությունը, կարելի է միայն ենթադրել, որ պատերը հնում սվաղված են եղել կավով և այն ծառայել է իբրև ջրավազան, ինչպիսին հայտնի է Արգիշտիխինիլիի պեղումներից[20]: Արևմտյան թևի մյուս մասը, շուրջ 400 մ² տարածությամբ, շինություններից զուրկ փոքր-ինչ թեք լանջ է կազմում:

Ամրոցի ընդարձակ դահլիճների առկայությունը հնարավորություն է տալիս ենթադրել, որ նրանք եղել են սյունազարդ: Ամրոցի փաստացի բնակելի տարածությունը հանդիսանում է արևելյան մասի հարավային հատվածի 2-րդ հարկը՝ 125 մ ընդհանուր տարածությամբ, ուր լավագույն դեպքում կարող էին բնակվել մի քանի տասնյակ զինվորներ և քրմեր: Այդ պայմաններում վերոհիշյալ երկու՝ 700 մ² ծածկված տարածություն ունեցող սրահների առկայությունը, որը կազմում է ամրոցի ավելի քան 25 տոկոսը, անհասկանալի է դառնում: Ըստ երևույթին այդ տարածությունները օգտագործվել են ոչ թե կայազորի կողմից, այլ ծառայել են բնակավայրի բնակչության համար իբրև ապաստարան՝ հակառակորդի հարձակման ժամանակ:

Ելնելով ամրոցի փոքր չափերից և նրա ներսում բնակելի պահեստային մեծ տարածությունների բացակայությունից, կարելի է ենթադրել, որ այս ամրոցը պատերազմների ժամանակ հանդիսացել է իբրև պահակակետ, իսկ խաղաղ պայմաններում ծառայել է որպես ուրարտական կառավարիչների ամառային նստավայր:

Պալատական շինությունների փլատակները հայտնաբերվել են Դիզի-կոնդ բլրի հյուսիսային լանջի ստորոտում: Նրանց վերերկրյա զննումը պարզում է, որ այդ շինությունները բաղկացած են եղել 4—5 համալիրներից: Պեղված 1—2 համալիրներն ուղղված են հյուսիսից հարավ՝ 40° թեքվելով դեպի արևելք: 3-րդ և 4-րդ համալիրները տեղադրված են արևելքից դրանց հանդեպ ուղղահայաց (50—200 մ հեռավորությամբ), իսկ 5-րդը՝ արևմուտքից (100 մ հեռավորությամբ):

1-ին համալիրը ուրարտական վարպետների հոյակապ ստեղծագործությունն է: Այն բաղկացած է 14 սենյակներից և 900 մ² ընդհանուր տարածություն ունեցող բակից (№ 15 սեն.): 2-րդ համալիրը բաղկացած է 23 սենյակից, բայց նրա պեղումները ավարտված չեն (գծագր. աղ. 36 բ):

№ 15 սենյակը կամ բակը, ունեցել է երկու մուտք: Կենտրոնական մուտքը կառուցված է արտաքին պատի արևելյան մասում և ունի 1,65 մ լայնություն, նրա երկու կողմերից կան երկու ելուստ (3,2 2,5 մետր), որոնք կազմում են յուրահատուկ դեկորատիվ աշտարակներ և նրան տալիս են մոնումենտալ տեսք, որը հատկանշական էր ուրարտական և հինարևելյան ճարտարապետության համար: Երկու համալիրների միջև տեղադրված բակի առկայությունը նույնպես բնորոշ էր ուրարտական հատակագծային լուծման համար (Էրեբունի, Արգիշտիխինիլի, Տուշպա)[21]: Երկրորդ մուտքը կառուցված է արևմտյան արտաքին պատի հյուսիսային հատվածում և փոքրիկ միջանցքով կապվում էր 2-րդ համալիրի սենյակների հետ, սակայն շուտով այդ մուտքը փակվում է պատով, իսկ միջանցքը վեր է ածվում պաշտամունքային որմնախորշի, ուր տեղադրվում են ֆալուսներ և կուռքեր:

1-ին համալիրը № 13 սենյակի միջոցով միանում է բակին, իսկ մի շարք այլ դռներով միանում է № 9, 11—14 սենյակների հետ: Նրա մնացած սենյակները բակի հետ չեն կապվել և, ըստ երևույթին, ունեցել են ինքնուրույն մուտքեր: Այսպես՝ № 6 և 7 սենյակները միացած են դռներով, սակայն կապ չունեն մյուս սենյակների հետ, իսկ № 1 սենյակը բոլորովին մեկուսացված է:






Աղ. 23 Էրեբունի. ա) Սյունազարդ բակ, վերակազմություն. բ) Միջնաբերդի հատակագիծ

Միևնույն ժամանակ № 2—5, 8 և 10 սենյակները մեկը մյուսի հետ կապված են դռներով և ունեն ինքնուրույն մուտք՝ կառուցված 3-րդ սենյակի արևելյան արտաքին պատի հարավային մասում: Այս հանգամանքը հնարավորություն է տալիս ենթադրել, որ № 1—7 սենյակները նույնպես ունեցել են արտաքին մուտքեր, որոնց հետքերը չեն պահպանվել, քանի որ դրանց հյուսիսային պատը համարյա ձուլված է շրջապատող ապառների հետ:

2-րդ համալիրը բակի հետ միացվում է արևելքից արևմուտք ձգվող մի շարք դռների միջոցով: 1-ին դռնով, որը տանում է № 25 սրահը և 2-ով, որը բացվում է դեպի մի նեղ միջանցք, կարելի է անցնել 2-րդ համալիրի համարյա բոլոր սենյակները, բացի № 21-ից: 3-րդ և 4-րդ դռների միջոցով կարելի է անցնել մեկուսացված № 28 և 29 սենյակները: Ինչ վերաբերում է № 21 սենյակին, ապա նա մուտք ունի արևելյան պատում, որը տանում է դեռևս չպեղված մի այլ սենյակ, որոնց ընդհանուր մուտքերը կպարզվեն 2-րդ համալիրի արևելյան թևը պեղելուց հետո:

Այս երկու համալիրները, անկասկած, կառուցված են մ.թ.ա. VII դարի առաջին կեսին, Ուրարտուի երկրորդ վերելքի ժամանակաշրջանում, որը հաստատվում է հնագիտական, հատկապես խեցեղեն նյութով: Սակայն դրանք կառուցված են փոքր-ինչ ավելի ուշ, քան մյուս համալիրները և ամրոցը: Այդ մասին են վկայում № 3 սենյակում գտնված 2 ուրարտական դամբարանները, որոնք ծածկված են սենյակի հատակով և մասամբ հյուսիսային պատով: Նման պատկեր նկատվում է Արգիշտիխինիլիի պեղումների ժամանակ, ուր նոր թաղամասեր կառուցելիս անտեսվում էին աղքատ խավերին պատկանող դամբարանները[22]:

2-րդ համալիրը, ինչպես նշվեց, նույնպես կառուցված է VII դարում, բայց սրա «հյուսիսային ճակատի» (որը նայում է դեպի բակ) տեսքը դիտելիս պարզ երևում է, որ սա կառուցված է ավելի ուշ, քան 1-ինը: Իր հատակագծում այդ պատը ներկայացնում է կոտրված, ոչ կանոնավոր գիծ, որը բնական է բակ դուրս եկող սենյակների համար: Այդ հաստատվում է նաև շինարարական տեխնիկայով և հատակագծային տվյալներով: Առաջին համալիրի պատերը շարված են խոշոր, կոպիտ տաշված ուղղանկյուն կամ քառակուսի քարերից, կավե շաղախով: Այս համալիրն ունի պարզ հատակագիծ՝ կազմված 14 ուղղանկյուն սենյակներից, որոնց դռների մուտքերը ծածկված են խոշոր տուֆե սալերով: 2-րդ կոմպլեքսի պատերը կառուցված են տուֆի ջարդոնով ու գետաքարերով և սվաղված են կավի բարակ շերտով: Այս համալիրի սենյակների հատակագիծը խիստ անկանոն է, ոչ հավասար անկյուններով, որը նրանց տալիս է տարբեր տեսք:

Չնայած երկու համալիրների շարվածքի և շինանյութի տարբերությանը նրանց պատերը տարբերություն չունեն հիմքի և գետնախարսխային մասի մեջ. վերջինս հանդիսանում է առաջինի բնական շարունակությունը՝ հիշեցնելով Արգիշտիխինիլիի և Թեյշեբաինիի գետնախարսխային պատերը: Երկրորդ համալիրի սենյակները տեղադրված են Դիդի-կոնդի փոքր բլրի լանջին՝ հյուսիսից դեպի հարավ, և ըստ երևույթին ունեն աստիճանաձև տեսք: Այս ենթադրությանը հիմք են տալիս ինչպես լանջի թեքությունը, այնպես էլ չորս շարք արևելքից արևմուտք ձգվող մոնումենտալ պատերը, որոնք կրում էին կոնստրուկտիվ ծանրությունը և միաժամանակ ծառայում որպես իրենց սահմանագծված շինարարական տարածքների հիմնապատեր (կրեպիդաներ):

Կառուցողական այդպիսի ձևեր նկատվել են նաև Հ. Ա. Օրբելու կողմից Վանում և Հայկաբերդում[23], Կ. Լ. Հովհաննիսյանի կողմից՝ Թեյշեբաինիում[24] և Հ. Ա. Մարտիրոսյանի կողմից՝ Արգիշտիխինիլիում[25]: Այսպիսի մոնումենտալ հիմնապատերի առկայությունը Օշականում ցույց է տալիս, որ ուրարտական ճարտարապետության այս ձևն օգտագործվել է ոչ միայն ամրաշինական, այլև քաղաքացիական շինություններում:

Օշականի կառույցների տանիքները փայտից էին՝ ծածկված եղեգներով և կավե սվաղով, որի մասին են վկայում պեղումների ժամանակ հայտնաբերված եղեգնի մոխրի հետքերը: Ըստ երևույթին այս սենյակների մեծ մասը, որոնք ունեին նեղ թռիչք, ծածկված են եղել տափակ տանիքով, իսկ № 25 և 27 սյունազարդ դահլիճները, ինչպես նաև № 3, 12, 26—28 մեծ թռիչքով սենյակները ծածկված են եղել հայկական գլխատան ձևի ծածկով և լուսավորվել են վերևից:

Յուրահատուկ ձևով է նշված դռան բացվածքների լուծումը: 1-ին համալիրի բացվածքի ամբողջ խորությամբ երկու կողմից տեղադրված էին խոշոր քարեր, իսկ շեմերը ծածկված էին տուֆե սալերով, 2-րդը՝ մանր քարերով և սվաղված կա-

վով: Հատակների հավասարության համար 1-ին համալիրում շենքի առջև կառուցվում էին տաշված սալերից 1—2 աստիճաններ, իսկ 2-րդում, քիչ հատակների բարձրությունների ավելի մեծ տարբերություններ ունեին, դրվում էին անմշակ, կոպիտ քարեր: Երկու համալիրներում էլ գտնվել են մեծ քանակությամբ դռան կրունկներ բազալտից և տուֆից, որոնք վկայում են, որ դռներն այստեղ ամրացվել են սրածայր շարժական առանցքների վրա:

6, 12, 25 և 28 սենյակների պատերի տակ հայտնաբերվել են նստարան-մաստաբաններ՝ շարված տուֆ, բազալտ քարերից, վերևից սվաղված կավով, որպիսիք հայտնաբերվել են նաև Արգիշտիխինիլիի պեղումների ժամանակ:

Ինչպես ցույց են տալիս հայտնաբերված հնագիտական նյութը և ճարտարապետական ձևերը, այս համալիրները ներկայացնում էին անպաշտպան բնակավայր, որը հիմնադրվելով մ.թ.ա. VII դարի I քառորդում՝ հարատևել է մինչև ուրարտական պետության անկումը: Պեղումները բացահայտել են նաև նրա անկման պատկերը, այն, ինչպես Թեյշեբաինին և Արգիշտիխինիլին, գրավվել և հրկիզվել են: Ըստ երևույթին, շինությունները անկումից հետո մի քանի տասնյակ տարի անմարդաբնակ են եղել, որի հետևանքով պատերի մի մասը փլվել և թափվել է: Մ.թ.ա. VI դարի կեսերին այդ շենքերը վերականգնվում են առանց հատակագծային փոփոխությունների: Դռան բացվածքներում իբրև անկյունաքարեր դրվում էին բազմաթիվ խոշոր ֆալոսներ, որոնք ժամանակին տեղադրվել են պալատների սրբարաններում:

Հնագույն կառույցների ուսումնասիրության և շենքերի վերականգնման պարզաբանման համար մեծ նշանակություն ունեն № 25 և 27 սրահների պեղումները: Վերջին սրահը ներկայացնում է ութ սյունանոց դահլիճ՝ 100 մ² տարածությամբ: Սրա հատակային մասերում պեղվել են չորս սալածածկ հոր, որոնք լցված էին «սրբազան մոխրով» և զոհաբերված կենդանիների ոսկորներով: Այստեղ գտնվել են 25 կուռքեր և ֆալոսներ, իսկ 9 այլ ֆալոս-կուռքեր գտնվել են № 27-ի կից պատի շարվածքում: Այս սյունազարդ դահլիճը, ըստ երևույթին, եղել է այդ շինությունների ընդհանուր սրբավայրը, ուր տեղադրված էին բազմաթիվ ֆալոսներ, կուռքեր և մարդակերպ արձաններ: Մ.թ.ա. VI դարում կատարված վերականգնումից հետո սյուները հանվում են և նրանց խարիսխների մի մասը ծածկվում երկրորդ հատակով, իսկ հյուսիսարևմտյան հատվածում կառուցվում է մի կրակարան, որը ներկայացնում է մի փոքրիկ խորշ՝ ներսում կանգնեցված քարերից կառուցված օջախով:

№ 25 սրահը, որը նույնպես 8 սյունանոց դահլիճ էր, ուներ 150 մ² տարածություն: Նրա հարավային պատի տակ ամբողջ երկարությամբ կառուցված էր նստարան-մաստաբա: Այս սրահում ևս երեք դուռ և սրա մեջ բացակայող պաշտամունքային նշանակության առարկաները հնարավորություն են տալիս ենթադրել, որ սա հանդիսացել է խորհրդակցությունների դահլիճ:

Վերականգնելուց հետո, ինչպես և № 27 սրահում, սյուները ոչնչացվել են և կենտրոնում կառուցվել է միջնապատ՝ նախկին սրահը բաժանելով երկու մասի, որոնցից առաջինի մուտքը պահպանվել էր բակից, իսկ 2-րդինը՝ վերը նշված միջանցքից: Երկու նորաստեղծ սենյակներում, որոնցից յուրաքանչյուրի տարածությունը կազմում էր շուրջ 75 մ², կառուցվում են ձվաձև և ուղղանկյուն կավե օջախներ, որոնց պատերն ունեին 15—20 սմ բարձրություն և թաղված էին հատակում: Ասածով չի սահմանափակվում պաշտամունքային նոր կետերի թիվը: № 20 և 22 սենյակներում կառուցվում են վերոհիշյալ օջախների տիպի ևս երեք օջախ, որոնք վկայում են, որ այս պալատական շինությունների վերականգնումից հետո ուրարտական սրբատների փոխարեն ստեղծվում են 3 խոշոր (յուրաքանչյուրը 75 և 100 մ² տարածությամբ) և 2 փոքր այլ կրակարաններ:

**Ռազմական հենակետ քաղաքներ:** *Ռազմական շինությունը իր որոշակի ու նշանակալից տեղն ուներ Ուրարտուի ստրատեգիական պլաններում, որն իր սկզբունքներով զգալիորեն ներգործեց այդ շինարարության բովանդակության վրա և ստեղծեց յուրահատուկ կառույցներ՝ զորանոցներ, ախոռներ, մրցադաշտեր, լճակներ՝ ռազմական ձիերին լողացնելու համար, բերդեր, ռազմական ճամբարներ ու քաղաքներ:*

*Ռազմաստրատեգիական բոլոր կառույցներն իրենց տեխնիկական մակարդակով միանգամայն համապատասխանում էին հարակից երկրների նույնատիպ կառույցների բոլոր սկզբունքներին:*

*Ուրարտական հենակետ քաղաքները սպառազինված էին բավականաչափ լավ ու հուսալի:*




*Աղ. 24 Միջնաբերդի հատակագծերի սխեմա*

Այդ կարելի է եզրակացնել Սարգոն Բ-ի արդեն նշված տարեգրություններից, որ նա հայտնում է, որ Ուրարտուում տեսել է հզոր ու գեղեցիկ բերդեր՝ 120 շերտ աղյուս ունեցող պատերի բարձրությամբ (կազմում է շուրջ 18 մետր)։ Բերդերն ունեին 2—3 շարք պարիսպներ՝ իրենց աշտարակներով ու որմնահեցերով և տեղ-տեղ էլ իրենց առջևում արված խրամատներով։ Այդպիսիք են Ուայաիս, Արգիշտիունա, Կալլանիա, Տարուի ու Տարմակիսու և մյուս բերդերը։ Արգիշտիունայում ու Կալլանիայում գտնվողների կայազորների մասին Սարգոն Բ-ն նույն տեղում ասում է, որ «նրանցում գտնվող կայազորը կազմված էր լավագույն մարտիկներից, մարտերում կոփված ու հաղթանակող զորքից»[26]։

Ինչպես պարզում են Արինբերդի պեղումները, ուրարտական ամրոցները լավ էին հարմարեցված երկարատև պաշարումներին դիմանալու համար, քանի որ նրանցում գտնվում էին ցորենի մեծ շտեմարաններ և ջրավազաններ։ Ուրարտական ամրոցները համարյա միշտ կանգնած էին բարձր բլուրների վրա կամ եզրագծված խոր ձորերի միջով հոսող գետերի ոլորապտույտներով և պաշտպանված էին անմատչելի, իսկ որոշ դեպքերում էլ անառիկ, ուղղաձիգ ապառաժ ափերով։

Էրեբունի։ Ուրարտացիների քաղաքների շարքում առավել նշանակալից էր Էրեբունին, որը հիմնադրվել է մ.թ.ա. 782 թ., որպես Այս երկրի հզորագույն ռազմաստրատեգիական հենակետ (լուսանկ. աղ. 6 ա, 7 բ)։ Քաղաքի հիմնադրման կապակցությամբ Արգիշտի Ա-ն թե՛ իր խորխորյան և թե՛ Էրեբունիի արձանագրություններում բնութագրում է քաղաքի ֆունկցիոնալ նշանակությունը։

«Խալդի աստծո մեծությամբ, Արգիշտին՝ Մենուայի որդին այս հզոր բերդը կառուցեցի... Բիայնիլի երկրի հզորության համար և թշնամական երկրներին ի սարսափ...»։

Միջնաբերդի տեղի ընտրությունը Արինբերդի բլրի գագաթին՝ ստրատեգիական առումով բավական հաջող էր։ Բլրի գագաթից պարզ երևում են Արարատյան դաշտավայրը՝ իր մի շարք բնակավայրերով, ինչպես նաև Էրեբունիի հեռավոր ու մերձակա մատույցները հանող գլխավոր մայրուղիները։

Քաղաքների այս շղթայաձև կապի պայմաններում Էրեբունիի Խալդիի տաճարի աշտարակը՝ burgana-ն, բացի իր որոշակի նշանակությունից պետք է որ ազդանշան տվող խարույկների տեղ լիներ։ Իսկ այդ մեծ տաճարը, միջնաբերդի ընդարձակ տարածքում, սպասարկում էր Էրեբունի միջնաբերդում ու քաղաքում տեղավորված զորքերին։ Տաճարում էին կատարվում Խալդի աստծուն նվիրված զոհաբերությունները՝ զորքը մարտի դաշտ դուրս բերելուց առաջ։

Բացի հարթավայրից, որ փռված էր Արինբերդի ստորոտում, քաղաքի սահմանների մեջ էին մտնում նաև երեք բլրակները, որոնք գտնվում են միջնաբերդից հյուսիս ու հարավ-արևելք և որտեղ նույնպես պեղումների ընթացքում հայտնաբերվում է համապատասխան հնագիտական նյութ։

Դատելով քաղաքի հարավարևելյան մասում գտնվող բնակելի շենքերի մնացորդների հատակագծային լուծումներից, կարելի է եզրակացնել, որ այդ տների կառուցապատումը կատարվել է բավական խիտ ձևով։ Թեև վերջնականապես պարզված չեն այդ տների հատակագծային հորինվածքները, ինչպես նաև նրանց ճարտարապետության արտաքին ձևերը, սակայն արդեն որոշակի ընդհանրություն կարելի է տեսնել նրանց և Թեյշեբաինիի ու Արգիշտիխինիլիի քաղաքների բնակելի շենքերի միջև։

Քաղաքի նույն հատվածում հայտնաբերված 25 մետր երկարությամբ ուղղաձիգ պատը, կարծում ենք, կարող է լինել ռազմական ձիերի ախոռի պատի հատվածը։ Թվում է, թե Կարմիր բլուրի պեղումների ընթացքում գտնված ձիու մի ճակատակալը՝ «Մենուա թագավորի ախոռը» սեպագրով, ինչպես և այստեղ գտնված Մենուայի մյուս իրերը պետք է պատկանեին Էրեբունի քաղաքին։

Միջնաբերդից 200 մետր հյուսիս-արևելք, 4 մետր խորության վրա հայտնաբերվել է բազալտե քարերից կանոնավոր ձևով շարված ընդարձակ մի հատակ։ Սակայն, բացի կառույցների նման մնացորդներից կամ նրանց հազիվ նշմարելի հետքերից՝ մակերեսի վրա, Էրեբունի քաղաքի սահմաններում անհնարին է գծագրել փողոցների հետքերը, քանի որ ներկայումս խիտ կառուցապատված է ժամանակակից շենքերով։ Միայն քաղաքի առանձին հատվածներում կույտերի ձևով կարելի է նկատել կարմիր գույնի կավ, որը, անկասկած, պետք է պատկաներ հինավուրց շենքերի փլված պատերի վերևի շարքերին։

Ռուսախինիլի (Բաստամ)։ Ուրարտուի արևելյան մարզի այս աչքի ընկնող քաղաքն ու երկրի խոշոր ռազմական կենտրոնը գտնվում է ժամանակակից Բաստամ գյուղի տարածքում, Մակուից 85 կմ հարավ-արևելք, Խոյ քաղաքից հյուսիս։ Քաղաքը հիմնադրել է Ռուսան՝ Արգիշտիի որդին, մ.թ.ա. VIII դ. և կոչել է իր անվամբ սեպագիր այն արձանագրության մեջ, որը ժամանակին Բաստամից տեղափոխելուց հետո, ի վերջո նորից հայտնաբերվել է 1910 թ., այս անգամ Մակու քաղաքում։

Քաղաքը տարածվում է Սելս գետի շրջակայքում վեր խոյացող բարձր բլրի առանձին հատվածներում, ինչպես նաև նրա առջև փռված հարթավայրային մասերում (լուսանկ. աղ. 7 ա)։

Բաստամի տեղանքը, իր զատված հատվածներով, համապատասխանաբար անդրադարձել է նրա տարածքի կառուցապատման կազմավորման վրա։

Ձգվելով հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք, նրա միջնաբերդի կառույցները խմբավորվել են երեք մասում, որոնք համապատասխանաբար ստացել են ստորին, միջին ու վերին բերդեր ժամանակակից պայմանական անվանումները։ Քաղաքի միջնաբերդի հիմնական կառույցները գտնվում են բլրի հարավային մասում, որից հյուսիս, համեմատաբար հարթ տարածքում, փռված են քաղաքը սպասարկող արհեստավորական և առևտրական խավին պատկանող թաղամասերը (գծագր. աղ. 20)։

Քաղաքի մյուս կառույցները գտնվում էին միջնաբերդից շուրջ 500 մետր արևելք, որտեղ պահպանվել են նաև ռազմական նշանակություն ունեցող, 130×159 մետր չափերի կանոնավոր ձևով պարսպապատված մի քառանկյուն տարածք ու նրանում գտնվող լավ տեսանելի շենքի մնացորդները։ Բլրի ամենաբարձր, բրգաձև գագաթի մասում վեր էր խոյանում ռազմաստրատեգիական նշանակություն ունեցող մի դիտակետ, որն իր տեսադաշտում էր պահում դեպի քաղաք ուղղված բոլոր մայրուղիները։

Թեև Բաստամի ոչ բոլոր հատվածներն են համաչափ պեղված և առայսօր հայտնաբերված կառույցներից էլ որոշ տեղերում պահպանվել են նրանց հազիվ նշմարելի հետքերը, սակայն ընդհանուր առումով միջնաբերդի հատակագծային հորինվածքը պարզորոշ գծագրում է նրա քաղաքաշինական բոլոր սկզբունքային մոտեցումները։

Միջնաբերդը պարփակված էր հզոր պարիսպներով, իսկ որոշ հատվածներում, հատկապես իր հյուսիսարևելյան թեք սարալանջի երկայնքով, որ նրա առավել խոցելի հատվածն էր, ելնելով տեղանքի բնույթից, ամրացված էր նաև հենապատերով։ Այստեղից էլ, սկսած ստորին բերդից, Տուշպայից եկող և տվյալ հատվածում սալահատակված ճանապարհը անցնում էր միջնաբերդի հյուսիսային մասը նրա երկու մուտքով՝ հյուսիսային ու հարավային։

Ստորին բերդում տեղավորված էին զորանոցները, ձիերի ախոռները, ինչպես նաև դրանց սպասարկող տնտեսական շինություններն ու պահեստները։

Բացի զորանոցներից, այստեղ առավել նշանակալիցները ռազմական անհրաժեշտություն ներկայացնող ախոռներն էին։

Նրանցում, ձիերի դասավորության առումով, իրենց հատակագծային լուծումներով առանձնանում են երկու տարբերակ։ Այդ կառույցների ներքին 9-ական մետր լայնությունները բաժանվում են երեք նավերի, ժամանակին քարե խարիսխների վրա կանգնած փայտյա սյուներով[27]։ Ձիերը նրանցում կանգնեցվում էին եզրային սալահատակված նավերում, գլուխներով դեպի միջին նավը, սահմանազատվելով նրանից 50—60 սանտիմետր լայնություն ունեցող ցածր նստարանով, որոնց վրա դրվում էր կերը։ Կառույցի երկարությունը 47 մետր էր և նրանում, համաձայն Վ. Կլայսի հաշվարկների, տեղավորվում էր շուրջ 70 ձի[28]։

Ախոռների մյուս տիպի կառույցում, որտեղ արտաքին պատերի տակ էին գտնվում կերի համար 30 սանտիմետր բարձրությամբ կավակերտ նստարանները, ձիերը կանգնեցվում էին հակառակ ուղղությամբ, գլուխներով դեպի դուրս։

Ախոռների առավել մեծ չափերի համալիրը գտնվում է քաղաքի արևելյան մասի դաշտում, Սելս գետի մոտ։ Այստեղ այդ կառույցն իր առջև ունի պարսպապատված ընդարձակ հրապարակ, որն, ամենայն հավանականությամբ, պետք է ծառայեր ձիավարժությունների համար։

Վերևում արդեն ասվեց, որ ուրարտացիք ռազմական ձիերի վարժեցման գործի հմուտ վարպետներ էին։ Այդ մասին դիտեին ասորեստան-





















*Նկ. 25 Տաճարներ. ա), բ), գ) Ալթին-Թեփե. տաճարի վերակազմությունները, դ) Կայալի-դերե. տաճարի հատակագիծը, ե) Ալթին-Թեփե. տաճարի մուտքի վերակազմություն, զ) Ալթին-Թեփե. տաճարի հատակագիծ, է) Կեֆ-կալեսի. տաճարի ներքին տեսքը, վերակազմություն*

ցիները։ Սարգոն Բ-ն իր արձանագրություններից մեկում հիշատակում է այն մասին, որ Սուբի նահանգի (ժամանակակից Թավրիզի շրջապատում) ընիկները այդ ընագավառում չունեին իրենց հավասարները։

Ուշագրավ է նաև այն, որ ձիավարժությունը որպես սպորտային ձև մեծ տարածում ուներ երկրում և նրանով զբաղվում էին նաև իրենք՝ թագավորները։ Հայտնի է, օրինակ, որ Մենուան սպորտի այդ ձևի լավագույն մարզիկներից էր։ «Արծիբի» իր ձիու վրա նա թռել էր 22 կանգուն երկարություն, որը հավասար է 11 մետր 20 սմ։

Թառամի գլխավոր ախոռների կառույցները սկզբունքորեն համանման լուծում ունեն մ.թ. I հազարամյակում Մեգիդդոյում գոյություն ունեցող նման համալիրի հետ, որը նույնպես ձիերի վարժեցման համար ընդարձակ հրապարակ ուներ։ Մեգիդդոյի համալիրը հայտնի է իր վերականգնված տեսքով։ Նրանում բացի նշված հրապարակից ու ախոռների կառույցից, կային նաև պահեստներ՝ ռազմական մարտակառքերի համար, որոնք պատկանում էին զորատեսակների այդ միավորումներին։ Նման միավորումներով համալրված էր նաև Թառամի ռազմական կայազորը, քանի որ նրանում ևս, ինչպես նշում է Վ. Կլայսը, միջնաբերդի հյուսիսային մուտքի մոտ հայտնաբերված են մարտակառքերի կանգառներ։

Մ. Ռիմշնայդերի այն կարծիքը, որ Ուրարտուում կառուցվում էին լճակներ՝ ձիերին լողացնելու համար, հավանական է։ Այստեղ՝ Թառամում, որպես լողարան կարող էր ծառայել Սևս գետի ավազանը։

Թառամի ստորին բերդում պահպանվել են պահեստային մեծ շենքերի բավականին հաստ հիմքերի, պատերի ու մույթերի մնացորդներ։ Ելնելով նման մի շենքի արտակարգ չափերից, Վ. Կլայսը իր կատարած վերակառուցման մեջ այն պատկերել է բազմահարկ տեսքով (գծագր. աղ. 21)։

Միջնաբերդի միջին հատվածի բարձունքի եզրին, ինչպես և Ալթին-Թեփեում կամ Կայալիդերեում վեր էր խոյանում ավանդական քառակուսի հատակագծով տաճարը։ Դրա առաջ ստեղծված էր 15×60 մետր չափերի հրապարակ, որը, ինչպես և Կայալիդերեում, սալահատակված ու նախատեսված էր մեծ բազմության համար։ Այդ կապակցությամբ էլ գրեթե հաստատորեն կարելի է ասել, ելնելով նաև մի շարք այլ տաճարների համանման տեղադրումից, որ ուրարտական պաշտամունքային ծիսակատարությունները հիմնականում կատարվում էին տաճարների առաջ, բացօթյա տարածքում։

Անդրադառնալով Թառամի տաճարին, կարծում ենք, որ այն սպասարկում էր հիմնականում կայազորի ռազմական անձնակազմին, ինչպես որ էրեբունիի Խալդի աստծո տաճարը։ Ուստի և մեծ տարածությամբ լայն հրապարակը նրա առջև անհրաժեշտ էր։

Մեր կարծիքը տաճարի սպասարկման ֆունկցիաների մասին խարսխվում է այն փաստի վրա, որ Խալդին, բացի գերագույն աստված լինելուց, նաև պատերազմների աստված էր, իսկ Թառամում էլ գտնվում էր ռազմական կայազորը։

Ռուսա Բ-ի Թառամյան այն սեպագիր արձանագրության մեջ, որում խոսվում է տաճարի կառուցման մասին, առաջին անգամ ուրարտական տարեգրություններում հայտնվում է այն մանրամասնությունը, որ տաճարը հիմնված է եղել տեղանքի թեք սարալանջին։

Թառամը, ինչպես արդեն ասվեց, Ալավերդիբենդի տնտեսական համակարգի ռազմական հովանին էր։ Կարծում ենք, որ այն այդպիսին էր նաև մի շարք այլ տնտեսական կենտրոնների համար, որպիսիք գոյություն ունեին Ուրմիա լճի հյուսիսային տարածքներում։ Մենք նկատի ունենք Վերախրամը, Լիվարը և մյուսները (գծագր. աղ. 27)։

Ինչպես պարզել են Վ. Կլայսի հնագիտական պեղումները, Թառամը շարունակում էր իր կյանքը նաև հետուրարտական դարաշրջանում։ Այդ շրջանից պահպանվել են առանձին կառույցների մնացորդներ, ինչպես նաև պարթևական դամբարաններ՝ համապատասխան հնագիտական իրերով[29]։

**Զերնակի-թեփե։** Ուրարտական քաղաքաշինության ու հատկապես ռազմական քաղաքների շինարարության բնագավառում իր ուրույն տեղն է գրավում Զերնակի-Թեփեն, որի հնագիտական մնացորդները փռված են Վանա լճի հյուսիսային ափի մոտ գտնվող դաշտավայրում։

Ինչպես կարծում են այդ քաղաքի հետազոտողներ Բըրնեյն ու Լավոնը[30], շինարարական աշխատանքները դրանց հիմնադրման ժամանակ չեն հասցվել իրենց ավարտին, և դա հաստատվում է այն հանգամանքով, որ քաղաքի բա-

լոր շենքերը համահավասար պահպանել են միայն իրենց քարե որմածքների առաջին շարքերը: Նույնը հաստատող նրանց մյուս կռվանը այն է, որ տվյալ տարածքում չեն գտնվել նաև խեցեղենի իրերի ուշագրավ մնացորդներ, որոնց առկայությունն այնտեղ պարտադիր էր, եթե քաղաքն ապրել է իր, թեկուզև կարճատև կյանքով:

Անկախ այս վիճակից, ներկա դեպքում մեզ առավելապես հետաքրքրում են քաղաքի հատակագծման տվյալ ուրույն սկզբունքները՝ իրենց տեսանելի փաստական արտահայտությամբ:

Ջերնակի-Թեփեն, ինչպես և բոլոր ուրարտական քաղաքները, կառուցված է բարձր բլրի ստորոտում փռված հարթավայրի վրա, իսկ միջնաբերդը՝ այդ բլրի գագաթին: Սրանով տվյալ հորինվածքն արտահայտում է ուրարտական քաղաքաշինական հայտնի ավանդույթը: Սակայն նորույթը քաղաքի ընդհանուր հատակագծային հորինվածքի խիստ կանոնավոր երկրաչափական ցանցի լուծման մեջ է:

Այդ ցանցում գծագրված թաղամասերը միատիպ քառակուսիներ են, յուրաքանչյուրը 35,0× 37,0 մետր չափերի, որոնց արտաքին պատերը 1,40—1,50 մետր հաստություն ունեին, իսկ ներքինները՝ 1—110 մ.:

Այդ թաղամասերի միջև անցնող և նրանցով կազմված փողոցները համապատասխանաբար ուղղագիծ էին, իրար զուգահեռ կամ ուղղահայաց և բոլորն էլ 5 մ լայնությամբ: Դրանց հետ մեկտեղ քաղաքի գրեթե առանցքներով անցնում են ուղիղ անկյան տակ իրար հետ հատվող երկու գլխավոր փողոցները, յուրաքանչյուրը 7-ական մետր լայնությամբ:

Այդպիսին են քաղաքի վերերկրյա, միայն տեսանելի մասերը, շուրջ մեկ քառակուսի կիլոմետր տարածքով, ընդ որում, ինչպես երևում է նրա՝ հողով ծածկված եզրագծերից, քաղաքի մակերեսը շատ ավելի մեծ էր:

Միատիպ հատակագիծ ունեցող թաղամասերը կազմված են միջանցքով անջատված, համարյա թե նման դասավորություն ունեցող երկու խումբ սենյակներից, որոնցից յուրաքանչյուրն իր հերթին կազմում էր ինքնուրույն բնակելի տուն: Այլ կերպ ասած՝ ամեն մի թաղամասը կազմում էր 4 բնակելի տուն: Իսկ, ինչպես կարծում են Բըրնեյը և Լավսոնը, այստեղ կարող էր լինել 2-րդ հարկ, և այդ դեպքում յուրաքանչյուր տան նեղ սենյակներից մեկը պետք է որ աստիճանավանդակ լիներ: Համաձայն նրանց հաշվարկների, Ջերնակի-Թեփեն ունեցել է 7 հազար բնակիչ:

Կասկածից դուրս է, որ Ջերնակի-Թեփե քաղաքը, որպես այդպիսին, նախատեսված էր միատիպ գործունեությամբ զբաղվող բնակիչների համար: Դրա հետ մեկտեղ, ամենայն հավանականությամբ, քաղաքի բնակիչները գտնվում էին պետական խնամքի ներքո: Այդ է պատճառը, որ բնակելի շենքերի ծավալատարածական հորինվածքներին տրված է նշված ընդհանրությունը և միօրինակությունը:

Այդ բոլորից պետք է եզրակացնել, որ քաղաքի բնակիչները կազմում էին համահավասար վիճակում գտնվող զանգվածներ, որպիսիք կարող էին լինել ուրարտական ռազմիկները: Հետևապես, Ջերնակի-Թեփեն ուրարտական ռազմաստրատեգիական կենտրոններից մեկն էր, իր հատակագծային ուրույն արտահայտությամբ:

Հարկ է նաև նշել, որ քաղաքային օրգանիզմի հատակագծման տվյալ միասնական կոմպլեքսային լուծումը (տիպային բնակելի շենքեր) ուրարտական քաղաքաշինության նվաճումների բարձրագույն արտահայտությունն է:

Այդ մասսայական, լայնատարած ու նույնատիպ կառույցների ճարտարապետական առանձին ձևերը՝ համընդհանուր տարածական հորինվածքում, իրենց կերպի ընկալման մեջ ստանում են տեսողական առումով միասնական (ներդաշնակ) արտահայտություն:

Ինչպես պարզել են Բըրնեյն ու Լավսոնը, հատակագծային այդ սկզբունքը կիրառված է նաև Վերին Անզաֆի քաղաքատեղիում, որը դեռես չի պեղված, սակայն իր արդի վիճակով որոշ չափով հիշեցնում է Ջերնակի-Թեփեի հատակագծային կանոնավոր ցանցը: Ջերնակի-Թեփեն նման է կանոնավոր հատակագիծ ունեցող հին աշխարհի տարբեր դարաշրջանների մի շարք քաղաքներին: Նման կանոնավոր, ինչպես նաև սիմետրիկ հատակագծով հորինվածքի օրինակի (գյուղական վայրերի համար) նկարագրությունը կարելի է գտնել հնդկական հայտնի «Շիլպաշաստրայում», որն առնվազն մ.թ.ա. II հազարամյակի նյութերի հավաքածու է:

Բնորոշ են այդ առումով նաև հետուրարտական դարաշրջանի Միլեթը, Կնիդոսը՝ էգեյան ծովի

Ա

Բ

Գ

Դ

0 4 8 12Մ

Ե

Օ

Նկ. 26 ա) Մուսասիրի տաճար, բ) Խալդի տաճարի հատակագիծ և վերակազմություն, գ) Սուսի տաճարի հատակագիծ, դ) Ջրա տաճարի հատակագիծ, ե) Տաշբուրուն. տաճարի ներքին տեսքը, վերակազմություն, զ) Տաշբուրուն. տաճարի հատակագիծ

ափերին, Տիմգադը՝ Հռոմեական-Հյուսիսային Աֆրիկայում, ինչպես նաև սելևկյան Դուրա-Եվրոպոսը Եփրատի վրա և շատ ուրիշներ։

Սակայն այս բոլոր քաղաքների հետ անվիճելի նմանության հետ մեկտեղ Զերնակի-Թեփեն նրանցից տարբերվում էր մի յուրահատկությամբ. եթե հետագա դարերի տվյալ քաղաքների հատակագծերում ներգծված էին խոշոր հասարակական հրապարակներ, որոնց վրա վեր էին խոյանում աշխարհիկ ու պաշտամունքային մոնումենտալ շենքեր ու այլ հասարակական կառույցներ, որոնք իրենց շեշտված ուղղաձիգ ձևերով քաղաքի ծավալատարածական ուրվագիծն էին կազմում և համապատասխան ճարտարապետական տեսադաշտեր ստեղծում, Զերնակի-Թեփեում տարածական իրավիճակն այլ էր։

Այստեղ ամեն մի ծավալ միօրինակության արտահայտություն էր, որոնք ստեղծում էին համանման թաղամասերը՝ բնակելի տների իրենց տիպային լուծումներով։ Իսկ նման դեպքում, եթե անդրադառնանք քաղաքի ամբողջական ծավալատարածական լուծմանը, ապա պարզ կդառնա, որ այն պետք է ունենար հարթ ծածկով ավարտված շենքերի մեկ ընդհանուր միաձույլ հորինվածք։ Դրա հետ մեկտեղ, Զերնակի-Թեփեի մոնումենտալ կառույցները՝ պալատներն ու տաճարները և նրանց բերդապարիսպները, ինչպես և ամենուրեք ուրարտական քաղաքները, վեր էին խոյանում կից բլուրների գագաթին և իշխելով քաղաքների վրա, որպես նրա վերասլաց ու ուղղաձիգ ծավալներ, պետք է որ ստեղծեին մեզ արդեն ծանոթ ճարտարապետական ձևերի հակադրամիասնություն։

Ուշադրության է արժանի Զերնակի-Թեփեի կառուցման անավարտ աստիճանը, որից երևում է, որ իբրև նորարարական քաղաքաշինական սկզբունք, դրսևորվելով Ուրարտուի պատմական կյանքի վերջին փուլում, հազիվ արտահայտվեց միայն իր մեկնակետային վիճակով։ Սակայն, կանոնավոր հատակագծման Զերնակի-Թեփեի այդ հորինվածքը, որպես քաղաքաշինական սկզբունք, համընդհանուր ճարտարապետության պատմության մեջ ունի իր հետագա փուլերը։ Դրանք հելլենիստական քաղաքաշինության համապատասխան հատակագծման հորինվածքներն են, որոնք լայնորեն հայտնի են «Հիպոդամյան» մեթոդ անվամբ։

Ագրար-թեփե։ Քաղաքների միջև կանգնեցված աշտարակաձև փոքր չափերի կառույցներից մեկը Ագրար-Թեփեն է, որի մնացորդները գտնվում են ուրարտական թագավորության արևելքում՝ Հասանլուի մոտ։

Բերդի՝ էլիպսին մոտ պարզ տեսանելի հատակագիծը իր հազիվ 200 մ² օգտակար մակերեսով բաժանված է փոքր հատվածների, որոնք շրջափակված են բավական հզոր որմնահեցեր ունեցող ու արտակարգ հաստ պարիսպներով։ Բերդի մուտքը, պարսպի հարավային մասում, իր մեկ մետր բացվածքով ծառայում էր միայն հետիոտն անցումների համար։ Բերդի կառույցների մեջ դեպի վերին հարկերը տանող աստիճանների պահպանված հետքերը հաստատում են շենքի արտաքին ճարտարապետական ծավալների աշտարակաձև զարգացումը։

Հատակագծում սենյակների փոքր քանակը հաստատում է բերդի սահմանափակ ֆունկցիոնալ նշանակությունը։ Այդ առումով կարծում ենք, որ Ագրար-Թեփեն պետք է դասվի ռազմաստրատեգիական նշանակություն ունեցող կառույցների շարքը, թերևս սահմանափակ ու մասնակի տակտիկական հարցերի լուծման համար, որպիսիք կարող էին լինել հաղորդումներ՝ կրակի պայմանական նշաններով, ռազմական ճանապարհների հետախուզական հսկողություններ և այլն։

Այլ խոսքով՝ դրանցով իրացվող շղթայաձև այդ կապը տվյալ տարածքում ստեղծում էր այն ուրույն նշանակությամբ ճարտարապետական համակարգը, որի մասին խոսվեց վերևում։

Վ. Կլայսը անդրադառնալով այդ կարգի հուշարձաններին, նշում է իր տեսած նման փոքր չափերի (15×25) աշտարակաձև կառույցների առկայությունը Մարանդի հովտում։ Էլ ավելի փոքր չափերի կառույցներ, կլոր հատակագծով, մենք տեսել ենք Թավրիզ—Դեխարղան—Մարաղա երթուղու զուգահեռ լեռնային մասով անցնող պատմական ճանապարհների երկու կողմերում, որոնք ժամանակին իրենց հսկողության տակ էին պահում նրանցում կատարվող շարժումը։

Ինչպես գրում է Վ. Կլայսը, կանոնավոր էլիպսի ձև ունեցող հատակագծով Փոքր Զարը, որի ավերակները փռված են Մարանդից 8 կմ հեռավորության վրա, Սուֆիանի[31] մոտ, նման փոքր չափերի ուրարտական բերդ էր, որն ուներ ռազմական նշանակություն և իր հսկողության տակ էր պահում այստեղից անցնող ճանապարհը։ Սակայն, բանն այն է, որ ուրարտական բերդա-

*շինության և ընդհանրապես ճարտարապետության բնագավառում տվյալ կանոնավոր էլիպսաձևը չունի ո՛չ իր նախատիպը, ո՛չ էլ հետագա զարգացումը։*

*Մենք գտնում ենք, որ տվյալ կառույցը պատկանում է ոչ թե ուրարտական, այլ ասորեստանյան ճարտարապետական մշակույթին։ Իր արտաքին եզրագծով այն նման է ասորեստանյան, օրինակ, Սինախերիբի ռազմական ճամբարին, որն իր էլիպսաձև հատակագծով գրեթե հար և նման ձևով պատկերված է մի շարք ասորեստանյան հինավուրց հարթաքանդակներում։ Իր չափերով էլ՝ 75×90 մ., համապատասխանում է վերջիններիս պահանջներին։ Կարծում ենք, որ այդ կառույցը, որ գտնվում է դեպի Ուրարտու 714 թ. մ.թ.ա. Սարգոն Բ-ի արշավանքի ճանապարհին, լինելով, ինչպես հաստատում է Վ. Կլայսը, նույն դարի գործ, եղել է ասորեստանցիների ռազմական ճամբար։ Այնտեղ է տեղի ունեցել նրանց հայտնի մարտը ուրարտացիների դեմ՝ Ուլխուի համար (ժամանակակից՝ Մարանդ)։*

*Այլ էր ուրարտական ռազմական ճամբարի ծավալատարածական ճարտարապետական արտահայտությունը, որպիսին Բըրնեյն ու Լավսոնը տեսնում են Անզավուրի մնացորդներում։ Նրանում գրեթե չկան կառույցների հետքեր, ինչպիսիք պետք է լինեին ճամբարային տարածքում, քանի որ այնտեղ գտնվելու էր զորքը։ Սակայն, միևնույն ժամանակ այնտեղ կար արհեստական լճակ, որը պետք է ծառայեր որպես ռազմական ձիերին լողացնելու տեղ։ Իսկ կից բլրի բարձրության վրա երևացող քառակուսի հատակագծով, փոքր չափերի կառույցների հետքերը հաստատում են, որ այնտեղ էր ժամանակին գտնվում ճամբարի դիտակետը։*

*Այսպիսով, եթե հարթավայրերի պայմաններին բնորոշ ռազմական ճամբարի ասորեստանյան տիպն ուներ կանոնավոր էլիպսի ձև, ապա ուրարտական ճամբարները ելնելով քաղաքաշինական ուրույն սկզբունքներից, մշտապես կցվելով բլուրներին, օգտագործում էին լեռնային տեղանքի առավելությունները։*

Պաշտամունքային քաղաքներ։ *Այս քաղաքներից են ուրարտական պանթեոնի գերագույն երրորդության՝ Խալդիի, Թեյշեբայի ու Շիվինիի պաշտամունքային կենտրոնները։ Ուրարտական գերագույն աստծո՝ Խալդիի պաշտամունքի կենտրոնը ասորեստանյան և ուրարտական սեպագիր արձանագրություններից լայնորեն հայտնի Մուսասիր քաղաքն էր կամ Արդինին, ինչպես այն անվանում էին ուրարտացիք։ Ուրարտական պանթեոնի մյուս աստծո՝ Թեյշեբայի պաշտամունքի կենտրոնը Կումենու քաղաքն էր, որը գտնվում էր Վանա լճից հարավ-արևելք, Վերին Զաբ գետի միջին հոսանքի շրջանում։ Մուսասիրի մերձակայքում Շիվինիի արևի պաշտամունքի կենտրոնը Ուրարտուի մայրաքաղաք Տուշպան էր։*

*Մուսասիրը գտնվում է, ինչպես ենթադրվում է, Նինվեից 120 կմ հյուսիս-արևելք, ժամանակակից Ռևանդուզ քաղաքի շրջակայքում։ Դատելով Սարգոն Բ-ի Դուր-Շառուկինի պալատում գտնված դռան հարթաքանդակներից մեկի վրա պատկերված Մուսասիրի տաճարի և նրա շրջակա տեղանքի կառուցապատումից, քաղաքը գտնվում էր բլրաշատ վայրում, ուր բնակելի շենքերը կառուցված էին թեք լանջերի վրա՝ աստիճանաձև հորինվածքով (գծագր. աղ. 29, ա)։*

*Ի դեպ, նույն տեղում նշված է նաև, որ ասորեստանյան զորքի Մուսասիր ներխուժման ժամանակ տեղի բնակչությունը հավաքվել էր տների հարթ կտուրներին, ինչը համապատասխանում է հարթաքանդակի վրա գծագրված տների ձևերին։ Այդ տները ոչ թե բազմահարկ էին, ինչպես կարելի է պատկերացնել՝ նայելով այդ հարթաքանդակներին, այլ աստիճանաձև էին, որի յուրաքանչյուր շենքը գծագրված է տարածության մեջ ու ձուլվելով մյուսին ընդհանուր հարթության վրա արտահայտվում է բազմահարկության տեսքով։ Ուշագրության է արժանի նաև այն, որ յուրաքանչյուր շենքը կողքի կառույցից անջատված է ուղղաձիգ գծով, ինչը պետք է արտահայտեր շենքերի՝ մեկը մյուսից բաժանված վիճակը տարածքում։*

*Քանի որ Խալդին երկրի գերագույն աստվածն էր, Մուսասիրն էլ իր հերթին Ուրարտուի կրոնական կյանքի կենտրոնն էր. այդ բանը ի վերջո նրան հասցնում է տնտեսական աննախընթաց վերելքի ու հզորության։ Խալդին միևնույն ժամանակ պատերազմների հովանավորող աստվածն էր, որը իր հերթին քաղաքին տալիս է նշանակալից արտոնություններ։ Դրանով կրոնական այդ կենտրոնի տնտեսություններն այնքան էին ուռճանում, որ դառնում էին նյութական մեծ պաշարների տիրապետողներ։ Այդ պաշարները բաղ-*



Ա



Բ



Գ



Դ

*Նկ. 27 ա), բ). Սյունազարդ և մույթերով սենյակների և դահլիճների հատակագծերի սխեմա, գ) Տաճարների մուտքերի սխեմա, դ) Ամրոցների մուտքերի սխեմա*

մապատկվում էին, երբ ուրարտական թագավորներն ամեն անգամ հարուստ նվերներով այցելում էին խալդիի պաշտամունքի այդ կենտրոնը։

Մուսասիրի հարստության չափը հայտնի է դառնում Սարգոն Բ-ի հաղորդումից, երբ նա, իր արշավանքի ժամանակ ավերելով այդ պաշտամունքային կենտրոնը, արձանագրում է նրանում բռնագրավված հարստությունները։

**Քաղաքների դասակարգումը ըստ հատակագծային հորինվածքների:** Ինչպես երևում է, քաղաքների հատակագծման հորինվածքների լուծման՝ այստեղ բերված մեր օրինակներից, նրանցում որոշակիորեն դրսևորված են ուրարտական քաղաքաշինության տարբեր սկզբունքներ։

Դրանք են՝ ազատ հատակագծումը, երկրաչափական կանոնավոր ցանցի համակարգը, խառը կառուցապատումը և դարավանդային համակարգը։

Ազատ հատակագծման սկզբունքը ամենատարածվածն էր և զարգանում էր տարերայնորեն, որի հետևանքով բնակատեղիների փողոցները առեղծվում էին անամեջ տարածքներում։ Այդ կապակցությամբ էլ նման տարածքներում առավելապես շեշտվում էին շենքերի ծավալները և ոչ թե հատակագծային որևէ լուծումներ։ Տվյալ սկզբունքը հատկապես բնորոշ է գյուղական բնակատեղիների համար (Արագած, Թուրքի-թեփե, Դուշգագի, Կալե-Կամանա և այլն[32], գծագր. աղ. 22, 23)։

Ուրարտական քաղաքաշինության համար ուրույն սկզբունք էր հատակագծման կանոնավոր ցանցի համակարգը, և այդ կապակցությամբ Զերնակի-թեփեն նրա նշանակալից երևույթներից է իր տեսակի մեջ։

Սակայն ուրարտական քաղաքաշինության ավանդական լուծումները առավելապես կառչած էին խառը կառուցապատման սկզբունքներին։

Յուրահատուկ է ուրարտական քաղաքների տեղադրությունը լեռնային շրջանների տեղանքի մեծ թեքությունների պայմաններում։ Նման տարածքներում քաղաքներն ունեին իրենց կառույցների աստիճանաձև փոխանցումները, որոնք, ի վերջո, կարծես ստանալով տեսական հիմնավորում, դառնում էին քաղաքաշինական հաստատուն օրենքներ։

Այսպիսին է Հայկաբերդը ակադ. Հ. Օրբելու նկարագրություններում։ Այն ունի երեք աստաքին պարիսպներ, մեկը մյուսից բարձրադիր տեղում, որոնց եռևի տարածությունները մինչև համապատասխան նիշը լցված էին հողով՝ ընդլայնելու համար բերդի օգտակար մակերեսը[33]։

Ինչպես ասվեց վերևում, այդպիսին է եղել նաև Մուսասիր քաղաքի կառուցապատումը, որը նույնպես գտնվում էր լեռնային շրջանում։ Կառուցապատման այդ եղանակը բավականին լայն դրսևորում ունեցավ ինչպես ուրարտական ժամանակաշրջանում, այնպես էլ հետագա դարերում։ Այսպես, Զանգեզուրում, Հայաստանի այդ լեռնային շրջանում, ինչպես նաև ընդհանրապես Անդրկովկասում, հիմա էլ կարելի է տեսնել նույն ձևով կառուցված բազմաթիվ բնակելի զանգվածներ կամ, նույնիսկ, ամբողջական բնակատեղիներ, ուր շենքերն իրար սեղմվելով՝ լեռնային թեքությունների վրա ստեղծում են ծավալների աստիճանաձև փոխանցումներ և ներքևի տան ծածկն օգտագործվում է որպես բակ վերևի տան համար։

Տարածական կառուցապատման մեջ, այդպիսով, առանձին շենքերի ծավալներով ստեղծվում է հսկայական սանդուղք։

Ուրարտական քաղաքներում առավել սուր էր դրված հողային ֆոնդի խնայողաբար օգտագործման պրոբլեմը, որը բխում էր քաղաքների պաշտպանության ռազմաստրատեգիական սկզբունքներից։ Մովսես Խորենացու՝ Տուշպայի նկարագրությունից երևում է, որ այնտեղ գոյություն են ունեցել բազմահարկ բնակելի շենքեր, մի բան, որ, հավանաբար, այդ նույն հողատարածությունների խնայողաբար օգտագործման սկզբունքի արդասիքն էր։

Այն մեծ ընդհանրությունը, որ գոյություն ունի ուրարտական ու հետագա հայկական քաղաքների ծավալատարածական հորինվածքների միջև, հաստատում է ուրարտական քաղաքաշինական ավանդույթների շարունակությունը հայերի մոտ։

Քաղաքաշինությունը Ուրարտուում ուղեկցվում էր հետաքրքիր ավանդույթով, ըստ որի քաղաքների հիմնադրումները նշանավորվում էին հատուկ հուշանվերներով։ Այդպիսի մի հուշանշան, որը նվիրված էր Էրեբունիի հիմնադրմանը, գտնվել է Կարմիր բլուրի պեղումների ընթացքում և պատկերում է զինվորի արձանիկ։ Այն դրված է բրոնզյա 8 սմ տրամագծով և 3 սմ բարձ-

ությամբ գլանաձև պատվանդանի վրա, որի արտաքին մակերեսին դրոշմված սեպագիր արձանագրությունը հաղորդում է.

«Խալդի աստծուն, իր տիրոջը, այս տաարկան (Տաև) փայտից Արգիշտին Մենուայի որդին պատրաստեց, երբ Էրեբունի քաղաքը կառուցվեց»։

Պարզվում է, այսպիսով, որ Արգիշտին բաղաքաշինական հնարքների ավանդույթի սկզբնավորողն է եղել։

# ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

*Կեցության հասարակական ձևերը, ինչպես ամենուրեք, այնպես էլ Ուրարտուում, դրսևորում էին որոշակի նախադրյալներ բնակարանային ճարտարապետության ստեղծման համար։*

*Ուրարտուում բնակելի տների կազմավորումը մի դեպքում որոշվում էր բնակիչների անհատական պահանջներով, մյուս դեպքում այդ կազմավորումը թելադրվում էր բնակիչների հասարակական կենցաղի ուրույն վիճակով։ Վերջինս վերաբերում է այն դեպքերին, երբ բնակիչները զինվորական, ինչպես նաև վարչական մարմինների բարձրաստիճան գործիչներ էին, որոնք չունեին սեփական տնտեսություն և ենթակա էին պետական պարենավորման։*

*Այս իրավիճակն Ուրարտուում ստեղծեց բնակելի տան այնպիսի տիպեր, որ պետական իշխանության և նրա պահանջների արգասիքն էին։ Նման բնակելի տների հատակագծային հորինվածքները խարսխվում էին ճարտարապետության բնագավառում առաջացող նոր, այն է՝ «տիպային» լուծումների սկզբունքների վրա, իսկ դրա հետ մեկտեղ առաջ էին գալիս նաև բազմասեկցիոն ու բազմահարկ, ամեն առումներով իսկական քաղաքատիպ բնակելի շենքեր։ Նման շենքերի առկայությունը ցույց է տալիս, որ Ուրարտուում, մասնավորապես բնակելի շենքերի հետ մեկտեղ, գոյություն ունեին սոցիալական առումով բնակելի տների նոր միավորումներ, որոնք կազմում էին պետական բնակարանային ֆոնդը։*

*Ուրարտուի բնակարանային ճարտարապետության մասին նախնական տեղեկությունները, թեև կցկտուր, պահպանվել են Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ։ Այդ տեղեկությունները հիմնված են նրա ստացած բանավոր հաղորդումների վրա։ Ըստ որում, Մովսես Խորենացու տեղեկությունները վերաբերում են միայն երկրի մայրաքաղաք Տուշպային։ Վերջինս, համաձայն նրա նկարագրությունների, բավական մեծ, բարեկարգ, անառիկ բերդաքաղաք էր, բազմաթիվ երկու ու երեք հարկանի շքեղ շենքերով։ Դեռ այն ժամանակ, երբ ո՛չ Ուրարտուում և ո՛չ էլ Միջագետքի տարածքներում չէին կատարվում հնագիտական լայնատարած պեղումներ, Մ. Խորենացու այդ տեղեկությունները Տուշպայի բազմահարկ շենքերի մասին անհավատալի ու առասպելական էին թվում։ Սակայն, շուտով առաջին տվյալները, թեև անուղղակի, եկան հաստատելու դրա իսկությունը։ Խոսքը Ուր քաղաքի պեղումների մասին է Միջագետքում, որոնցով այդ հինավուրց քաղաքում հայտնաբերվեցին առաջին երկհարկանի բնակելի տան մնացորդները Հին արևելքում։*

*Հետագայում նոր ապացույց, նույնպես պեղումների շնորհիվ, հայտնվում է Վան քաղաքի մոտ, Թոփրախ-կալե բլրի վրա, թեև այս անգամ բրոնզե հարթաքանդակի ձևով, ուր պատկերված է եռահարկ բնակելի մի տուն։ Այս վերջին հայտնագործությունը արդեն կասկած չէր թողնում Ուրարտուում բազմահարկ բնակելի շենքերի առկայության մասին։*

*Ներկայումս, բացի տվյալ հարթաքանդակից ու այլ նյութերից, ուրարտական բազմահարկ շենքերն իրենց տեսանելի մնացորդների ձևերով հայտնվել են՝ Կարմիր բլուրի, Արագածի, ինչպես նաև, հավանաբար, եթե ճիշտ են Վ. Կլայսի*



















*Աղ. 28 ա, գ, դ, ե, զ) Արգիշտիխինիլի. բնակելի տան հատակագծեր, բ) Բաստամ. բնակելի տան հատակագիծ*

կառուցումները, նաև Բաստամի միջնաբերդերում:

Ուրարտուի բնակելի ճարտարապետության մասին մեր բոլոր տեղեկությունները պարզում են բնակելի տների այսպիսի դասեր. ա) մենատներ, բ) բնակելի տներ խմբային կառուցապատումներով, գ) մեկ և բազմահարկ սեկցիոն տներ:

**Մենատներ:** Այս կարգի կառույցները, որոնք պահպանվել են առավել մեծ չափով, իրենց տեսանելի մնացորդներով հայտնի են երկրի տարբեր քաղաքների հնագիտական տարածքներից: Այս տարբեր մենատների ճարտարապետությունը դրսևորվում էր մի շարք համանման արտահայտություններով թե՛ իրենց ճարտարապետական բովանդակությամբ և թե՛ շինարարական սկզբունքներով: Մենատներն իրենց մեջ միավորում էին՝ բնակելի, տնտեսական, պաշտամունքային սենյակներ, ընտանի կենդանիների համար հատկացված համապատասխան հատվածներ և կառուցվում էին ավանդական՝ հում աղյուսե պատերով քարե գետնախարիսխների վրա, հարթ ծածկերով, վերևի լուսավորությամբ, իսկ ամբողջությամբ վերցրած ներկայացնում էին պարսպապատված ներքին տարածությունները՝ իրենց արտաքին միակ դռնով: Տան մեջ էր գտնվում նաև նրա պաշտամունքային անկյունն իր համապատասխան քանդակակերտ կուռքով:

Մենատները երբեմն ենթարկվում էին տարբեր վերակառուցումների. կա՛մ ընդլայնվում էին, կա՛մ ջլատվելով կազմում մի քանի տարբեր ու իրարից մեկուսացված բնակելի տներ: Հավանաբար, դրանք պայմանավորված էին ընտանիքների ընդլայնումներով և կամ, ընդհակառակը, նրանցում տեղի էր ունենում տան մի մասի վաճառքը: Կարծում ենք, որ ուրարտական քաղաքներում, որտեղ շատ սուղ էր հողային տարածքը, բնակելի տունը կարող էր դառնալ առուծախի առարկա:

**Արգիշտիխինիլիի մենատները:** Մենատներն այստեղ առանձնապես շատ են և ունեն կոմպոզիցիոն ազատ դասավորություն:

Մենատներից առավել նշանակալիցն ունի քառակուսուն մոտեցող հատակագիծ (23,8×27,0 մետր), որի միակ արտաքին մուտքը բացված է նրա հյուսիսարևմտյան հատվածում: Շենքը եզրագծող արտաքին պատերի, ինչպես և քաղաքի մյուս տներն ունեն ուրարտական ճարտարապետությանը բնորոշ որմնահեցեր (գծագր. աղ. 28):

Ժամանակին այս շենքը բաժանվել է երկու մեկուսացված ինքնուրույն մասերի: Վերացնելով հետագա վերակառուցումների հետ կապված ներքին պատերը, ստանում ենք շենքի նախնական հստակ հատակագծային լուծումը՝ կենտրոնական դահլիճ երկու սյուներով, 77 m² ընդհանուր մակերեսով, բնակելի. տնտեսական ու պաշտամունքային տարբեր չափերի սենյակներով կառուցապատված մաս: Դահլիճը տան գլխավոր մասն էր, որի պատերի տակ շինված կավակերտ նստարանները հուշում են, որ այստեղ կարող էին հավաքվել մեծ թվով մարդիկ ու ծառայում էր որպես ընդունարան:

Դահլիճի հյուսիսային պատին կից է իր ընդհանուր հորինվածքով դուրս ցցված ծավալը, որը, ինչպես կարծում ենք, բակ էր և ոչ թե դահլիճ, ինչպես այդ համարում են պեղողները: Բանն այն է, որ երկրորդ դեպքում դժվար է բացատրել կողք կողքի կառուցված երկու մեծ դահլիճների առկայության հանգամանքը: Բացի դրանից, այստեղ տեսանելի է ապահատակված հարթակը՝ անջատված բակի մյուս մասից, որն, անկասկած, ընտանի կենդանիների համար էր, ինչպես այդ առկա է Թեյշեբաինիի համապատասխան տներում: Բակի մնացած հատվածը ծառայում էր տնտեսական բացօթյա կատարվող աշխատանքներին:

Արարատյան դաշտավայրում, որտեղ կառուցված էր Արգիշտիխինիլին, կլիմայական շոգ պայմաններում, բնակելի տների համար ավանդական էր բակի տարածքի առկայությունը, որին լրային բնակելի տներում փոխարինում էր դահլիճը:

Մենատան հարավարևմտյան ու հարավարևելյան սենյակները ծառայում էին տնտեսական ու պաշտամունքային նպատակների: Բոլոր այս սենյակների հատակների նիշերը տարբեր են, որը պայմանավորված է տեղանքով. անցումները նրանց միջև կատարվում էին սանդուղքներով:

Մենատան ծածկը, ինչպես ուրարտական բնակելի ու պալատական բոլոր շենքերում, հարթ էր, իսկ լուսավորությունը՝ վերևից, սովորական երդիկների միջով: Հավանական է, որ վերջինս կառուցվում էր հետագայում Հայաստանում տարածված «հազարաշեն» կոչվող եղանակին մոտ ձևով: Պատերի ներքնամասը քարից էր, իսկ վերինը՝ աղյուսից:

Արգիշտիխինիլիի տվյալ մենատան հատակագիծը իր սկզբունքային լուծմամբ հիշեցնում է

Միջագետքի այն մենատան հատակագիծը, որ հայտնաբերված է Ուր քաղաքում և կառուցված էր մ.թ.ա. II հազարամյակում[1]: Տարբերությունն այն է, որ վերջինի միջին մասը ոչ թե դահլիճ էր, այլ բակ: Հատակագծման այդ սկզբունքն իր որոշ տարբերակներով տարածված էր ընդհուպ մինչև Եգիպտոս: Ընդ որում, Միջագետքում բնակելի տան հատակագծային այդ հորինվածքը դարձավ մոնումենտալ՝ պալատական, ինչպես նաև պաշտամունքային կառույցների հիմքում ընկած նրանց ընդհանուր հորինվածքի մենակետը[2]: Ուրարտուի ու Միջագետքի բնակելի այդ շենքերում դրսևորված ճարտարապետական ընդհանրությունը տվյալ երկրների պատմական դարավոր կապերի արգասիք է:

Արգիշտիխինիլիի մենատների հատակագծային լուծումների մյուս բնորոշ կողմը սենյակների երկշարք դասավորությունն է նրանցում՝ տարբերակների աննշան շեղումներով (գծագր. աղ. 31):

**Մենատուն Արագածում:** Ունի քառանկյունի հատակագիծ և բաղկացած է տարբեր նշանակություն ունեցող ու համարյա քառակուսի հատակագծով իրար կողքի դասավորված երեք սենյակներից և նրանց առջևում փռված բակից, որի մի հատվածը, հակադիր մասում, ծածկված էր: Այս մասը ընտանի կենդանիների համար էր նախատեսված, իսկ բակը ամբողջությամբ օգտագործվում էր տնտեսական կարիքների համար (գծագր. աղ. 23):

Տան հարավային սենյակը պահեստ էր, նրանում գտնվել են 500 և 600 լիտր տարողությամբ երկու կարասներ, թեև նրանց քանակը ավելի է եղել: Պահեստային այս սենյակի հատակը մյուսների նկատմամբ իջեցված է 60 սմ: Հատակների նիշերի նման տարբերությունը նպատակային էր, հատկապես պահեստային սենյակների համար, որոնք խորանալով հողի մեջ, դրանով իսկ պահպանվող մթերքների համար ստեղծում էին ջերմային անհրաժեշտ ռեժիմ:

Հատակի խորության մեջ ընկղմված նման շտեմարաններ կան նաև Եգիպտոսի այն բնակելի շենքերում, որոնք կառուցված են Նոր թագավորության ժամանակ Նեղոսի արևմտյան ափի Դեյր-էլ-Մեդինեի հովտում. դրանց ծավալային լուծումները մոտ են Արագածի տան համանման մասերին:

Բնակելի շենքերի շտեմարանների կառուցողական այդ սկզբունքները աստիճանաբար զարգացան ու տարածվեցին և ստացան իրենց ձևերի ժամանակակից արտահայտությունը, իսկ հետագայում ստեղծվեց «նկուղային հարկ» հասկացողությունը:

Մենատան մյուս սենյակը, որտեղ կանգնած էր փայտյա մեկ սյուն, ինչպես նաև երրորդ սենյակը, որն անմիջապես դուրս էր գալիս բակ, բնակելի էին և նույնպես լուսավորվում էին երդիկից:

Շենքի մոտ 1,0—1,2 մետր բարձրությամբ բավականին լավ պահպանված պատերը, ինչպես նաև ծածկի մնացորդները, հնարավորություն տվեցին կատարել նրա լայնական կտրվածքի վերարտադրությունը:

Շենքում հայտնաբերված ֆալոսը հաստատում է պաշտամունքին հատկացված հատուկ տեղի առկայությունը նրանում:

Պաշտամունքին վերաբերվող նման կոթողներ գտնում ենք նաև Կարմիր բլուրի, Արգիշտիխինիլիի, Էրեբունիի և այլ բնակելի շենքերում: Հետևաբար կարելի է եզրակացնել, որ ուրարտական բնակելի շենքերում առկա էին համապատասխան անկյուններ, որտեղ ընտանիքի կողմից կատարվում էին պաշտամունքի հետ կապված անհրաժեշտ ծիսակատարությունները: Այս առումով նշանակալից է նաև, որ Էրեբունի քաղաքի հյուսիսային հատվածի բնակելի տներից մեկում, ուրարտական խեցեղենի հետ մեկտեղ հայտնաբերվել է եգիպտական Բես աստծո դիմակը: Բեսը Եգիպտոսում այն շատ տարածված աստվածներից էր, որը տան օջախի պահապանն էր չար ոգիներից, օձերից, որ հիմա արդեն համահավասար չափով նաև ուրարտական բնակելի տան պահապանն է դարձել:

Արագածի բնակելի այս մենատան հատակագիծն իր պարզ հորինվածքով գրեթե դասականի չափ տիպական է Ուրարտուի գյուղական բնակավայրերի համար. այն արտահայտում է տան հիմնական կենսական պահանջների ծավալատարածական լուծումները: Սակայն, հատակագծման այս հորինվածքի սկզբունքային լուծումը կիրառվում էր նաև քաղաքային բնակելի տների համար, մասնավորապես այն կարելի է տեսնել Թեյշեբաինիի քաղաքում:

**Մենատուն Թեյշեբաինիում:** Պահպանվել է պատերի բարձրությունը՝ 0,75 մ, շարված են կոպտատաշ տուֆից, իսկ որոշ մասերում նաև գետաքա-
















*Աղ. 29 ա) Բազմահարկ բնակելի տան ճակատ, վերակազմություն, բ) Արգիշտիխինիլի. բնակելի տան հատակագիծ, գ) Արգիշտիխինիլի. բնակելի տան կտրվածք և վերակազմություն, դ) Բաստամ. բնակելի տան հատակագիծ, ե) Զերնակի-Թեփե. բնակելի տան հատակագիծ*

բերից։ Գտնվում է նկատելի թերություն ունեցող ազատ տարածքի վրա, քաղաքի հարավարևմտյան մասում։

Ժամանակին կառույցը ենթարկվել է պարզ տեսանելի վերափոխումների, որի հետևանքով նրա նախնական հատակագիծը բաժանվում է երկու հատվածի՝ ինքնուրույն մուտքերով (գծագր. աղ. 32)։ Իր նախնական հորինվածքով այն կազմված էր հինգ սենյակից, մեկ մեծ դահլիճից ու բակից՝ 500 քմ ընդհանուր մակերեսով։ Թեյշեբաինիի քաղաքի հողային տարածքի սուղ պայմաններում բնակելի տան նման մակերեսը արտակարգ չափերի էր։ Հանրահայտ են Հին արևելքի չափանիշները նման տների համար։ Օրինակ՝ Ախետատոն քաղաքում Եգիպտոսի գերագույն քրմի Պաախայի մենատունն ուներ համարյա նույն չափերը՝ 550 քմ։

Սրանով պարզ են դառնում այն արտակարգ պահանջները, որ առաջադրում էր հինարևելյան ու մասնավորապես Թեյշեբաինիի սոցիալական բարձր խավը՝ ներքին կենցաղի ձևերի կազմակերպման նման շենքերում։ Այդ նկատելի է նաև նրա առանձին հատվածների լուծումներից։

Այսպես, շենքի մուտքն ունի արտակարգ լայնություն (3,22 մետր), որը, հավանաբար, նախատեսված էր անիվային տրանսպորտի, թերևս մարտակառքի անցման համար։ Նման ենթադրությունը միանգամայն հավանական է, քանի որ քաղաքում, այն էլ նրա այս հատվածում, բնակվում էին բարձրաստիճան պետական ու ռազմական պաշտոնյաներ, և մենատունը կարող էր պատկանել նրանցից մեկին։ Մնացած սենյակները բնակելի ու տնտեսական կարիքների համար էին, ինչպես երևում է նրանցում հայտնաբերված համապատասխան հնագիտական նյութերից։ Մեծ դահլիճը, սկզբնական շրջանում, ինչպես այդ պարզ տեսանելի է, ծառայել է որպես ընդունարան՝ տվյալ մենատան համար (քանի որ այն չէր կարող ինքնուրույն ու մեկուսացված կառույց լինել և ֆունկցիոնալ առումով իր առանձին նշանակությունն ունենալ)։

Դահլիճի երեք սենյակները, որոնց քարե խարիսխները պահպանվել են տեղերում, նրա ներքին տարածությանը պետք է որ համապատասխան ռիթմ հաղորդեին։ Եթե այս ներքին տարածությունը համեմատենք Էրեբունիի պալատական սյունազարդ դահլիճների հետ, որտեղ ի դեպ, սյուները նույնպես դասավորված են կենտրոնական երկայնական առանցքի մի կողմի վրա, պարզ կդառնա նրանց սկզբունքային ընդհանրությունը։ Թեյշեբաինիի շինարարներին պետք է որ հայտնի լիներ Արգիշտիի պալատի ճարտարապետական կերպը Էրեբունիում, քանի որ այդ տարիներին Էրեբունին դեռ կանգուն և լավ վիճակում էր։ Մյուս կողմից, արդեն հաստատված ճշմարտություն է, որ պալատական կառույցների ճարտարապետական ավանդական ձևերի մեկնակետը ընկղմված է բնակելի տան ճարտարապետության սկզբնավորման մեջ։ Հետևապես քննարկվող մեր օրինակները արգասիք են հենց այդ սկզբունքի։

Մենատունն այնքան լավ է պահպանվել, որ նրա նախնական ընդհանուր ծավալատարածական ձևը վերարտադրման իմաստով կասկած չառաջացնող բավականին պարզ կառուցվածք է։

Թեյշեբաինիի մեզարոնը: Այս բավականին մեծ շենքը, որը գտնվում է քաղաքի գլխավոր երկու փողոցների խաչմերուկում, իր ճարտարապետական հորինվածքով զգալիորեն տարբերվում է Թեյշեբաինիում եղած բոլոր մյուս շենքերից։ Մենատան գլխավոր ճակատն իր լայն շքամուտքով լավ տեսանելի է քաղաքի կենտրոնական մասում, մինչդեռ, քաղաքի մյուս բոլոր շենքերի մուտքերը, որպես կանոն, դասավորված են նրբանցքների, կարծես, քողարկված հատվածներում։

Փողոցների սահմանները քաղաքի ընդհանուր հատակագծում նշված են բազալտե խոշոր բեկորներով, ինչը հաստատում է, որ հատակագիծը կազմված է նախապես։

Քաղաքի այս մասում, հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք ձգված փողոցը բեկվում է, շենքն իր ամբողջ խորությամբ բաժանվում է երկու հատվածի՝ դրսից ինքնուրույն մուտքով։

Ուշադրության է արժանի այն, որ տվյալ տունը միակ հայտնի շենքերից է Թեյշեբաինիի քաղաքում, որը դրսից երկու դուռ ունի և այն էլ իրենց ընդգծված տեսքով (գծագր. աղ. 32)։

Շենքի հարավային ու հիմնական հատվածը, ինչպես այն պարզ երևում է նրա հատակագծի լուծումից, ընդունարանն էր։ Այն բաղկացած էր լայն շքամուտքից, երկու սյուներով՝ պատերի ելուստների մոտ, երկու սյունազարդ սենյակներից, որոնցից երկրորդում կա օջախ։ Շենքն իր հատակագծային հորինվածքով հիշեցնում է Տիրինթոսի «մեգարոն» կոչվող հյուրատունը և

այդ կապակցությամբ էլ Թեյշեբաինիի տվյալ մնացորդն այսպես էլ անվանեցինք:

Անհարթ տեղանքի պատճառով շենքի հատակագիծը ծռմռված է: Այսպես, շքամուտքի ներս ընկած պատը ոչ թե ուղղահայաց է տան երկայնական պատին, ինչ որ կլիներ բնական, այլ զուգահեռ է փողոցին, որով նրա անկյունային մասերում առաջացել է շքամուտքի համար հարմար խորություն: Ապա՝ եթե շքամուտքի հյուսիսային անտը (պատի ելուստը) կառուցված լիներ իր պատի առանցքի շարունակության վրա, առանց այդ խախտման, ապա շքամուտքի տարածական ընկալման մեջ կխախտվեր ելուստների անհրաժեշտ համաչափությունը: Այս լուծումը հնարավոր է դարձրել այդ ելուստին մոտեցնել դռան բացվածքը, որով այն համընկել է գլխավոր ճակատի առանցքի հետ:

Մեգարոնի շինարարի ուշադրությունից չի վրիպել նաև դահլիճների միջև եղած պատի դիրքը: Այն նույնպես կառուցված է երկայնական պատի նկատմամբ որոշ անկյան տակ՝ դահլիճը քառակուսի հատակագծին մոտեցնելու միտումով:

Եվ, այսպես, հողամասի հետ կապված շենքի հատակագծի ձևի նման շտկումները շինարարը հաղթահարել է վարպետորեն ու կատարելապես:

Այսպիսով, տվյալ կառույցների ճարտարապետական հորինվածքի նման ճշտումները, որոնք կատարված են չափազանց պարզ ու հստակ, իրացվել են դասական հնագույն կառույցի հորինվածքի ձևին նրբաճաշակ վարպետությամբ հարմարվելու բարդ եղանակով, օգտվելով դրա համար ճարտարապետության բնորոշ օպտիկական ճշտումների միջոցներից:

Հարկ է նշել մի առանձնահատկություն ևս մեգարոնի հատակագծում: Դա նրա զույգ սյուների դասավորությունն է դահլիճի լայնական առանցքի վրա, թեև մեզ հայտնի նման դեպքերում նրանց դասավորությունը կատարվում էր երկայնական առանցքով:

Մեգարոնի հյուսիսային հատվածը նրա տնտեսական մասն էր, որը ենթարկվել էր վերակառուցման և երկու սյունանոց սենյակը ստացել էր ինքնուրույն մուտք դրսից:

Շենքի պահպանված մասերի հիման վրա հնարավոր դարձավ վերարտադրել նրա նախնական տեսքը դրսից, ընդ որում այն ցույց տալ քաղաքի տվյալ խաչմերուկի միջավայրում: Ամենայն հավանականությամբ, մեգարոնը ամբողջովին կառուցված է եղել քարից, քանի որ պեղումների ընթացքում վերջինս մեծ չափերով դուրս է բերվել նրա տարածքից:

Շենքի շքամուտքային մասը, որը դուրս է գալիս դեպի փողոցի խաչմերուկը, քաղաքի բնակելի շենքի համար նման անսովոր լուծումով, կարծում ենք, որ ժամանակին ուներ հատուկ նշանակություն: Այն կարող էր խանութ լինել, մառանատեղ, որ գտնվում էր քաղաքի կենտրոնական բանուկ մասում: Ի դեպ, հնագետ Լեոնարդ Վուլին՝ նման նշանակություն էր տեսնում Ուր քաղաքի շատ ավելի վաղ շրջանի կառույցներից մեկում, համանման հորինվածք ունեցող հատվածի համար:

**Բնակելի տներ խմբային կառուցապատումով:** Թեյշեբաինի քաղաքում, բացի մենատներից ու սեկցիոն տներից, պահպանվել են խմբային կառուցապատումով բնակելի տներ, որոնք թերևս կազմում են քաղաքի կառուցապատման հիմնական մասը (գծագր. աղ. 30): Բնակելի շենքերով կառուցապատված թաղամասերի մեջ աչքի է ընկնում մի շենք՝ արտաքուստ պահպանված 1,10 մ բարձրությամբ ու շարված գետաքարերով: Այն սկզբից եթ եղել է առանձին շենք, որին կցված մյուս շենքերը նրա հետ կապված չեն իրենց շարվածքով: Հաստատված է, որ այդ շենքը կառուցված է եղել մյուսներից շատ ավելի առաջ, քան որում, երբ դեռ չէին բացված փողոցները ու հետևապես գոյություն չուներ բնակելի թաղամասը: Այդ հաստատվեց շենքի ներսում ընկած քարե ատամնավոր բարավորների առկայությամբ, որով ապացուցվեց, որ կողքի պատերի վերին մասում երբեմն գոյություն են ունեցել պատուհաններ:

Կարելի է ենթադրել, որ այդ մեկուսի կանգնած փոքր մակերեսով ու քառակուսի հատակագծով կառույցը նախապես եղել է աշտարակաձև շինություն և կրել է ռազմաստրատեգիական նշանակություն ունեցող համակարգի մի մաս՝ Աղաերկրի այս հատվածում, դեռ Թեյշեբաինի քաղաքի հիմնադրումից առաջ, որի մասին խոսվեց նախորդ գլխում:

Այս կառույցի արևմտյան պատին կցված է եղել համարյա նույն չափերի սենյակ, իսկ նրանց առջև, հարավային մասում, ստեղծված էր պա-








Նկ. 30 Թեյշեբաինի. բնակելի տան բակ, վերակազմություն, բնակելի թաղամասի կտրվածք և վերակազմություն, բնակելի թաղամասի հատակագիծ

ծըսպապատ բակ, որի մի մասը ունեցել է ծածկ՝ սյուների վրա, քարե խարիսխներով, որոնք պահպանվել են տեղում։

Տվյալ թաղամասի մյուս բոլոր շենքերը զանազան տարբերակներով կրկնում են նկարագրված տան հատակագծային սկզբունքները՝ ամեն անգամ հարմարվելով թաղամասի տարբեր եզրագծերին։ Դրանով թաղամասում գոյանում են 2 և 3 սենյականոց բնակելի տներ, համապատասխան բակերով, որոնցում, բացառությամբ ձմեռային ամիսների, կատարվում էին տան համարյա բոլոր տնտեսական աշխատանքները։ Բակի սալահատակված մասում, ծածկի տակ պահվում էին նաև ընտանի կենդանիները։ Բակի միջին մասում գտնվում էր տան օջախը, իսկ նրա մի անկյունում դրված էր կարասը՝ խմելու ջրի համար, շուրջ 150 լիտր տարողությամբ։ Բակում էր գտնվում քարե մեծ սալով անջատված տան զուգարանը։

Ուրարտական բնակելի տները երկրի տաք և ցուրտ շրջանների համար իրենց տարածական ձևերի լուծումների առումով երկու տիպի էին՝ առաջիններում տան սենյակները խմբավորվում էին բակի, իսկ երկրորդներում՝ կենտրոնական դահլիճի շուրջը։

Ստորև բերված երկու տան մակերեսների աղյուսակից պարզվում է, որ նրանց մակերեսները որոշակիորեն չափավորված էին քաղաքում.

| Տների անվանումը | Մակերեսների քանակը մ²-ով | | | |
|---|---|---|---|---|
| | բնակելի սենյակ | տնտեսական մաս | բակ | ընդամենը |
| Առաջին տուն | 21,80 | 22,57 | 55,20 | 99,57 |
| Երկրորդ տուն | 22,95 | 27·20 | 47,73 | 97,93 |

Աղյուսակից երևում է, որ բակերի մակերեսները փոքր են, որ հետևանք է ոչ միայն հողատարածության, այլև նրանց տնտեսական նշանակության սահմանափակության։

Թաղամասի կառույցների պատերի շուրջ մեկ մետր չափով պահպանված բարձրությունը հնարավոր է դարձնում նրա տարածական ձևերի հավաստի վերակազմությունը։

Թաղամասի կտրվածքի վերակազմության գծագրում տեսանելի են սենյակների հարթ ծածկերը, բնակելի երկու շենքերի բակերի ներքին տարածական ձևերի հորինվածքները։ Յուրաքանչյուր բակում թափթփված քարե կույտերի քանակը լրացնում է պատերի ավերված մասը, որով նրանց բարձրությունը կազմում է շուրջ 3,5 մ։ Նման բարձրությունը կոնստրուկտիվ առումով համապատասխանում է 0,7—0,8 մ լայնություն ունեցող պատերին, այդ համաչափությունը միանգամայն օրինաչափ էր նաև ժողովրդական ճարտարապետության բնակելի շենքերի մեծ մասի համար։

Թեյշեբաինիում խմբային կառուցապատումով բնակելի տները կազմել են մի շարք թաղամասեր, որոնք ունեն ճարտարապետության համանման տարածական ձևերի լուծումներ։ Արտաքնապես այդ թաղամասերն ունեցել են հարթ ծածկեր, իսկ փողոցների երկայնությամբ փռված նրանց ճակատները խուլ պատերի տեսքով էին, ինչպես այդ բնորոշ էր հինարևելյան նաև այլ քաղաքների համար։ Պատերի միակ բացվածքները դռներն են, որոնք, սակայն, արված են նրբանցքների կամ առավել անտեսանելի տեղերի կողմից։ Սա հնագույն մի պահանջ էր՝ տարածված դեռ Շումերում, որ տան դուռը պետք է լիներ նեղ ու աննկատ, ինչպես այդ ասված է «Տնային նախապաշարման տեքստ»-ում, որից մեջբերում է կատարել Լեոնարդ Վուլին[2]։

**Բաստամի բնակելի տունը։** Բաստամը, որի բլրի ստորոտում է փռված հյուսիսարևելյան հարթավայրային մասի բնակելի թաղամասը, ունի բնակելի տների խիտ դասավորություն, և ինչպես կարելի է դատել տների վերերկրյա տեսանելի հետքերից, նրանք ունեն տարբեր հատակագծային հորինվածքներ։ Այստեղ, տվյալ թաղամասի հյուսիսային մասում մանրամասնորեն պեղված է միայն մեկ շենք, որը խմբային բնակելի կոմպլեքսի մի մեծ հատվածն է։

Շենքն իր պեղված մասում ունի 9 բնակելի, տնտեսական, պահեստային սենյակներ, մեծ դահլիճ, բակ՝ տնտեսական կարիքների ու միառանձին հատված ընտանի կենդանիներ պահելու համար (գծագր. աղ. 31 բ)։ Մեծ չափերի դահլիճը տան հիմնական մասն էր, որը կառուցապատված էր նրա միջին մասում և իրար հետ էր կապում նրա հյուսիսային ու հարավային շարքերի սենյակները։ Դահլիճի հյուսիսարևելյան ու հարավարևելյան պատերի տակ կառուցված երկար նստարանները հաստատում են, որ այստեղ

բազմանդամ ընտանիքի հավաքատեղին էր: Քանի որ տվյալ դահլիճն իր բոլոր կողմերից կառուցապատված էր, ուստի պետք է որ լուսավորվեր միայն վերևից, երդիկի միջոցով:

Դահլիճի արևմտյան պատին կից բակը իր ծածկված հատվածով, որի մի մասը, անջատված լինելով ցածր ցանկապատով, ինչպես Թեյշեբաինիի բնակելի տներում, սալահատակված էր, նույնպես ծառայում էր ընտանի կենդանիների համար: Բակի մնացած մասերի պատերի տակ շինված են նստարաններ: Հետևապես հենց այստեղ էլ կատարվում էր տան տնտեսական աշխատանքների հիմնական մասը:

Տունը դրսից ուներ երկու մուտք, որից մեկը՝ բակի մուտքը, նաև տնային կենդանիների համար էր:

Ինչպես երևում է շենքին կցված հարևան կառույցների պատերի առանձին հատվածներից, տվյալ բնակելի տունը մեկ ընդհանուր կառուցապատված համալիրի միայն մի մասն է կազմում: Հետևաբար, ամբողջությամբ վերցրած այն կազմում էր մեծ թաղամաս:

Բաստամի այս բնակելի տունն ուներ փայտյա հարթ ծածկ, քարե պատեր, իրենց հում աղյուսի վերևի շարքերով, այսինքն, կառուցված էր ուրարտական ճարտարապետության ավանդական սկզբունքներով:

**Սեկցիոն բնակելի տներ:** Այս կարգի տները ստեղծվել են բնակիչների կենցաղի անհատական պահանջների ընդհանրության հաշվառումով, ինչը պայմանավորված էր, ինչպես ասվեց վերևում, այնպիսի ապրելակերպով, երբ բնակիչը չուներ մասնավոր տնտեսություն և ենթակա էր պետական պարենավորման: Ներկա դեպքում, հավանաբար, դրանք պետական ծառայության մեջ գտնվող ռազմիկներ էին:

Սեկցիոն տների հատակագծային լուծումների տիպարային սկզբունքները անակնկալ հորինվածքներ չեն Հին արևելքի ճարտարապետության համար: Օրինակները շատ են, կարող ենք մատնացույց անել Բենկուզ Մեդինեթ-Խաբույի կամ այլ համալիրում կառուցված բնակելի միատիպ շենքերը Եգիպտոսում:—

**Մեկ հարկանի սեկցիոն տուն:** Տվյալ տունը, որ հայտնաբերվել է Թեյշեբաինիի տարածքում, իր բավական հասուն ճարտարապետական ձևերով, հավանաբար, ունեցել է զարգացման նախնական աստիճանները: Շենքը բաղկացած է չորս միատիպ տներից, որոնք կազմում են ընդհանուր քառանկյունիներ: Պահպանված մասը քարից է, շուրջ 0,80 մ բարձրությամբ, իսկ դրանից վեր պատերը շարված են հում աղյուսից, որոնցից երևում են առանձին հետքեր (գծագր. աղ. 31):

Տների միատիպությունը բացահայտում է նրանց ընդհանուր շինարարին, որը պետությունն էր, և շինարարության ընդհանուր ժամանակը: Ի դեպ, եգիպտական Կախուն քաղաքի կառուցապատումը ցայտուն օրինակն է այն բանի, որ համանման պայմաններում գտնվող բնակիչների համար կառուցվում էին ոչ միայն առանձին տներ, այլև թաղամասեր և նույնիսկ ամբողջական քաղաքներ:

Թեյշեբաինիի սեկցիոն տների երկու առաջին հատվածները ծառայում էին օժանդակ կարիքներին: Այդ արտահայտվում է թեկուզ նրանով, որ նրանք շենքի մնացած սենյակներից անջատված են միջանցքով: Մյուս կողմից՝ բավականին լայն մուտքը դրսից (2,05 մ) հաստատում է, որ այն շենքի միայն առաջին հատվածի կարիքների համար էր նախատեսված: Հավանական է, որ ինչպես Թեյշեբաինիի նկարագրած նախորդ մենատներից մեկում, այստեղ ևս նման բացվածքը ծառայում էր կամ խոշոր եղջերավոր անասունների, կամ, որ ավելի հավանական է, ձիերի մուտքի համար: Շենքը, ինչպես կարծում ենք, ռազմական բարձրաստիճան հրամանատարների համար էր, իսկ ձին նրանց մշտական ուղեկիցն էր:

Տան երկրորդ հատվածը՝ մեծ սենյակը, միայնակ սյունով, և նրա նկատմամբ սիմետրիկ դասավորված փոքր սենյակը, որը անմիջապես հաղորդվում է միջանցքի հետ, ծառայել են՝ առաջինը որպես շտեմարան, որտեղ նաև պատրաստվում էր կերակուրը, մյուսը՝ պահակատուն:

Տան բնակելի մասը գտնվում էր նրա երրորդ և չորրորդ հատվածներում և բաղկացած էր հինգ սենյակից: Գլխավորը մեծ դահլիճն էր (6,15×10,15 մ), որը հաղորդակցվում էր մյուս սենյակների հետ, որոնց ֆունկցիոնալ ստույգ նշանակությունը հնագիտական նյութի պակասության պատճառով չի որոշվել:

Գլխավոր դահլիճը, համաձայն տեղում հայտնաբերված նրանց խարիսխների, ուներ 4 սյուն (D = 0,52 մ): Այն, հավանաբար, ուրարտական ճարտարապետության մեջ առաջին հայտնի նման տարածական հորինվածքն է: Դահլիճը տան այն հիմնական ներքին տարածությունն է, որպիսին








*Աղ. 31. Թեյշեբաինի. բազմասենյակյան բնակելի տան գլխավոր ճակատ, վերակազմություն. Նույն տան հատակագիծը, ներքին տեսքը, վերակազմություն։*

նախորդ մենատներում հանդիսանում էր բակը: Դահլիճի կոնստրուկտիվ կառուցվածքի էական մասը 4 սյուներով պահվող հարթ ծածկի կենտրոնական հատվածն էր, որտեղ պետք է որ գտնվեր երդիկը: Կասկածից դուրս է, որ տան այս սենյակների լուսավորությունը կատարվում էր երդիկների միջոցով, քանի որ կառուցապատված լինելով միմյանց կից և դասավորված լինելով զգալի խորության մեջ, սենյակները չէին կարող լուսավորվել այլ եղանակով: Իսկ առաջին հատվածի մուտքին կից տարածությունը փոքր բակ էր կազմում, որի միջնորդությամբ դռների միջոցով էլ լուսավորվում էին նրա հետ հաղորդակցվող սենյակները:

Ոչ բոլոր սենյակներն են, որ ունեին օջախներ, հետևապես նրանք տաքացվում էին շարժական օջախներով, որպիսիք էին բազալտե սալերը, որոնց միակ օրինակը (0,40×0,60 մ) գտնվել է դահլիճում:

Շենքի մնացորդները հնարավոր դարձրին նրա արտաքին ու ներքին ճարտարապետական ձևերի վերարտադրությունը, չհաշված միայն շենքի բարձրության նախնական չափը: Այն ընդունված է պայմանականորեն 5 մետր, հիմք ընդունելով ժողովրդական ճարտարապետության համանման օրինակները, ինչպես նաև տվյալ շենքի պատերի հաստությանը համապատասխան հնարավոր բարձրությունը:

Շենքի արտաքին ճարտարապետական ծավալները մեր վերակազմության մեջ արտահայտվում են լակոնիկ ձևերով՝ որմնահեցերով ու դռների բացվածքներով նրանց միջև:

Այսպիսով, Թեյշեբաինիի սեկցիոն բնակելի տան հատակագծային հորինվածքի լուծումը չէր պայմանավորվում նրա բնակիչների անհատական պահանջներով և ոչ էլ ընտանիքի անդամների քանակով, ինչպես այդ արտահայտված է քաղաքի մյուս շենքերում, այլ ստեղծվում է կանխակալ, ստանդարտ ու ենթադրյալ հնարավոր պահանջների հիման վրա, «պոտենցիալ» բնակչի համար:

**Բազմահարկ սեկցիոն տուն:** Ուրարտական ճարտարապետության տվյալ կառույցի կերպը հայտնաբերված է բրոնզյա թիթեղի վրա՝ Թոփրախ-կալեում, իսկ մի ուրիշը՝ բազալտե բեկորի վրա՝ Կեֆ-կալեսիում: Դրանք որպես ուրարտական ճարտարապետության տիպիկ քաղաքային տուն ունեն արտակարգ նշանակություն:

Հարկ է նշել, որ նման շենքերի մասին մեր բոլոր եզրակացությունները արվում են միայն նրանց ճակատների ճարտարապետական ձևերից ստացած տպավորությունների հիման վրա (գծագր. աղ. 29ա):

Պետք է ենթադրել, որ տվյալ շենքերի կառուցապատված խորությունը մեծ չէր, քանի որ այդ շենքերում սենյակների լուսավորությունը վերևից բացառվում էր: Բացի դրանից, այդպիսի շենքում բացառվում էր նաև տնտեսական կարիքների համար մեծ տարածքների գոյությունը, ինչը հնարավոր էր մեկ հարկանի շենքերում:

Հետևաբար, ինչպես սենյակների քանակը, այնպես էլ նրանց մակերեսները նման բազմահարկ շենքերում պետք է որ խիստ սահմանափակ լինեին:

Վերջին տարիներին, երբ Բրիտանական թանգարանի պահեստներում գտնվեցին այդ տունը պատկերող բրոնզյա թիթեղիկների մնացած բեկորները, որոնք ժամանակին այնտեղ էին տարվել Թոփրախ-կալեից, պարզվեց, որ շենքը ունեցել է երեք սեկցիա:

Դատելով տվյալ շենքի հատակագծման հնարավորություններից ու բաղդատելով այն ժամանակակից եռահարկ շենքերի հետ, կարող ենք նրա ծավալների հորինվածքների մասին ստանալ մոտավոր պատկերացում:

Շենքը ունեցել է 3 շքամուտք, որոնք բացվում էին դեպի աստիճանավանդակը: Նման եզրակացության կարելի է հանգել Կեֆ-կալեսիի ժայռաբեկորի վրա հայտնաբերված համանման տան գծագրից, որտեղ աստիճանավանդակների պատուհանները, տեղադրված լինելով մուտքի առանցքի վրա, չեն համապատասխանում բնակելի հարկերի պատուհանների բարձրությանը, ինչպես ժամանակակից բնակելի շենքերում[3]:

Թեև մենք չունենք տվյալ շենքի կտրվածքը, սակայն սկզբունքորեն նրան կարող են փոխարինել Եգիպտոսի Թութանֆերի բազմահարկ տան համապատասխան կտրվածքի գծագրերը՝ կատարված նրա դամբարանի պատերից մեկի վրա Թեբեում[4]: Այդ կտրվածքներից մեկի վրա, որը որոշակիորեն արտահայտում է ժամանակի բազմահարկ բնակելի տան կոնստրուկտիվ համակարգը, աստիճանավանդակի պատուհանները նույնպես չեն համընկնում բուն հարկերի պատուհանների հետ: Բացի դրանից, շենքի հարկամիջյան ծածկերը այստեղ պահվում են փայտյա

սյուներով, ինչը որոշ ազատություն էր ստեղծում կառուցապատման խորության չափի ընտրության համար։ Կորվածքներից երևում է նաև, որ պատուհանները դասավորված են պատերի վերևի մասում։

Հակառակ Կեֆ-կալեսիի ժայռաբեկորի վրա պատկերված շենքի պատուհանների դասավորության (լուսանկ. աղ. 28), Թոփրախ-կալեի բրոնզյա հարթաքանդակի վրա պատկերված շենքի պատուհանները մի գծի վրա են։ Հավանաբար այս տիպի շենքում, հակառակ նախորդ օրինակի, աստիճանավանդակը գտնվում էր շենքի խորության մեջ։ Նույն Թուբանֆերի տան կորվածքից երևում է, որ աստիճանավանդակի նման դասավորությունը, լինելով կիրառելի հորինվածք Եգիպտոսում, կարող էր հայտնի լինել նաև Ուրարտուում[5]։

Ի տարբերություն Թոփրախ-կալեի բրոնզյա հարթաքանդակի վրա պատկերված բարավորների, Կեֆ-կալեսիի բեկորի վրա պատկերված պատուհաններն ունեն բավականին պարզ գծված քարե բեկորներ։

Շենքերի մուտքերը երկու դեպքում էլ ավարտված են կամարակապ ձևով, որը բավականին տարածված էր ուրարտական ճարտարապետության մեջ և հայտնի է բազմաթիվ համանման հին հարթաքանդակներում։ Այս երկու շենքերի ընդհանրություններից հիշենք նաև, օրինակ, աստիճանավանդակների արտաքին ճակատային հատվածները, որոնք երկու դեպքում էլ վերցված են բավականին հզոր որմնահեցերի միջև, երկու դեպքում էլ քիվերի տակ զարդանկարները բավականին լայն շերտով են արված. նրանց գծագրությունները եռանկյունաձև են։ Ուրարտուի տարբեր շրջաններում նշված նմանությունը հավաստում է բազմահարկ բնակելի տան ճարտարապետության համար արդեն ստեղծված հաստատուն ավանդույթների մասին։

Ուշադրության արժանի է Անդրե Պառոտի[6] կողմից անցկացված զուգահեռը ուրարտական տվյալ բազմահարկ տան և Առաջավոր Ասիայի արաբական բազմահարկ տների միջև։ Նմանությունը այդ շենքերի միջև բավականին նշմարելի է, հատկապես շենքերի վերին հատվածներում քիվերի ճարտարապետական ձևերի, աշտարակաձև կառույցների միջև։ Նմանությունը չի կարող տարակուսանքի տեղիք տալ, եթե նկատի ունենանք նրանց պատմական միջավայրը։ Ինչ վերաբերում է Անդրե Պառոտի բերած մյուս զուգահեռներին, որ նա անց է կացնում Խորսաբադի հայտնի հարթաքանդակի վրա պատկերված Մուսասիրի շենքերի ու Սեյունի արաբական բազմահարկ շենքերի միջև, ապա նրանք անընդունելի են, քանի որ, ինչպես մենք ցույց ենք տվել, Մուսասիրի տները ոչ թե բազմահարկ են, այլ թեք սարալանջի վրա աստիճանաձև կառուցված մեկհարկանի շենքեր են, որոնք, տարածական հորինվածքի ընկալման մեջ միաձուլվելով, ասորեստանյան հնագույն նկարում ստացել են բազմահարկ բնակելի տան տեսք։

Սակայն միանգամայն համոզեցուցիչ է Ուր քաղաքի հնագույն շենքերի համեմատությունը ժամանակակից արաբական քաղաքների բնակելի տների հետ, որ կատարել է Լեոնարդ Վուլին։

Ի դեպ, մեր համոզմամբ, Կեֆ-կալեսիի ուրարտական բազմահարկ շենքի կերպը կարող է լինել ոչ թե կանգուն շենքի վերարտադրության, այլ, ամենայն հավանականությամբ, այն բազմահարկ շենքի «նախագիծ է»՝ պատկերված քարի վրա։ Այդ հաստատելու համար մեր կռվանն այն է, որ քարի բեկորի ջարդված եզրի վրա պատկերված է սեպաձև գծագրության մի հատված, որը պետք է թիվ լինի տվյալ նախագծի համար և ոչ թե ճարտարապետական մի դրվագ։

Բազմահարկ շենքի նկարագրությունից պարզվում է, որ նրանում անհնարին էր կատարել տնտեսական լայնատարած աշխատանքներ։ Եվ քանի որ նրա բնակիչները ամբողջովին ենթակա էին պետական պարենավորման, հավանաբար նրանք կարող էին պատկանել սոցիալական այն խավին, որը գտնվում էր ռազմական ծառայության մեջ։ Իսկ այդ դեպքում շենքը պետք է լիներ սովորական զորանոց (barzudibiduni)։

Այս առումով, թերևս, պատահական չէ, որ տվյալ հարթաքանդակը գտնվել էր այնտեղ, ուր նրա տարածքում, Մ. Ռիմշնայդերի կարծիքով գտնվում էր ձիերի լողացնելու համար արհեստական լիճը, որի մոտերքը, ի դեպ, Մենուան կատարեց իր հայտնի թռիչքը Արծիբի ձիու վրա, և որտեղ անհիշելի ժամանակներից ի վեր կանգուն է հինավուրց զորանոցային մի շենք։ Դույն զորանոց էր նաև այն շենքը Բաստամի ռազմական քաղաքում, որը, Վ. Կլայսի կարծիքով, նույնպես եռահարկ էր (գծագր. աղ. 20)։

Բայց ինչպե՞ս է կոչվել զորանոցային շենքը













*Աղ. 32. Թեյշեբաինի. մեգարոն տիպի բնակելի տների բակ, վերակազմություն, մեգարոն տիպի բնակելի տան ներքին տեսքը, վերակազմություն, հատակագիծ, մենատան հատակագիծ*

ուրարտերեն։ Հանրահայտ է ուրարտական «barzudibiduni» առայսօր չվերծանված անվանումը։

Կոխբանցի արձանագրությունում Մենուա Թագավորը ասում է. «barzudibiduni տունը կառուցեցի։ Մենուա Թագավորի (barzudi biduni տունը անունն է) (նրա) խալդի աստվածը հզոր է (բոլոր) աստվածների շարքում»։

Barzudibiduni-ին չէր կարող պաշտամունքային շենք լինել, ինչպես այդ կարծում էր Գր. Ղափանցյանը, քանի որ նման շենքերը թագավորների անունով չէին կոչվում։

Արձանագրության շարունակության մեջ ասված է. «Թող լինի այնտեղ Մենուա (թագավորին) ուժ, որը նվիրված է (?) Խալդ աստծու ռազմիկին»։

Հետևապես՝ barzudibiduni-ում գտնվում էր ուժ, անշուշտ ռազմական ուժ, որը տվյալ ռազմիկին էր նվիրված և որը, հետևապես, գտնվում էր այդ շենքում։ Եզրակացությունը կասկած չի հարուցում, որ barzudibiduni-ին զորանոցային շենք էր։

Բրոնզեդարյան ժամանակաշրջանի և ուրարտական տների համադրումը հնարավորություն է տալիս ծագումնաբանական կապ տեսնել տեղական ցեղերի բնակելի տան ստեղծման նվաճումների և ուրարտական տների ճարտարապետական ձևերի միջև։

Նկատելի է նաև այն որոշակի ընդհանրությունը, որ առկա է հինարևելյան Խաթթուսայի և Յերիքովի երկու սենյականոց տների ու նրանց բակի հորինվածքների և Թեյշեբաինիի համանման բնակելի տների միջև։

Եթե անդրադառնալու լինենք ուրարտական բնակելի շինարարական ժառանգությանը ու հատկապես նրա ազդեցություններին, հին Հայաստանի բնակելի ճարտարապետության կազմավորմանն ու հետագա զարգացմանը, կտեսնենք, որ այդ հատկապես արտահայտվում է Հայաստանի ժողովրդական ճարտարապետության դաշտային ու լեռնային շրջանում գոյություն ունեցող իրարից տարբեր տիպերի հորինվածքներում։

Հարթավայրային շրջաններում, ինչպես և Թեյշեբաինիում[7] և Արագածում, տարվա տաք ամիսներին տան կենցաղային տնտեսական կյանքը ծավալվում էր բակում։ Այս հանգամանքն է պատճառը, որ այդ տների հորինվածքներն էլ միանման էին, մանավանդ, որ նրանց շինարարությունը կատարվում էր միևնույն շինանյութից։

Լեռնային շրջաններում զարգանում էր բնակելի շենքի այն տիպը, որը իր մեջ միավորում էր բոլոր սենյակները՝ «տուն» հասկացություն ունեցող կառույցի մեջ։ Նրա հիմնական տարածական միջուկը՝ գահլիճը, ծածկված էր «հազարաշեն» կոչվող գմբեթային ձևով, որը հաճախ հենվում էր չորս սյուների վրա, ինչպես այն տեսանք Թեյշեբաինիի սեկցիոն տան գահլիճում։

Այսպիսով, չորս սյուներով, երդիկի միջոցով կենտրոնական լուսավորությամբ ներքին տարածության կազմավորման մեջ կարելի է որոշակիորեն տեսնել ուրարտական ակունքները։

Ներքին տարածության այդ հորինվածքն անցնում է զարգացման մի երկարատև ուղի, դրսևորվելով ոչ միայն բնակարանային կառույցներում, այլ նաև միջնադարյան հայ ճարտարապետության դասական մոնումենտալ շենքերում, ինչը առաջին անգամ բացահայտվեց Ստ. Լիսիցյանի հետազոտություններով։ Բացի տարածական այս հորինվածքից, մենք նկատի ունենք նաև Մեղրիի շրջանի և Լեռնային Ղարաբաղի ժողովրդական ճարտարապետության մեջ պահպանված բնակելի այնպիսի շենքեր, որոնց մեջ առկա է նմանությունը Թեյշեբաինի քաղաքում հայտնաբերված բնակելի շենքի մյուս տիպի՝ «մեգարոնի» ձևերի հետ։ Հավանաբար, վրացական ժողովրդական ճարտարապետության մեջ հայտնի բնակելի տունը՝ դարբազի անվամբ, նույնպես կապված է ուրարտական «մեգարոն» կոչվող ձևի հետ, քանի որ վրացական այդ շենքերի՝ գվիրգվինի կոչվող փայտի ծածկի ձևը ընդհանուր առմամբ իր ծագումնաբանական կապերի առումով համանման է հայկական «հազարաշեն» ծածկի ձևին[8]։

Այսպիսով, ուրարտական բնակելի շենքերի ճարտարապետական սկզբունքները հետագայում իրենց հետքը թողեցին Հայաստանի ժողովրդական բնակելի շինարարության ճարտարապետության վրա մինչև մեր օրերը հասած նրա հարթավայրային ու լեռնային շրջանների բնակելի տների երկու՝ արդեն նշված տարբեր տիպերում։

# ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

## ՄՈՆՈՒՄԵՆՏԱԼ ԿԱՌՈՒՅՑՆԵՐ

### Ա. Աշխարհիկ շենքեր

*Ուրարտուի մոնումենտալ կառույցների շարքում առավել մեծածավալ շենքերը պալատներն են, որոնց միջագետքյան գաղափարագիրը՝ É.GAL-ը, նրանց սեպագիր արձանագրություններում ունի նույն նշանակությունը՝ «Մեծ տուն»։ Այդ նույն գաղափարագիրը, որին կցվում էր «ամրացված» մականունը, միաժամանակ արտահայտում էր «Ամրոցի» կամ «Միջնաբերդի» հասկացությունը։*

*Միջնաբերդերը և նրանց մասը կազմող պալատները, համաձայն ուրարտական քաղաքաշինական հաստատուն ավանդույթների, կառուցվում էին անառիկ բլուրների գագաթներին և նրանց ստորոտներում փռված բնակատեղիների հետ կազմում էին քաղաքները։ Սակայն միշտ չէ, որ այս վերջինները իրենց կազմում ունեին* É.GAL-*ները։ Այդ հաստատվում է նրանով, որ ուրարտական քաղաքների գրավման կամ ավերման մասին ասորեստանյան տեղեկություններում* É.GAL-*ները շատ ավելի հազվադեպ են հիշատակվում, քան* URU-*ները։ Հարկ է նշել նաև, ինչպես ասվեց «Քաղաքաշինություն» գլխում, երբեմն որոշ քաղաքներում միջնաբերդերը մեկից ավելի են, ինչը որ պայմանավորված էր հարակից բլուրների առկայությամբ, որոնք նման դեպքերում նույնպես կառուցապատվում էին, բայց արդեն ստրատեգիական պահանջների մղումով՝ ստեղծելու համար պաշտպանական միասնական համակարգ։*

*Սեպագիր արձանագրություններում պալատները հաճախ հիշատակվում են պաշտամունքային կառույցների հետ մեկտեղ, օրինակ՝* DHaldini šeštili-*ի «Խալդյան դռների» ու այլ տաճարների հետ։ Պալատների ու տաճարների միասնական կառուցումը հինարևելյան այն ավանդույթն է, որի արտահայտությունները դրսևորված են Առաջավոր Ասիայի ու Եգիպտոսի բազմաթիվ քաղաքների պալատներում, օրինակ՝ Մարիի, Խաթթուսայի, Մեդինետ-Խաբուի և մյուսների։ Այդ նույնը հայտնի է նաև ուրարտական հուշարձանների պեղումներից։*

*Այս կապակցությամբ ուշագրավ է Գ. Ֆրանկֆորտի այն միտքը, թե քանի որ հինարևելյան աստվածների ու հասարակայնության միջև միջնորդի պարտականությունները դրված էին թագավորների վրա, հետևապես շատ հարմար էր, որ տաճարներն իրենց հերթին հանդիսանային պալատական համալիրների բաղկացուցիչ մասը*[1]*։ Ինչ վերաբերում է Եգիպտոսին, ապա թագավորներն այստեղ ոչ միայն այդպիսի միջնորդներ էին, այլև, ըստ գոյություն ունեցող պատկերացումների, նրանց և աստվածների միջև գոյություն ուներ արյունակցական կապ*[2]*։*

*Անտարակույս, այս հանգամանքն է, որ ստեղծել է հինարևելյան պալատական ճարտարապետության ձևերի որոշակի խառնություն, բայց նաև ճոխություն։*

*Ուրարտական* É.GAL-*ները իրենց նշանակությամբ, ինչպես դա հաստատվում է վիմագրական ու հնագիտական նյութերով, բաժանվում են երեք հիմնական խմբի՝ վարչատնտեսական, ռազմական ու պաշտամունքային։*










Աղ. 33 Թեյշեբաինի. միջնաբերդի կարասների սենյակ, վերակազմություն, ա) հատակագիծ,
բ) Օշական. բնակելի տան հատակագիծ, գ) Օշական. ուրարտական ամրոցի հատակագիծ

Առաջիններում կառույցների հիմնական մասը ծառայում էր արտադրական կարիքներին: Նրանցում գործում էին արհեստանոցներ, որտեղ ձուլում ու մշակում էին երկաթ, պղինձ, բրոնզ, ինչպես նաև՝ արծաթ ու ոսկի: Այստեղ պահվում էին գյուղատնտեսական մթերքներ, որոնց զգալի մասը հավաքվում էր տեղի ազգաբնակչությունից որպես տուրք, իսկ մյուս մասը հավաքվում էր պալատներին ենթակա մշակվող հողերից[3]:

Ուրարտական պալատների հարուստ շտեմարանների մասին իր սեպագրում մանրամասն պատմում է նրանց ականատեսը՝ Սարգոն Բ-ն, իր կատարած հայտնի արշավանքի ժամանակ դեպի Ուրարտու մ.թ.ա. 714 թ.[4]: Այդ նույն սեպագրերը բազմաթիվ կարևոր տեղեկություններ են հաղորդում նաև ուրարտական ռազմական բերդերի մասին: Այսպես, նրանք վկայում են, որ ուրարտական É.GAL-ները շրջափակված էին հզոր բերդապարիսպներով ու խրամատներով և որ այդ բերդերում գտնվում էր ուրարտական թագավորների կայազորներ կազմող լավագույն, փորձված ու մարտերում կոփված զորքը:

Ուրարտական պալատներն ու բերդերը իրենց մոտակա ու հեռավոր մատույցներում ունեին նաև այնպիսի կառույցներ, որոնք որպես նրանց ռազմական առաջակալներ իրենցով պատնեշում էին այդ É.GAL-ները:

Պալատների պաշտպանությանը մեծապես օժանդակում էր նաև լեռնային տեղանքը, քանի որ, որպես կանոն, պալատներն ու բերդերը վեր էին խոյանում անառիկ բլուրների գագաթներին կամ նման տարածքների անմատչելի մասերում: Դրա հետևանքով այդ կառույցների հատակագծային հորինվածքները ռացիոնալ կերպով կապվելով տեղանքին, ստեղծում էին ճարտարապետական ծավալների մտածված փոխանցումներ և օգտագործման համապատասխան հնարավորություններ:

Այդ են հաստատում նման ձևով կառուցված միջնաբերդերը՝ Վանա ժայռի վրա, Հայկաբերդում, Ալթին-Թեփեում, Բաստամում, Կարմիր բլուրում և այլուր:

Կառուցողական համանման սկզբունքները հայտնի են դեռևս խեթական ճարտարապետության մեջ, իսկ նրանից խիստ տարբերվում են արհեստական հարթակների վրա վեր խոյացող Միջագետքի մոնումենտալ շենքերի կառուցողական սկզբունքները:

Շենքերը վարպետորեն կապակցելով տեղանքին, ուրարտացիք մշտապես հաշվի էին առնում տվյալ կապերի բոլոր անհրաժեշտ լուծումները: Հատկապես միջնաբերդի արտաքին եզրագծերը կառուցապատվում էին ապառաժ քարերի հիմնապատերով, որոնք պետք է դիմագրեին սահքերին և պահպանեին կառույցների սովորաբար ոչ խոր հիմքերի կայունությունը:

Թեև պալատների հիմնական մասը դեռ մնում է հողի հաստ շերտերով ծածկված, սակայն վերջին տասնամյակների պեղումները զգալիորեն ընդլայնեցին մեր պատկերացումները պալատների ճարտարապետության մասին: Պարզվել է, որ ուրարտական պալատները մոնումենտալ կառույցներ էին, հաճախ երկհարկանի, որմնանկարներով զարդարված ներքին տարածություններով, սյունազարդ բակերով ու դահլիճներով, ինչպես նաև բազմաթիվ օժանդակ սենյակներով:

Պեղումների ժամանակ հայտնաբերված ճարտարապետական տվյալ ձևերը լիովին համապատասխանում են նրանց այն նկարագրություններին, որոնց հանդիպում ենք վիմագրական նյութերում և հատկապես ասորեստանյան սեպագրերում, ուր հաճախ ենք գտնում այդ կառույցների բարձր գնահատականները:

Անդրադառնալով միջնաբերդերի տարածական ձևերի հորինվածքների ճարտարապետական արտահայտություններին, կարող ենք դրանք դասակարգել ըստ հետևյալ տիպերի.

ա) Միջնաբերդ՝ առանձին կանգնած շենքերի համալիրային կառուցապատումով,

բ) Միջնաբերդ՝ կառուցապատված միասնական ծավալի ձևով,

գ) Միջնաբերդ՝ եզրագծային կառուցապատումով, միջնամասում վեր խոյացող ծավալային միջուկով:

**Տուշպա:** Նման դասակարգման համաձայն, առաջին տիպին է պատկանում Տուշպայի միջնաբերդը, որը ճարտարապետական առումով ամենաբնորոշը, ամենախոշորն ու անառիկն էր, ինչպես այն իր նկարագրության մեջ ներկայացնում է Մովսես Խորենացին:

Տուշպայի միջնաբերդի մասին մեր տեղեկությունները բավականին աղոտ են, քանի որ նրանում երբեք չեն կատարվել հնագիտական պեղումներ: Այդ պատճառով մեր պատկերացումները նրա մասին սահմանափակվում են այն եզրագծող արտաքին պարիսպների տեսքից ստա-

ցած տպավորություններով, որոնք համապատասխանում են նրա հզորության մասին պահպանված տեղեկություններին (լուսանկ. աղ. 9 ա, բ)։

Միջնաբերդի թեք սարալանջերը բազմաթիվ հատվածներում ունեն աստիճաններ՝ փորված անմիջականորեն ապառաժների մեջ, որոնք իրար են միացնում մի շարք վիմափոր ու այլ կառույցներ՝ ինչպես աշխարհիկ, այնպես էլ պաշտամունքային կարիքների համար, և իրենց ձևերի առումով ուրարտական ճարտարապետության կարևոր կոթողներից են։

Անդրադառնալով Թոփրախ-կալեին (լուսանկ. աղ. 5), ենթադրում ենք, որ Թոփրախ-կալեն Ռուսախինիլի անվամբ կարող էր լինել Ուրարտուի ոչ թե հերթական մայրաքաղաքը, ինչպես այդ կարծում էր Լեման Հաուպտը[5], այլ նույն Տուշպայի՝ նրա արվարձանում գտնվող պաշտամունքային կենտրոնը։ Այդ են հաստատում պաշտամունքին վերաբերող կառույցները, տաճարը, ինչպես նաև «Մհերի դուռ» կոչվող ժայռային կառույցը՝ իր սեպագիր արձանագրությամբ, որի մեջ թվարկված են ուրարտական պանթեոնի հավանաբար բոլոր աստվածները և նշված է սահմանված կարգը՝ այդ աստվածներից յուրաքանչյուրին մատուցվող զոհի տեսակն ու չափը։ Հավանաբար քուրմերին էր պատկանում Թոփրախ-կալեում գտնվող պալատը, որ բոլոր մյուս կառույցների հետ մեկտեղ կազմում էր մի ընդհանուր պաշտամունքային համալիր։ Թեև մենք չունենք այդ պալատի հատակագիծը, քանի որ այն լրիվ չի պեղվել ու չափագրվել, սակայն նրա հարդարանքի առանձին պատառիկները՝ քարե մոզաիկ հատակը, մարմարե պատերի քանդակները արտահայտում են նրա ներքին տարածքի ճարտարապետական բարձրարվեստ իրագործումները։

Էրեբունի: Աղա երկրի ուրարտական քաղաքի այս հնագույն միջնաբերդը, որը փռված է 6 հեկտար տարածության վրա, 65 մետր բարձրություն ունեցող Արինբերդ բլուրի գագաթին, միջնաբերդերի առաջին տիպի առավել ցայտուն օրինակն է (գծագր. աղ. 26)[6]։ Միջնաբերդի եռանկյունաձև տարածքը պարփակված է հզոր պարիսպներով (լուսանկ. աղ. 10 ա, բ), որոնք հարավարևելյան մասում ունեն երեք շարք։

Այստեղ միջնաբերդի մուտքի մոտ պեղվել է սյունազարդ մի կառույց։ Այն ունի բարձր հարթակի վրա կանգնած 6 սյուն, որոնք գծագրվում են որմնանկարներով ծածկված հետին պատի ֆոնի վրա։ Կառույցի ճակատային ամբողջ երկարությամբ փռված 6 աստիճանները հաղորդում են նրան հանդիսավոր տեսք։ Ուշադրության գրավող ճարտարապետական այս ծավալը դիտվում էր անգամ բլրի հեռավոր մատույցներից։

Հավանաբար այն ամրոցի կայազորի պահակետն էր և միևնույն ժամանակ պետք է որ լիներ նաև զեղապանների ու բարձրաստիճան հյուրերի դիմավորման պաշտոնական վայրը։ Այս պատճառով էլ միջնաբերդի մուտքի կողմը տանող ճանապարհի անչության սյունազարդ կառույցի հետ որոշակի հանդիսավորություն էր հաղորդում ամբողջ տարածքին։ Միջնաբերդի բուն մուտքը քարե աստիճաններից էր կազմված (լուսանկ. աղ. 11)։

Միջնաբերդի ընդարձակ համալիրը կազմված է պալատական պաշտամունքային ու պահեստային հատվածներից, որոնց միջև գտնվում է հրապարակը։ Նման լուծում առաջին անգամ է հանդիպում ուրարտական ճարտարապետության մեջ։

Պալատը, գրավելով միջնաբերդի հյուսիսարևմտյան հատվածը, ուղղված է դեպի Արարատի և Արագածի վեհաշուք տեսարանները։

Պաշտամունքային մասն իր օժանդակ կառույցներով գրավում է միջնաբերդի ամբողջ հարավարևմտյան հատվածը։ Հրապարակի առանցքով վեր էր խոյանում Խալդիի տաճարը, որը մի մեծ, մոնումենտալ կառույց էր՝ իր ճակատային մասով փռված նրա ողջ երկարությամբ և կազմված աշտարակից կամ burgana-ից (ինչպես այն անվանում էին ուրարտացիք), կամ զիկկուրատից (ինչպես այն կոչում էին ասորեստանցիները) և 12 փայտյա սյուներից (43 սմ տրամագծով) բաղկացած շքամուտքից։ Պալատի ճակատային մասերն ավելի փոքր աշտարակներ ունեին, ինչպես և միջնաբերդի մուտքը, որով նա ընդգծվում էր դեռ հեռվից։ Այդ ծավալներն իրենց ուրվագծերով, կազմակերպելով հրապարակի տարածական հորինվածքը, միևնույն ժամանակ արտահայտում էին նրանում ուրարտական շինարարների դեպի ասիմետրիկ լուծումներն ունեցած որոշակի նախասիրությունները։

Այսպիսով, այստեղ ստեղծվել է ներդաշնակ ընդհանրություն ճարտարապետական հակադիր ձևերի, այն է՝ հոծ աշտարակների, պալատական խուլ ճակատների, ծանր որմնահեցերի ու վերախաղաց շարժումով օժտված տաճարի շքամուտքի












Աղ. 34. Դամբարաններ. Ալթին-Թեփե. ա) կտրվածք հեռանկարում, հատակագիծ, բ) հատակագիծ և կտրվածք, գ) հատակագիծ



10—197

նրբագեղ սյուների միջև։ Սյուները, որոնք ստեղծում են այդ վերասլաց դինամիկ շարժումը, հրապարակի ողջ ճարտարապետությանը հաղորդում էին լարված ռիթմի արտահայտություն։ Իսկ եթե նկատի ունենանք, որ ճարտարապետական ամբողջ տարածքի գեղագիտական ընկալման նպատակով միջնաբերդի բոլոր հնարավոր տեսադաշտերում ստեղծված էր գունեղ ու նշմարելի տարածական ֆոն (երբեմն որմնանկարների բարդ հորինվածքներով), որը տաճարային հրապարակին հաղորդում էր հանդիսավորություն, ապա պարզ կդառնա այն վեհաշուք տեսարանը, որն առկա էր այստեղ, այն էլ վեհապանծ Արարատ լեռան հիասքանչ ուրվագծի վրա։ Գույնը, այդպիսով, նախ և առաջ ավելի հնչեղ էր դարձնում հենց իրենց՝ ճարտարապետական կառույցների ձևերը։

Բացի այս կենտրոնական հրապարակից, միջնաբերդի տարածական հորինվածքի համար բնորոշ են սյունազարդ ու բաց բակերը, անցումները բաց աստիճանների ձևով, որոնց համար տեղ-տեղ բլուրի գագաթը հարթեցրել են։

Այսպիսով, Էրեբունիի միջնաբերդում, ուր առկա է առանձին կանգուն կառույցների համալիրային միասնություն, կատարված են ճարտարապետական ձևերի էֆեկտիվ արտահայտության նախնական փորձերը։

Հարկ է հիշատակել նաև, որ հնագիտական պեղումների ընթացքում պարզվել էր, որ միջնաբերդի արտաքին եզրագիծը ու հատկապես հատակագծի անկյունային մասերը ժամանակին ենթարկվել էին զգալի վերակառուցումների, որը բավականին դժվարացնում էր նրա նախնական հորինվածքի ճշտումը։ Այդ պատճառով էլ նրանց վերականգնման ընթացքում ընդգծվեցին հատակագծային հորինվածքների առավել ցայտուն ու տեսանելի ձևերը։

Արգիշտի Ա-ի պալատի (É.GAL) մասին նրա մուտքի մոտ պահպանված արձանագրության մեջ ասված է՝

«Խալդի մեծությամբ Արգիշտին՝ Մենուայի որդին այս հոյակապ պալատը կառուցեց» (լուսանկ. աղ 12)։

Ինչպես ասվեց, ուրարտական սեպագրերում պալատական կառույցները հաճախ են հիշատակվում տաճարների հետ միասին։ Տվյալ դեպքում այդ հաստատվում է առարկայական ձևով in situ, քանի որ պալատի ներսում կանգուն է susi կոչվող տաճարը, որի մասին համապատասխան արձանագրություններ է թողել Արգիշտի Ա-ն՝ շենքի գլխավոր ճակատի վրա։

Պալատի բոլոր սենյակները խմբավորված են պերիստիլ ու տնտեսական բակերի, ինչպես և մեծ դահլիճի շուրջը։ Պերիստիլ բակի շուրջը դասավորված են պալատի բնակելի, պաշտոնական կառույցներն ու տաճարը, որը մի փոքր խախտումով ընկած էր բակի երկայնական առանցքի վրա, իսկ բակի միջին մասում գտնվում են զոհասեղանն ու նրան կից պատի տակ՝ կավակերտ նստարանը։ Պերիստիլ բակը աչքի է ընկնում նաև իր գունային արտահայտությամբ՝ նրա մուգ կարմիր պատերը susi տաճարի կապույտ գույնի հետ ստեղծում են նրանց հակադրամիանությունը։

Տաճարի հակադիր կողմում գտնվում են չորս սենյակ, որոնցից մեկը պերիստիլ բակի լայնություն ունեցող, որմնանկարներով զարդարված դահլիճ է, իր նախասենյակների սիմետրիկ դասավորությամբ, որոնք ստեղծում են հատակագծային կուռ հորինվածքի ու ճարտարապետական ձևերի հանդիսավորություն։ Մյուս դահլիճը, որը գտնվում է պերիստիլ բակի հյուսիսարևմըտյան մասում, սյունազարդ էր, կավաշեն նըստարանով՝ երկայնական պատի տակ։ Ժամանակին դահլիճի առաստաղը կազմել են կողերը տաշած, կողք-կողքի կիպ շարված ու մուգ կապույտով ներկված հեծանները, որով ընդգծվում էր նրա հանդիսավոր տեսքը։

Այս երկու դահլիճների միջև գտնվող կարասների պահեստային սենյակում պահվում էր գինին, որ, ամենայն հավանականությամբ, ծառայում էր պաշտամունքային նպատակների, ապահովելով բակի կենտրոնական մասում գտնվող զոհասեղանի մոտ կատարվող ծիսակատարությունները։ Սկզբնական շրջանում պահեստի երկայնական առանցքի վրա եղել են երկու սյուն, որոնցից պահպանվել են երկու կանոնավոր խարիսխ, իսկ հետագայում, հավանաբար ծածկի վերանորոգման կապակցությամբ, նրանց կողքին կանգնեցվում են ևս երկու սյուն։ Գուցե այս լրացումը կապված է վերին լուսավորության համակարգի կարգավորման հետ։

Պերիստիլ բակից հյուսիս փռված է երկրորդ բակը, որի շուրջը, նրա թեք սարալանջի վրա շինված կառույցներն արտաքնապես կազմում էին աստիճանաձև ծավալներ։ Այստեղ էր գտնը-

*վում պալատը սպասարկող տնտեսական մասը։ Տեղում, գրեթե բոլոր սենյակներում պահպանվել են տարբեր չափերի խեցեղենի մնացորդներ։ Պալատի տնտեսական մասն ուներ շուրջ 20 սենյակ։*

*Պալատային մասի մյուս հատվածը, որը կառուցված էր շինարարական հաջորդ փուլում, գտնվում է միջնաբերդի բավականաչափ ընդգրծված տեղում, խալդի տաճարի դիմաց։ Այն բավականաչափ մեծ, սյունազարդ դահլիճ է՝ 12,0×39,0 մետր չափերի, երեք կողմից սենյակներով կառուցապատված (լուսանկ. աղ. 13)։*

*Դահլիճի երկայնական առանցքի վրա կանգնած փայտյա հինգ բարձր սյուներն իրենց ուղղաձիգ դինամիկայով առաջացնում էին տարածության խորության տպավորություն և ընկալման խտություն, որով և դահլիճը ստանում էր մոնումենտալ տեսք։ Այս դահլիճի հանդիսավորությունը լրացվում էր ճոխ ու գունեղ որմնանկարներով։ Նրանց մեջ գտնում ենք խիստ ուշագրավ և ուրարտական արվեստում առաջին անգամ հանդիպող աշխարհիկ բնույթի որմնանկարներ, որոնց անվթար պահպանված առանձին բեկորների վերարտադրությամբ դիտելի են դառնում որսի, հողագործության, խաշնարածության, ինչպես նաև պաշտամունքային թեմաներին վերաբերող տեսարաններ։ Այստեղ երևում են թփուտներ, ճահճոտ տարածքներ՝ եղեգնուտներով, անտառ խորհրդանշող ծառեր, ինչպես նաև կենդանիներ՝ ցուլեր, շատ փոքրիկ ցլիկ, բծավոր ընձառյուծ, ձիեր, շներ, ոչխարներ, կովեր և այլն։ Իրենց սլացիկությամբ, ներքին դինամիկայով տվյալ կենդանիների պատկերները միանգամայն նոր խոսք են ասում ուրարտական արվեստի մեկնաբանությունների մեջ՝ ռեալիստական հասկացության առումով։*

*Դահլիճի հյուսիսարևելյան կողմից կառուցապատված միատիպ սենյակներն ու տարբեր չափերի դահլիճները, հավանաբար, զորանոցային կառույցներ էին՝ միջնաբերդը պահպանող քաղաքի կայազորի ռազմիկների համար։ Դրանցից արևելք միջնաբերդի պահեստներն էին, ուր, համաձայն սեպագրերի, գտնվում էին* ari*-ները, այսինքն, ցորենի շտեմարանները՝ կառուցված Արգիշտի Ա, Սարդուրի Բ և Ռուսա Գ թագավորների կողմից։*

*Միջնաբերդն ուներ ջրմուղային ինքնահոս համակարգ, որ խմելու ջուր էր մատակարարում քաղաքի մոտակա լեռների աղբյուրներից։ Ջրմուղի խողովակաշարը անցնում էր ստորգետնյա ուղիներով, որով ապահովվում էր նրա անխափան աշխատանքը նաև միջնաբերդի հնարավոր պաշարման պահերին, իսկ Էրեբունիի միջնաբերդը հարմարեցված էր երկարատև պաշտպանության համար։*

Ալթին-թեփե։ *Ուրարտական նշանավոր վարչատնտեսական քաղաքի այս միջնաբերդը վեր է խոյանում 60 մետր բարձրություն ունեցող բլրի գագաթին, գրավում է շուրջ 4 հեկտար տարածություն և շրջափակված է որմնահեցեր ունեցող երկու շարքով կառուցված հզոր պարիսպներով*[7]*։*

*Հնագիտական պեղումներն այստեղ հայտնաբերել են մի շարք մոնումենտալ կառույցներ՝ սյունազարդ մեծ դահլիճ, տաճար (ավանդական քառակուսի հատակագծով՝ պարփակված պերիստիլ բակում), ինչպես նաև մի շարք պահեստային շենքեր։ Բլրի արևելյան լանջերի թեքության մեջ հայտնաբերվել են մի շարք քարաշեն դամբարաններ՝ ճարտարապետական ձևերով (գծագր. աղ. 24)։*

*Միջնաբերդում հայտնաբերված ճարտարապետական կառույցների մնացորդները հաստատում են, որ տարբեր ժամանակաշրջաններում այստեղ տեղի են ունեցել վերակառուցումներ։ Ընդ որում, թվում է, թե տաճարն, ինչպես նաև պալատական մեծ դահլիճը, տարբեր ժամանակների կառույցներ են, ինչպես այդ կարելի է կռահել նրանց՝ իրար նկատմամբ ունեցած շերտագրական դիրքից։ Ակնհայտ է, որ սյունազարդ դահլիճը կառուցված է տաճարից հետո, քանի որ մեկ անկյունով նա կանգնած է տաճարը եզրագծող պերիստիլ բակի հարավարևելյան պատի մի հատվածի վրա։ Նման կառուցապատման հետևանքով դահլիճն իր ծավալներով մեծապես խափանել է տաճարի բակը տանող մուտքերից մեկը, թերևս նրա գլխավոր մուտքը։*

*Բացի այս մոնումենտալ կառույցներից, նրանց շրջապատում տեսանելի են միջնաբերդի մի շարք պալատական սենյակների ու մի այլ սյունազարդ դահլիճի, ինչպես նաև պարիսպների հետքեր՝ քառակուսի հատակագիծ ու ներքին տարածություն ունեցող աշտարակներով։*

*Ալթին-թեփեի սյունազարդ դահլիճն ուրարտական ճարտարապետության առայսօր հայտնի*

աշխարհիկ կառույցներից ամենամեծն է, որի չափերը ներսից հավասար են $25,30 \times 40,0$ մետրի։ Այդ ներքին տարածությունը բաժանված է եղել երեք սյունաշարքերով, յուրաքանչյուրում 6-ական սյուն։ Տեղում պահպանված են նրանց բավականին հզոր քարե կլոր խարիսխները, որոնց տրամագծի չափերը հավասար են 1,5 մետրի։

Դահլիճի պատերի առաջին շարքերը քարից են, իսկ նրանցից վեր՝ հում աղյուսից, և սվաղված ու ծածկված են եղել հարուստ որմնանկարներով, որոնք պետք է որ դահլիճի ներքին տարածությանը հաղորդեին արտակարգ շքեղություն։ Այդ որմնանկարներն իրենց հորինվածքներով, զարդանկարներով ու երանգավորումներով նման են Էրեբունիի օրինակներին, ընդ որում այստեղ ևս մեծ տեղ է գրավում աշխարհիկ թեմատիկան։ Բնորոշ է հատկապես գազաններին նվիրված տեսարանն անտառում, որը պատկերում է առյուծի հանդիպումը եղջերուի հետ։

Ալթին-թեփեի այս մեծ դահլիճն իր որմնանկարներով ուրարտական արվեստի ուշագրավ կոթող էր։

Սակայն, գունեղ որմնանկարների առկայության պայմաններում դահլիճում պատշաճ ձևով պետք է կազմակերպված լիներ բնական լույսի ներթափանցումը։ Հավանական է, որ դահլիճն ունեցել է լույսի համատեղ երկու աղբյուր՝ երդիկից և կողքի վերին պատուհաններից։

Պալատական մյուս սենյակները, որոնք գտնվում են սյունազարդ դահլիճից արևելք և նույնպես ծածկված էին գունեղ որմնանկարներով, կազմում էին դահլիճի հանդիսավոր նախամուտքը։

Ալթին-թեփեի սյունազարդ դահլիճի ճարտարապետական ձևավորմամբ կարելի է հիմնավորել այն փաստը, որ Աքեմենյան Իրանի ապադանաների նախասկիզբը պետք է փնտրել ուրարտական ճարտարապետության մեջ։ Սակայն, վերջինիս արմատները, կարծում ենք, թաղված են խեթական աշխարհի ճարտարապետական մշակույթի մեջ։ Մենք նկատի ունենք Բողազքյոյի, հնամենի Խաթթուսայի միջնաբերդում պեղումներով հայտնաբերված քառակուսի հատակագծով 25 սյունանոց դահլիճը, որն ակներևաբար հավաստում է, որ խեթերն են ստեղծել բազմասյուն այն դահլիճի հորինվածքը, որը հետագայում նշանավոր ապադանաների տեսքով հայտնվում է Աքեմենյան Իրանում։

Սակայն Ուրարտուն զարգացման էվոլյուցիոն այս շղթայում կազմում է այն միջանկյալ օղակը, որի միջոցով ապադանայի ճարտարապետական ձևը ներթափանցել է Իրան։ Այդ հաստատվում է նրանով, որ սյունազարդ դահլիճների ստեղծման պահին Իրանում խեթական տվյալ ձևերը վաղուց արդեն դադարել էին գործող շենքեր լինելուց ու գրեթե անհետացել էին, մինչդեռ ուրարտական օրինակները, ինչպես Ալթին-թեփեի սյունազարդ դահլիճը, գործող կառույցներ էին։

Հետագայում ապադանային ձևը դառնալով պալատական դահլիճների կառուցման ղեկավար թեմա, իսկ տեխնիկական միջոցների կիրառման շնորհիվ ստանալով մոնումենտալ արտահայտություն, որպես Իրանի դասական ճարտարապետության գլուխգործոց, վեր է խոյանում նրա Պասարգադը, Պերսեպոլիս և Սուզա քաղաքներում։

Ապադանայի ձևը լայնորեն տարածվելով Իրանում, սկսում է մուտք գործել նաև Առաջավոր Ասիայի երկրները, հատկապես Միջագետք, իսկ հետո Եգիպտոս և նույնիսկ հասնում է մինչև Հնդկաստանի Պատալիպուտրայի՝ Աշոկա թագավորի պալատը։

Այսպիսով, Իրանի դասական ճարտարապետության ամենաբնորոշ ու կատարյալ կառույցի այս ձևը անցել է խեթական աշխարհից Ուրարտու—Իրան և այլ երկրներ։

Ալթին-թեփեի մյուս նշանավոր կառույցը նրա տաճարն է, որն ունի ավանդական քառակուսի հատակագիծ՝ անկյունային ելուստներով ու համապատասխան ճարտարապետական հորինվածք։ Ծիսակատարությունները արվում էին գլխավոր ճակատի առջևում և շենքի ներսի մասում, ուր պահպանվել են զոհարանների մնացորդները։

Միջնաբերդի պահեստային հատվածը իր մի շարք սենյակներով գտնվում է բլրի հյուսիսարևելյան լանջերի վրա։ Դրանցից առավել լավ պահպանվածն ու մեծը $10,00 \times 15,80$ մետր չափերի կառույց է, որի ծածկը պահվում էր 4 փայտյա սյուներով, որոնք ունեն 67 սմ տրամագծով բազալտե սրբատաշ խարիսխներ։

Պահեստներում պահպանվել են բազմաթիվ մեծ չափերի կարասներ, որոնք սովորականի պես կիսով չափ իջեցված են հատակի խորության մեջ։

Այդ պահեստներում, ինչպես նաև տաճարում հայտնաբերված հնագիտական բարձրարժեք իրերը՝ բրոնզից, փղոսկրից ու փայտից, հաստատում են միջնաբերդի բնակիչների հարուստ ու ճոխ կենցաղը։

Կայալիդերե: ժամանակակից այս գյուղը, որտեղ պահպանվել են ուրարտական կոթողներ, գտնվում է Վանա լճից 100 կմ հյուսիս-արևմուտք, Արածանիի աջ ափին փռված Մշո դաշտում, որը ուրարտական թագավորության հիմնադրման ժամանակներից ի վեր երկրի կարևորագույն մարզերից էր։

Հնագիտական հուշարձանների մնացորդներն այս տարածքում իրենց առանձին հատվածներով երբեմն տեսանելի են տեղում՝ գրեթե միայն ջնջված հետքերի ձևով։ Սակայն տարիներ առաջ հնագիտական մասնակի պեղումները հայտնաբերեցին 80×100 մետր չափեր ունեցող միջնաբերդի մի քանի նշանակալից կառույցներ, որոնք դրսևորում են ուրարտական թագավորության կենտրոնական մարզերի ճարտարապետությանը բնորոշ մի շարք ցայտուն հատկանիշներ[8]։ Այսպես, միջնաբերդի կառուցապատված հատվածը, որն իր հյուսիսարևմտյան կողմում եզրագծված է ժայռոտ ելուստներով, ձգվում է հարավ-արևելք, ուր լանջերի մեծ թեքությունների հետևանքով շինությունները նրանում աստիճանաձև են՝ ուրարտական ճարտարապետության համար բնորոշ հորինվածքով։

Միջնաբերդը գտնվել է ապառաժ բլրի վրա, որը կազմված է փոքր տեսակարար կշիռ ունեցող հրաբխային վարդագույն կոնգլոմերատից, սակայն միջնաբերդի շենքերը կառուցված են բլրի շրջակայքում գտնվող հանքերից բերված բազալտ քարից։ Միայն այդ կառույցների պատերի որմածքի միջուկն է, որ լցված է այդ կոնգլոմերատի բեկորներով։

Միջնաբերդի տարածքը, չնայած պաշտպանող իր բնական ապահով դիրքին, այնուհանդերձ շրջափակված էր հզոր պարիսպներով, որոնց առանձին, բնդ որում, բավականին քայքայված հատվածներն են, որ հայտնաբերվեցին պեղումների ընթացքում։

Միջնաբերդը պեղող հնագետ Չարլզ Բըրնեյն գտնում է, որ բլրի վրա ժամանակին կատարվել են որոշակի վերակառուցումներ, որոնք, նրա կարծիքով, կապված էին անհրաժեշտ ու հրատապ պաշտպանական միջոցառումների հետ։

Այդ վերաբերում է մի քանի պատերի վերակառուցումներին ու հատկապես մուտքերին, որոնցից ներքևինը, որը 2,90 մետր լայնություն ուներ ու նախատեսված էր մարտակառքերի անցման համար, նեղացվում, հասցվում էր մինչև 1,50 մետրի։ Իսկ այնտեղ գտնված խարիսխները, Չարլզ Բըրնիի կարծիքով, ժամանակին տեղադրված էին մուտքի մոտ և իրենց սյուներով ստեղծում էին ճարտարապետական համապատասխան հորինվածք։ Տվյալ հատվածում պեղումներով հայտնաբերված նիզակի ծայրերը հաստատում են այստեղ տեղի ունեցած մարտերի մասին։

Միջնաբերդի մուտքից, որը կառուցված է բլրի հյուսիսային հատվածում և որտեղ պահպանվել են նրա մնացորդները, սկիզբ է առնում սալահատակ մի նեղ փողոց, որը շարունակվում է մինչև բլրի կենտրոնական մասը, ուր արդեն տեսնում ենք բավականին ընդարձակ ու նույնպես սալահատակված հրապարակը։

Այդ հրապարակի վրա ժամանակին վեր էր խոյանում միջնաբերդի՝ ճարտարապետական առումով շեշտված կառույցը՝ տաճարը, ավանդական քառակուսի հատակագծով, որի մնացորդները լրիվ պահպանված են։

Իր դիրքով՝ շրջապատի տարածքի նկատմամբ, Կայալիդերեի այս տաճարը հիշեցնում է Ալթին-Թեփեի տաճարի համանման հորինվածքային լուծումը։ Սակայն Կայալիդերեի տաճարը որակական առումով խիստ զիջում է Ալթին-Թեփեի տաճարի շինարարական արվեստին։

Կայալիդերեի տաճարի մուտքի առանցքով, հրապարակի միջին մասում, երբեմնի կանգուն էր քարե մի կոթող և նրան կից շարժական զոհարան, որի մետաղյա ոտքերը առայսօր քարե սալերի մեջ թողել են իրենց պարզ տեսանելի հետքերը։

Միջնաբերդի այլ հատվածներում, որոնք նույնպես չեն ենթարկվել հնագիտական ծավալուն պեղումների, նշմարվում են պահեստային մի շարք մեծ շինությունների հետքեր (լուսանկ. աղ. 16 ա, բ), որոնցով այս միջնաբերդը կարելի է դասել ժամանակի տնտեսական նշանակալից կենտրոնների շարքը։

Բլրի լանջերի մեծ թեքությունների վրա կառուցված այդ պահեստային շենքերը միաթռիչք շինություններ են, որոնցում չկան սյուներ, որոնք այնքան բնորոշ են ուրարտական պահեստային շենքերին։ Միայն նրանցից մեկում

գտնված է փայտյա սյան քարե կլոր խարիսխ, որը միակ հաստատումն է այստեղ սյունահենային կոնստրուկտիվ համակարգի։ Այդ է պատճառը, որ այստեղ պահեստային շենքերը, ինչպես և համանման տեղանք ունեցող ուրարտական շատ այլ կառույցներ, իրենց հորինվածքներով արտաքնապես եղել են աստիճանաձև։

Կայալիդերեի միջնաբերդը, որը կառուցված է ապառաժ բլրի վրա, առավելապես հայտնի է իր դամբարան-քարայրով։ Իր չափերով, ծավալով քարայրը ուրարտական ճարտարապետության առայսօր հայտնաբերված ամենալայնատարած քարայրներից է։ Թեև այն բացված է իր մի հատվածով միայն, սակայն ծավալով մոտենում է եգիպտական ճարտարապետության համանման հուշարձանների չափերին և շինված է նրանց կառուցողական արվեստի սկզբունքներով։

Դամբարանը փորված է բլրի լանջի թեքության մեջ, միջնաբերդի հարավային ծայրում, նրա արտաքին պարսպից դուրս ու նրանից մի փոքր ավելի ցած, որտեղ էլ գտնվում է նրա մուտքը։

Այսպիսով ի հայտ է գալիս մի բնորոշ սկզբունք, ըստ որի, ուրարտական դամբարանները հաճախ կառուցվում էին բլուրների թեք սարալանջերի խորության մեջ, ինչպես Ալթին-թեփեում կամ Վանում։ Թերևս դա արվում էր ապահովության նկատառումներով։

Պետք է ենթադրել, որ Կայալիդերեի միջնաբերդը, իր շինությունների աստիճանաձև ծավալներով փռված լինելով բլրի լանջերին, իջնում էր դեպի նրա ստորոտային մասերը, որտեղ, ի դեպ, պահպանվել են շինությունների առանձին մնացորդներ։

Միջնաբերդերի երկրորդ տիպին՝ միջնաբերդեր կառուցապատված միասնական ծավալի ձևով, պատկանում են՝

**Արգիշտիխինիլիի** երկու միջնաբերդերը, մեկը քաղաքի արևելյան մասում՝ 76 մետր վեր խոյացող Արմավիր բլրի գագաթի շուրջ երկու հեկտար մակերեսի վրա, մյուսը նրանից արևմուտք՝ 52 մետր բարձրություն ունեցող ս. Դավթի բլրի գագաթի՝ նույնպես երկու հեկտար մակերեսի վրա (գծագր. աղ. 21)։

Քաղաքների միևնույն տարածքներում երկու առանձին բարձրությունների վրա միջնաբերդեր հայտնի են նաև Կըզ-կալեսիում, Վոյ քաղաքի մոտ, Կալե-Իսմայիլ-աղայում, Ուրմիա լճից արևմուտք, ինչպես նաև Ուրարտուի արևելյան մարզերի մի քանի այլ քաղաքներում։

Արգիշտիխինիլիի տարածքը գյուղատնտեսության զարգացման համար ուներ լավ նախադրյալներ, որոնք զգալիորեն կրկնապատկվեցին, երբ նրա հողերը, Արգիշտի Ա-ի ջրանցքաշինական միջոցառումների շնորհիվ դարձան ոռոգելի։ Ջրանցքաշինական աշխատանքներն այստեղ կատարվում էին նաև հետագայում, ուրարտական թագավորներ Սարդուրի Բ-ի, Ռուսա Գ-ի կողմից։ Այդ միջոցառումների շնորհիվ Արգիշտիխինիլին դառնում է զարգացած գյուղատնտեսական բնակավայրերի կենտրոն։

Քաղաքի արևելյան միջնաբերդի կառույցները, ելնելով բլրի տեղանքի ձևից, ձգվում էին արևելքից-արևմուտք և պարփակված էին հզոր պարիսպով, որը միևնույն ժամանակ կատարում էր միջնաբերդի կառույցների արտաքին պատի դեր[9]։

Թեև արևելյան ամրոցի կառույցների նախնական հատակագծի հորինվածքը դեռևս լրիվ չի բացահայտված, սակայն ուրարտական ճարտարապետության բնորոշ հատակագծային սկզբունքները նրանում որոշակիորեն նկատելի են։ Այդ հատկապես վերաբերում է տեղանքին համապատասխան ծավալների ավանդական աստիճանաձև լուծումներին, սենյակների նեղ ու երկար հատակագծային ձևերին, որմնահեցերի առկայությանը։

Միջնաբերդի բարձրադիր մասում նշմարվում են տարբեր ժամանակաշրջաններում վերակառուցված ծավալների տձև զանգվածների մնացորդներ, որոնցում դժվար է նկատել նախնական հորինվածքի հատակագիծ։ Սակայն ենթադրվում է, որ ժամանակին այստեղ կանգուն էր աշտարակաձև կառույց կամ թե տաճարային շենք՝ քառակուսի հատակագծով, անկյունային աշտարակներով, ինչ որ բնորոշ էր կենտրոնական մարզերի տաճարների ձևերին։

Հավանաբար այդ կառույցներին էին պատկանում տվյալ տարածքում հայտնաբերված բազալտե սրբատաշ այն բեկորները, որոնք պատկերում են խորշաձև խուլ պատուհաններ՝ իրենց բարավորներով, որպիսիք կարելի է տեսնել շենքեր պատկերող Թոփրախ-կալեի և Կեֆ-կալեսիի ուրարտական մի քանի հարթաքանդակների վրա։

Արգիշտիխինիլիում գտնված բազալտ քարերի մյուս տիպի, նույնպես սրբատաշ բեկորները, որոնք կազմում էին քառակուսի հատակագծով

մույթեր՝ իրենց անկյունային ելուստներով հայտնի Կարմիր բլուրի ու Կեֆ-կալեսիի միջնաբերդերից, հավանաբար պատկանում էին այստեղ գոյություն ունեցող մի այլ տիպի դահլիճին, որն, ամենայն հավանականությամբ, ինչպես և Կեֆ-կալեսիում՝ պաշտամունքային մոնումենտալ մի կառույց է եղել։

Պեղումների ընթացքում միջնաբերդի տարածքի տարբեր հատվածներում հայտնաբերվել են որմնանկարների առանձին բեկորներ, որոնց առկայությունը հաստատում է, որ, ինչպես գրեթե բոլոր ուրարտական նշանակալից պալատներում, այստեղ ևս, հանդիսավոր ու պաշտոնական ընդունելությունների համար եղել են ճոխ զարդարված դահլիճներ։

Ամրոցի եզրամասում, մուտքի մոտ գտնվող միանման փոքր չափերի սենյակները ծառայել են ամրոցի պահակազորքին։ Մեծ, երկարավուն սենյակները ծառայում էին որպես շտեմարաններ ու պահեստներ։

Քաղաքի պատմական կյանքի համար բնորոշ է նաև հելլենիստական դարաշրջանի դրսևորումը միջնաբերդում, թեև այն հանդես է գալիս ավելի վերակառուցումների ձևով։

Դավթի բլրի վրա կառուցված Արգիշտիխինիլիի մյուս, արևմտյան միջնաբերդն իր հատակագծով տարբեր դարաշրջանների վերակառուցումների արգասիք է[10]։ Այստեղ, ինչպես և շատ տեղերում, բլրի գագաթը կառուցապատումից առաջ նախապես մասնակի հարթեցվել է։ Իսկ պալատի այն մասը, որը կառուցապատված է բլրի թեք սարալանջի վրա, նույնպես ուներ շենքերի աստիճանական ծավալներ, որով ավելի էր շեշտվում կառույցի մոնումենտալ արտահայտությունը տվյալ տարածքում։

Չնայած միջնաբերդի ընդհանուր կառուցապատման մեջ մխրճված հետագա շինարարական ծավալներին, նախաստեղծ ճարտարապետական ձևերն այստեղ շատ ավելի բարվոք վիճակում են, քան արևելյան բլրի վրա և հանդես են գալիս իրենց պարզորոշ արտահայտությամբ։

Տարածական ընդհանուր հորինվածքի միջուկը նրա ընդարձակ բակն է, որի հարավարևելյան հատվածը գրավում է միջնաբերդի հիմնական կառույցը՝ պալատն իր համապատասխան շինություններով։ Բնակելի ու տնտեսական կարիքներին ծառայող սենյակները տարածված են բակի շուրջը, իսկ հյուսիսարևմտյան բարձունքի վրա վեր է խոյանում արտակարգ հաստ պատերով մի կառույց, որը հնագետ Հ. Մարտիրոսյանը համարում էր միջնաբերդի տաճարը։

Կենտրոնական բակն իր արտաքին մուտքերով, օրգանապես իրար կապելով բոլոր հարակից կառույցները, կազմակերպում էր միջնաբերդի շարժման գրաֆիկը։ Ընդ որում, առանձնապես նշմարելի է հյուսիսարևմտյան մուտքի կառուցապատման լուծումը, որը տակտիկական առումով քարակերտ մի ծուղակ էր, որում միջնաբերդի պաշարումը թշնամու կողմից պետք է ուղեկցվեր մեծագույն կորուստներով։ Ի դեպ, կառուցողական այս սկզբունքները մեծ չափով առնչվում են խեթական ու սիրիա-խեթական համանման կառույցների լուծումների հետ, ուստի և որոշակիորեն կապված են հինարևելյան ռազմաճարտարապետական համապատասխան ավանդույթներին։

Միջնաբերդի հյուսիսարևմտյան ու հարավարևելյան թեք սարալանջերը, կառուցապատված լինելով աստիճանաձև շինություններով ու ժամանակին ամրացվելով հենապատային շարքերով, զգալիորեն ընդլայնել են միջնաբերդի օգտագործելի մակերեսը։ Մասնավորապես հյուսիսային մասում դրանցով գոյացած հարթակներից մեկը կարող էր մարտակառքերի և ընդհանրապես անիվային տրանսպորտի ընդարձակ կանգառը լինել։

Միջնաբերդի հիմնական մասը գրավում է պալատական շենքը՝ É.GAL-ը։ Ստեղծվելով միջնաբերդի ընդհանուր կառուցապատման հետ միաժամանակ, É.GAL-ի հատակագծային լուծումը բնորոշվում է իր ինքնուրույն հորինվածքով, որին մի կողմից հարում են իրարից անջատ բնակելի սենյակներ, որոշ մասերում նաև իրենց նախասենյակներով։ Պալատական շենքի հանդիսավոր մասը կազմում է սյունազարդ մեծ դահլիճը՝ երկու շարքով դասավորված քսան սյուներով, իսկ մյուս կողմից տնտեսական մասը՝ իր մի քանի կարասային պահեստներով, ինչպես նաև օժանդակ սենյակներ՝ պալատի պահակային անձնակազմի համար։

Ուշադրության արժանի է այն զուգահեռը, որ գոյություն ունի Արգիշտիխինիլիի ու Ալթին-Թեփեի համանման դահլիճների միջև, թեև վերջինում սյուների շարքերը երեքն են։ Սակայն, այնուհանդերձ, կարող ենք տեսնել, որ սյունա-













0 2 4 6մ

Ա





0 2 4 6 8մ

1

Բ

*Աղ. 35 Վիմափոր կառույցներ. ա) Կայալիդիրն, հատակագիծ, կտրվածք, բ) Կալն Հոգաբ, հատակագիծ, կտրվածք*

պարզ դալիճների հորինվածքը, որպես այդպիսին, ուրարտական ճարտարապետության մեջ դառնում է նրա ավանդական ձևը։

Այսպիսով, Արգիշտիխինիլի քաղաքի ղեկավար կենտրոնները տվյալ երկու միջնաբերդերն էին և, հավանաբար, դրանցից մեկը՝ արևմտյանը, վարչատնտեսական, մյուսը՝ արևելյանը, պաշտամունքային ֆունկցիաներ էին տնօրինում։

Թեյշեբաինիի միջնաբերդը Ազա երկրի մյուս մեծ ու նշանակալից քաղաքի կառույցն է, որը վեր էր խոյանում Կարմիր բլուրի վրա, միջին մասում՝ երկու հարկով, քաղաքի կողմն ուղղված երկու թևերով ու այդ մասերում գտնվող մուտքերով ու ճակատային մասը պարփակող հզոր պարիսպներով[11]։ Այսպիսով միջնաբերդը ներկայացնում էր մեկ ընդհանուր կառույց՝ իր մոնումենտալ միաձույլ ծավալով, որի հզորությունն ավելի էր շեշտվում բազմաթիվ աշտարակներով ու որմնահեցերով (գծագր. աղ. 25)։

Կառույցի հատակագիծը տեղանքի թեք ռելիեֆի հետևանքով բաժանված է առանձին ու ինքնուրույն հատվածների, որոնք այստեղ հիմնականում չորսն են։ Ամեն մի հատվածը գտնվելով մեկ հարթության վրա, մյուսի հետ կապված է աստիճանավոր միջանցքներով։

Միջնաբերդից պահպանվել է միայն նրա առաջին հարկը, որը դրսից չունի անմիջական մուտք. ժամանակին անցումը իրացվում էր միայն երկրորդ հարկից, որը հիմա, բացի իր աղյուսների մի քանի շարքերից, լրիվ ավերվել է։

Ներքնահարկի, հատկապես պահեստային մասերը լայնացնելու նպատակով նրանցում կառուցվում էին հաստ մույթեր, ինչպես նաև որմնամույթեր, որոնք հնարավոր էին դարձնում երկրորդ հարկում ունենալ բնակելի սենյակներ, ինչպես նաև, ըստ երևույթին, հանդիսավոր ու պաշտոնական ընդունելությունների համար՝ դահլիճային մեծ տարածություններ։ Այդ մասին են խոսում այն գունեղ ու շքեղ բուսական ու կենդանական աշխարհը պատկերող որմնանկարները, որոնց պատառիկների մի մասը միջնաբերդի հրդեհի ժամանակ այրված վիճակում վերևից ընկել էին ներքնահարկը։ Ներքնահարկում էին գտնվում պահեստներ, շտեմարաններ, մառաններ, ինչպես նաև արհեստանոցներ (լուսանկ. աղ. 15)։

Կառույցի հյուսիսարևմտյան հատվածն ուներ երկու կարևոր արտադրամաս։ Նրանցից մեկում արտադրվում էր գարեջուր, որը բավականին տարածված էր Ուրարտուում, մյուսում արտադրվում էր քնջութի ձեթ։ Պահպանված քարե ավազանն ու այլ հարմարանքները պատմում էին ձեթի պատրաստման տեխնոլոգիական ողջ ընթացքի մասին։

Միջնաբերդի արտադրական գործունեությանն է վերաբերում նաև նրա բաց հարթակը հարավարևելյան մասում, որը ստեղծված էր երկրորդ հարկի մակարդակի վրա։ Այնտեղ թվով 30 կարասներ պահպանում էին գինին կիզիչ արևի տակ՝ հասունանալու համար։ Պատրաստելուց հետո այդ գինին տեղափոխվում էր մառանները ու պահվում կարասների մեջ (լուսանկ. աղ. 14)։

Շտեմարանները, ինչպես նաև այն սենյակները, որոնք իրար հետ անմիջականորեն դռներով չէին կապվում, 3,5 մետր հաստություն ունեցող պատերի մեջ, հատակից մարդու հասակի բարձրությամբ, ունեին 15×15 սմ չափի անցքեր՝ բանավոր հաղորդակցման համար։

Այսպիսով, առաջին հարկաբաժինը, իր շուրջ 140 շտեմարաններով, պահեստներով, մառաններով ու հատկապես իր արտադրական արհեստանոցներով, տնտեսական մի մեծ համալիր էր, որն իր ենթակայության ներքո ուներ հողային մեծ տարածություններ՝ գյուղատնտեսական մթերքներ ստանալու և վերամշակելու համար։ Այդ է հաստատում Ռուսա II թագավորի կողմից կառուցված մեծ ջրանցքը, որը, անցնելով Թեյշեբաինի քաղաքի արվարձանով, ոռոգում էր մոտակա Կուարլինի կոչվող հողերը, որի մասին է վկայում Զվարթնոցի հայտնի սեպագիր արձանագրությունը։ Այդ նույնն են հաստատում միջնաբերդում գտնված մի շարք սեպագիր աղյուսակները, որոնցում նշվում է գյուղատնտեսական աշխատանքների ուղարկվող բանվորական անձնակազմի մասին։

Քանի որ այս շտեմարաններում պահվում էին նյութական մեծ արժեքներ, միջնաբերդի տնօրինությունը մշտապես մտահոգված էր նրանց հաստատուն ու անխափան ապահովության համար։ Այդ մտահոգության իրականացումը, հին արևելյան կյանքի նորմերի համաձայն, արտահայտվում էր աստվածներին զոհաբերություններ մատուցելով։ Այդ կապակցությամբ այստեղ, ներքնահարկի տնտեսական սենյակների շարքում, ստեղծվել էր զոհարան՝ համապատասխան ծիսակատարությունների համար։ Զոհաբերություն-

ների համալիրը բաղկացած էր երեք սենյակից, որոնցից մեկը պեղումների ժամանակ լցված էր հորթերի ոսկորներով՝ 0,4—0,5 մետր բարձրությամբ, որոնք հավաքված էին այստեղ կողքի սենյակում գտնվող զոհասեղանից՝ ծիսակատարության արարողությունը կատարելուց հետո։

Սակայն, միայն սրանով չէ որ բավարարվել են միջնաբերդի տերերը։ Կարասների ամենամեծ մառաններից մեկի հատակի վրա պատրաստված կավաշեն զոհարանի վրա նույնպես կատարվել են աստվածներին մատուցվող զոհաբերություններ՝ հանուն այստեղ կուտակված բարիքների ապահովության։ Պահեստային տարածքներում զոհասեղանների առկայության ավանդույթը ծանոթ է դեռ Ուր քաղաքի մեծ պահեստներից, որտեղ կուտակվում էին Նաննա աստծո տնտեսության համար նվիրաբերված մթերքները, որոնց պահպանության համար նույնպես զոհեր էին մատուցում։

Թեյշեբաինիի միջնաբերդում կային նաև պաշտամունքային կառույցներ։ Այդ են հաստատում միջնաբերդի հարավարևմտյան մասում հայտնաբերված տաճարին պատկանող սեպագիր արձանագրությունների բեկորները, որոնք, ի մի բերվելով, գծագրում են էրեբունիի susi տաճարին մոտ հատակագիծ։

Պետք է ենթադրել, որ այս տաճարը, ինչպես և տաճարների ողջ համալիրը սպասարկում էր քաղաքի բնակչությանը, որոնց համար էլ պատրաստված էր այն ճանապարհը, որը, սկսվելով միջնաբերդի հարավային մուտքից, 8,75 մետր լայնությամբ թեք հողաթմբով բարձրանում էր մինչև պաշտամունքային կառույցների հարթակը։

Այսպիսով, միջնաբերդի հատակագիծը բնորոշվում է իր տարբեր հատվածներով, որոնք դասավորված են տեղանքի թեք սարալանջի վրա, աստիճանաձև, հաճախ սիմետրիկ լուծումներով, ունենալով կառուցապատման մեծ խորություն։ Այդ կապակցությամբ էլ նրա ներքին տարածությունների լուսավորության համար այստեղ ստեղծվել էին իրար հաջորդող վերևից բաց սենյակներ։

Թեք սարալանջերի վրա աստիճանաձև կառույցների դեպքում ներքին տարածությունները լուսավորվում էին նաև պատերի վերևում տեղադրված պատուհաններից։ Այդ են հաստատում պեղումների ընթացքում հայտնաբերված միջնաբերդի պատուհաններում օգտագործված փայտյա բարավորները։

Նման պատուհաններ, շուրջ մեկ մետր բացվածքով, լայնորեն հայտնի են ուրարտական ճարտարապետության մեջ, մասնավորապես բրոնզյա այն թիթեղների վրա, որոնք պատկերում են Թոփրախ-կալեի, Կեֆ-կալեսիի բնակելի տների ճակատները։

Թեյշեբաինիի միջնաբերդն այնքան լավ է պահպանվել, որ հնարավոր եղավ նրա առանձին ճարտարապետական ձևերի համոզեցուցիչ վերականգնումը։ Մասնավորապես ներքնահարկերի, մառանների ու սենյակների տեսքի վերականգնման նախագծերը կատարվեցին ամենայն ճշտությամբ՝ տեղում ընկած ծածկերի կոնստրուկտիվ ձևերի, լրիվ պահպանված հեծանների ու պատերի բարձրության վրա մնացած նրանց տեսանելի հետքերի համաձայն։ Հնարավոր եղավ վերականգնել նաև միջնաբերդի հարավային ու հյուսիսարևելյան մուտքերը։ Սրանք կառուցված էին հում աղյուսից, քարե շարքերի վրա և ունեին բազալտե սրբատաշ քիվեր, որոնց պահպանված առանձին բեկորները լրիվ վերարտադրվում են իրենց նախնական ձևերով (գծագր. աղ. 15)։

Մուտքերի ճարտարապետական այդ ձևերի վերականգնումը հիմնված է տեղում գտնված բեկորների, հատակագծային հորինվածքի, ինչպես նաև հին հարթաքանդակներում պատկերված մուտքերի ձևերի (Արդաշկոմ՝ Ուրարտուում, Իշտարի մուտքը՝ Բաբելոնում, պալատը՝ Դուռ-Շառուկինում) հիման վրա։ Դրանց վրա է հիմնըված նաև միջնաբերդի լրիվ պեղված հարավարևելյան հատվածի արտաքին ձևերի վերակազմությունը։ Նրանում արտահայտված են ընդհանուր ծավալների աստիճանաձև կառուցվածքը, նրանց կապը տեղանքի ծալքերին, ձորի կողմը ուղղված երկրորդ հարկի բաց սյունասրահն իր բազալտե մույթերով ու որմնահեցերով, որոնք ընդհանուր ձևերին հաղորդում են մոնումենտալություն։

Թեյշեբաինիի միջնաբերդի ներքին հարդարանքի համար կարևոր հայտնագործություն էր պեղումների ընթացքում գտնված բրոնզյա թիթեղների առանձին պատառիկները, որոնցով պատում էին պալատական դռները։ Այս դեպքում միջնաբերդի ճարտարապետությունը հանդես է

գալիս նոր ու ճոխ տեսքով, իր զուգահեռներն ունենալով ասորեստանյան ու բաբելոնական պալատների հարդարանքներում։

Միջնաբերդի արտաքին ճարտարապետական ձևերն իրենց աշտարակներով ու որմնահեցերով ունեին ծավալների ուղղահայաց չլատում և իրենց դեպի վեր ուղղված դինամիկ ու մոնումենտալ շարժմամբ իշխում էին քաղաքի ողջ տարածքում, նրա բնակելի շենքերի ծածկերի հորիզոնական ծավալների հետ կազմելով ցայտուն հակադրամիասնություն։

Թեյշեբաինիի միջնաբերդն ապրեց պատմական կարճատև կյանք, որը դադարեց սկյութացիների կողմից VII դ. վերջում քաղաքի վրա կատարված արշավանքի հետևանքով։

Արագած գյուղում (էջմիածնի շրջան) գտնվող միջնաբերդը բնորոշվում է ճարտարապետական արտաքին ձևերի նորովի արտահայտությամբ[12]։ Այն ներկայացնում է երկհարկանի միջնաբերդի ցայտուն օրինակ (գծագր. աղ. 23)։ Միջնաբերդը դեռ XVII դարում իր վրա էր գրավել ֆրանսիացի ճանապարհորդ Պոլ Լեկուզի ուշադրությունը, որն անցնելով այս գյուղով հուշարձանի վերակազմությունը կատարել էր ճեպանկարի ձևով և հրապարակել Ֆրանսիայում։ Նրա նկարում հուշարձանը որոշակիորեն պատկերված է երկհարկանի։ Հասկանալի է, որ Պոլ Լեկուզի օրոք, այն է՝ շուրջ 350 տարի առաջ, կառույցը պետք է որ ավելի լավ պահպանված լիներ և իր տեսանելի մնացորդներով որոշակիորեն կարող էր հաստատել երկրորդ հարկի առկայությունը նրանում։ Սակայն բոլորովին անհիմն են նրա վերակառուցման գծագրում տեղ գտած՝ տվյալ հուշարձանը XVII դարի ճարտարապետական ոճին վերագրող դրվագները։

Ի դեպ, Պոլ Լեկուզի այդ գծագրով ժամանակին ներկայացվեց առաջին հայտը Եվրոպայում պատմական հայ ճարտարապետության ուսումնասիրության ուղղությամբ։

Միջնաբերդի երկրորդ հարկի առկայությունը ժամանակին հաստատեց նաև Թ. Թորամանյանը։ Նույնը հաստատվեց նաև 1955 թ. մեր կատարած մանրամասն պեղումների արդյունքներով։ Այդ ընթացքում հուշարձանի արևելյան մասի տեղանքի ժայռոտ ելունների միջև մասնակի կերպով դուրս եկող երկայնական կիսամույթի երկու կողմերի ծավալների մեջ բացվեցին դեպի վեր պանող հում աղյուսի սատիճանների մնացորդներ։ Տեղում գրեթե հիմնովին կործանված որմածքին պատկանող հում աղյուսներից պատահմամբ պահպանված մի քանի օրինակները, իրենց ձևերով ու չափերով նման են Կարմիր բլուրի միջնաբերդի աղյուսներին։ Դրանով էլ, ի դեպ, Արագածի ուրարտական հուշարձանը թվագրվեց մ.թ.ա. VII դարով։

Մեր պեղումները հաստատեցին նաև, որ հուշարձանն ուներ հարթ ծածկ՝ փայտյա հեծանների վրա, ուրարտական ճարտարապետության մեջ տարածված կոնստրուկտիվ ձևերի հայտնի սկզբունքներով։

Հուշարձանի հատակագծային հորինվածքը՝ քառանկյան ձևով անկյունային ելուստներով և որմնահեցերով նրանց միջև, ծանոթ էր հինարևելյան ճարտարապետությանը։ Անշուշտ, որոշակի զուգահեռներ կարելի է գտնել նաև Միջագետքի դեռ IV հազարամյակում ստեղծված Թեփե-Գավրայի, Աբու-Շարայինի կամ Երիդուի ու այլ համանման հուշարձանների մեջ, սակայն կարծում ենք, որ Արագածի միջնաբերդի նախնական ձևն իր պարզ օրինակով առկա է Ինակլուի հուշարձանում։ Վերջինս, որի լավ պահպանված մնացորդները գտնվում են Արագած լեռան հարավային լանջին, Բյուրականից ընդամենը երեք կիլոմետր հեռավորության վրա, իր հատակագծով նույնպես քառանկյուն է, սակայն, իր ճակատների հարթ, լակոնիկ մշակմամբ՝ առանց որմնահեցերի։

Արագածի միջնաբերդը իր արևմտյան և հարավային կողմերում ուներ փոքր չափերի բակ, որը սահմանագծված էր հզոր պարիսպներով։ Տվյալ հատակագծային հորինվածքը համոզում է, որ առաջնայինը այստեղ պաշտպանական նկատառումներն են, որի հետևանքով էլ ստեղծվել է այսպիսի հատակագծային լուծում։ Իսկ միջնաբերդի արևելյան ու հյուսիսային տարածություններում, որտեղ տեղանքն իր բազալտե ելուստներով արդեն իսկ ապահովվում էր անհրաժեշտ պաշտպանությամբ՝ նման պարիսպներ չուներ։

Չնայած միջնաբերդի խիստ քայքայված վիճակին, այնուհանդերձ կարելի է եզրակացնել, որ նրա բնակելի մասը տեղավորված էր գրեթե լրիվ կործանված 2-րդ հարկում, իսկ պահպանված առաջին հարկը տրամադրված էր օժանդակ սենյակներին։ Կասկածից դուրս է, որ տվյալ բնակատեղիի պահեստային մասերը տեղադրված էին միջնաբերդի առաջին հարկում, ինչպես, օրինակ, դա արվում էր Թեյշեբաինիում և այլուր։ Սա-







Ա





Գ







Դ



Բ



0 2 4 6 8մ

Աղ. 36 Վանա ժայռ. վիմափոր կառույցներ. ա) հատակագիծ, կտրվածք, բ) հատակագիծ, կտրվածք, գ) հատակագիծ, կտրվածք, դ) հատակագիծ, կտրվածք

կայն միջնաբերդի սահմանափակ մակերեսի պատճառով անտեսական պահեստները, ինչպես կարելի է կռահել պեղումների նյութերից, գտնվում էին նաև միջնաբերդից դուրս, նրան կից տարածքներում, որտեղ հայտնաբերված են բավականին մեծ չափեր ունեցող կառույցի հետքեր:

Քանի որ Արգարծի բնակատեղին մի սովորական URU էր, որը, հավանաբար, Արգիշտիխինիլիի ագլոմերացիայի հզոր համակարգի կազմում մի գյուղական միավոր էր, ուստի և չէր կարող ունենալ մեծ միջնաբերդ՝ իր պահեստային մասերով, որոնք այստեղ առանձին մեկուսացված կառույցների ձևով պետք է փռված լինեին համակարգի ամբողջ տարածքում:

Եզրագծային կառուցապատում ունեցող՝ միջնամասում վեր խոյացող ծավալային միջուկով միջնաբերդերի տիպին պատկանող կառույցներ:

Ուրարտական պետության արևելյան մարզում, հատկապես Ուրմիա լճի շրջակայքում, վերջին տարիների ընթացքում Վ. Կլայսի հնագիտական արշավախմբի կողմից հայտնաբերվել են բազմաթիվ ուրարտական բնակատեղիներ, բերդեր, ինչպես նաև վիմափոր կառույցներ: Այդ բոլոր հուշարձանները, իրենց հատակագծային հորինվածքի լուծումներով, դրսևորում են ուրարտական բերդերի նոր կողմեր, ուրարտական ճարտարապետությանը բնորոշ ու նրան հատուկ խորապես ինքնատիպ մակարդակ (գծագր. աղ. 27)[13]:

Սակայն, հարկ է նշել նաև, որ այդ հուշարձանները գրեթե պեղված չեն ու որոշ դեպքերում էլ հայտնի են միայն իրենց հազիվ տեսանելի վերերկրյա, երբեմն էլ խիստ եղծված հետքերով: Բանն այն է, որ որոշ հուշարձաններում երբեմն իսպառ ոչնչացել են պատերի հում աղյուսի շարքերը, իսկ ներքևի քարե շարքերում հաճախ պահպանվել են միայն նրանց բեկորների տձև քարակույտերը, որոնցով ոչ միշտ կարելի է կռահել նախնական հատակագծային հորինվածքի ստույգ ձևերը: Հետևապես այդ ընդհանուր եզրակացությունները պետք է ընդունվեն խիստ վերապահումներով: Այս բոլորը չի կարելի տարածել պեղումների հետևանքով համեմատաբար լավ ուսումնասիրված Բաստամի վրա, որը հանդես է գալիս իր ճարտարապետական նորույթներով:

Այս երրորդ տիպի կառույցներին վերագրվող բնորոշ հորինվածքը պարզ նկատելի է իր զարգացման էվոլյուցիոն ընթացքով՝ հատկապես Ուրարտուի արևելյան մարզերի միջնաբերդերում, որոնք և պատկերված են մեր աղյուսակում: Դրա նախաստեղծ ձևը պարզ քառանկյուն էր, ինչպես, օրինակ, Տուշպայից արևելք գտնվող Ներքին Անզաֆ բերդը, որին եզրագծող պատերը չունեն ո՛չ աշտարակներ, ո՛չ էլ որմնահեցեր:

Այսպիսին էր Ուրարտուի վաղ շրջանում կառուցված պատերի մեծ մասը, այդ թվում նաև Տուշպայի շրջակայքում կառուցված Սարդուրի հայտնի փոքր ամրոցի պատը, որոնք, սակայն, հետագայում ստանալով աշտարակներ ու որմնահեցեր, դառնում են կուռ համակարգեր (գծագր. աղ. 44):

Այսպիսի մի քառանկյուն հատակագծով, աշտարակներով ու որմնահեցերով կառույց էր Կալե-Թեփե Դոգաբը, հիմնված VIII—VII դդ. (մ.թ.ա.), Ուրմիա լճի հարավային ափերից 20 կմ արևմուտք: Դրա փոքր չափերը ենթադրել են տալիս, որ այն ծառայում էր որպես ռազմական առաջապահ՝ Ռեզայե ձգվող ճանապարհի ուղղությամբ: Նման փոքր չափերի էր, բայց ավելի ձգված հատակագծով, Ուզուր-Թեփե բերդը, որը գտնվում է Ուրմիա լճից հյուսիս, Բաստամից 30 կմ արևելք, և նույնպես ռազմական նշանակություն ունեցող մի առաջապահ էր:

Տվյալ տիպի հորինվածքի զարգացման հետագա աստիճանը կարելի է տեսնել Շերագիե-ամիր, ինչպես նաև Կուխ-ի-Սամբիլ բերդերի հատակագծային լուծումներում: Սրանցից առաջինը գտնվում է Մարանդից 25 կմ հյուսիս-արևմուտք լեռնային հարթության եզրին, որից արևելք փռված են ուրարտական մի այլ բերդի մնացորդները:

Շերագիե-ամիրի միջուկը, որը 18×31 մետր չափերի քառանկյուն կառույց է՝ աշտարակներով ու որմնահեցերով, իր միջնամասերի պատերին կից ուներ սենյակների շարք, իսկ մնացած մասը բավական ընդարձակ դահլիճ էր: Այս միջուկը, ինչպես ցույց են տվել Վ. Կլայսի հետազոտությունները, հետագայում կառուցապատվել է հզոր բերդապարիսպներով և դրանով էլ, ինչպես կարծում ենք, հիմք է դրվել բերդերի՝ վերևներում նշված նոր տիպին: Նման վերակառուցումը հետագայում դառնում է ճարտարապետական օրինաչափ ձև՝ էվոլյուցիոն ընթացքի իր նոր արտահայտություններով:

Այսպիսին էր նաև Կուխ-ի-Սամբիլ բերդի զարգացման ընթացքը, որը գտնվում է Ռեզա-

յեից 37 կմ հյուսիս-արևելք. Ուրմիա լճի ափերի մոտ գտնվող լեռան լանջին։

Ռազմաստրատեգիական նշանակություն ունեցող այս կառույցը պաշտպանում էր Ռեզայեից հյուսիս գտնվող դաշտավայրը, լինելով տեսողական կապով առնչվող բերդերի միջին օղակներից մեկը։

Կուխ-ի-Սամբիլ բերդը շինարարական մի քանի փուլերի արդյունք է։ Նրա նախնական՝ 42×105 մ չափերի բավականին ձգված միջուկն իր հյուսիսային ճակատային մասում ուներ հզոր աշտարակներ, ինչպես նաև որմնահեցեր։ Այս քառանկյուն հատակագիծ ունեցող կառույցի ներքնամասում են գտնվում բերդի հիմնական սենյակները։ Հետագայում այդ միջուկը կառուցապատվել է իր մնացած ծավալներով, որով և այն ստացել է իր արդի տեսքը։

Նույն կերպ են բնութագրվում նաև մյուս բերդերը, այդ թվում մ.թ.ա. VII դ. Կալե-Սիրախը՝ կառուցված Մակուից 36 կմ արևելք, մ.թ.ա. IX դ. Կիզ-կալեսին՝ Եվօգլուի մոտ, որոնք, Վ. Կլայսի կարծիքով, վերակառուցվել են մ.թ.ա. VII դարում։ Կիզ-Կալեսիի միջնաբերդի չափերը (175×245 մ) թույլ են տվել նրան հաստատելու, որ այն գավառապետի նստատեղին է եղել։

Հուշարձանի տեղանքի բնորոշ հատկանիշն են նրա մեծ թեքությունները, որոնց հետևանքով Կիզ-Կալեսիի միջուկը, կառուցված լինելով աստիճանաձև հորինվածքով, ցայտուն օրինակ է դառնում շենքը տեղանքի ծալքերին ամենայն խստությամբ կապելու սկզբունքի, որով կրճատվում կամ բոլորովին վերացվում է քարի որմածքի աննպատակ օգտագործումը։ Դրա հետ մեկտեղ աստիճանաձև ծավալները պետք է որ շենքի արտահայտությանը հաղորդեին վերասլաց ու մոնումենտալ տեսք։

Հետագայում գտնվեց այս հորինվածքի նոր տարբերակ՝ Կալե-Թազաբուլաղի, Ալավերդիքենդի և մյուս միջնաբերդերում։ Սրանցում արտաքին, եզրագծային պատերն իրենց ֆունկցիոնալ առումով շարունակում են մնալ ոչ միայն պաշտպանական տարրը, այլ ներսից կառուցապատվելով սենյակներով, ստանում են ծավալատարածական ներքին հորինվածք։

Թազաբուլաղի բերդում, 10×16 չափերի առանձին կանգնած կառույցը՝ քառանկյուն հատակագծով, հավանաբար նրա նշանակալից ու պաշտոնական մասն էր։ Իսկ նրա 10 մետրանոց լայնությունը հաստատում է, որ ծածկը նրանում պահվում էր սյունահեծանային կոնստրուկտիվ համակարգի միջոցով։

Պահպանելով նույն սկզբունքը, անկանոն էլիպսին մոտեցող Ալավերդիքենդի հատակագիծն իր միջին մասում ունի տարբեր շինությունների պարզ տեսանելի հետքեր, որոնցից առավել ցայտունը ներկայացնում է 28×38 մ չափերի քառանկյուն շենքի հատակագիծ՝ իր դուրս եկող անկյունային աշտարակներով։ Այս շենքին հատկանշական են նրան եզրագծող պատերի միջև գտնվող երկայնական սենյակները, որոնք խիստ բնորոշ են Միջագետքի մոնումենտալ ճարտարապետությանը։ Կառույցի միջին մասի 15×25 մ չափերի տարածքը, որը նրա շեշտված մասն էր, կարող էր լինել բակ կամ դահլիճ։

Սակայն այս անցումային ձևերը, իրենց զարգացման մեջ ստեղծելով իրար հետ շաղկապված արտահայտություններ, դառնում են հասկանալի։ Այդ առանձնապես պարզ տեսանելի է Դանաթլուի փոքր չափերի բերդի ձևի մեջ, ուր վերևում նշված որոնումները, կարծես նրանում խտացվելով, ամփոփվել են ծավալատարածական լուծման մեջ։ Դանաթլուի տարածքի միջից, որը պարփակված է աշտարակներ ու որմնահեցեր ունեցող պատերով, իր քառակուսի հատակագծից (6×6 մետր արտաքին չափերով) վեր էր խոյանում մի կառույց, որի ներքին տարածության աննշան մակերեսը հաստատում է նրա վերասլաց աշտարակ լինելու հանգամանքը։ Այդ են հաստատում նաև նրա շուրջն ընկած կավաշեն պատերի մնացորդները, որոնք, ամենայն հավանականությամբ, պատկանում էին աշտարակին։ Հետևապես այն բարձր ու վերասլաց մի կոթող էր, որի հիմնական նպատակը տվյալ տարածքի հսկողությունն էր։

Ուշադրության է արժանի նաև այն, որ ուրարտական պալատական շենքերը, որոնք իրենց հատակագծային հորինվածքի հիմքում ունեին մեծ դահլիճ ու երկայնական կողմերին կից սենյակներ, դարձան դասական հայ ճարտարապետության պալատական շենքերի մեկնակետային ձևը։ Ինչպես ցույց է տվել ճարտարապետ Կ. Ղաֆադարյանը, խարսխվելով այդ ձևի վրա հայ ճարտարապետության մեջ առաջացան Արուճի, Դվինի պալատների, Անիի հյուրանոցի և մյուսների ցայտուն հորինվածքները։

### Պաշտամունքային շենքեր

Ուրարտուի հասարակական կյանքում, ինչպես ամենուրեք հին աշխարհում, կրոնին վերապահված խոշոր դերը դրսևորվում էր իր տարբեր արտահայտություններով։ Ուրարտական բազմաթիվ աստվածները իրենց պանթեոնում դասավորված էին խիստ հիերարխիկ կարգով, որի բարձրագույն աստիճանին կանգնած էր գերագույն եռյակը՝ Խալդին, Թեյշեբան և Շիվինին։

Աստվածների դասակարգումը պանթեոնում համապատասխանում էր երկրի ստրկատիրական հասարակության սոցիալական կառուցվածքի համանման կարգին։ Այդ իրողության արտահայտություններից մեկն էլ այն է, որ Ուրարտուի աստվածները, երկրամասերի վարչական իշխանության կուսակալների նման ունեին իրենց աթոռանիստ քաղաքները, որոնք նրանց պաշտամունքային կենտրոններն էին։

Ուրարտական ծիսակատարությունների մասին մեր տեղեկությունները չափազանց թերի են։ Հայտնի է միայն, որ լայնորեն տարածված էին զոհաբերությունները, ընդ որում ինչպես խոշոր ու մանր եղջերավոր անասունների, այնպես էլ մարդկանց, ինչպես այդ կարծում է Բ. Բ. Պիոտրովսկին։ Մարդկային զոհաբերությունները, հավանաբար, գոյություն ունեին Հին արևելքի ժողովուրդների պաշտամունքային սովորություններում, մասնավորապես խեթերի մոտ, որ վկայվում է խեթական մի կնիքով. պատկերված է զոհի կիզումը ծիսական պարերի ու երաժշտության ներքո[14]։ Սակայն, ինչպես գտնում էր Ա. Բ. Տուրաևը, մարդկային զոհաբերությունները Հին արևելքում հազվադեպ էին, իսկ հետագայում իսպառ վերացվում են, տեղի տալով կենդանիների զոհաբերություններին[15]։

Բացի զոհաբերություններից, աստվածներին նվիրաբերում էին նաև զանազան իրեր՝ դեկորատիվ վահաններ, սաղավարտներ, կապարճներ, զենքեր, որոնք պահվում էին տաճարներում, իսկ վահանները կախվում էին նրանց պատերին։

Զոհաբերությունները, ինչպես այն պարզվել է Արինբերդի ու Կարմիր բլուրի պեղումների ընթացքում, կատարվում էին աստվածների արձանիկների կամ նրանց որմնանկարների առջև՝ ուղեկցվելով նյութական բարիքների և ընդհանրապես բարեմաղթությունների կոնկրետ աղերսանքներով։

Հավանաբար ծիսակատարությունները կատարվում էին մեծ շքեղությամբ, որի ընթացքում այրվում էր մագնեզիումի հանքաքարը՝ շրջապատը լուսավորելով առանձնահատուկ պայծառությամբ։ Դրա համար Թիգլաթ Պալասար I-ը պարտավորեցրել էր Մելիդի քաղաքացիներին որպես տուրք հանձնել մեկ «միերա» այդ հանքաքարից՝ զոհաբերությունների ընթացքում տաճարներում օգտագործելու համար։

Մեզ հայտնի չեն նաև քրմերի գործունեության մանրամասնությունները և նրանց հիերարխիկ դասավորությունը տաճարներում։ Սակայն, հավանական է, որ ուրարտական տաճարների կրոնական գործիչներից որպես քրմերի պաշտոնակատարներ՝ ավխեննի ու պալաղի կոչվածներն են, ինչպես այդ ենթադրում է Ն. Հարությունյանը՝ 1962 թ. Կարմիր բլուրում հայտնաբերված Ռուսա II արձանագրության վերծանման հիման վրա[16]։ Հայտնի է նաև, որ շումերական տաճարներում աղոթքները, հիմները կատարվում էին ուղեկցվելով երգերով ու նվագով՝ երաժշտական գործիքների վրա, այդ թվում ծնծղաներով։ Թեյշեբաինիի միջնաբերդում պեղումների ընթացքում գտնված նման ծնծղայի օրինակը հաստատում է այդ սովորության գոյությունը նաև Ուրարտուի տաճարներում։

Հավանաբար, ուրարտական խոշոր տաճարներն ընդարձակ համալիրներ էին, որտեղ պաշտամունքային կառույցները միավորվում էին աշխարհիկ, տնտեսական, արտադրական ու պահեստային շենքերի հետ։

Քրմերի գործունեությունը տաճարներում չէր սահմանափակվում միայն կրոնական ծիսակատարություններով, ինչպես և այդ տաճարները միայն նյութական արժեքներ չէին կուտակում իրենց մեջ, այլ դրանք հանդիսանում էին նաև ռազմական հզոր կենտրոններ։ Նրանցում գործում էին զենք պատրաստող արհեստանոցներ[17]։

Ուրարտական ճարտարապետությունը ստեղծել է տաճարային կառույցների մի շարք ձևեր, որոնք բացի բազմաթիվ սեպագիր արձանագրություններից, հայտնի են նաև պեղումներից գտնված օրինակներով։ Ուրարտական սեպագրերում հիշատակվում են այդպիսի կառույցների հետևյալ տարբերակները՝ E—տուն (աստծո)—տաճար, E BAR—տաճար. iarani—մատուռ, šiš-tile—աստվածների դարպաս։ Պաշտամունքային է եղել նաև այն կառույցը, որ սեպագրերում հիշատակվում է suse անունով։

Հավանաբար, պաշտամունքային են եղել նաև Միրիխանի և Ադամլուինի կառույցները, որոնք հրատարակված են 1962 թ. Կարմիր բլուրում հայտնաբերված սեպագրերում[18]: Պաշտամունքային կառույց էր նաև burgana-ն, որը տաճարներին կցված բակն էր:

Թեև ուրարտական սեպագրերում նշված են տաճարների մի շարք տեսակներ, դրանց հայտնաբերված ձևերը իրենց հատակագծային հորինվածքներով երկուսն են՝

—քառակուսի հատակագծով—ուղղանկյուն հատակագծով՝ երկայնական առանցքով—ուղղանկյուն հատակագծով՝ լայնական առանցքով:

### ա. Տաճարներ քառակուսի հատակագծով

Ուրարտական տաճարաշինության մեջ կառույցի այս տիպը նրա հիմնական ու տարածված ճարտարապետական ձևն է: Դրանց առավել հայտնի օրինակների մնացորդները հայտնաբերված են Ալթին-Թեփեում, Թոփրախ-կալեում, Անզավաթեփեում, Կայալըդերեում, Վերախրամում, Դանաթլուում և այլ տեղերում:

Ալթին-թեփեի տաճարը այս տիպի լավագույն պահպանված կառույցներից է, որը հայտնաբերվել է 1961 թ. կատարված պեղումների ժամանակ, 60 մ բարձրություն ունեցող բլրի գագաթին[19]: Ժամանակին իշխելով ամբողջ տարածքում, տաճարն իր ծավալներով պարզ տեսանելի պետք է լիներ տարբեր կողմերից (լուսանկ. աղ. 19 ա, բ): Տաճարի քառակուսի հատակագծի առանձնահատկությունը նրա անկյունային ելուստներն էին կազմում:

Տաճարը գտնվում էր 27,00×27,00 մ չափերի պերիստիլ բակի կենտրոնական մասից քիչ հեռու: Բակի ծածկված մասը արտաքին պատի եզրով էր: Բակը մասամբ սալահատակված էր և ուներ ջրահեռացման համակարգ (գծագր. աղ. 24):

Պաշտամունքային ծիսակատարությունները կատարվում էին շենքի ներսում, ինչպես և բակում, որ հաստատում են այստեղ պահպանված մի քանի զոհարանները, մեկը՝ տաճարի գլխավոր ճակատի առջև, նրա մուտքի առանցքով, մյուսը դրանից 3 մետր հեռավորության վրա, իսկ երրորդի մնացորդները գտնվում են տաճարի հետևի մասում:

Տաճարների շրջապատում, բացօթյա կատարվող զոհաբերությունների ավանդական դարձած սովորությունը հաստատվում է նաև Թոփրախ-կալեի ու Կայալըդերեի օրինակով: Վերջինում, նույնպես տաճարի առջևի մասում փռված հրապարակում, որը սալահատակված էր, կիսավեր վիճակում պահպանված պատվանդանի վրա կանգնած էր կոթողը՝ կիսակլոր վերջավորությամբ, իսկ նրա մոտ՝ բազալտե սալաքարերով շարված հարթակի վրա, պարզ տեսանելի ձևով, պահպանվել են բրոնզյա եռոտանի զոհարանի ամրացման հետքերը: Այս երկու կոթողները ստեղծել են ֆունկցիոնալ առումով պաշտամունքային մի համակարգ:

Տաճարի ներսի մասը (որի քառակուսու մի կողմը 5,20 մ էր կամ 10 կանգուն) թեև բավական փոքր է, սակայն, այստեղ ևս մուտքի դիմացի պատի տակ տեղավորված էր զոհարան, որի պահպանված ստորին շարքերը սրբատաշ բազալտից էին: Պատերի եզրով կառուցված էր նստարան՝ նույնպես սրբատաշ քարից, ինչպիսիք սովորական էին ուրարտական այլ տաճարների համար: Հետևապես ուրարտական տաճարների ծիսակատարությունների ժամանակ նստած վիճակը օրինականացված էր:

Տաճարի հում աղյուսե պատերը ինչպես Կայալըդերեում, այնպես էլ Ալթին-Թեփեում և մյուս համանման կառույցներում, բավականին հաստ էին, որ, ինչպես կարծում ենք, պայմանավորված էր նրանց ծածկի մասերի կոնստրուկտիվ առանձնահատկություններով:

Ինչպես արդեն պարզվել է, մոնումենտալ որմնանկարները ուրարտական կառույցների անբաժանելի մասն են կազմել: Ալթին-Թեփեում տաճարի արտաքին ու ներքին, նաև նրա եզրագծող պերիստիլ բակի պատերը, ինչպես ցույց են տալիս գտնված առանձին բեկորները, նույնպես ծածկված էին ճոխ որմնանկարներով, որով է՛լ ավելի էր շեշտվում ամբողջ տարածքի ճարտարապետական հարդարանքը:

Ի դեպ, տաճարի դասավորությունը պերիստիլ բակի միջին մասում ունի փյունիկյան Ամրիտ քաղաքի տաճարի տարածական կազմավորման նման լուծում: Այնտեղ, ժայռի մեջ փորված բակի 25×48 մ տարածքի միջին մասում կանգուն տաճարը շրջափակված էր սյունազարդ սրահով, որի ծածկի փայտյա հեծանների մի ծայրը պահ-

վում էր ժայռի մեջ մտցված, իսկ մյուսը հենվում էր փայտյա սյուների վրա[20]։

Այսպիսով, Ալթին-Թեփեում, Կայալիդերեում և այլուր լայնորեն տարածում գտած քառակուսի հատակագծով տաճարները բնորոշվում են ոչ միայն ձևերի, այլև չափերի համանմանությամբ։

Սակայն այդ տաճարների քայքայված վիճակը դժվարացնում է նրանց ձևերի նախնական հորինվածքի վերականգնումը և տեղի տալիս մի շարք վարկածների։ Այդ կապակցությամբ հիշատակելի են, օրինակ, Ալթին-Թեփեի տաճարի ճարտարապետական ձևերի վերականգնման ուղղությամբ կատարված փորձերը (գծագր. աղ. 28)։

Առաջին փորձը կատարել է ճարտարապետ Ակոկը, որի վերակառուցման նախագծում անկյունային աշտարակաձև ծավալները բարձրացված են ավելի, քան կառույցի միջին ծավալն է։ Ճարտարապետական տվյալ ձևն ընդունված սկզբունք էր Ուրարտուում։ Հին արևելքի տարածքում կարելի է գտնել համանման բազմաթիվ լուծումներ, մասնավորապես, օրինակ, Դուր-Շառուկինի պալատական մուտքի ճարտարապետական ձևերում և այլն։

Սակայն տաճարի ներքին տարածության լուսավորության պրոբլեմն է, որը վերականգնման տվյալ նախագծում լուծված է բավական պարզունակ կերպով, այն է՝ ի հաշիվ ծածկի վերացման։

Ալթին-Թեփեի տաճարի նախնական ձևի մասին Ակոկի այս պատկերացումները Վ. Կլայսը սխալ է համարում և կազմում նույն տաճարի վերակազմության իր տարբերակը[21]։

Այդ նախագծում նկատելի է, որ Վ. Կլայսը տաճարը դիտում է որպես աշտարակաձև կառուցվածք՝ բավականաչափ վեր խոյացող ծավալներով։ Նրանում կիրառված է ծածկի համար վրանաձև ծավալ, որն, ինչպես երևում է, Մուսասիրի տաճարի ծածկի յուրովի ընկալման փոխակերպված ձևն է։

Վ. Կլայսն էլ իր նախագծում չի լուծում տաճարի ներքին տարածության լուսավորության հարցը, ծածկի մեջ չթողնելով ոչ մի համապատասխան բացվածք։ Իսկ այս դեպքում, ներքին տարածության վեր զարգացող ու խավարի մեջ ընկղմված ծավալը, որը չունի նույնիսկ դռհանդանից բարձրացող ծխի համար որևէ ելք, բացի մուտքի բացվածքից, նույնպես անհավանական է։ Դժվար է պատկերացնել, որ ծխի ու խավարի մեջ պետք է անտեսանելի թողնվեին դռան բացվածքից վեր գտնվող պատերի վրա կատարված մանր ու գունեղ որմնանկարները։

Ճարտարապետական այսպիսի հորինվածք ունեցող տաճարների Ուրարտուում բավականին տարածված լինելու հանգամանքը մեզ ստիպեց անդրադառնալ նրա նախնական կերպի վերակազմությանը։

Վերակազմության մեր հիմնական դրույթները հետևյալն են.

ա) Տաճարի ներքին տարածությունը եղել է ծածկված, որի մեջ թողնված էր երդիկանման բացվածք՝ ներքին տարածության լուսավորության և ծխի դուրս գալու համար։

բ) Տաճարի արտակարգ հաստ պատերը իրենց մի մասի վրա կրում էին ծածկը, որը բարձրանում էր անկյունային աշտարակաձև ծավալներից վեր։ Ծավալների նման ուրվագիծը, որն իր բնորոշ արտահայտություններն ունի հինարևելյան բազմաթիվ հուշարձաններում, պարզ տեսանելի է հատկապես Էրեբունի Խալդի տաճարի burgana կոչվող ծավալների մնացորդների մեր վերականգնման մեջ։ Սրանով է իմաստավորվում նման փոքր ծավալ ունեցող տաճարի արտակարգ հաստ պատերի առկայությունը։

Տաճարի վերականգնման մեր գծագրում շենքի քիվերն արտահայտված են ուրարտական ճարտարապետության համար ավանդական ատամնավոր շարքերով, որոնք վերականգնվել են Կեֆկալեսիի տաճարի տարածքում պեղումների ընթացքում հայտնաբերված համապատասխան բեկորի հիման վրա։ Տվյալ բեկորը պահպանված է իր վերին փոքր մասով միայն, այդ պատճառով էլ ժամանակին նրա պեղողների կողմից չճանաչվեց իր իսկ բուն նշանակությամբ։

### բ. Տաճարներ երկայնական հատակագծով

Այս տիպի կառույցի ամենաբնորոշը susi տաճարն է, որը գտնվում է Էրեբունի պալատի պերիստիլ բակի երկայնական առանցքի արևմտյան հատվածում (գծագր. աղ. 29 գ)։ Տաճարի մասին տեղեկություններ են հաղորդում գլխավոր ճակատի մուտքի երկու կողմերում փորագրված նույնանման սեպագիր արձանագրությունները։ Նրանցում ուրարտական թագավոր Արգիշտին՝ Մենուայի որդին, հաղորդելով տվյալ տաճարի կառուցման մասին ասում է.

«Իմարշա աստծուն, այս տունը (susi) Արգիշտին՝ Մենուայի որդին կառուցել։ Արգիշտին ասում է՝ հողը (այս տեղում) ամայի էր (susi) ոչինչ այնտեղ չէր կառուցված։ Արգիշտին թագավոր է հզոր, թագավոր է մեծ, թագավոր է Բիայնիլի երկրի, Տուշպա քաղաքի տիրակալը»։

Ինչպես կարծում է Գ. Ա. Մելիքիշվիլին, Իմարշան լուվիական-փռյուգիական աստվածություն էր, որի մասին հիշատակում են Բոգազքյոյի խեթական արձանագրությունները[22]։ Հետևաբար, Արգիշտին այստեղ հիմնում է խաթե և Ծուպանի երկրների աստծուն նվիրված տաճար։ Եթե ճիշտ է այս վարկածը, մնում է անհասկանալի, թե ինչ կարիք ունեին ուրարտական բնակիչները պաշտելի կուռք դարձնելու հարևան երկրի աստծուն, մի բան, որ շատ հեռու էր հին-արևելյան սովորություններից ու բարքերից։

Թեև susi կոչվող տաճարները վաղուց էին հայտնի ուրարտական արձանագրություններից, սակայն նրանց ճարտարապետական տեսանելի ձևերը հայտնաբերված են միայն Էրեբունիի տվյալ կառույցում։

Էրեբունիի susi-ն ուղղանկյուն հատակագծով փոքր ծավալի մի կառույց է, 5,05×8,08 մ ներքին և 10,00×13,5 մ արտաքին չափերով։ Լինելով պալատական տաճար, շուրջ 40 քմ. մակերեսով, այն հետևապես սահմանափակ թվով մարդկանց համար էր նախատեսված։

Տաճարը երկրի կողմերի նկատմամբ տեղադրված էր շեղակի, ինչը բնորոշ է Միջագետքի տաճարաշինության համար։ Գ. Ֆրանկֆորտը գտնում է, որ տաճարների նման տեղադրումը Միջագետքում պայմանավորված էր պաշտամունքային նկատառումներով և որ այդ հանգամանքը կապված էր երկնակամարի այն լուսատուների հետ, որոնք արտահայտվում էին համապատասխան աստվածություններով։

Տաճարի ճարտարապետական արտաքին ձևերի պահպանված մնացորդներից դատելով, պարզ նկատելի է դառնում, որ նրա զուսպ լակոնիկ ծավալներն անմիջականորեն բխում են կառույցի պարզ ուղղանկյուն հատակագծից։ Միայն գլխավոր ճակատի միջնամասում, որտեղ դռան բացվածքն է, ճակատը մոտ 0,27 մ ներս է ընկած։ Տվյալ հատակագծին համապատասխան, տաճարի արտաքին ընդգծվածը, ինչպես և ներքին տարածությունն իր սահմաններով ուրվագծում է ճշգրիտ կառուցված երկրաչափական ձև, որի բնորոշ արտահայտությունը նրա սիմետրիկ լուծումն է։ Այդ վերաբերում է տաճարի հատակագծի ու ճարտարապետական արտաքին ձևերի հորինվածքներին ու նույնիսկ նաև գլխավոր ճակատի վրա սեպագիր արձանագրությունների տեղադրությանը։

Գլխավոր ճակատի պատը պահպանվել է շուրջ 2,6 մ բարձրությամբ։ Դրան հակառակ, արևմտյան պատը միայն հողից նշմարվում է։ Պատի հողից տեսանելի հիմքերին զուգահեռ, ամբողջ ներքնամասի լայնությամբ, պահպանվել են մի այլ հիմքի մնացորդներ, որոնք պատկանում էին այստեղ եղած զոհարանին։

Տաճարն ունեցել է հարթ ծածկ, որից մեզ են հասել նրա հեծանների ու խաիրների ածխացած մնացորդները, այսինքն այն բոլորը, ինչից կազմված էր կառույցի ծածկը։ Ամենայն հավանականությամբ, այստեղ ևս, ինչպես և վերը քննարկված քառակուսի հատվածով տաճարներում, ներքնամասը լուսավորվում էր առաստաղի մեջ բացված երդիկից։

Տաճարի ճարտարապետության համար բնորոշ է նաև նրա երեսպատման համար օգտագործված սրբատաշ քարի, այն է՝ շատ ամուր գորշ գույնի տուֆի խնայողաբար օգտագործումը։

Այդ պատճառով է, որ քարը տեսնում ենք կառույցի որմածքի միայն ստորին երկու շարքերում, ըստ որում, սրբատաշ բեկորներով շարված են միայն գլխավոր ճակատի այն մասերը, որտեղ մուտքի երկու կողմերում փորագրված են սեպագիր արձանագրությունները, ինչպես նաև՝ ներսից քայքայման ենթակա դռան անկյունային մասերը։ Ճակատների մնացած մակերեսները սվաղված էին ու ներկված կապույտով, իսկ քիվից ցած, ամբողջ եզրագծով, տաճարն ուներ գոտիաձև զարդանկար։

Տաճարն իր տվյալ տեսքով պետք է որ աչքի ընկներ ձևերի զանգվածայնությամբ ու հանդիսավորությամբ, որոնք արտահայտում էին լակոնիկ հարթություններ ու ռացիոնալ պարզությամբ գծային ձևեր։ Սակայն նկատելի է նաև, որ պերիստիլ բակում այս տաճարն ընկալվում է ոչ թե իր ճարտարապետական ձևերի մեկուսացված արտահայտությամբ, այլ այստեղ ստեղծված տվյալ միջավայրի մնացած կառույցների հետ ձուլվելու չափ ներդաշնակ միասնությամբ։

Հանդիսավոր էր նաև տաճարի ներքին տարածությունը, որտեղ ի հայտ է բերված փլուզված




Ա




Բ




Գ




Դ



Ե

Նկ. 38. Ծածկերի ձևեր

պատերի կապտագույն ծեփը, որի վրա պահպանված են եզրազարդային որմնանկարների հետքերը։ Հավանաբար կապույտը ավանդական էր ուրարտական տաճարների համար. այդ գույնով էին ներկված մի շարք այլ տաճարներ ևս, էրեբունիի՝ Խալդիի, Կայալիդերեի, Ալթին-Թեփեի և մյուս տաճարները։

Տաճարի ճարտարապետական բնութագրումը կարելի է լրացնել նրա հատակագծային հորինվածքի համաչափություններով, որոնք արտահայտված են 5×8 հարաբերությամբ։

Ուրարտուի անկումից հետո, երբ Հայաստանը ենթարկվեց աքեմենյան իշխանության տիրապետությանը, էրեբունիի ուրարտական շինությունների հիմնական մասը, այդ նոր իշխանության պահանջների համաձայն, ենթարկվեց վերակառուցումների։ Այդ ընթացքում susi տաճարը և նրան հարող պերիստիլ բակը վերակառուցումների հետևանքով դառնում են աքեմենյան պաշտամունքային կառույց, հրո տաճար-ատրուշան։ Այդ վերակառուցմամբ susi-ն և պերիստիլ բակը մոտենում են Սուզայի (Շոշի) աքեմենյան հրո տաճարի տարածական ձևերի հորինվածքին։

Այսպիսով, այնտեղ, ուր առաջ պաշտվում էր ուրարտական Իվարշա աստվածը, նրան փոխարինում է Աքեմենյան Իրանի մեծ աստված Ահուրամազդայի պաշտամունքը։

Մուսասիրի տաճարը թեև մեզ հայտնի է միայն իր գլխավոր ճակատի հարթաքանդակի ձևով, բայց այն դասում ենք երկայնական հատակագծով կառույցների շարքը։ Այդ միտքը պայմանավորված է շենքի հորինվածքով, որի գլխավոր ճակատն ունենալով ճակատն ու նրան համապատասխան երկթեք ծածկ, ավանդական բոլոր հայտնի օրինակների համաձայն, ուղղանկյուն հատակագծի կարճ կողմը պետք է լիներ (գծագր. աղ. 29)։

Մուսասիրի տաճարը, որը նվիրաբերված էր երկրի գլխավոր աստծուն՝ Խալդիին, կառուցված էր հենց նրա պաշտամունքի կենտրոնը հանդիսացող Մուսասիր քաղաքում, որը միևնույն ժամանակ համայն երկրի պաշտամունքի կենտրոնն էր և գտնվում էր, ինչպես կարծում է Լեման-Հաուպտը, ժամանակակից Ռևանդուզի մոտ, Վան լճից հարավ-արևելք։ Տաճարը ուրարտական ամենավաղ շրջանի կառույցներից էր և, հավանաբար, հիմնվել է մ.թ.ա. IX դարում։ Բարձրաքանդակի վրա պատկերված տեսարանն արտահայտում է Սարգոն II-ի զորքի կողմից տաճարի կողոպուտը, մ.թ.ա. 714 թ. հանրահայտ արշավանքի ժամանակ։ Կարծում ենք, որ տվյալ հորինվածքի կենտրոնում պատկերված տաճարի շենքը մեկն էր միայն այն մեծ տաճարային համալիրի մեջ, որը պետք է, որ այստեղ գոյություն ունենար։

Տաճարն իր օժանդակ կառույցներով հիմնադրված էր, հավանաբար, բարձր բլուրների գագաթին՝ հարթաքանդակում քանդակագործի պայմանական գծագրությամբ արտահայտված բլրի ուրվագծի համաձայն, մի բան, որ անուղղակի հաստատում է, որ Մուսասիրը գտնվում էր լեռնային տարածքում, որպիսին է այժմյան Ռևանդուզի տեղանքը։

Տաճարի գլխավոր ճակատն ունի պարզ ու լակոնիկ ձևեր, որի սյունաշարքը հունական ճարտարապետության մեջ ընդունված բնորոշումներին համապատասխան անվանվում է հեքսաստիլ։ Կառույցի բարձր հարթակն իր առջև ու ամբողջ լայնությամբ պետք է ունենար աստիճաններ, որոնք տաճարին հաղորդում էին հանդիսավորություն և մոնումենտալություն։

Այսպիսով, տաճարի ճարտարապետական ձևերի հորինվածքն արտահայտված է երեք հիմնական տարրերով։

ա) Հարթակը, որպես այդպիսին, ուրարտական ճարտարապետության մեջ կիրառվել է նաև Թոփրախ-կալեի և Արգիշտիխինիլիի տաճարում, ինչպես և Էրեբունիի սյունազարդ շքամուտքում։ Սակայն այն ավելի բնորոշ է Միջագետքի ճարտարապետության համար։ Ուրարտուում այդ ձևը, ըստ երևույթին, պետք է համարել ներմուծված երևույթ։ Ընդ որում, եթե տաճարների հարթակները Միջագետքում պատրաստվում էին այդ կառույցների պաշտպանության համար՝ տեղանքի ջրերից, ապա Մուսասիրում այն, ամենայն հավանականությամբ, կառուցվել էր լեռնային տեղանքի հարթեցման համար։

բ) Սյունաշարքը ուրարտական ճարտարապետական կառույցների բաղկացուցիչ ու բավականին տարածված հորինվածքն է կազմում։ Սակայն Մուսասիրի տաճարի սյուները, որոնք, նկատի ունենալով թեկուզ միայն նրանց տրամագծի չափերը, քարից էին՝ մինչ հիմա մեզ հայտնի եղակի օրինակներից են։ Կարելի է ենթադրել, որ ամբողջ տաճարը կառուցված էր քարից և ոչ Ու-

րարտուի մոնումենտալ կառույցների համար ավանդական դարձած հում աղյուսից։ Ընդ որում, խարիսխների ու խոյակների բացակայությունը նրանցում մտածել է տալիս, որ տվյալ սյունաշարքը ուրարտական ճարտարապետության զարգացման վաղ շրջանի արգասիք է։ Ավելին։ Ուշադրության արժանի են սյուների բարձրության ջլատումը հորիզոնական գոտիներով։ Է. Հերցֆելդի կարծիքով, դրանք մետաղական օղակներ են՝ սյուների բների մասերը իրենց միացման տեղերում պահելու համար[23]։ Այդ դեպքում անբացատրելի ու անհասկանալի են մնում նաև նման գոտիների առկայությունը պատերի հարթությունների վրա, որոնք այստեղ ևս երևում են։ Հավանաբար ճիշտն այն է, որ հորիզոնական գոտիներն այստեղ դեկորատիվ բնույթ ունեին, որոնք սյան բարձրությունը ձևավորում էին գեղագիտական առումով։

Հավանաբար, ուղղահայաց հենակների ջլատման նման սկզբունքը փոխ էր առնված արվեստների հարակից բնագավառներից։ Որպես օրինակ կարող ենք նշել Թոփրախ-կալեում հայտնաբերված մոմակալի ուղղաձիգ հենակը, որի բարձրությունը նույնպես ջլատված է համանման հորիզոնական օղակներով[24]։

գ) Տաճարի ճակտոնը, *որով ավարտվում է կառույցի գլխավոր ճակատը, ուրարտական ճարտարապետության միակ հայտնի օրինակն է։ Սակայն, թվում է, թե այդ ձևը, որպես այդպիսին, ուրարտական ճարտարապետությանը ծանոթ մտահղացում էր։ Այդ որոշակիորեն հաստատում է նույն տաճարի մուտքի վրա քանդակի ձևով ճակտոն պատկերող եռանկյունաձև գծագրությունը։*

Տաճարի ճակտոնի դեկորատիվ դրվագներից է նրան պսակող նիզակի ծայրը, որը կարող էր լինել նաև սրբազան ծառի խորհրդանիշ, ինչպես այդ կարծում են Բըրնեյը և Լավսոնը, ելնելով Ադիլջևազում հայտնաբերված Թեյշեբա աստծու հարթաքանդակների վրա պատկերված սրբազան ծառերից (լուսանկ. աղ. 26)։ Սակայն այդ կարծիքը չի բաժանում Թահսին Օզգյուչը, որն Ալթինթեփեի տաճարի պեղումների ընթացքում հայտնաբերել է մեծ քանակությամբ նիզակների ծայրեր, որոնք նվիրաբերված էին Խալդիին։

Մենք համաձայն ենք այս վերջին կարծիքին, թեկուզ միայն այն առումով, որ Խալդին պատերազմի աստվածն էր և այդ հանգամանքը պետք է արտահայտվեր համապատասխան խորհրդանիշով։

Կարծում ենք, որ տաճարի ծածկն իր մեջ ունեցել է երդիկանման պատուհան։ Այս ենթադրությունը արված է ըստ ասորեստանյան քանդակի, ուր տաճարը կողոպտող Սարգոնի զինվորներից մեկը պարանով բարձրանում է վեր, դեպի ծածկը, որտեղ, հավանաբար, պետք է լինեին պատուհան։ Դուցե հենց այստեղից էլ ասորեստանցիները մտել են տաճար, նախապես չկարողանալով բացել ամուր փակված նրա դռները։

Գլխավոր ճակատի մասում Մուսասիրի տաճարն ուներ մոնումենտալ քանդակներ, որոնք դրսևորում են արվեստի սինթեզի բավական զարգացած աստիճան։ Քանդակների մի մասը պատկերում է նիզակավոր զինապահների, որոնք ստատիկ վիճակով ու սիմետրիկ ձևով կանգնած են դռան երկու կողմերում։ Դրանք հիշեցնում են Միջագետքի Մարի քաղաքի Դագան տաճարի համանման կերպարները, թեև ավանդաբար Հին արևելքում նման տեղերում կանգնեցված էին առավելապես առյուծներ կամ ավելի հաճախ՝ լամասուներ։

Քանդակների մյուս խումբը կազմում է կովն իր հորթով՝ մուտքի աջակողմյան մասում։ Համաձայն Լուվրի աղյուսակի, ասորեստանցիները կենդանիների քանդակների այդ խմբում տեսել են նաև մի ցուլ, որը տվյալ դեպքում չի պատկերել քանդակագործը։ Սակայն, նույնիսկ իր նշված տեսքով, այդ շատ ուշագրավ արձանախումբը որոշակիորեն առնչվում է հինարևելյան մյութոսի ավանդների հետ։ Մասնավորապես նկատելի են այն զուգահեռները, որոնք գոյություն ունեն Մուսասիրի տվյալ քանդակների և, առանձնապես, Միջագետքի հայտնի Թել-էլ-Օբեյդի տաճարի քանդակների թեմատիկայի միջև, ուր պատկերված է կովերի մի ամբողջ հոտ։ Հայտնի է, որ Միջագետքի տաճարներում գոյություն ունեին սրբազան կովեր, և այնտեղ քուրմերը թագավորների համար պատրաստում էին խուրագ նախամոր աստվածուհու կաթը։ Հավանաբար այս ավանդությունը կապված էր այն վաղնջական պատկերացումների հետ, երբ զոհաբերությունները համարվում էին աստվածներին կերակրելու միջոց և միայն հետագայում են ստացել այժմյան հայտնի իմաստը։

Այսպիսով, տաճարն իր մոնումենտալ քանդակներով կառույցին հաղորդում էր արտակարգ հանդիսավորություն ու մոնումենտալություն, որը լրացվում էր գլխավոր ճակատին փակցված բրոնզ-

յա ու ոսկյա քանդակազարդ շքեղ վահաններով, որոնք նվիրաբերվում էին Խալդի աստծուն, որի տաճարը, ի դեպ, կոչվում էր «վահանների տուն»՝ կապված վահանի պաշտամունքի հետ։ Հայտնի է, որ այդ պաշտամունքը գոյություն ուներ ոչ միայն Ուրարտուում, այլև լայնորեն տարածված էր Միջերկրական ծովի շատ երկրներում (Կրետե, Էտրուրիա, Հին Հունաստան և այլն)։

Ամենայն հավանականությամբ, Մուսասիրի տաճարն ունեցել է նաև հարուստ որմնանկարներ, քանի որ երկրում բոլոր տաճարներն անխտիր հարդարված էին նրանցով, հետևապես երկրի գլխավոր տաճարը չէր կարող բացառություն կազմել։

Մուսասիրի տաճարը պատկերող քանդակի վրա կարելի է տեսնել նաև բրոնզյա երկու կաթսաներ, որոնք պետք է որ հեղման գինու համար լինեին։

Անդրադառնալով տաճարի ներքին տարածությանը, կարծում ենք, որ այն շատ ավելի ընդարձակ էր, քան այդ մասին քանդակից ստացած տպավորություններն են հաղորդում։ Այդ են հաստատում այն բազմաթիվ իրերը, որոնք համաձայն լուվրյան աղյուսակի, գտնվում էին տաճարում, այդ թվում՝ բազմաթիվ մոնումենտալ արձաններ ու նույնիսկ մարտակառքեր։

Ուրարտական ճարտարապետության մեջ Մուսասիրի տաճարի ճարտարապետական ձևերի զարգացման նախնական աստիճանը դեռևս մնում է անհայտ։ Պարզ է միայն, որ տաճարը կառուցված էր իր ժամանակի մոնումենտալ ու դեկորատիվ արվեստի արտակարգ զարգացած սկզբունքների հիման վրա։

Մուսասիրի տաճարի ուրույն ձևերի հորինվածքը պարզորոշ վկայում է, որ հինարևելյան մշակույթում Ուրարտուի պաշտամունքային ճարտարապետության զարգացումը բնորոշվում է իր որոշակիորեն ինքնուրույն ուղիներով։

### գ. Տաճարներ լայնական հատակագծով

Խալդիի տաճարը Էրեբունիում լայնական ուղղանկյուն հատակագծով տաճարների կատարյալ տիպարն է Ուրարտուում։ 1950—55 թթ. ընթացքում պեղումներով հայտնաբերված այս տաճարը կառույցների մի մեծ համալիր է։ Մի կողմ թողնելով հետագա դարերի կառուցապատումները, կտեսնենք տաճարի նախնական հորինվածքը՝ կազմված մեծ դահլիճից, կից օժանդակ սենյակից, աշտարակից (burgana) և սյունասրահից։ Առայսօր հայտնի ուրարտական բոլոր տաճարներից Խալդիի տաճարը ամենամեծն է, ինչպես նաև նշանակալիցը իր ճարտարապետական հորինվածքի առումով (գծագր. աղ. 29)։

1968 թ. աշտարակի վերջնական պեղումների ժամանակ նրա ճակատային մասի ներքևում in situ գտնվեց սեպագիր, որի մեջ կարդացվում է.

«Խալդի աստծուն (իր) տիրոջը այս տունը Արգիշտին Մենուայի որդին կառուցեց. Արգիշտին ասում է...»

Մնացած 4 տողերը չեն վերծանվում։ Սակայն, այսքանն էլ բավական էր, որ պարզվեին կառուցման հանգամանքները։

Տաճարի ներքնամասն է կազմում դահլիճը՝ տեղավորված միջնաբերդի արտաքին եզրագծին կից, որի հետևանքով տաճարի հարավարևմտյան պատը միաժամանակ նաև միջնաբերդի արտաքին պատն է։ Այս պատի ուղղությամբ փռված դահլիճը 7,2×37,0 մետր չափերի է, որի հարավային պատին կից գտնվում է նրա լայնությանը հավասար և նրա հետ հաղորդվող տաճարի պահեստային կարիքներին ծառայող փոքր չափերի մի սենյակ։

Խալդի աստծու այս տաճարը իր ճարտարապետական ձևերով մոտ է ասորեստանյան տաճարներին, հատկապես Աշուրնասիրպալ II-ի պալատի տաճարային կառույցներին, որտեղ տեղավորված էին թագավորի արձաններն ու զոհարանը։ Էրեբունիի տաճարի դահլիճի լայնական ձևը, ինչպես և Միջագետքի ավանդույթների համապատասխան երկրի կողմերի նկատմամբ շեղությամբ տեղադրված լինելը նույնպես բնորոշ են Ասորեստանի տաճարներին։ Նրա գլխավոր ճակատի լուծման մեջ նկատվում է, թե ինչպես այդ կառույցներին այնքան բնորոշ հաստահեղույս ու մոնումենտալ պատը ետ է մղվում և տաճարի առաջին պլանի վրա հայտնվում է սրահն իր փայտյա թեթև սյունաշարով։ Այս սյունասրահն ուներ երկշարք տեղավորված 12 սյուներ, որոնք ուղղահայաց սլացիկությամբ համապատասխան դինամիկ շարժում էին հաղորդում գլխավոր ճակատի այդ հատվածին։

Սյունասրահի պատերի տակ, նրանց երկայնքով տեղադրված էին կավակերտ նստարաններ (լուսանկ. աղ. 18), որոնք նախատեսված էին մեծ թվով մարդկանց համար։ Այդ սյունասրահը





















*Նկ. 39. Աղյուսի շարվածքի նմուշներ*

զոհաբերությունների ժամանակ կարող էր օգտագործվել ոչ միայն պաշտամունքային նպատակների, այլև աշխարհիկ հավաքույթների համար, քանի որ կառուցված էր հրապարակի վրա, ուր հավաքվում էին Էրեբունիի բնակիչները։

Տաճարի՝ դինամիկ շարժումով օժտված այս հատվածը հակադիր զուգորդության մեջ էր նրա հարավարևելյան հատվածի նկատմամբ, ուր կանգուն էր ասորեստանյան զիկուրատ հիշեցնող մոնումենտալ աշտարակը՝ burgana-ն։ Վերջինիս ներսում կանգուն է զանգվածային հզոր մույթը, որը շուրջանակի կառուցված միջանցքի աստիճաններով հաղորդակցվում էր վերնամասի հետ։ Այդ միջանցքում պեղումներից հայտնաբերված գորշագույն տուֆի կոպտատաշ քարերը պատկանել են մույթի վերնամասին, որը դրսից աշտարակաձև էր և ունեցել է համապատասխան ատամնավոր ավանդական բիվ։

Խալդիի տաճարի burgana-ն այստեղ կանգնեցվել է հինարևելյան այն սովորության համաձայն, ըստ որի գլխավոր աստվածությանը նվիրված ամեն մի տաճար պետք է ունենար աշտարակ (Միջագետքում դրա օրինակներն են՝ Մարդուկի տաճարը Բաբելոնում, Շամաշինը՝ Սիպպարում, Աշուրինը՝ Կար-Տուկուլտի Նինուրտայում և այլն)[25]։ Այդ ավանդույթը կապված է Առաջավոր Ասիայի հնագույն կրոնների այն պատկերացման հետ, որի համաձայն, աստվածները ցած են իջել լեռներից։ Հենց այս պատճառով էլ Ասորեստանի՝ լեռներ խորհրդանշող մերձտաճարային զիկուրատները կից էին շինվում տաճարներին։

Այսպիսին էր նաև Էրեբունիի տաճարի burgana-ն։ Սակայն այն ուներ նաև այլ նշանակություն (որի մասին խոսվել է վերևում), կարող էր ծառայել որպես աշտարակ՝ ազդանշան տվող խարույկների համար։

Տաճարն այնպես էր կանգնեցված բլրի գագաթին, որ վեր խոյանալով քաղաքի տարածքի վրա՝ իշխում էր նրանում ճարտարապետական ծավալների իր հզորությամբ։ Տաճարի արտաքին պատերը միաձուլվելով միջնաբերդի պարիսպներին, կազմել են ճարտարապետական մեկ ընդհանուր օրգանիզմ։ Տաճարը կառուցված է միջնաբերդի բարձրադիր մասում, դա, հավանաբար, ընդհանուր կանոն էր Հին արևելքում, քանի որ, ինչպես ասում է Աշուրբանիպալը իր մի կառույցի մասին՝ «Մեծ աստվածների սրբատեղիների առջև ես վախեցա և այդ հարթակի կառույցը չբարձրացրի շատ վեր»։

Էրեբունիի տաճարի պատերի՝ այդ հատվածում որմնահեցերի ռիթմիկ դասավորությունը փոխարինվել է պատերի՝ դեպի ներս գնացող աստիճանաձև զարգացող սիմետրիկ լուծում ունեցող ձևերով, ինչը տաճարի արտաքին ճակատի ճարտարապետությանը հաղորդեց անհատական արտահայտություն, իսկ ամբողջությամբ վերցրած այս մոնումենտալ տաճարի ճարտարապետական ձևերը համահնչվում են իրենց լակոնիկ ծավալների ռացիոնալ հստակությամբ։

Տաճարի ներքնամասը, ինչպես և սյունասրահը ձևավորվել են գունեղ որմնանկարներով, որոնք ունեցել են պաշտամունքային բնույթի թեմատիկա (գծագր. աղ. 49, 50)։ Այստեղ աչքի են ընկնում եզրազարդերը, որոնց հորիզոնական շերտերը ծածկված են եղել երկրաչափական ու բուսական զարդանկարներով, ինչպես նաև մարդկային կերպարներով։ Եզրազարդերից ներքև պատերը հարդարված են բազմերանգ նախշանկարներով, մանր ու խոշոր վարդյակներով՝ շախմատաձև դասավորված կապտագույն ֆոնի վրա, որոնք, կարծում ենք, արտահայտում էին երկնակամարն իր լուսատուներով։

Բացի դրանից, սյունասրահում որմնանկարների մի ամբողջ շարք պատկերում էր ուրարտական պանթեոնի գլխավոր աստված Խալդիին՝ առյուծի վրա կանգնած[26]։ Տաճարի որմնանկարները, իրենց թեմատիկ բովանդակության առումով ավելի հարուստ են։ Նրանցից մի պատառիկի վրա պատկերված է երկու մարդկային ֆիգուր։ Դրանցից մեկը կանգնած է, իսկ նրա դիմացինը՝ նստած, գավազանը ձեռքին, որից պահպանվել է միայն ձեռքը՝ գավազանով ու մարմնի առջևի մասի եզրագիծը։ Կանգնածը գլխին ունի խույր, հետևապես թագավոր է, մյուսն այդ դեպքում պետք է որ աստված լինի։ Կասկածից դուրս է, որ առաջինը Արգիշտին է, իսկ մյուսը՝ Խալդին։ Արգիշտին ձեռքը մեկնել է դեպի Խալդին։

Որմնանկարի այդ հորինվածքը համանման է Եգիպտոսի Սեթի I-ի հարթաքանդակին՝ Աբիդոսի տաճարից, որտեղ փարավոնը նույնպես կանգնած է ձեռքը պարզած՝ գավազանը ձեռքին նստած Պտա-Սոկար աստծու դիմաց։

Ինչպես Մուսասիրի տաճարում, այստեղ ևս տաճարի պատերից կախված էին բրոնզյա վահաններ։ Կարմիր բլուրի պեղումների ընթացքում

գտնված Արգիշտի I-ի վահանների վրա թողած արձանագրություններում ասված է.

> «Խալդի աստծուն, տիրակալին, Էրեբունի քաղաքի համար այս վահանը Արգիշտին Մենուայի որդին պատրաստեց։ Արգիշտին Մենուայի որդին թագավոր է հզոր, թագավորը Բիայնիլի երկրի—տերը Տուշպա քաղաքի»։

Ճոխ ձևավորված վահանների համակենտրոն երիզների վրա առյուծների ու ցուլերի պատկերներ են գրվագված, ըստ որում նկատի է առնվել վահանի ուղղահայաց դիրքը, քանի որ նրանք կախվում էին տաճարի պատերին։ Տաճարներին են նվիրաբերվել նաև սաղավարտներն ու կապարճները, որոնք թեև հայտնաբերվել են Կարմիր բլուրում, սակայն նույնպես էրեբունիական ծագում ունեն։

Քանի որ Խալդին միաժամանակ պատերազմների աստված էր, իսկ Էրեբունին երկրի խոշորագույն ռազմական կենտրոնը, անհիմն չի կարող համարվել մեր այն եզրակացությունը, թե տաճարը ծառայել է Էրեբունիի ռազմական կայազորի պաշտամունքային պահանջներին։ Բանն այն է, որ միջնաբերդի պալատն ուներ իր տաճարը susi-ն։ Հետևաբար Խալդիի տաճարը պետք է ծառայեր միջնաբերդի մնացած մասի բնակիչներին, այսինքն՝ զորքին, որը տեղավորված էր ինչպես միջնաբերդում, այնպես էլ քաղաքում։ Այստեղ, հավանաբար, կատարվում էին Խալդիին նվիրաբերվող զոհաբերությունները՝ զորքը ռազմարշավ դուրս բերելուց առաջ։

Էրեբունիի Խալդի տաճարի ճարտարապետությունը բավականին որոշակիորեն առնչվում է հինարևելյան համանման կառույցներին, որոնք ունեն տարածական ներքին ձևերի զարգացում, հատկապես Միջագետքի տաճարներում։ Իսկ եթե փնտրենք ավելի կոնկրետ ակունքներ, կարելի է մատնանշել Իշտարի տաճարը Աշշուրում, Ուպիի տաճարը, ինչպես նաև հյուսիս-սիրիական նշանավոր կառույցի տիպը՝ հանրահայտ Բիտ-Հիլանին՝ սյունազարդ մուտքով տաճարը։ Ժամանակին այս վերջին տիպը բազմաթիվ ընդօրինակումներ է ունեցել, որի մասին հիշատակում է նաև Սարգոն II-ը իր նոր մայրաքաղաքի՝ Դուր-Շառուկինի հիմնադրման կապակցությամբ[27]։

Սրանով, որպես մի կարևոր միջանկյալ օղակ, առաջ է մղվում Հյուսիսային Սիրիայի կամ սիրո-խեթական ճարտարապետական մշակույթի դերը խեթա-ուրարտական կապերում։

Ինչպես susi-ն, Խալդիի տաճարը ևս արեմենյան տիրապետության օրոք ենթարկվեց հիմնական վերակառուցման և շարունակեց իր պատմական կյանքի հետագա՝ երկրորդ փուլը։

Այդ վերակառուցման ընթացքում տաճարի 12-սյունանոց սրահին կցվում է 18-սյունանոց մի տարածք, որն ամբողջությամբ կազմում է սյունազարդ մի մեծ դահլիճ՝ արեմենյան ճարտարապետության մեջ հայտնի ապադանա անվամբ։ Պերսեպոլիսի կամ Պասարգադի ապադանաների նմանությամբ Էրեբունիի ապադանան ծառայել է պալատական պաշտոնական ընդունելությունների ու հանդիսավոր արարողությունների համար։ Տվյալ ապադանան ստեղծել են տեղական վարպետները, նրա կառուցողական տեխնիկայի բոլոր մանրամասներում առկա են ուրարտական շինարարական ավանդները։

Կեֆ-կալեսի։ Ուրարտական կենտրոնական մարզերի քաղաքներում կառուցված միջնաբերդերի շարքում իր ուրույն տեղն ունի Կեֆ-կալեսին, որը գտնվում է Վանա լճի հյուսիսում տեղադրված Ադիլջևազ (Արծկե) քաղաքից 6 կմ հեռավորության վրա, Սիփան սարի հարավարևմտյան մասում։ Այստեղ, միջնաբերդի համալիրը կազմող բազմաթիվ աշխարհիկ ու պաշտամունքային կառույցների շարքում ուշագրավ են մի ինքնատիպ դահլիճի ֆունկցիոնալ առանձնահատկությունները և նրա՝ մոնումենտալ ձևեր ունեցող ճարտարապետությունը (գծագր. աղ. 28)։

Այստեղ գտնված զարդաքանդակներով ծածկված քարե խոշոր բեկորների վրա (լուսանկ. աղ. 28), դրոշմված սեպագիր արձանագրությունների բովանդակությունից պարզ է դառնում համալիրի բուն նշանակությունը։ Թեև արձանագրությունը բավականին եղծված է, սակայն նրա բովանդակությունից, այնուամենայնիվ, պարզվում է, որ Արգիշտիի որդի Ռուսա թագավորը Խալդի աստծու մեծության պաշտամունքի այս տեղը շինել է զոհաբերությունների համար, որոնց ընթացքում գինի է հեղվել։

Տվյալ տարածքում պեղումներով բացվել են մեծ չափերի երեք մառաններ, որոնցում պահպանված կարասները գինու հեղման համար էին, այդ պատճառով էլ այս մառանները կառուցված էին հանդիսավոր արարողությունների համար

նախատեսված դահլիճին կից, ճիշտ այնպես, ինչպես այդ արված էր Էրեբունիի պալատում։

Դահլիճի ներքնամասում առանձնապես շեշտված էր մոնումենտալությունը. այնտեղ կանգնած էին բազալտե հզոր մույթեր, քանդակազարդ խորանարդաձև բեկորներ ու կավակերտ նստարաններ՝ պատերի ողջ երկայնքով, որոնք հաստատում են, որ դահլիճը նախատեսված էր մեծ բազմության, մասսայական բնույթի արարողությունների համար։

Մույթերը երկու զուգահեռ շարք էին կազմում՝ յուրաքանչյուրում չորսական, մեկը մյուսից 7 մետր հեռավորության վրա՝ երկայնակի և 5,75 մետր լայնական ուղղություններով։ Իրենց հատակագծում նրանք 3,00×3,60 մետր չափերի են, որոնց անկյունային մասերը դուրս են բերված քառանկյան ընդհանուր եզրագծից և դրանով հար և նման են Կարմիր բլուրում հայտնաբերված բազալտե մույթերին։

Մույթերի դասավորությունը հաստատում է, որ դահլիճը բավականին մեծ էր և ուներ շուրջ 20,0×60,0 մետր չափեր։ Ծածկը պահող այդ մույթերը, որոնք երեք շարք քարի որմածքից վեր շարված էին հում աղյուսից, ինչպես և պատերը, ծածկված էին գունեղ որմնանկարներով։ Սակայն այդ հարդարանքից ստացված տպավորությունները լրացվում էին 1,40×1,40×1,10 մետր չափերի բազալտե խորանարդաձև ծավալների ճակատային հարթությունների վրա կատարված բավականին հարուստ հարթաքանդակներով։ Քանի որ նրանց բեկորների թիվը դահլիճում վեցն է, և նկատի ունենալով նրանց ընկած տեղերի դիրքը, պետք է ենթադրել, որ նրանք ժամանակին դասավորված էին մույթերի միջև։ Այդ դեպքում նրանց քանդակված մակերեսները համաչափորեն կդիտվեին բոլոր կողմերից։ Նրանց չորս միանման ճակատներում պատկերված են առյուծների վրա կանգնած աստվածներ, իրենց ճանկերում նապաստակներ պահած արծիվներ, որոնք քանդակված են եռահարկանի կառույցի ֆոնի վրա։ Արծիվները այստեղ ևս հաստատում են իրենց պաշտամունքի առկայությունը Ուրարտուում և խորհրդանշում են, ինչպես և հին Բաբելոնում, թագավորական իշխանությունը։ Այդ քանդակների վրա, աշտարակաձև կառույցի ներքևի մասում տեսանելի են գծագրություններ, որոնք հնագետներ Էմին Բիլգիչը և Բաքի Օզգյուչը համարում են նիզակի ծայրեր կամ նռճիններ։ Մենք կարծում ենք, որ դրանք պատկերում են կրակի լեզվակ՝ արտահայտված նիզակի ծայրի ձևով։ Հիրավի, եթե անդրադառնանք, օրինակ, Ուր-Նամմու «Թռչող հրեշտակների կոթող»-ի վրա պատկերված աստծու և աստվածուհու զոհաբերությունների տեսարաններին, այնտեղ ևս կտեսնենք բոցի նույնատիպ պատկերը։ Այդ գծագրությանը մոտ է նաև Աշշուրի զոհասեղաններից մեկի ճակատին քանդակված պատկերը։

Մենք փորձեցինք տվյալ դահլիճի վերականգնված ընդհանուր ճարտարապետական տեսքը ներկայացնել ճեպանկարի ձևով, հենվելով հնագետներ Էմին Բիլգիչի ու Բաքի Օզգյուչի կատարած՝ դահլիճի բավականին մանրամասն նկարագրությունների վրա[28]։

Դահլիճի ծածկը հարթ էր, ինչպես երևում է տեղում պահպանված առաստաղի այրված հեծաններից, իսկ լուսավորությունը նրանում վերևից էր՝ ծածկի մեջ պատրաստված երդիկանման բացվածքներից։

Այսպիսով, մեր առջև է ուրարտական առայսօր անհայտ այն կառույցների ձևերից մեկը, որտեղ կատարվում էին մասսայական զոհաբերություններ և որտեղ այդ ծիսակատարությունները, համաձայն պահպանված սեպագրերի, ուղեկցվում էին հեղման գինով ու, պետք է ենթադրել, կատարվում էին մեծ հանդիսավորությամբ ու միաժամանակ դահլիճի տարբեր տեղերում։

Գուցե այդ տունը կոչվել է ուրարտական սեպագիր արձանագրություններում հաճախ նշվող «Սիրիխանի» կամ «Աղունխինի» պաշտամունքային կառույցներից մեկի անունով։

Ուրարտական մոնումենտալ պաշտամունքային կառույցները նշանակալից դեր են խաղացել հայ դասական ճարտարապետության կազմավորման գործում։ Վերջիններս սաղմնավորման պրոցեսն անցնելով ուրարտական քառակուսի ու լայնական զարգացում ունեցող կառույցների ավանդույթների հետ ու կոնստրուկտիվ նոր մտահղացումներով ստեղծվեցին նոր դավանանքի պահանջներին համապատասխան կրոնական նոր շենքեր։

**Կոթողներ:** Պաշտամունքային հուշարձանների շարքին են պատկանում նաև ուղղահայաց դիրքով կանգնեցված տախտակաձև ու կիսակլոր վերջավորությամբ քարե այն կոթողները, որոնք ուրարտացիք անվանում էին «պուլուսի»-ներ։





Բ









0 40 80 120 160սմ

Ա



0 40 80սմ

Գ










Դ

*Նկ. 40. Փականների ձևեր*



Ա



Բ



Գ



Դ



Ե



Նկ. 41. Հատակների ձևեր

Սրանց բարձրությունը երբեմն երեք մետրից ավելի է։ Այս կոթողները կանգնեցվում էին կա՛մ առանձին, ինչպես, օրինակ, Էջմիածնում, կա՛մ թե շարքով՝ իրար կողքի, ցածր խարսխապատերի վրա, թվով մինչև հինգը, ինչպիսիք կային Ալթին-Թեփեում։

Անդրադառնալով Ալթին-Թեփեի հինգ կոթողներին, կարող ենք նշել, որ նման խմբավորությամբ այդ կոթողները ստեղծում են իրենց տարածական յուրահատուկ ընկալումը և ստեղծում փոքր ձևերի մի յուրահատուկ համալիր (լուսանկ. աղ. 20)։

Որպես կանոն կոթողներն իրենց վրա արձանագրություններ չեն կրում։ Սակայն, առանձին դեպքերում նրանք կրում են ուղերձներ աստվածներին, որոնցում թագավորների համար աղերսվում են՝ կյանք, երջանկություն, հաջողություն և այլն։

Թոփրախ-կալեում գտնված մի կնիք պատկերում է երեք նման կոթողներ և նրանց առջև կատարվող արարողության պահեր[29]։

Այսպիսով, այս կոթողները կամ «պուլուսինները» կապված են ուրարտական կրոնի հետ այնպես, ինչպես որ օբելիսկները Եգիպտոսում։ Բացի դրանից ուրարտական այդ կոթողները գրեթե հար և նման են եթովպական (Ակսումի) այն կոթողներին, որոնք նույնպես կառուցված են տաճարների շրջապատում։ Սրանք ևս քարե հարթ, ուղղահայաց սալեր են՝ նման կիսակլոր վերջավորությամբ, իրար հետ կապված հորիզոնական քառակուսի սալով, որի վրա գոհարերության տեղը նշված է օղակաձև ելունով, ճիշտ այնպես, ինչպես Ալթին-Թեփեում։

Զոհարանների նման ձևերը, անկախ իրենց բացարձակ չափերի տարբերություններից, տարածված էին Հին արևելքում։

Բնորոշ է, որ երբ միջնադարյան Հայաստանում պետք էր պատկերել քրիստոնեության խորհրդանիշը՝ խաչն իր մոնումենտալ արտահայտությամբ, դրա համար ընտրվում էր ուրարտական կոթողի ձևը։ Հիրավի միջնադարյան Հայաստանի հայտնի խաչքարերն իրենց արտաքին ձևերով մոտ են ուրարտական այդ կոթողներին։ Ավելին, գտնվել են մի շարք ուրարտական կոթողներ՝ սեպագիր արձանագրություններով, որոնց վրա հետագայում քանդակված էին քրիստոնեական խաչեր։ Եվ, ընդհակառակը, Նոյեմբերյանի շրջանից կան հայկական խաչքարեր, որոնց զարդաքանդակները պարզորոշ կերպով հիշեցնում են ուրարտական արվեստին պատկանող գրվագներ՝ սրբազան ծառեր՝ աստիճանաձև պատվանդանների վրա, կլոր զարդեր։

Այսպիսով, կարելի է հաստատել, որ կոթողի այս ձևը հավասարապես բավարարել է տարբեր դարաշրջանների պաշտամունքային կարիքներին, ինչպես նաև նրանց կերտող արվեստագետներին, որոնք այդ կոթողի հարթության վրա, որպես մի կիզակետում, ի մի են բերել իրենց հորինվածքները։ Հետևապես, իրավամբ, կարող ենք հաստատել, որ հայկական խաչքարերի ձևերի սկզբունքային լուծումներն իրենց ծագումով կապված են ուրարտական պուլուսինների հետ, թեև նրանց ձևերի համընդհանուր մեկնակետը, հավանաբար, մեգալիթյան մշակույթի մենհիրներն են։

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

## ԺԱՅՌԱՓՈՐ ՈՒ ՎԻՄԱՓՈՐ ԿԱՌՈՒՅՑՆԵՐ, ԴԱՄԲԱՐԱՆՆԵՐ

Ուրարտուն լինելով լեռնային երկիր, իր տարածքի տարբեր վայրերում ստեղծել է բազմաթիվ վիմափոր կառույցներ, որոնք կազմում են նրա շինարարական արվեստի զգալի մասը։ Այդ կառույցները նույնիսկ ունեին իրենց ստավածը՝ Աիրաինիի անունով[1]։ Դրանց թվին են պատկանում՝ ժայռափոր սանդուղքները, խորշերը, պաշտամունքային ու դամբարանային կարիքների նվիրված արհեստական քարայրերը, թունելները և այլն։

Վիմափոր կառույցներում, ժայռերի կարծրության շնորհիվ, գրեթե նախնական տեսքով պահպանվել են վերերկրյա շենքերում վաղուց անհետացած կամարներ, թաղեր ու նույնիսկ գմբեթ հիշեցնող ծավալներ, իսկ որոշ դեպքերում նաև ճարտարապետական փոքր դրվագներ։

Վիմափոր կառույցներում ուրարտացիները հաղթահարելով ապառաժ լեռը, մշակել են այն որպես երկրաչափական հստակ ձևերի ճարտարապետական հզոր դրսևորումներ։

Մոնումենտալ ճարտարապետական ձևերին մոտեցող վիմափոր կառույցների հիմնական մասը հանդիսացող դամբարաններն առնչվում են հնարևելյան համապատասխան ավանդական սկզբունքներին։ Ինչպես մյուս ժողովուրդները, ուրարտացիք ևս ունեին հանդերձյալ կյանքի մասին եղած հայտնի հասկացություններ, որոնց համապատասխան, մարդը հետմահու շարունակում է գոյատևել, հետևապես անհրաժեշտ է մարմնի պատշաճ պահպանություն, իսկ դամբարանները դրա անհրաժեշտ առաջին նախապայմանի ճարտարապետական արտահայտությունն էին։

Եթե նկատի ունենանք, որ ուրարտական ժայռափոր դամբարանների կառուցման համար, ինչպես, օրինակ, Կայալիդերեն է, պահանջվում էր տարիների ծանր ու երկարատև աշխատանք, պարզ կդառնա, որ դրանք ևս Եգիպտոսի դամբարանների նման հիմնադրվում էին նախապես։ Հավանաբար դրա հետևանքով է, որ մի շարք դամբարաններ մեր օրերն են հասել անավարտ վիճակում, ընդհատված, իրենց բուն նպատակին ծառայելուց առաջ։

Բացի դամբարանային ձևի թաղումներից, Ուրարտուում կատարվում էր նաև դիակիզում, որը կարող էր արտահայտել հասարակարգի սոցիալական, էթնիկական կամ ժամանակագրական տարբերությունները։

Ժայռային կառույցների ամենապարզ ձևերից են սանդուղքները, որոնք փորվում էին լեռնային թեք լանջերի ինչպես վերերկրյա մասերում, այնպես էլ ստորգետնյա ուղիներում՝ իջնելով լեռների խորության մեջ։

Վերերկրյա սանդուղքների առավել ուշագրավ օրինակներ գտնվում են Տուշպայի, Վերին Անզաֆի, Բաստանկայայի միջնաբերդերում և այլուր։ Նրանք այստեղ կապակցում են տարբեր մակարդակի վրա գտնվող վիմափոր կառույցները, երբեմն կառուցվելով մեծ թեքություն ունեցող լանջերի վրա և նույնիսկ այնտեղ, ուր այդ ժայռերը կազմում են գրեթե ուղղաձիգ պատ։ Ելնելով տեղանքի նման բնույթից, շատ հաճախ լեռնային սանդուղքների յուրաքանչյուր աստիճանը հասնում է մեկ մետրի։ Դա է, որ հնարավորություն է ստեղծում կապակցել լեռնային կառույցները։

Սակայն, ինչպես կարծում էր Հ. Օրբելին, ելնելով աստիճանների արտասովոր թեքություննե-

րից, նրանք միջնաբերդերի պարիսպների համար ծառայում էին որպես հիմնապատեր։ Այնուամենայնիվ, այդ կարծիքը դժվար է ընդհանրացնել, քանի որ անցուղիների դասավորությունը, օրինակ, Վանի միջնաբերդի տարածքում, հեռու է որևէ կառույցի համար հարմարավետ հատակագծային հորինվածք ճանաչվելուց։

Առավել մեծ բարդությունների հետ էին կապված ստորգետնյա անցուղիների կառուցումները, որոնց հայտնի օրինակները գտնվում են Թոփրախ-կալեում, Մխանդարում, Կալե-Այգարում։

Թոփրախ-կալեում այդ աստիճանները, որոնց քանակը հասնում է 56-ի, մակերեսից իջնում են 10 մետր խորությամբ, 2 մետր լայնություն ունեցող միջանցքով։

Անցուղին այստեղ տանում է դեպի ստորգետնյա մի դահլիճ, որը հատակում ունի քառանկյուն խորացում, որպիսին գոյություն ունի նաև Վանա ժայռի մեծ քարայրում։ Հ. Օրբելու կարծիքով, այն նախատեսված է պաշտամունքային նպատակների համար։ Սակայն կարելի է ընդունել նաև, որ ամբողջ կառույցը դամբարան էր, այդ դեպքում հատակում կատարված խորացումը պետք է որ սարկոֆագի համար նախատեսված լիներ։

Ուրմիա լճից հարավ-արևելք, Մխանդարի շրջակայքում գտնվող համանման ստորգետնյա անցուղիները տեսանելի են վերերկրյա մասից 37 աստիճանի խորությամբ միայն, իսկ մնացածը ծածկված է ավերված ժայռի բեկորներով։

Համանման է նաև Կալե-Հոդարի կառուցվածքը, որը, սակայն, նույնպես լրիվ չի բացված (լուսանկ. աղ. 23 բ)։ Կատարված փլուզումների հետևանքով ծածկվել են ստորին աստիճանները, տեսանելի են միայն 29 ցած իջնող վերին աստիճանները։

Հավանաբար, բոլոր այս և նման տիպի կառույցները պաշտամունքային բնույթի կամ, թերևս, դամբարանային հուշարձաններ էին։

Համանման օրինակները շատ են Եգիպտոսում, որտեղ դեպի ստորգետնյա դամբարանները իջնում էին նույնպես աստիճաններով և որոնցում նույնպես դահլիճներ ու խորացրած տեղեր կային սարկոֆագների համար (Սեթի I-ի, Թութանհամոնի դամբարանները Ֆիվեում և Արքաների հովտում, Ամենեմհեթ III-ինը՝ Խավարում, Ջոսերինը՝ Սակարայում և ուրիշներ)։

Այլ բնույթի են եղել, մասնավորապես, Մխանդարի ու Կալե-Այգարի կառույցները, որոնք դեպի ստորգետնյա ջրերը տանող գաղտնի ուղիներ էին։ Կառույցների այդպիսի համակարգեր հայտնի են դեռևս վաղ բրոնզի դարաշրջանից, օրինակ՝ Շենգավիթում, իսկ հետագայում՝ Սամբերդում։

Ժայռային մյուս պարզ կառույցներն են խորշերը, որոնց առավել մշակված ձևերը սովորաբար ունեցել են պաշտամունքային նշանակություն և կոչվում են «Աստվածների դռներ», ինչպիսիք են, օրինակ, Աշրուտի դուռը՝ Վանա և Ուրմիա լճերի միջև գտնվող Սալխանե (Աշոտակերտ) գյուղում, Մհերի դուռը (Թոփրախ-կալեում), Բոստանկայայի դուռը և մյուսները։ Բոստանկայայի խորշի առջև, ժայռի հարթեցված մակերեսի վրա պարզ տեսանելի են բրոնզե դռհարանի ոտքերի հետքերը միայն, որով հաստատվում է այս կառույցների պաշտամունքային նշանակությունը։

Կարծում ենք, որ այն արհեստական խորշը, որը շինված էր Մհերի դռան մոտ, նույնպիսի կարիքների համար էր։ Դա հաստատում է Մհերի դռան հարթության վրա պահպանված և ուրարտագիտության մեջ լայնորեն հայտնի Իշպուինի թագավորի և նրա որդի Մենուայի բավական ընդարձակ սեպագիր արձանագրությունը, որը վկայում է օրինականացված կարգը՝ ուրարտական պանթեոնի յուրաքանչյուր աստծուն մատուցվող զոհերի տեսակի ու քանակի մասին։

Մհերի դուռը եզերված էր աստիճանաձև շրջանակով, որի բարձրությունը 10 կանգուն էր կամ 5,18 մետր (լուսանկ. աղ. 22 ա)։

Նման դռներից բացի, հայտնի են նաև խորշեր՝ իրենց սովորական ձևով։ Մենք նկատի ունենք 1916 թ. Հ. Օրբելու կողմից Վանա ժայռի հյուսիսային լանջին հայտնաբերված ու պեղված այն խորշերը, որոնց պատերին պահպանվել է Արգիշտիի որդու՝ Սարդուրի թագավորի բավական ընդարձակ արձանագրությունը, որ ուրարտական տարեգրության ամենանշանակալից կոթողն է։

Ժայռի խորության մեջ կերտված այդ երկու խորշերն իրենց կիսակլոր վերջավորությամբ ունեին խորանարդաձև հիմքերի վրա կանգնեցված կոթողներ, որոնցից պեղման պահին պահպանվել էր միայն մեկում։ Խորշերի միջև, արտաքին ճակատային հարթության տակ և նրա լայնքով մեկ տաշված նստարանը միավորում էր դրանք, կազմելով միասնական հորինվածք։

Այս խորշերի չափերն իրենց ճակատային մա-

սամ, մեկը՝ 2,52×8,19 մետր և մյուսը՝ 2,74×6,50 մետր, ինչպես կտեսնենք ստորև, հիմնված էին ուրարտական ճարտարապետական 5×8 համաչափությունների վրա։ Ներշերը, հավանաբար, ունեին նաև պաշտամունքային նշանակություն, քանի որ Ուրարտուում ծիսական արարողությունները կատարվում էին նաև արձանագրությունների առջև։

Վիմափոր կառույցների առավել նշանակալից մասը գտնվում է Վան քաղաքի միջնաբերդի շրջակայքում² (գծագր. աղ. 3 ա, լուսանկ. աղ. 21 ա, բ)։ Թեև մասնագիտական գրականության մեջ դրանց ֆունկցիոնալ նշանակության մասին շատ է խոսվել, սակայն վերջնական եզրակացությունները միշտ էլ մնացել են վարկածների սահմաններում։ Կարծում ենք, որ կառույցներն իրենց նշանակությամբ միատիպ չէին և ունեին ֆունկցիոնալ տարբեր բովանդակություն։ Հավաստի պարզություն է մտցվում միայն այն դեպքում, երբ այդ մասին առկա է գրավոր աղբյուրը։ Այդպիսի եզակի մի նմուշ է ժայռի հյուսիսային կողմում գտնվող այն քարայրը, որը կրում է Իշպուինիի որդի Մենուա թագավորի արձանագրությունը, որում ասված է.

«Մենուան Իշպուինիի որդին, այս տեղը շինեց Մենուան ասում է «Ով (զոհաբերվող) ցուլերին այստեղից տանի, ով որևէ տեղ նրանց տանի, ով անասուններին այնտեղից հափշտակի, ով այս արձանագրությունը ջարդի, ով մյուսին ստիպի կատարել (գործերը) թող Խալդի, Թեյշեբա, Շիվինի աստվածները ոչնչացնեն նրան (այս) արևի տակ»։

Այս արձանագրությունից պարզվում է, որ siršin-ը այն կառույցն էր, որտեղ պահվում էին զոհաբերությունների համար մատուցվող սրբազան կենդանիները։ Դատելով կառույցի ձևից, համոզվում ենք, որ այն լիովին համապատասխանում է արձանագրության մեջ նրան վերագրվող նշանակությանը։

Վիմափորը մի մեծ ներքին տարածություն է, որի չափերն են՝ լայնությունը 7,81×8,95 մ, երկարությունը 20,46 մ, բարձրությունը 2,53 մ։ Բացի դրանից այդ վիմափորը ունի 8,48 մ բավականին լայն մուտք։

Մենուայի մյուս արձանագրությունը, նույնպես siršin-ի կառուցման մասին, թեև թերի է (պահպանվել է միայն սկզբնական մեկ բեկորը Վանի միջնաբերդի միջին պարսպում), բայց հաստատում է, որ մայրաքաղաքի շրջակայքում նման կառույցները բավականաչափ տարածված էին։

Արձանագրությունը հաղորդում է.

«Մենուան Իշպուինիի որդին այս տեղը շինեց Մենուան ասում է...»։

Եթե այստեղ siršin-ում պահվում էին զոհաբերությունների համար նախապատրաստվող սրբազան կենդանիներ, ապա պարզ է, որ այլ տարածքում ծիսակատարությունների համար պետք է լիներ նաև համապատասխան համալիր։ Այդ առումով ուշադրության է արժանի «Մեծ քարայր» կոչվող կառույցը։ Նրա գլխավոր դահլիճին, որի չափերն են 6,17×9,34 մ, իսկ բարձրությունը՝ 5,99 մ է, կից են երեք սենյակ՝ հյուսիսից, արևելքից ու արևմուտքից։ Հյուսիսային և արևմտյան սենյակները պատերին կից ունեն հարթակներ, հյուսիսային սենյակի հարթակին կարելի է բարձրանալ երեք աստիճանով։

Այս քարայրը գտնվում է Վանա ժայռի ցցվող տեղում։ Նրա բարեկարգումը պահանջել է դժվարին ու ծավալուն աշխատանք, քանի որ քարայրի առջև բացված է բավականին ընդարձակ հրապարակ, որի համար մշակված էր լեռան ճակատային հարթությունը՝ ավարտված լայն գոտու ձև ունեցող ծավալով։

Քարայրի պատի տակ, ճակատի ողջ երկարությամբ ձգվող քարակերտ նստարանը և այս հարթակից դեպի վեր տանող՝ 2 մետր լայնությամբ և 25 աստիճանոց սանդուղքը լրացնում ու պարփակում են այս ապառաժ լեռան տարածական տպավորությունը։ Քարակերտ նստարանը հաստատում է, որ այստեղ հավաքվում էր համապատասխան բազմություն և հենց այստեղ էլ, այս բարձրության տարածքում, կատարում էին ծիսակատարությունները, ճիշտ այնպես, ինչպես Էրեբունիի Խալդի տաճարի շքամուտքում, զոհասեղանի շրջապատում, ուր նույնպես տեղադրվել են նստարանները։

Ճարտարապետական այս մոնումենտալ միջավայրից բացվում էր Տուշպա քաղաքի գեղատեսիլ տարածքը։

Այս վիմափորը իր հատակագծային հորինվածքով նմանվում է Միջագետքի պաշտամունքային վերերկրյա այն շենքերին, որոնք իրենց կենտրոնական բակի շուրջն ունեն սենյակներ։ Հատկապես մեծ նմանություն կարելի է գտնել վիմափորի և Աշշուրի Իշտարի տաճարի միջև։



Ա





Բ




Գ



Դ

Նկ. 42. Քիվերի ձևեր

Կարծում ենք, որ պաշտամունքային նպատակի համար էր նաև մի այլ վիմափոր, որը գտնըվում է Բայազետում[3]։ Ա. Ա. Իվանովսկու կողմից ուսումնասիրված ու մանրամասնորեն նկարագրված այդ քարայրը իր ձևերով շատ է տարբերվում Վանի տարածքում գտնվող տիպերից։ Այդ նկարագրությունների հիման վրա հավաստի կարելի է պատկերացնել կառույցի ներքնամասի հորինվածքը։ Վիմափորը երկհարկանի է և այդ առումով էլ եզակի է ուրարտական նման կառույցների մեջ։

Առաջին հարկի կենտրոնական դահլիճը մուտքի դիմացի պատի մեջ ունի կիսակլոր հատակագծով խորշ՝ հատած գլանի ձևով։ Վերջինս ուրարտական ճարտարապետության հազվադեպ օրինակներից է։

Կենտրոնական սենյակից աջ գտնվում է փոքր չափերի մի այլ սենյակ, իսկ ձախ կողմում տեղավորված է երկրորդ հարկը տանող քարակոփ սանդուղքը։ Դահլիճը թաղակապ է, ինչպես շատ այլ քարայրերում։

Սակայն, այդ կառույցի ուշագրավ հանգամանքը նրա ճակատային հարթության մշակման մեջ է, որտեղ բացի դռան բացվածքից, նրա երկու կողմերում պատկերված են բնական մեծությամբ մարդկային երկու ֆիգուր։ Մարդկանցից մեկը ձեռքին բռնած ունի այծ, որը ուրարտական զոհաբերությունների ավանդական կենդանին էր և հաճախ է պատկերվում հատկապես որմնանկարներում։

Դռան բացվածքի մյուս կողմում գտնվում է մարդու մի այլ հարթաքանդակ՝ գավազանը ձեռքին, որն առաջինի նման պատկերված է քայլելիս։ Այսպիսով, տվյալ քանդակը արտահայտում է թափորի շարժումը դեպի ծիսակատարության վայրը։ Սա առաջին դեպքը չի ուրարտական արվեստում, երբ ծիսակատարությունը պատկերված է շարժման ընթացքում։ Սխալված չենք լինի, եթե համարենք, որ տվյալ քանդակի թեմատիկ բովանդակությունը պաշտամունքային լինելով՝ բնորոշում է նաև ողջ կառույցի ֆունկցիոնալ նշանակությունը։

Պաշտամունքային է եղել նաև Իրանի Մակու քաղաքից 7 կմ հեռավորության վրա, Սենգեր գյուղի մոտ գտնվող քարայրը։ Սա նույնպես բաղկացած է երեք բաժնից՝ դահլիճից ու երկու փոքր սենյակներից։ Դահլիճն իր երկայնական առանցքի վրա ունի քառանկյուն հատակագծով որմնախորշ։

Քարայրն ուսումնասիրել են Վ. Մինորսկին և Է. Զիրիկովը, այն համարելով կրակի տաճար կամ ուրարտական կառույց[4]։

Այսպիսով, Սենգերի հուշարձանը, համաձայն նրա հետազոտողների, պաշտամունքային կառույց էր, այն էլ կապված կրակի պաշտամունքի հետ։ Ժամանակին նշեցինք այն զուգահեռները, որոնք առկա են Սենգիրի ու Էրերունիի աքեմենյան շրջանի կրակի փոքր տաճարի միջև։ Վ. Մինորսկու այն տեսակետը, ըստ որի Սենգիրի հուշարձանը Բայազետի վիմափորի նախատիպն է, պայմանավորված է երկու կոթողների ուրարտական ճարտարապետության արգասիք լինելու հանգամանքով։

Անդրադառնալով մյուս վիմափոր կոթողներին, տեսնում ենք, որ նրանցում առավել ցայտուն է արտահայտված դամբարանային կառույցներին բնորոշ նրանց ֆունկցիոնալ իմաստը։ Դրա առավել ցայտուն օրինակը Վանա ժայռի արևմտյան լեռան խորության մեջ կերտած, այսպես կոչված, Փոքր խորխորյան վիմափորն է։ Եթե այս կառույցը համեմատելու լինենք հետագա դարերում ստեղծված աքեմենյան Իրանի Նաքշ-ի-Ռուստեմի հայտնի դամբարանի հատակագծի հետ՝ ընդհանրությունը կդառնա ակնառու։ Երկու դեպքում էլ դրանք լայնական դահլիճներ են, որոնք ձգված են վիմափոր կառույցների ճակատային հարթությունների զուգահեռ։ Ներքնամասերում, ճակատային պատի դիմաց, այդ պատի խորության մեջ երկու դեպքում էլ փորված են իրար կողքի երեք մեծ և մի ավելի փոքր խորշեր։

Այս զուգահեռներն այնքան ակնհայտ են, որ գրեթե կասկած չեն առաջացնում, որ Փոքր խորխորյան վիմափորը նույնպես դամբարան էր և, ամենայն հավանականությամբ, նախատիպն էր Նաքշ-ի-Ռուստեմի դամբարանի, ստեղծված լինելով նրանից շուրջ երեք դար առաջ։

Դամբարան է նաև Վանա լեռան վերին հարթակի տակ գտնվող փոքր չափերի քարայրը, որը Փոքր խորխորյան դամբարանից տարբերվում է իր խորշերի դասավորությամբ, որոնք այստեղ տեղավորված են ոչ թե մի շարքով, այլ կենտրոնական փոքր սենյակի շուրջը։

Վան քաղաքի բերդի մոտ գտնվող մի այլ վիմափոր կառույց իր տարածական հորինվածքով

եղակի գործ է ուրարտական տվյալ բնակավայրի համար։ Թեև մասնագիտական գրականության մեջ ընդունված է այն համարել դամբարանային կառույց, սակայն թվում է, որ այդ բնորոշումը մնում է վարկածի սահմաններում[5]։

Այս հուշարձանի գլխավոր, առաջին սենյակի մակերեսը 29 քմ է՝ 2,25 մ բարձրությամբ, ունի ներսի կողմից փակվող դուռ և նրա առջև երկու աստիճան։ Բացի դրանից, արտաքին պատին կից սենյակի անկյունային մասերն ունեն անցքեր՝ լույսի և թարմ օդի համար։ Մուտքից ձախ, ժայռի խորության մեջ է գտնվում թաքստոցների շարքը՝ բաղկացած երեք փոքր սենյակներից։ Նրանցից առաջինը (1,42×1,76 մ է, բարձրությունը՝ 0,95 մետր) այնքան ցածր է, որ շարժվել կարելի է միայն սողալով։ Կից սենյակը ավելի բարձր է ու գմբեթաձև ծածկով, իսկ հատակը մի ամբողջական սալ քարից է, որն իրենով փակում է նրանից ներքև գտնվող գաղտնարանը։ Սրան կից է նույնանման, թվով չորրորդ ու վերջին գաղտնարանը։

Վանի վիմափոր այս կառույցում հայտնաբերված գմբեթի ճարտարապետական ձևը հիմք է տալիս կարծելու, որ տվյալ կոնստրուկտիվ համակարգը նախապես գոյություն է ունեցել վերերկրյա շենքերում, որտեղից էլ այն կարող էր անցնել վիմափոր կառույցներին։

Հայտնի է, օրինակ, Ասորեստանի հինավուրց այն քանդակը, որի վրա պատկերված է գմբեթավոր շենք՝ Խորսաբադում։ Այն գտնվում էր Ուրարտուի սահմաններից ոչ շատ հեռու։ Բացի դրանից, գմբեթը որպես այդպիսին, գոյություն է ունեցել դրանից էլ վաղ, Ուր քաղաքում, Աբարգի, Շուբաթ և այլ դամբարաններում, որտեղի գմբեթները աղյուսաշեն էին և, նույնիսկ, աբսիդներով։ Դա հիմք է տալիս Լ. Վուլիին հանգելու այն մտքին, որ Ուրի բնակիչներին դեռևս մ.թ.ա. III հազարամյակում արդեն հայտնի էին ճարտարապետական բոլոր ձևերը[6]։

Ուշագրավ կառույց է նաև Կալե-Հոդարում գտնվող վիմափորը, որը տեղադրված էր Ուրմիա լճից 30 կմ հյուսիս-արևմուտք, նրա լեռնային մասում։ Այն կերտված է ուղղաձիգ ժայռի շուրջ, 10 մ բարձրության վրա, դեպի ուր տանում են խիստ քայքայված աստիճանների հետքերը։ Հիմնական դահլիճը, որը 5,30×10,70 մ չափերի է, քառանկյուն հատակագծով և 2,40 մ բարձրությամբ, իր պատերի տակ ունի ցածր նստարաններ՝ բազմության համար (գծագր. աղ. 35 բ)։

Դահլիճի ձախ մասում բացված մուտքը տանում է դեպի փոքր չափի սենյակը, իր ավելի ցածր առաստաղով (լուսանկ. աղ. 22)։ Մյուս սենյակը գաղտնարան է, որը մուտքի դիմացի պատի տակ է և խորանում է ապառաժի մեջ մոտ 2,4 մ չափով։

Այս վիմափորը դրսից՝ իր ճակատային մասում, դահլիճի լայնության չափով որոշակի ընդգծված էր ընդարձակ մի խորշով ու կենտրոնական իր մուտքով։

Դրսից բավականին ընդգծված է նաև Վերախրամի վիմափոր կառույցը՝ իր 11 աստիճան ունեցող սանդուղքով։ Այդպիսին էր արտաքնապես նաև Կալե-Հոդարի անավարտ մնացած մյուս վիմափորը կամ Կալե Իսմայիլ Աղան, որոնք չէին քողարկվում դրսից։ Հետագայում այս սկզբունքն ավելի ակնառու է դառնում աքեմենյան դարաշրջանի Իրանում, խիստ պճնազարդված տեսք ունեցող նրա Նաքշ-ի-Ռուստեմի վիմափոր դամբարանների ճակատային հորինվածքներում։

Կայալիդերեի դամբարանը գտնվում է Վանա լճից հյուսիս-արևմուտք, Վարդո քաղաքի մոտ, Արածանի գետի աջ ափին վեր խոյացող բլրի հարավային թեք սարալանջի վրա։ Այստեղ բլրի գագաթին փռված են ուրարտական միջնաբերդի մնացորդները[7]։ Ինչպես հաստատում են բլրի հնագիտական ուսումնասիրությունները, այս դամբարանը միակը չէ։ Մյուսները, գտնվելով բլրի թեքության տարբեր բարձրությունների վրա, հիմնականում կիսավեր են, փորված ցածր տեսակարար կշիռ ունեցող հրաբխային կազմի խորության մեջ։

Քննարկվող դամբարանը այսօր հայտնի է իր բացված վեց սենյակներով, որոնք, ի դեպ, կազմում են նրա հատակագծային հորինվածքի սիմետրիկ դասավորված սենյակների ձախակողմյան հատվածը միայն (գծագր. աղ. 35 ա)։ Նույն կերպ դասավորված աջակողմյան սենյակների շնորհիվ, որոնցից երևում են միայն մուտքերը, Կայալիդերեի վիմափորը ուրարտական դամբարանների շարքում ամենաընդարձակն է։

Կայալիդերեի վիմափորը ևս ընդգծված է արտաքուստ մուտքի ավանդական աստիճանաձև կտրվածք ունեցող շրջանակով, նման Մհերի դռան ձևավորմանը։

Ի տարբերություն մյուս դամբարանների, այստեղ մուտքը շարված էր մեծածավալ քարերով, որով ապահովվում էր դամբարանների անձեռն-

*մըխնլիությունը: Միջնաբերդի այս մասում կառուցված էր ևս մի պատ: Բացի այս բոլորից, մեծածավալ քարերով էին ծածկված նաև դամբարանի ներքնամասի բոլոր դռները և, այսպիսով, դամբարանն ապահովված էր կողոպտվելուց:*

*Սակայն, չնայած այդ միջոցառումներին, դամբարանը դեռ հին ժամանակներում արդեն կողոպտվել էր, ինչպես հինարեելյան դամբարանների մեծ մասը: Կողոպտիչները շրջանցել են պատնեշներն ու, վերևից մուտք բացելով, մտել ներս:*

*Գլխավոր մուտքը դրսից ունի 4 աստիճան, իսկ նրանց աջակողմյան մասում՝ զրնաժային համակարգ, խոչընդոտելու համար անձրևային ջրերի մուտքը ներքնամաս:*

*Վիմափոր դամբարանի սենյակների հատակներում բացվել են բավականին մեծ և խոր հորեր, որոնց բերանները ծածկված էին սալ քարերով: Հավանաբար այս հորերը ծառայել են որպես թաքստարաններ:*

*Հավանաբար ծիսական նշանակություն ունեին 6-րդ սենյակի հատակում փորված թվով 33 կլոր փոսիկները, ինչպիսիք կան նաև Թեյշեբաինիում հայտնաբերված առանձին քարի վրա:*

*Անդրադառնալով դամբարանի ճարտարապետությանը, նրանում տեսնում ենք վերերկրյա կառույցներում վաղուց անհետացած ձևերը: Այդ վերաբերում է դռների կամարաձև վերջավորություններին, ինչպես նաև 2-րդ սենյակի առաստաղային մասում հայտնվող գմբեթի ձևին:*

**Ալթին-թեփեի դամբարանները:** *Այստեղ հայտնաբերված թվով երեք դամբարաններ կառուցված են բլրի հարավարևելյան լանջի վրա[8]: Դրանք որմածքային կառույցներ են, շարված մեծածավալ բազալտ քարից և որպես այդպիսիք ուրարտական ճարտարապետության մեջ առայսօր հայտնաբերված եզակի կոթողներից են (լուսանկ. աղ. 24 ա, բ, 25): Սրանցում հարուստ են շինարարական նախատեղծ կոնստրուկտիվ ձևերը, որոնցից են հեծանները, թաղերը, կամարները և նրանց տարբերակները, ինչպես նաև մուտքերը կասետային սալերով փակելու եղանակը (գծագր. աղ. 37 ա):*

*Այս դամբարանները, մինչև նրանց պատահաբար հայտնաբերումը 1938 թ., պարունակել են հնագիտական արժեքավոր իրեր՝ ոսկուց, արծաթից, փղոսկրից, թանկարժեք քարերից ու փայտից, ինչպես նաև բարձրարվեստ կահույք, որոնց մեծ մասը, սակայն, այդ ժամանակ էլ անհետացել է:*

**Առաջին դամբարանը** *ամենափոքրն է և ունի պարզ հատակագծային լուծում: Այն մի ուղղանկյունի է՝ կողերի տարբեր չափերով, որոնցից մեկը 2,75 մ է, դիմացինը՝ 2,50 մ, երկարությունը՝ 4,0 մ, բարձրությունը՝ 2 մ: Դամբարանը ծածկված է 5 խոշոր սալաքարերով: Պատերի հաստությունը 1, 25 մ է, որոնք դրսից շարված են կոպտատաշ, իսկ ներսից սրբատաշ բեկորներով. նրանցում բացված են երկու շարք խորշեր:*

*Դրոմոսը, եթե կարելի է այդպես անվանել 0,90 մ լայնությամբ, 2,50 մ երկարությամբ և 2,25 մ բարձրությամբ մուտք-միջանցքը, դրսից փակված էր մեծ սալաքարով, իսկ միջանցքի մասում՝ կասետային ձևով, 0,25×0,50 մ անցքով իր միջին մասում:*

*Դամբարանի առաստաղի սալաքարերը ծածկված էին խճաքարի և կավի 1,50 մ ընդհանուր հաստությամբ շերտով, իսկ կառույցի եզրագծով բարձրացող քարե պատերը պարփակում էին աշտարակաձև ներքնամասը, որը կազմում էր նրա երկրորդ հարկը: Ինչպես կարծում է Թահսին Օզգյուչը, այդ հարկը ծառայել է պաշտամունքային ծիսակատարություններին՝ նվիրված հանգուցյալի հիշատակին:*

*Այս կարևոր հայտնագործությունը տվյալ կառույցը նմանեցնում է Աղցի դամբարանի հետ, որը նույնպես իր վրա ուներ աշտարակաձև ծավալ, ինչպես և խորշեր դամբարանի մասում: Կառույցների նման հորինվածքը՝ ստորգետնյա դամբարանը և վերգետնյա աղոթարահը հետագայում դասական հայ ճարտարապետության մեջ լայնորեն տարածվում և ընդունում է արտաքին ձևերի վերասլաց արտահայտություններ:*

**Երկրորդ դամբարանը** *ծավալով ավելի մեծ է և ունի երեք, իրար հավասար ներքնամաս, յուրաքանչյուրը 2,0×3,05 մ չափերի և նախորդ դամբարանի համեմատությամբ ավելի բարձր (2,75 մ) առաստաղով: Պատերը շարված են երկու շարք սրբատաշ քարերով, որոնք սենյակների երկայնական առանցքով կրում են կեղծ կամարներ կազմող 3-րդ և 4-րդ շարքերը:*

*Պատերի մեջ բացված են կիսակլոր վերջավորություն ունեցող խորշեր:*

*Դամբարանը դրսից, կենտրոնական սենյակի առանցքով ունի 0,80×1,27 մ չափերի մուտք, որը փակված է երկու սալաքարով, որոնցից ներսինը կասետային ձևով է:*

*Վերջին եղանակով մուտքը փակելու ձևը հայտ-*





Ա







0 20 40 60սմ

Բ






Գ

*Աղ. 43. Ջրատար խողովակների ձևեր*

նի էր դեռևս Եգիպտոսում։ Քեոփսի բուրգի միջանցքը այդպես էր փակված։

Ալթին-Թեփեի այս դամբարանը ևս նախորդի նման իր ծածկի մասում ունեցել է կավի ու խճաքարի իրար հաջորդող 1,04 մ ընդհանուր հաստությամբ շերտ, որը կազմել է 2-րդ հարկի սենյակի հատակը։ Սակայն սենյակի պատերը ոչ թե քարից էին, ինչպես առաջին դամբարանում, այլ հում աղյուսից։ Նման հորինվածքը, որտեղ երկրորդ հարկը նույնպես նախատեսված է ծիսակատարությունների համար, հավանաբար, ավանդական էր։ Նմանը գոյություն ուներ նաև փյունիկյան Գեբելում (Բիբլոս) դեռ II հազարամյակի սկզբում այնտեղ կառուցված դամբարաններում։

Ալթին-Թեփեի այս երկու դամբարանները, որոնք գտնվում են իրարից ընդամենը 2 մետր հեռավորության վրա, ինչպես եզրակացնում է Թ. Օզգյուչը, կազմել են մեկ միասնություն։

**Երրորդ դամբարանը** գտնվում է առաջինից 16 մետր հեռավորության վրա, իսկ նրանց միջև ընկած է կառուցապատման համար անհարմար ու մեծ կարծրություն ունեցող ապառաժե լեռան հատված։ Այս դամբարանը նախորդներից ավելի մեծ է և կազմված է 3 ներքնամասից։

Առաջին սենյակը, որն ընդամենը 8 քառակուսի մետր մակերես ունի, դամբարանի նախամուտքն է։ Դրան կից է ավելի մեծ՝ 2,5×4,0 մ չափերի հիմնական սենյակը, որտեղ պատերին կից տեղավորված են իրար նկատմամբ ուղիղ անկյան տակ գտնվող երկու սարկոֆագ։ Թ. Օզգյուչը հանգում է այն եզրակացության, որ նրանց դասավորության մեջ կողմնորոշումը որպես այդպիսին նկատի չէր առնվում։ Այս սենյակի պատերի մեջ, ինչպես և մյուսներում, արված են խորշեր։

Երրորդ սենյակը, որն ամենափոքրն է (2,00×2,50 մ), նախորդի հետ կապված է դռան նեղ բացվածքի միջոցով (0,75 մ), իսկ դրսի դուռը փակվում էր մյուս դամբարանների նման։ Այս կառույցը իր կառուցողական եղանակով նման է նախորդներին։ Այստեղ ևս ծածկը 3 մ երկարություն ունեցող հարթ սալաքարերից է կազմված։ Նրանց վրա բարձրանում էր երկրորդ հարկը, որի պատերի միայն պահպանված մասերի բարձրությունը 4 մետր է։ Հետևապես, այս դամբարանը ևս մյուսների նման իր արտաքին ծավալներով աշտարակաձև կառույց էր։

Սակայն մյուսների համեմատությամբ այն շատ ավելի հարուստ էր հնագիտական նյութերով՝ սեղաններ, աթոռներ, գահերի մասեր, խեցեղեն ու բրոնզյա իրեր, թանկարժեք քարեր, արծաթյա ու ոսկյա, փղոսկրյա առարկաներ։ Այս դամբարաններում մի շարք իրեր ունեն սեպագիր արձանագրություններ, որոնցով հաստատվում է կառույցների ժամանակաշրջանը։ Այսպես, առաջին դամբարանի բրոնզե մի սափոր իր վրա կրում է Կիլիկիայի թագավոր Ուրիկկիի անունը, որը թագավորել է մ.թ.ա. 740—732 թթ.։

Երրորդ դամբարանի բրոնզե իրերի վրա հայտնաբերված արձանագրության մեջ կարդում ենք Ռուսայի որդի՝ Արգիշտիի անունը, որով էլ որոշվում է տվյալ կառույցի ժամանակաշրջանը՝ մ.թ.ա. 714—685 թթ.։

Այն հանգամանքը, որ 3-րդ դամբարանի երկու սարկոֆագից մեկում ամփոփված էր տղամարդու, իսկ մյուսում կնոջ աճյուն, որն, ի դեպ, հարուստ զգեստով ու թանկարժեք քարերով էր զարդարված, հաստատում է, որ կառույցը բարձրաստիճան անձանց ընտանեկան դամբարան էր։

Այսօր հայտնաբերված ուրարտական դամբարանները գտնվում են կա՛մ միջնաբերդի բլուրների թեք սարալանջերին և կա՛մ մոտակա լեռների վիմափոր կառույցներում, կա՛մ նրանց համար նախատեսված առանձին տարածքներում, ինչպես այդ կարելի է տեսնել Եգիպտոսում, աքեմենյան Իրանում և այլուր։

Թաղման դամբարանային ձևը վերապահված էր ավելի վերնախավին։ Ազգաբնակչության մյուս խավերի համար ընդունված էր դիակիզումը ու մոխրի պահպանությունը համապատասխան սափորներում։ Մի շարք այդպիսի միատիպ սափորներ, ընդ որում մի քանիսը մոխրով լի ու իրենց նախնական վիճակում, պահպանվել են Երրորդ դամբարանի հատակի 10—20 սանտիմետր խորության մեջ։

Եթե ուրարտական վիմափոր դամբարաններն ընկղմված են ապառաժ լեռների խորության մեջ, ապա վերերկրյա դամբարանները զարգանում էին ուղղաձիգ ուղղությամբ իրենց երկու հարկով, որտեղ առաջին հարկն ինքը դամբարանն է՝ փոքր չափերի պահեստային սենյակով, իսկ երկրորդը ծիսական արարողությունների համար էր նախատեսված։

Ալթին-Թեփեի դամբարանների կառուցողական արվեստում առանձնակի շեշտված է քարի ռացիոնալ օգտագործումը։

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ՃԱՐՏԱՐԱԳԻՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՅՑՆԵՐ

### Ոռոգման ջրանցքներ ու ջրատար համակարգեր

*Հայտնի է ոռոգման դերը Հին արևելքում[1]։ Ուրարտուի հողագործության, այգեգործության ու անասնապահության զարգացման հնարավորությունները սերտորեն կապված էին արհեստական ոռոգման հետ, որի շնորհիվ գյուղատնտեսությունը երկրում դարձավ առաջատար բնագավառներից մեկը։*

*Հարկ է հիշատակել, որ ջրանցքաշինությունը Ուրարտուում գտնվում էր կենտրոնական իշխանության ձեռքում. այդ տեսակետից հատկապես աչքի ընկնում է Մենուա թագավորի գործունեությունը, որի թողած արձանագրություններից 14-ը վերաբերում են ջրանցքաշինությանը։*

*Ջրանցքները, որոնք ուրարտերեն կոչվում են* pili, *երկրում կազմում էին լայն ցանց, կապելով դրանք սնող մեծ գետերը, որոնց ոչ բոլորի անուններն են մեզ հասել[2]։ Հայտնի են միայն Դաինալա-ունինի, որը նույնացվում է Արածանիի հետ, Ալաինինի, Բենգի-մախինի, Իլդարունիան, որը Հրազդանն է։ Բացի գետերից, ջրանցքները նաև ջրային այն պաշարներն էին, որոնք գոյանում էին լեռնային աղբյուրներից, լճակներից, ինչպես նաև լեռների ծալքերում մթնոլորտային տեղումներից կուտակված ջրերից։*

*Ուրարտական ջրանցքները ճարտարագիտական առումով կառույցների բավական զարգացած համակարգեր էին և համարյա միշտ ջրաբաշխական ցանցը ուներ նաև տեղական նշանակության ճյուղավորումներ։*

*Ջրանցքներն անցնում էին երկրաբանական դժվար հաղթահարելի տեղանքներով, ուղղաձիգ ժայռերի ստորոտներով, թունելներով, երբեմն էլ ստորգետնյա արհեստական ուղիներով, դաշտավայրերով կամ ջրանցույցների վրայով։ Հաճախ ջրանցքների համակարգում ջրերի հոսքը կայուն պահելու նպատակով կառուցվում էին կարգավորիչ ջրամբարտակներ։*

*Մյուս կողմից, ջրանցքների ջրերն առավելագույն արդյունավետությամբ օգտագործելու նպատակով նրանց վրա հիմնվում էին ջրաղացների շարքեր։*

*Ուրարտական ջրանցքներից պահպանվել են բազմաթիվ, նույնիսկ առայսօր գործող կառույցներ, որոնցից առավել կարևորներն են՝ Մենուայի կամ Շամիրամի ջրանցքը, որը շարունակում է ոռոգման ու խմելու ջուր մատակարարել Վան քաղաքին, Մարանդի ջրանցքը՝ պատմական Ուլխու քաղաքի մոտ, Խոտանալուի ջրանցքը, Մենուայի սեպագիր արձանագրության մեջ հիշատակված Մենիդաինի քաղաքի ջրանցքը, որը, հավանաբար, կառուցված էր Արածանիի ձախ ափին, Հոկտեմբերյանի ջրաբաշխական ցանցը, Ումեշինին, որը սկիզբ է առնում Հրազդանից և առայսօր գործում է։ Գործող է նաև Երևան քաղաքի մյուս ուրարտական ջրանցքը Դալմայում և վերջապես Ալավերդիբենդի ջրանցքը երկրի արևելյան մարզում և այլն։*

*Ջրաբաշխական համալիրների մեջ մտնող առավել նշանակալից ջրամբարներից է Քեշիշ-գյոլ կոչվածը։*

*Ուրարտական ջրանցքները իրենց կառույցներից պահանջում էին ֆիզիկական ուժերի գերլարում, հատկապես այն հատվածներում, ուր պետք էր հաղթահարել լեռնային ապառաժները։*

Իրենց աշխատատարությամբ դրանք կարող են դասվել Հին արևելքի համապատասխան կառույցների շարքը:

Մենուայի ջրանցքը[3]: Այս ջրանցքը, որը հայտնի է նաև Շամիրամի ջրանցք անունով, իր ամբողջ երկարությամբ ունի թվով 14 շինարարական սեպագիր արձանագրություն:

«Խալդի աստծու մեծությամբ, Մենուան Իշպուինիի որդին, այս ջրանցքը կառուցել Մենուայի ջրանցք է անունը (նրա)»:

Հավանաբար ջրանցքը հիմնվել է մ.թ.ա. IX դարի վերջում, VIII դարի սկզբում: Այս ջրանցքի ջրերը սկիզբ են առնում Հայոց ձորի հարավում գտնվող Արտոս լեռնաշղթայի Սարը-բուլաղ սարի շրջակայքում, Խոշաբ գետից 5 կմ հարավ, Վերին Մժնկերտ գյուղի բազմաթիվ աղբյուրներից: Այդ ակունքներում գտնվում է 20 $մ^2$ մակերես ունեցող ջրամբարատակ, որի ջրերը գոյանում են հատակից ժայթքող աղբյուրներից: Վ. Բելկի հաշվարկներով՝ ջրամբարատակի բոլոր աղբյուրները միասին մեկ վայրկյանում տալիս են շուրջ 1500 լիտր ջուր:

Մենուայի ջրանցքի երկարությունը 70 կմ է. սկիզբ առնելով Վերին Մջնկերտից, այն անցնում է գյուղի մոտով և հասնում մինչև Խոշաբ գետը, որը հաղթահարվում է փայտաշեն ջրանցույցի օգնությամբ: Վերջինս բավական մեծ կառույց է, մոտ 15 մ երկարությամբ, 3 մ լայնությամբ և 3 մ բարձրությամբ: Ջրանցույցից դուրս, ավելի ընդարձակ տարածքներում, ջրանցքի լայնությունը հասնում է մոտ 4,5 մետրի: Հոսանքի արագությունը կազմում է 3 մ վայրկյանում:

Ջրատարի կառուցման առավել դժվարին հատվածները Արտամեդի լեռնային տարածքներն էին, որտեղ նրա շինարարության համար պահանջվել էր կատարել մի շարք բարդ ճարտարագիտական կառույցներ: Ջրատարը շրջանցելով անընդհատ կիրճեր ու բլուրներ, մեծ մասով ընթանում էր ուղղաձիգ ապառաժների կամ բլուրների, անցնում նրանց ստորոտներով, ուստի նրա հակադիր կողմերը ամրացվում էին հզոր հենապատերով: Դրանց որմածքը իրականացվում էր բազալտի մեծածավալ բեկորներով, իսկ պատերի բարձրությունը երբեմն հասնում էր շուրջ 20 մետրի, որն իր արտաքին տեսքով նմանվում էր Հին արևելքին բնորոշ ճարտարապետական մոնումենտալ կառույցներին[4]:

Մենուայի ջրանցքով առատորեն հոսող ջրերը Վերին Մջնկերտի սահմաններում ստեղծել էին բարենպաստ պայմաններ նաև նրանց կրկնակի օգտագործման, այն է՝ ջրաղացներ աշխատեցնելու համար: Ինչպես ցույց է տալիս ավանդական «Ջըլ-աղ» անվանումը, որը քրդերեն նշանակում է «քառասուն ջրաղաց», այստեղ եղել են քառասուն ջրաղացներ, որոնցից մեր դարի առաջին քառորդում գործել են շուրջ կեսը: Ի դեպ, Վարագ լեռան մոտ գտնված ջրաղացի քարերից մեկը, որը ներկայումս պահվում է Վրաստանի պատմության թանգարանում, Գ. Ծերեթելու կարծիքով, հենց ուրարտական դարաշրջանի է:

Ջրաղացների գոյությունը Ուրարտուում վաղ շրջանի պարզունակ աղորիքների հետ միաժամանակ հաստատում են տնտեսության անցումը տեխնիկական ավելի կատարյալ ձևերին:

Մենուայի հրաշակերտ ջրանցքը, ինչպես այն անվանել էր Լինչը, ոռոգելի ջրերի իր հիմնական մասը մատակարարում է ժամանակակից Վան քաղաքի Շամիրամ թաղամասի այգիներին: Հետաքրքիր են Մովսես Խորենացու այն հաղորդումները, որոնցում ասված է, թե «գետի մի մասը քաղաքի մեջ բաշխելով (Շամիրամը) անց է կացնում ամեն տեսակ բուրաստանների ու ծաղկանոցների ոռոգման համար, իսկ մյուս մասը (անց է կացնում) ծովակի աջ և ձախ ափերով՝ քաղաքի և բոլոր շրջակայքի ոռոգման համար»[5]:

Այսպիսով, Տուշպան ժամանակին եղել է կանաչապատված ու բարեկարգ քաղաք՝ դարերով անընդմեջ ու անխափան գործող Մենուա ջրանցքի շնորհիվ: Ինչպես կարծում է Բ. Բ. Պիոտրովսկին, ջրանցքի պահպանությունը ապահովում էր Խորգոմ գյուղի մոտ գտնվող միջին չափերի մի բերդ, որն իշխում էր Վանա լճի հարավարևելյան ամբողջ հարթավայրի վրա, որտեղից էլ անցնում է այդ ջրանցքը[6]:

Ոռոգման ջրանցքներին մոտ կառուցված բերդերը, ապահովում էին տվյալ համակարգերի անխափան գործունեությունը[7] պարբերաբար վերանորոգումների միջոցով վերացնելու վթարները: Այդ նույն ջրանցքի պահպանության համար նըման նշանակություն ունեցող բերդերի շարքին է դասվում նաև Հայկաբերդը, որը կանգնած էր Բոլ-դաղ լեռան բարձունքին՝ Վանից 25 կմ հարավ:

Սակայն, ինչքան էլ մեծ ու կատարյալ էր Մենուայի ջրանցքը, նրանով չի սահմանափակվել Տուշպայի շրջանի տարածքների ոռոգման խնդիր-




Աղ. 44. Ամրոցների պատերի ձևեր

ների լուծումը։ Այն ունեցել է շատ ավելի ընդարձակ և զարգացած ջրաշինական բազմապիսի կառույցների մեծ համալիր։

Մենուայի ջրանցքի համակարգին միացած արհեստական Քեշիշ-գյոլ կոչված լիճը, որը գտնվում է Տուշպայից 40 կմ արևելք, Տոնի գյուղի շրջակայքում, կառուցվել է հետագայում Ռուսա Ա-ի կողմից և նրա անունով էլ կոչվել։ Այդ լիճը, սնվելով շրջակա լեռներից հոսող ձյան ու անձրևաջրերի հաշվին, տվյալ համակարգի ոռոգող ջրերի կարգավորիչ կառույցն է։ Ինչպես հաղորդում է Ռուսայի սեպագիր արձանագրությունը, լճից դուրս բերված ջրանցքները ուղղված էին դեպի Ռուսախինիլին (Թոփրախ-կալե)։

Ուլխուի ջրանցքը գտնվում էր պատմական համանուն քաղաքում, Ուրմիա լճից 40 կմ հյուսիս-արևելք, ժամանակակից Մարանդ քաղաքի սահմաններում։ Այդ կառույցի մասին մանրամասն տեղեկություններ է հաղորդում Սարգոն Բ-ն։ Վերևում նշված արձանագրության մեջ, որը ուրարտագիտության մեջ հայտնի էր «Լուվրյան աղյուսակ» անունով, միակ աղբյուրն է այդ կառույցի մասին, մանավանդ, որ տեղում հնագիտական աշխատանքներ չեն կատարվել և որևէ հետք չի երևում։

Ինչպես հաղորդում է Սարգոն Բ-ն, Ուլխուն գտնվում էր բլրի ստորոտում։ Ջրանցքը, հավանաբար, անցնում էր քաղաքի միջով և այն հատվածում, ուր Ռուսա Ա-ն կառուցում էր իր պալատը, ջրանցքն այնքան լայն էր, որ Սարգոն Բ-ն այն համեմատում է Եփրատի հետ[8]։

Ջրանցքի համար անհրաժեշտ լայնության ստեղծումն այստեղ հնարավոր էր, քանի որ Մարանդի այդ տարածքն առավելապես հարթավայրային է։ Սարգոն Բ-ի հաղորդումից պարզվում է, որ հիմնական ջրանցքից ճյուղավորվում էին «բազմաթիվ առուներ», որոնցով ստեղծված էր լայն ցանց՝ մեծ տարածքների ոռոգման համար։ Տեղանքի պայմանները հնարավորություն էին տալիս ստեղծել այս ջրանցքի ավելի պարզ ճարտարագիտական կառույցներ, քան Մենուայինը Տուշպայում։ Ջրանցքն ուներ գլխամասի կառույց, ինչպես նաև ստորգետնյա խողովակներ, որոնք հիմնովին ավերվել էին ասորեստանցիների կողմից։ Գլխամասը Սարգոն Բ-ն փակում է, որի հետևանքով ջրերը ծածկելով դաշտերը, առաջացնում են ճահիճներ, իսկ ստորգետնյա խողովակաշարի մասին նա ասում է. «Ես ցույց տվեցի արևին»՝ այսինքն ավերեցի։

Ումեշինի ջրանցքը անցնում է Կարմիր բլուրի հյուսիսային սահմաններով։ Այն կառուցել է Ռուսա Բ թագավորը, որը թողել է բավական ընդարձակ սեպագիր արձանագրություն[9]։ Սեպագիրը հայտնաբերված է Զվարթնոցի տաճարի պեղումների ընթացքում։ Այդ արձանագրության մեջ նշվում է, որ ջրանցքը սկիզբ է առնում Իլդարունի գետից, որը Հրազդանն է, և ոռոգում է Կուարլինիի հովտի (այժմ՝ Էջմիածնի շրջան) հողերը, որոնք առաջ ամայի էին։ Ռուսա Բ-ն հատկապես նշում է պտղատու և, մասնավորապես, խաղողի այգիների մասին, որ նա այստեղ աճեցրել է, որոնք հետագա դարերում մեծ տարածում ու համբավ ստացան։

Ումեշինի ջրանցքի ընդհանուր երկարությունը, ժամանակակից վերակառուցումներով, կազմում է մոտ 2,7 կմ։ Կարմիր բլուրի տարածքում այն անցնում է Հրազդանի աջափնյա ժայռի ուղղաձիգ պատի տակով։ Այս հատվածում է գտնվում ջրանցքի ճարտարագիտական կարևոր կառույցը՝ նրա թունելը (լուսանկ. աղ. 23 ա, բ)։ Վերջինիս երկարությունը 220 մ է, որը փորված է անդեզիտաբազալտե ապառաժ լեռան խորության մեջ։ Ուրարտացիների օրոք ջրանցքի կարողությունը մեկ վայրկյանում $1^1/_2$ մ$^3$ էր, որով ոռոգվում էին Կուարլինիի շուրջ 1000 հեկտար հողատարածությունները։

Արարատյան դաշտավայրի տվյալ հատվածի այն հողերը, որոնք գտնվում են Ումեշինի ջրանցքի նիշից բարձր ու հետևապես չէին կարող ոռոգվել նրա ջրերով, ոռոգվում էին մի այլ՝ Դալմայի ստորգետնյա ջրանցքով[10]։

Այդ ջրանցքի ժամանակակից անվանումը պարսկերեն «դոլմիե» բառից է, որը նշանակում է ստորերկրյա անցք։ Եվ, իրոք, ջրանցքի երկարությունը մոտ 7 կմ է, որն անցնում է Երևանի տարածքի մակերեսից 6 մ ցած և որի 51 և 450 մ հատվածներն անցնում են թունելների միջով, որոնք իսկապես ավելի շատ անցքի են նման, քան թունելի։

Կարծում ենք, որ ուրարտական այս «Դոլմիե» տիպի ստորգետնյա ջրանցքները հայտնի քյահրիզների նախատիպերն էին, որոնք ժամանակին լայնորեն տարածվեցին Իրանում, Իրաքում, Աֆղանստանում և այլուր[11]։

Արգիշտիխինիլիի ջրանցքի մնացորդները գտ-

նըվում են քաղաքի շրջակայքում։ Ջրանցքը ոռոգում էր լայնատարած հողամասեր և Ուրարտուի ոռոգման համակարգի կարևոր կառույցներից էր Արարատյան դաշտավայրում։ Այդ կառույցի մասին հաղորդում է Արգիշտի Ա-ն՝ Սարդարապատի արձանագրության և իր հայտնի խորխորյան տարեգրությունում։ Նա Սարդարապատի արձանագրության մեջ ասում է, որ Արաքսից 4 ջրանցք է անցկացրել, իսկ խորխորյան տարեգրություններում հատկապես նշում է, որ ջրանցքը կառուցված է Ազա երկրի համար։

Մայր ջրանցքի գլխամասն իր սկիզբն առնելով Արաքս գետից՝ Ղարաղալայի մոտ, ձգվում է հյուսիս-արևելք, իր երկու ճյուղերով Արգիշտիխինիլին ամփոփելով իր մեջ հյուսիսից ու հարավից։

Համաձայն Հ. Մարտիրոսյանի հետազոտությունների[12], Ազա երկրի տվյալ տարածքի բոլոր ջրանցքների երկարությունը, իրենց առուներով հանդերձ, կազմում էր շուրջ 40—50 կմ, ոռոգման ցանցի մի մեծ ու զարգացած համալիր։ Եթե նկատի ունենանք, որ ժամանակին ջրանցքի հունն ուներ 10 մ լայնություն և 1,5 մ խորություն, ապա այն իրոք մի գետի պետք է նմանվեր, ինչպես Սարգոնը բնութագրում է Ուլխուի ջրանցքը։

Այդ ջրանցքի ողջ համակարգը ոռոգում էր Արգիշտիխինիլիին պատկանող մի ընդարձակ գյուղատնտեսական շրջան, որի մակերեսը կարող էր հասնել մոտ 10000 հեկտարի։

Առ այսօր, թեև մասնակի, գործող մի այլ ջրանցք անցնում է Ուրարտուի արևելյան մարզի գյուղական բնակավայրերի կենտրոն հանդիսացող Ալավերդիքենդ քաղաքի շրջակայքում, որը գըտնըվում է Բաստամից 20 կմ արևելք։ Ջրանցքը ոռոգում է գյուղական մեծ ու, ըստ երևույթին, բավական բարեկարգված տարածքներ։ Այստեղ պահպանված գյուղատնտեսական մշակելի հողամասերի առանձին տնտեսությունների համար նախատեսված հատվածների սահմանազատումները, իրենց տեսակի մեջ պահպանված եզակի օրինակ են։ Հարկ է նշել, որ սահմանազատումը կատարված է երկրաչափական այնպիսի ճշտությամբ, որը յուրահատուկ էր Ուրարտուի հաշվարկային գործին։

Ի մի բերելով ոռոգման գործի հետ կապված շինարարական բոլոր կարգի աշխատանքների մասին եղած տվյալները՝ Ուրարտուի լեռնային տեղանքի բարդ պայմաններում, գալիս ենք այն համոզման, որ այդ աշխատանքները կատարվել են անընդմեջ իրագործվող էմպիրիկ փորձի հիման վրա, որը ի վերջո ձևակերպվեց որպես կառուցողական արվեստի անխախտ օրենք։ Խոսքը վերաբերում է տեսականորեն իմաստավորված ընդհանրացումներին, որպիսի մտքին է մեզ հանգեցնում եգիպտական Ամենհոթեպ Ա փարավոնի մոտ աշխատող Իրիտիսեն քանդակագործի ինքնակենսագրական մի տարեգրություն, որի մեջ նա, թվելով իր գիտելիքները ստեղծագործական տարբեր բնագավառներում, ի թիվս այլոց, ասում է՝ «Ես գիտեի ոռոգման բանաձևերը»[13]։ Իր դամբարանում թողած ինքնակենսագրության մեջ բարձրաստիճան Նեխեբուն հաղորդում է, որ թագավորի հրամանով ջրանցքներ է բացել Եգիպտոսի հյուսիսային ու հարավային մասերում՝ նախապես մշակված նախագծերով[14]։ Ինչպիսիք էլ լինեին այդ բանաձևերը, պետք է առնչվեին տվյալ առարկայի տեսական կողմին և, հավանաբար, տարածված էին նաև ուրարտական շինարարների մոտ։

**Ջրամատակարարման համակարգեր:** Ուրարտական քաղաքներում խմելու ջրի մատակարարման գործը բարվոք վիճակում էր։ Այդ են հաստատում տարբեր տեղերում, հնագիտական հետազոտությունների ու պեղումների ընթացքում ջրատար խողովակների (գծագր. աղ. 43), ինչպես նաև տարբեր չափերի ջրամբարների մնացորդների հայտնաբերումները։ Դրանից է Զիվիտանի ջրամբարտակը, որը կերտված է միջնաբերդի ժայռի խորության մեջ՝ հարավարևելյան կողմից։ Ջուրն այստեղ կուտակվում էր փորված ջրատար առվակի միջոցով։ Նման ջրամբարտակ կառուցված էր Բոստանկայայի միջնաբերդի արևելյան, նույնպես ժայռոտ հատվածում, Անզավուրում, Ավաշին-կալեում, ինչպես նաև մի մեծ ամբարտակ՝ Արգիշտիխինիլիի արևմըտյան միջնաբերդի թեք սարալանջի վրա։ Այս ջրամբարտակը առանձնահատուկ կառույց էր։ Խմելու ջուրը երբեմն բերվում էր տասնյակ կիլոմետր հեռավորության վրա գտնվող լեռնային սառնորակ աղբյուրներից։ Ջրատար նման համակարգերն ունեին ժամանակին համապատասխանող տեխնիկական բարձր մակարդակ։ Բացի ինքնահոս ջրատար համակարգերից, երբեմն օգտվում էին նաև գետերից վերցրած ջրերից։ Տնային պայմաններում ջուրը նախապես մաքրվում էր

թրման եղանակով՝ քարակոփ ավազանի միջոցով, որպիսին, օրինակ, գտնվել է Էրեբունիի տարածքում։

Էրեբունիի միջնաբերդում է հայտնաբերված ուրարտական ջրատար համակարգի լավագույն օրինակը, որը պատկանում է VIII դ. մ.թ.ա.։ Ջրամատակարարումն այստեղ իրացվում էր ինքնահոս ջրատարով, հետևապես ջուրը միջնաբերդ էր հասնում նրա նիշից շատ ավելի բարձր դիրքում գտնվող աղբյուրներից։ Քանի որ նման աղբյուրները, ելնելով տեղանքի աշխարհագրական դիրքից, կարող էին գտնվել հեռավոր լեռների բարձունքներին, ուրեմն ջրատարի երկարությունը պետք է լիներ շուրջ 10 կմ։ Ջուրը քաղաք էր բերվում տուֆե խողովակներով, ստորգետնյա ճանապարհներով։ Այդ տարածքում չկային ինչպես Տուշպայում կամ Ուլխույում, ճարտարագիտական բարդ կառույցներ՝ թունելներ, ջրանցքներ, ջրամբարտակներ և այլն։

Միջնաբերդի պաշարման պահերին ջրատարի անխափան գործունեությունը ապահովելու նպատակով այն կառուցված էր ստորգետնյա համակարգի ձևով։ Այդ պատճառով էլ միջնաբերդում չկար ջրի պաշարների կուտակման համար սովորական ամբարտակ, որպիսիք կային այլ միջնաբերդերում։

Էրեբունիի ջրմուղացանցում օգտագործված քարե խողովակները պատրաստված են մեծ վարպետությամբ։ Նրանց միջին երկարությունը մեկ մետր էր։ Արտաքնապես նրանք գլանաձև են՝ 0,40 մ դրսի և 0,10 մ ներսի տրամագծով։ Խողովակի մի ծայրից դուրս է գալիս նրա միջուկը 0,20 մետր չափով, մյուս ծայրը ունի սրան համապատասխան խորություն՝ կողքի խողովակի ելուստային մասն ագուցելու համար։ Ընդ որում, նրանց միացման տեղում ստեղծված կարերը հուսալիորեն սվաղվում էին։

Խողովակաշարի առանձին հատվածներում կային այնպիսինները, որոնք իրենց վերևի մասում ունեին լայն բացվածք՝ ջրատարի ստուգման ու մաքրման համար։

Պետք է ենթադրել, որ դարերի ընթացքում ջրատարն իրեն լրիվ արդարացրել է, քանի որ այն շարունակել է գոյատևել հազարամյակներ շարունակ։ Նման ձևի խողովակներով ջրմուղի մի այլ համակարգ, նույնպես տուֆաշեն, հնագիտական պեղումներով հայտնաբերված է Երևանի կենտրոնական մասում։

Սակայն, ուրարտական քաղաքներում ջրատարցանցը, բացի քարե խողովակներից, ունեցել է նաև կավե խողովակներ։ Նման խողովակներ կան Կայալիդերեի միջնաբերդում, որոնց երկարությունը 52,5 սմ է, այսինքն՝ մեկ կանգուն, իսկ տրամագիծը՝ դրսից 17,5 սմ, ներսից՝ 12 սմ։ Այս խողովակներն էլ իրենց նեղ մասով մտնում էին մյուսի լայն բացվածքի մեջ, ճիշտ այնպես, ինչպես իրար էին միանում ուրարտական քարե խողովակները։ Նման կավե խողովակների բեկորներ՝ 6 սմ տրամագծով, գտնվել են նաև Թեյշեբաինիի տարածքում։

Էժդահա–բուլաղի աղբյուրը մի ժայռափոր կառուցվածք է, որը գտնվում է Ուրմիա լճից հարավ-արևմուտք, ժամանակակից Ուշնավիեից 18 կմ հյուսիս (Իրան)։ Աղբյուրը մի խորշ է՝ 1,5×2,5 չափերի կիսակլոր վերջավորությամբ և 0,8 մ խորությամբ։ Այստեղ հայտնաբերված են չորս՝ նույն բովանդակությամբ սեպագիր արձանագրություններ, որոնց մեջ ասվում է.

> «Խալդի աստծու հզորությամբ, Մենուան, Իշպուինի որդին, թագավոր է հզոր, թագավոր է մեծ, թագավոր է Բիայնիլի երկրի, տերը Տուշպա քաղաքի։ Մենուան այս աղբյուրը շինեց»։

Ինչպես կարծում է հուշարձանը ուսումնասիրող և արձանագրությունը վերծանող Մ. Սալվինին, աղբյուրի ջուրը խորշից դուրս էր գալիս համապատասխան խողովակով և կուտակվում էր այստեղ կառուցված, իսկ այժմ անհետացած ամբարտակում[15]։

Մ. Սալվինին գտնում է, որ Էժդահա-բուլաղի աղբյուրը կամ ջրհորը, պատրաստված էր ուրարտական այն զորամասերի ու քարավանների սպասարկման համար, որոնք անցնում էին այդ հին ճանապարհով՝ Ուրմիայի հարթավայրի և Ուշնավիեի միջև։ Եթե ճիշտ է նրա այս վարկածը, այդ դեպքում Էժդահա-բուլաղը հիշեցնում է եգիպտական Ալիվադի այն ջրհորները, որոնք նույնպես կառուցված էին համանման երթուղիների վրա։ Հայտնի է, որ Ռամզես I-ը սահմանամերձ Ջարու բերդից, անապատի միջով, դեպի Ասիա գնացող ռազմական ճանապարհի ողջ երկայնքով կառուցել էր խմելու ջրի ջրհորներ, ինչպես նաև այդ տարածքի ողջ երկայնքով բերդեր՝ նրանց պաշտպանության նպատակով։

# ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

## ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱ

Ապրելու հարմարավետ տարածական միջավայրի ստեղծման համար հինարևելյան շինարարները շինանյութերի նախնական տեսակներից ունեին պարզ ու ավանդական քարը, կավը, փայտըն ու երկաթը, որոնք կրում էին կառույցների կոնստրուկտիվ ու ճարտարապետական ձևերի կազմավորման ֆունկցիան:

Այդ շինանյութերի օգտագործմամբ ուրարտական շինարարական տեխնիկան և ընդհանրապես ճարտարապետությունը բնորոշող քաղաքաշինական սկզբունքները՝ մոնումենտալ կառույցները, ջրատար համակարգերը, նրբագեղ կատարված որմնանկարները, ճարտարապետական համաչափությունները և այլն, շինարարական մշակույթի զարգացման բարձր մակարդակ ստեղծեցին երկրում: Հինավուրց վարպետների շինարարական սկզբունքները, որոնք ստեղծվել են փորձի անընդմեջ կիրառման ու զարգացման հիման վրա, ի վերջո պրակտիկայում դարձան այնպիսի հաստատուն կանոններ, որոնց վրա խարսխվում էին Ուրարտուի տարբեր դարաշրջանների շինարարական ավանդույթները:

Դրա հետ մեկտեղ գրեթե անհայտ են մնում շինարարական գործի կազմակերպման ձևերը երկրում, բացի նրանից, որ այդ բնագավառում լայնորեն օգտագործվում էր ստրուկների աշխատանքը:

Շինարարական բարձրորակ աշխատանքների կատարման համար անհրաժեշտ էին համապատասխան մակարդակի վարպետներ: Այդպիսիներն էին նկարիչները, որոնք պալատների ու տաճարների պատերը ծածկում էին գունեղ որմնանկարներով: Բարձր վարպետություն էր պահանջվում նաև մոնումենտալ քանդակով զբաղվող վարպետներից, ինչպես նաև քարգործ վարպետներից, հողաչափերից, ջրմուղների ու բլուրների գագաթներին և նրանց թեք լանջերի վրա միջնաբերդի մոնումենտալ շենքերի կառուցողներից: Հավանաբար, վարպետների այդ մասը եղել են վարձու արհեստավորներ: Ի դեպ, շինարարական տեխնիկայի զարգացումը երկրում զգալիորեն պայմանավորված էր մետաղագործության զարգացմամբ, որը երկրում ուներ իր նշանակալից ավանդույթները՝ սկսած Մեծամորի արտադրական շրջանից: Մետաղագործության նշանակությունը հատկապես մեծ էր աշխատանքային գործիքների ու զենքերի պատրաստման գործում:

Չնայած ուրարտական կառույցներից շատ քչերն են պահպանվել ու մեզ հասել քիչ թե շատ ամբողջական վիճակով, և հնագիտությունն էլ իր հերթին դեռ չի ասել իր վերջնական խոսքը նրանց մասին, այնուհանդերձ, թեկուզ մասնակիորեն, պարզվել են կիրառվող շինարարական նյութերի ու կոնստրուկցիաների տեսակները, ինչպես նաև գծային չափերի ու ճարտարապետական համաչափությունների առանձնահատկությունները:

### Ա. Շինարարական նյութեր

Հնագիտական տվյալները հաստատում են Ուրարտուի պատմական տարածքի հարստությունը՝ շինարարական նյութերով:

Ուրարտական կառույցների հիմնական շինանյութերը բացի քարից ու փայտից, նաև կավն էր, մետաղն ու եղեգը: Քարը որպես արժեքավոր



*Աղ. 45. Զարդանկարներ. Էրեբունի*

շինանյութ նույնիսկ արտահանվում էր Հյուսիսային Միջագետք։

Քարը: Ուրարտուի պատմական տարածքի երկրաբանական հիմքը բնորոշվում է հրաբխային ծագում ունեցող քարի բազմապան տեսակներով, որոնցից անցյալում օգտագործվել են տարբեր տուֆատեսակներն ու բազալտը։ Ուրարտական կառույցների որմածքում բազալտը և տուֆը օգտագործվում էին միաժամանակ, խառը ձևով։ Սակայն տուֆը հիմնականում օգտագործվում էր հիմքերի, ինչպես նաև պատերի ներքին շարքերի, գետնախարիսխների ու սափձանների համար։ Տուֆը օգտագործվում էր նաև խարիսխների, բարձրաքանդակների, ջրատար խողովակների ու նման դրվագների պատրաստման համար։

Բազալտը օգտագործվում էր սալաքարերի, խարիսխների, կոթողային հուշասյուների, դամբարանների և մոնումենտալ քանդակների, սեպագիր արձանագրությունների, տնային ամենատարբեր իրերի պատրաստման համար (լուսանկ. աղ. 32)։

Կավը ամենատարածված շինանյութն էր, որից պատրաստված հում աղյուսներից շարվում էին բնակելի տների, աշխարհիկ ու պաշտամունքային մոնումենտալ շենքերի պատերի վերին շարքերը, նույն կառույցների հատակները։ Կավով ծեփում էին պատերը և ծածկերը։ Կավը խառնվում էր մանրացրած դարմանի հետ, որը նրան հաղորդում էր անհրաժեշտ ամրություն։

Աղյուսները պատրաստվում էին փայտյա հատուկ կաղապարների մեջ և օգտագործվում ինչպես հում, այնպես էլ թրծած վիճակում։

Կավի շաղախը օգտագործվում էր որպես կապակցող նյութ, որը որմածքը դարձնում էր մեկ ընդհանուր կավե մոնոլիտ պանգված։

Աղյուսի չափերը տարբեր հուշարձաններում

| Հուշարձանի անվանումը | Ուղղանկյուն աղյուսի չափերը սմ-ով | Քառակուսի աղյուսի չափերը սմ-ով |
|---|---|---|
| 1. Էրեբունիում | 32,3 47,4 12,5 | 47,4 47,4 12,5 |
| 2. Թեյշեբաինիում | 35,8 51,8 14,9 | 51,8 51,8 14,9 |
| 3. Արգավծում | 35,8 51,8 14,9 | 51,8 51,8 14,9 |
| 4. Թոփրախ-կալեում | 35,0 53,0 14,0 | 53,0 53,0 14,0 |
| 5. Կեֆ-կալեսիում | 35,0 53,0 14,0 | 53,0 53,0 14,0 |
| 6. Ալթին-թեփեում | 35,0 52,0 15,0 | — |
| 7. Աղնավուր-թեփեում | — | 60,0 60,0 10,0 |

Որպես կանոն, աղյուսները երկու տիպի էին՝ քառակուսի և ուղղանկյուն, ընդ որում, նրանց երկարությունը հավասար էր մեկ կանգունի։

Ուրարտուում, ուր ավանդական շինանյութը քարն էր, կավի օգտագործումը մոնումենտալ կառույցներում Միջագետքից ներմուծված շինարարական սկզբունք էր։ Միջագետքում կավը նաև պաշտամունքային հատուկ նյութ էր, քանի որ, ըստ բաբելոնյան ավանդության, մարդը ստեղծվել էր կավից և այդ տեղի է ունեցել այն ժամանակ, երբ երկրի գերագույն աստված Մարդուկը խմատուն էակի խորհրդով կավը հունցել էր արյան հետ։

Շինարարական փայտ: Ուրարտական կառույցներում օգտագործվում էին սոճին, կաղնին, հաճարենին ու կաղամախին։

Պեղումները պարզեցին, որ փայտը որպես շինանյութ արտակարգ դիմացկունություն ունի, թեև այդպիսիք չէին փայտի, որպես շինանյութի մասին նախկինում գոյություն ունեցող կարծիքները։ Այդ հաստատվեց Էրեբունիի պեղումների ընթացքում, երբ այնտեղ խալդիի տաճարի պեղումների ժամանակ հայտնաբերվեցին թվով 8 հեծաններ, որոնք ավելի քան 27 դար անընդմեջ կրում էին տաճարի հոծ պատերի մի հատվածը՝ մեկ մետրանոց թռիչք ունեցող առվակի վրա (լուսանկ. աղ. 29 բ)։ Հաստատվեց նաև, որ այդ հեծաններն իրենց արդի տեխնիկական վիճակով օգտագործելի և դիմացկունության տեսակետից էլ միանգամայն հուսալի շինանյութ են։ Փայտի բոլոր դրվագները, ինչպես ընդգծում են հետազոտողները, պահպանվել են առանց քայքայվելու։ Հետազոտությունները պարզել են, թե որքան ամուր ու երկարակյաց կարող է լինել փայտը որպես շինանյութ, եթե այն համապատասխանաբար պահպանված է կենսաբանական քայքայումներից։

Այն մասին, թե ինչ արժեք ուներ ուրարտական շինարարական փայտը Ասորեստանի համար, կարելի է դատել մ.թ.ա. 714 թ. Սարգոն II-ի հայտնի արշավանքների նկարագրություններից, երբ Ասորեստան էին տարվում ուրարտական Ուլխու քաղաքի գերված պալատի նույնիսկ ծածկի հեծանները[1]։ Սակայն, ոչ միայն Ասորեստանում էր արժեքավորված ուրարտական շինանյութը։ Ինչպես երևում է եգիպտական Ամենոփիս Երկրորդ փարավոնի արձանագրությունից (1485 թ. մ.թ.ա.), Հայաստանից Եգիպտոս էր տեղափոխ-

վում հատուկ ամրություն ունեցող այն փայտը, որից նրանք պատրաստում էին իրենց մարտակառքերը։ Հավանական է, որ այդ տեսակը աճում էր Արարատ լեռան շրջակայքում։

## Բ. Շինարարական գործիքներ

Նկատի ունենալով ուրարտական շինարարական տեխնիկայի կատարողական արվեստի բարձր որակը, կասկածից դուրս է, որ նրանց կառուցողներն այն ժամանակ ունեցել են շինարարական հայտնի բոլոր գործիքները։ Թեև նրանց հետքերը պարզ տեսանելի են պահպանված կոնստրուկցիաների (մշակված քարի, փայտի, մետաղի) վրա, սակայն առայժմ հայտնաբերված օրինակները լրիվ չեն։

Կացին է հայտնաբերվել Թոփրախ-կալեում, որն այժմ պահվում է Բեռլինի Թանգարանում[2]։

Ուրարտուի արևելյան մարզերում (ժամանակակից Իրանում) Վ. Կլայսը հայտնաբերել է քարի մշակման համար լավ պահպանված երկաթե մուրճ՝ 19,5 սմ երկարությամբ, որի բարակ ու սուր ծայրը քարի տաշման համար է, իսկ բութ ծայրը՝ քարը հարթեցնելու։ Մուրճը կամ դարաշը ունի համապատասխան անցք փայտե կոթ հագցնելու համար։ Սա արդեն ուրարտական շինարարի այն իսկական գործիքն է (ի դեպ՝ մոտ մեր ժամանակիվա համապատասխան մուրճի ձևվին), որով նա մշակել էր քարը[3]։

Հավանաբար, եղել են նաև սրածայր այնպիսի գործիքներ, որոնցով բազալտ քարի վրա փորագրվում էին կամ փորվում սեպագիր արձանագրությունների մանր ու հավասարատաշ սեպերը։

Փայտ, ոսկոր, եղջյուր մշակելուն էր ծառայում մետաղյա սղոցը՝ գտնված Կարմիր բլուրում[4]։

Գտնված իրերի շարքում են նաև աստեղտանյան տիպի «գիգատի»-ները՝ խոշոր չափերի բրոնզյա մեխերը, որոնք, հավանաբար, օգտագործել են շինարարության ընթացքում, մասնավորապես փայտյա մասերը միացնելու կամ բրոնզյա թիթեղները փայտյա մակերեսներին ամրացնելու համար։

Նկարիչների գործիքներից էին կարկինը, որ օգտագործվում էր որմնանկարների շրջանաձև հորինվածքներում զարդաքանդակներ գծագրելու համար։

## Գ. Շինարարական կոնստրուկցիաներ

Դատելով ուրարտական քարե ու փայտյա կառույցների ճարտարապետական ձևերից, կարելի է ասել, որ յուրաքանչյուր ձևը զարգանում էր տվյալ շինանյութի հատկություններին համապատասխան։

Այդպիսով, անխզելի կապի մեջ գտնվող կառույցի կոնստրուկցիան ու ճարտարապետական ձևն իրենց կազմավորման ֆունկցիան կրող շինանյութի հետ մեկտեղ կազմում են ներդաշնակ միասնություն։

**Քարե կոնստրուկցիաներ:** Քարը օգտագործվում էր պատերի հիմքերի համար, ընդ որում, հաճախ նրանց համար ստեղծվում էր ավելի լայն հիմնատակ (լուսանկ. աղ. 29 ա)։ Կոնստրուկտիվ այս կատարելագործումը իրացվեց Թեյշեբաինիի շինարարների կողմից, որոնք նկատի ունենալով տեղանքի նույնիսկ ամենաչնչին թեքությունը, համապատասխանաբար, իջնող մասի կողմում ստեղծում էին աստիճանաձև հիմք՝ իր հիմնատակով։ Հիմքերի առավելագույն խորությունը գրեթե ամենուրեք հազիվ մեկ մետր է։ Քարե պատերը սովորաբար կազմում են հիմքերի շարունակությունը՝ վերերկրյա մասում պահպանելով նույն հաստությունը։

Սովորաբար, շուրջ 3—4 մետր բարձրություն ունեցող այդ պատերը շարվում էին կոպտատաշ քարերով, կավե շաղախով։ Երբեմն գետնախարիսխներ կազմող որմածքներն ամուր տուֆատեսակներից են, շարված խորանարդաձև բեկորներից։ Դրան հակառակ, Էրեբունիի šuši տաճարի գլխավոր ճակատի որմածքն ամուր տուֆատեսակից է, հղկման աստիճանի մշակված։ Ընդ որում, տաճարի հիմքերն ու գետնախարիսխները ոչ միայն իրարից տարբերվում են, այլ նաև կառուցված են տարբեր եղանակով։

Պատերի շարվածքում ավելի մեծ չափերի քարերի ենք հանդիպում՝ Հայկաբերդում (լուսանկ. աղ. 30 ա), Էրեբունիում, իսկ Սարդուրի Ա-ի օրոք Տուշպայի միջնաբերդի պատերի կառուցման համար օգտագործվել են խոշոր չափերի կրաքարեր, որոնք Տուշպա են բերվել առայժմ անհայտ Ալնիանի քաղաքից։

Սակայն մշակված ու կանոնավոր երկրաչափական ձևերով քարե (բազալտ) կոնստրուկցիաները, արտահայտելով կառուցվածքի ծավալա-

տարածական լուծման հստակությունն ու պարզությունը, ցայտուն կերպով դրսևորվում են Ալթին-Թեփեի դամբարաններում, որոնք այդ առումով ուրարտական շինարարական արվեստի ամենակատարյալ օրինակներն են։ Այդ են հաստատում քարե հեծանների վրա պահվող լայն ծածկասալերը կամ կեղծ կամարի սկզբունքով առանձին բեկորներից հավաքված թաղակապ ծածկերը։ Ի դեպ, դրանցից առաջինը հիշեցնում է Եգիպտոսի սֆինքսի տաճարի, իսկ երկրորդը Աբիդոսի ու Դեյր-էլ-Բահրի կառույցների ծածկերը։

Քարաշեն էին նաև մուտքերի աստիճանները, որոնք հայտնաբերվել են էրեբունիում, Արգիշտիխինիլիում և այլուր (լուսանկ. աղ. 11, 12, 33)։

Քարի մշակման ամենատարածված ձևը Ուրարտուում արհեստական քարայրերի ստեղծումն էր։ Եթե նկատի ունենանք, որ քարայրերն ամուր բաղալտի մեջ խորասուզված մեծ տարածքներ են, ապա պարզ կդառնա նրանցում ներդրված դերծանր աշխատանքների ողջ պատկերը։

Այս աշխատանքները սկսվում էին մուտքից, ապա, ընդլայնվելով, տարածվում խորության մեջ։ Հավանաբար, այդ ընթացքում էլ աշխատանքների կատարումը ենթարկվում էր համապատասխան հաշվարկների, ինչպես կարծում է Չարլզ Բըրնեյը՝ Կայալիդերեի քարայրի պատերին հնում փորագրված գծիկների միջոցով կատարված նշումների հիման վրա[5]։

Անդրադառնալով ուրարտական բերդապարիսպներին, պետք է ասել, որ նրանք ունեին հորինվածքների տարբեր ձևեր՝ աշտարակների ու որմնահեցերի համապատասխան դասավորությամբ, որոնցում նկատելի է նրանց ստեղծողների ձգտումները՝ բերդապարիսպներին հաղորդել կոնստրուկտիվ հաստատուն կայունություն ու հզորություն, հետևապես՝ պաշտպանական ունակություն[6]։

**Կավակերտ կոնստրուկցիաներ:** Սրանցում ամենատարածվածը հում աղյուսի որմածքն է (գծագր. աղ. 39)։ Ստեղծված երկու տիպի՝ քառակուսի և ուղղանկյուն աղյուսների օգտագործումով ապահովվում էր որմածքների շարքերի կապը (լուսանկ. աղ. 30 բ)։ Այդ կապն իրականացվում էր նաև պատերի լայնական և երկայնական ուղղություններում, որոնցում որմածքի վերևի շերտի աղյուսի շարքը մի քանի սանտիմետրով տեղաշարժվում էր երկայնական առանցքի ուղղությամբ։

Որմածքի աղյուսները շարվում էին ճակատային մասից, որից հետո շարվում էին միջին աղյուսները և այդ ընթացքում առաջացած անճշտությունները մարվում էին ի հաշիվ ներսի շարքերի։ Ուրարտական կառույցներում հում աղյուսի պատերն ունեին 2,12 մ մինչև 3,77 մ լայնություն։ Չափերի հիմքում ընկած էր ուրարտական կանգունը, որով և չափում են պատերը (չորս, հինգ և յոթկանգունային պատեր)։

**Հատակը:** Հատակի կառուցվածքին նախորդում էր սենյակի ներքնամասի հարթեցումը նրա ողջ տարածքով, որից հետո այն շարվում էր մի շերտ աղյուսով, ապա ծածկվում կավով։ Հարթեցված մակերեսի վրա շարվում էր աղյուսի նոր շերտը, որը ծածկվում էր 5—7 սմ կավաշերտով և նորից հարթեցվում կավե 2 սմ սվաղված շերտերով։

Մի շարք այլ սենյակներում հատակների կառուցումն այլ էր։ Ժայռը նախապես հարթեցվում էր և ապա ծածկվում խճի ու կավի շերտերով, ապա սվաղվում կավով (գծագր. աղ. 41)։

**Ծածկեր:** Կամարը ուրարտական ճարտարապետության մեջ հայտնի է վիմափոր կառույցներում, կառույցներ պատկերող հարթաքանդակների վրա (լուսանկ. աղ. 21 բ)։ Հայտնի են նաև աղյուսներից շարված կամարներ (լուսանկ. աղ. 31)։

Կամարները շարվում են Եգիպտոսում և Ասորեստանում ընդունված համակարգի ձևով, այսինքն՝ ճակատային մասից շերտ առ շերտ, իրար վրա։

**Փայտե կոնստրուկցիաներ:** Փայտը հիմնականում օգտագործվում էր սյուն-հեծանային համակարգերի, միջհարկային և այլ տիպի ծածկերի, կտուրների, ինչպես նաև հակասեյսմիկ գոտիների ու բարավորների համար։ Սյան համար օգտագործված կլոր գերանների առավել մեծ տրամագիծը հավասար է 43 սմ-ի։

Կառույցների ներքին տարածքների ձևերից երևում է, որ հաճախ, ելնելով նրանց մակերեսների ընդլայնման անհրաժեշտությունից, փայտյա հեծանների թռիչքների սահմանափակ հնարավորության պատճառով կիրառվում էին փայտյա սյուների ու մույթերի լրացուցիչ հենակներ։ Նման հենակների քանակը մեկ միավորից աստիճանաբար աճում էր, իսկ երբեմն էլ նրանք դասավորվում էին երեք շարքով, ինչպես այդ պատկերված է մեր աղյուսակում՝ կազմված համապատասխան օրինակների հիման վրա։











*Աղ. 46. Զարդանկարներ և որմնանկարներ. Էրեբունի*

Էրեբունիի միջնաբերդի հում աղյուսի պատերի շարվածքը ամրացված էր փայտյա կապերով, որոնք ունեին հակասեյսմիկ նշանակություն։ Հավանաբար, շինարարական այդ միջոցառումը խեթական կառուցողական ավանդույթների արգասիք է, մասնավորապես մենք նկատի ունենք Զինջիրլիի համանման շինարարական կոնստրուկցիաները։

**Փայտյա միջհարկային ծածկ:** Թեյշեբաինիի միջնաբերդում հայտնաբերված միջհարկային ծածկի առանձին մասերի վերականգնված կոնստրուկցիան հետևյալն է. այն ուներ քառակուսի կտրվածքով հեծաններ (30×32 սմ)՝ դասավորված 50 սմ հեռավորությամբ, որոնց վրա փռված տախտակները (լայնությունը 35 սմ, հաստությունը 16 սմ) կազմում էին երկրորդ հարկի հատակը։ Պատերի խորության մեջ ընկղմված այդ հեծանների ծայրերը նստում էին հում աղյուսի՝ նախապես փռված ավազաշերտի վրա։

Ուրարտական կառույցների հարթ ծածկերից հայտնի է 2 տիպ։

**Առաջին տիպի** ծածկի կրող հեծանները, որոնք տեղադրվում էին ներքին տարածքի լայնական ուղղությամբ, 30—40 սմ հաստությամբ և կողքերից տաշված կիսագերաններ են, դասավորված իրարից 60 սմ հեռավորության վրա, որոնք իրենց հերթին կրում էին քառանկյուն կտրվածք ունեցող (22×16 սմ) հեծաններ՝ դասավորված սենյակների երկայնական ուղղությամբ։ Հեծանները ծածկվում էին ծառի ճյուղերի 5 սմ շերտով, որոնց վրա փռված էր եղեգնի շերտը, որից հետո նույն կարգը կրկնվում է և այդ բոլորը հարթեցվում 15 սմ հողի շերտով։

**Երկրորդ տիպի** ծածկն ունի համանման շերտեր, այն տարբերությամբ, որ նրանում հեծանները կողքերից տաշված էին և այնպես դասավորված, որ հպվեն իրար, այդ պատճառով էլ առաստաղը ներկայացնում էր մի ամբողջ տախտակամած։

**Երկթեք տանիքներ:** Մուսասիրի տաճարը երկթեք տանիքով շենք էր։ Ամենայն հավանականությամբ, ծածկի այդ ձևը Հայաստանում ուրարտական շինարարական ավանդույթների արգասիք է։

**Բարավոր:** Թեյշեբաինիի միջնաբերդում հայտնաբերված փայտյա բարավորի լայնությունը 1,59 մ է, իսկ իր բացվածքում այն հավասար է շուրջ 1,10 մ։ Բարավորն իր ծայրերով նստում էր պատի, իսկ կես հատվածով՝ փայտյա ուղղաձիգ հենարանների վրա, որոնք բարավորի հետ մեկտեղ կազմում էին պատուհանի բացվածքը սահմանող շրջանակը։ Ուղղաձիգ հենասյունը միանում էր բարավորի թեք հարթության հետ, որը և դրա օգնությամբ ամուր էր պահում նրան։

Թեյշեբաինիի քաղաքային շենքերում պահպանված են նաև տուֆ քարից գրեթե միաձև երկու բարավորներ։ Դրանցից մեկը ճակատային մասում ունի ատամնաշար։ Նրա ձևը ցույց է տալիս, որ պատուհանների բացվածքը լայնանում էր դեպի ներքնամաս։

**Դռներ:** Մեր կողմից հրատարակված մի գծագրի վրա պատկերված է Թեյշեբաինիի միջնաբերդում պահպանված մի դռան մնացորդների վերականգնված ձևը, իրեն փակող համարանքով, որն իրացվում էր փայտյա երկու պահունակների անցքերով շարժվող սողնակի միջոցով (գծագր. աղ. № 40)։

Նույն կերպ էր փակվում նաև Թեյշեբաինիի քաղաքի բնակելի մի տան պահեստի լայն դուռը։ Պատի մեջ խրված պահունակի փոխարեն այստեղ կանգնեցված էր ուղղաձիգ սալաքար, որի վերևի մասի համապատասխան կլոր անցքով, սողնակի նման անցնում էր դռան լայնությամբ հավասար մի գերան, որը խափանում էր դռան բացումը։

Ցուցորինակ է Արգիշտիխինիլիի միակտոր քարե դուռը, որը շարժվում է առանցք կազմող իր ելունների միջոցով, ագուցված քարե փոսիկների մեջ։ Հար և նման բազալտե երկու դուռ գտնվում են Թավրիզից հարավ-արևմուտք՝ Սարդարի այգիների կավակերտ պարիսպների մեջ։ Դրանք, հավանաբար, վերցված են ուրարտական հինավուրց շենքերից[7]։

**Քիվեր:** Ուրարտական քիվերը տարբեր ձևերի են (գծագր. աղ. 42 բ)։ Այն քիվերը, որոնց տեսքը պահպանվել է պատկերված որմնանկարների ու հարթաքանդակների վրա, գրեթե հար և նման են Միջագետքի քիվերին։ Ուրարտական այդ քիվերն ատամնավոր են, որոնցից ներքև զարդաքանդակների շարքն է և այդ բոլորը հազիվ նշմարելի դուրս են գալիս ճակատային պատի հարթությունից։ Հավանաբար նման քիվերը շարվում էին քարերից[8], քանի որ կավակերտ ձևերը դիմացկուն լինել չէին կարող։

**Թեյշեբաինիի միջնաբերդի քիվը**, որը քարից է, կազմված է հարթ սալաքարի վրա շարված սըր-

բատաշ վեմերից (լուսանկ. աղ. 32)։ Սրանք ճակատային ընդհանուր հարթությունից դուրս եկող ծավալներ են, որոնք արտահայտվում են նրանց միջև եղած տարածության նկատմամբ 5×8 համաչափությամբ։ Այդ ծավալների միջին մասը հետ է մնում, իսկ դրանից ավելի հետ է ծավալների միջև եղած հարթությունը։ Այդպիսով, ամբողջ քիվը ունենալով 3 հարթություն՝ իր ստվերների միջոցով ստեղծում էր նրա ծավալների արտահայտիչ դրսևորում։

Այս քիվը, հավանաբար, ուրարտական ճարտարապետության տարածված ու հնագույն ձևերից էր, քանի որ այն տեսնում ենք դեռ Մուսասիրի տաճարը պատկերող հարթաքանդակի մյուս շենքերի վրա։

Մյուս քիվը կամ համանման ձևը, որը գտնվում է Վանա ժայռի Նաֆթ-կույու կոչվող վիմափորում, ներկայացնում է պատի հարթությունից դուրս եկող գոտի՝ իր երկշարք կիսակլոր զարդաքանդակների վերջավորությամբ։

## ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԵՐԿԱՐՈՒԹՅԱՆ ՉԱՓԻ ՄԻԱՎՈՐԸ՝ ԿԱՆԳՈՒՆԸ ԵՎ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սկսած XIX դարից, երբ Ցայզինգը ճարտարապետության (ինչպես բնության) համաչափությունների հիմքում մատնանշեց «ոսկե հատման» առկայությունը[9], նրա այդ տեսությունը արագորեն տարածվեց ճարտարագիտության մեջ, ինչպես և իր որոշակի կիրառումը գտավ գործնական աշխատանքներում։ Այդ ժամանակից ի վեր «ոսկե հատումը» դարձավ այն ղեկավար սկզբունքը, որով փորձում էին բացատրել տարբեր դարաշրջանների ու տարբեր ոճական ուղղությունների պատմական հուշարձանների ճարտարապետական համաչափությունները, ընդ որում, երբեմն այն հաջողվում էր կատարել բավականաչափ համոզիչ կերպով։ Այս հանգամանքը զգալիորեն օժանդակեց Ցայզինգի տեսության հետագա զարգացմանն ու տարածմանը, երբ այդ կապակցությամբ առաջացան համաչափության նաև նոր համակարգեր, որոնք իրենցով դուրս մղեցին վաղուց գոյություն ունեցող մոդուլային համակարգը, որ ժամանակին մանրամասնորեն մշակված էր Վիտրուվիուսի[10] ու Վինյոլայի[11] աշխատություններում։

«Ոսկե հատման» վրա հիմնված մի շարք համակարգերից առավել մեծ տարածում գտան Ժոլտովսկու[12], Համբիջի[13] ու Մեսսելի[14] տեսությունները։ Դ. Համբիջը ի վերջո եկավ այն եզրակացության, որ «պրակտիկ աշխատանքներում արվեստագետին հազիվ թե վիճակվում էր չափազանց շատ զբաղվել հաշվարկներով»։

Իրոք, հին հուշարձանների ճարտարապետական համաչափությունների պրոբլեմն առայսօր մնում է անավարտ մի տեսություն, քանի որ նրա բազմաթիվ հետազոտությունները դեռ ի մի չեն բերված կոնկրետ համակարգում։ Ավելին, Հին աշխարհի ճարտարապետության այնպիսի հետազոտողներ, ինչպիսիք են Հալիկառնասցին կամ Վիտրուվիուսը, ամենևին էլ չեն հիշատակում «ոսկե հատման» գոյության մասին՝ ճարտարապետության համաչափության մեջ, այլ դրան հակառակ՝ նշում են միայն մոդուլային համակարգը։

Հենվելով մեր հետազոտությունների վրա, հակված ենք ուրարտական ճարտարապետության մեջ տեսնել ոչ թե «ոսկե հատման» համաչափություններ, այլ մոդուլային համակարգ, որը կապված է երկրի գծային չափի միավորի՝ կանգունի հետ (գծագր. աղ. 37 ա)։ Թերևս ուրարտական կանգունն արտահայտված էր սովորական «չափողական փայտի» տեսքով, եթե միայն նրա մասին դատելու լինենք եգիպտականի օրինակով։ Մենք գիտենք, որ ճարտարապետ Նեխեբան լինելով իր եղբոր օգնականը, հետագայում հռչակավոր ճարտարապետ Պեպի I-ին փարավոնի բուրգի կառուցողը, ի թիվս այլ պարտականությունների, կրում էր եղբոր «չափողական փայտը»։

1943 թ. Ա. Վ. Սիվկովը, ուսումնասիրելով Թեյշեբաինիի միջնաբերդի կառույցները, նրանցում հայտնաբերեց 51,8 սմ չափի կանգուն, որը հավասար է Նիպուրային կանգունի չափին[15]։ Հետագայում մեր ուսումնասիրությունները Թեյշեբաինիում հաստատեցին այդ կանգունի գոյությունը։ Միաժամանակ մենք ևս հայտնաբերեցինք մի այլ կանգուն, որը հավասար է 52,5 սմ-ի։ Ընդ որում, պարզվեց, որ տվյալ կանգունը բաժանվում էր 3 հավասար մասի, յուրաքանչյուրը 17,5 սմ, որը հաստատվեց մի շարք չափումներով։ Կանգունի այս 52,5 սմ չափով մեծությունը հայտնի դարձավ նաև Կայալիդերեի հուշարձանախմբի չափումներով և, ինչպես պարզեցինք, այստեղի չափումների մեջ ևս առկա է

նրա $^1/_3$ չափի՝ 17,5 սմ մեծությունը։ Այսպես՝ դրենաժային խողովակներն այստեղ 52,5 չափի են, իսկ նրանց տրամագիծը 17,5 սմ ($^1/_3$)։

Էրեբունիի միջնաբերդում կանգունի համար ընդունված էր 47,7 սմ չափը։

Ուրարտուում ամենուրեք կանգունին համապատասխանում էր մոնումենտալ կառույցների աղյուսի երկարությունը։ Ընդ որում, հայտնի չէ, թե այստեղ ևս, ինչպես և Բաբելոնում, որի մասին հաղորդում է Հերոդոտոսը, սովորական կանգունների կողքին գործածվում էր նաև «թագավորական կանգուն», 3 մատով մեծ մյուսներից, թե՞ պարզապես գործ ունենք տարբեր չափերի գծային միավորների հետ։

Հայտնաբերված գծային միավորները զգալիորեն օժանդակեցին Ուրարտուի ճարտարապետական համաչափությունների հետազոտություններին, ընդ որում, ինչպես գծային հատվածների, այնպես էլ քառանկյուն մակերեսների։

Մեր հետազոտությունները պարզեցին, որ ուրարտական համաչափությունները խարսխված են 5×8 հարաբերության վրա, որի յուրաքանչյուր միավորը ծառայում էր որպես մոդուլ և պայմանավորված էր կանգունով, այսինքն՝ գծային կոնկրետ մեծությամբ։

5×8 համաչափությունների առկայությունը բացահայտենք առանձին օրինակով.

Վանա և Ուրմիա լճերի միջև գտնվող Սալխանե գյուղի արվարձանում գտնվող «Աշրուտի դուռ» ժայռակերտ խորշի քառանկյան բացվածքը՝ 2,61×4,10 մետր 2,61 : 5=0,52,2 4,10 : 8= =0,51,2 (1 սմ)։

Համաչափությունների սկզբունքը կիրառվում էր նաև որմնանկարներում։ Որմնանկարների օրինակներից ակնհայտ է, որ ինչպես ուրարտական արվեստում, այնպես էլ նրա ճարտարապետության մեջ համաչափությունները պահպանվում էին բոլոր մանրամասներով։ Այսպիսով՝ պարզ է դառնում, որ ուրարտական արվեստում ստեղծված գեղարվեստական ձևերի ներդաշնակությունը հիմնվում էր պարզ թվային հարաբերությունների խստորեն սահմանված համակարգի վրա, որի հիմքում ընկած է գծաչափի իրական միավորը կանգունը։

Որմնանկարները համաչափական կանոնների հիման վրա իրականացնելը Հին արևելքի համար օրինականացված սկզբունք էր։ Եգիպտոսում նույնիսկ գոյություն ունեին համապատասխան ձեռնարկներ[16]։ Դրանցից մեկը, որը կոչվում էր «Որմնանկարների կատարման և համաչափական կանոնների շարադրանքը», պահվում էր Էդֆու տաճարի գրադարանում մինչև պտղոմեոսյան ժամանակները։ Եգիպտոսում կային նաև գրքեր մոնումենտալ քանդակների համաչափությունների վերաբերյալ, որի մասին վկայում է Դենդերա տաճարի պահպանված արձանագրությունը[17]։

Մեր հետազոտությունները հաստատեցին, որ պարզ թվային հարաբերությունների վրա հիմնված համաչափությունները, իրենց հիմքում ունենալով գծաչափի իրական միավորը՝ այն է կանգունը, տարածված էին նաև Հին արևելքի այլ երկրներում։ Սակայն այստեղ հիմքում ընկած էր ոչ թե 5×8, այլ 7×11 հարաբերությունը։

Մեր ուսումնասիրությունները պարզել են, որ 7×11 համաչափությունը բավական տարածված է եղել նաև միջնադարյան հայ ճարտարապետության հուշարձաններում[18]։

Հարկ է նշել, որ ինչպես 5×8, այնպես էլ 7×11 համաչափությունները մոտ են «ոսկե հատման» համաչափություններին, այն տարբերությամբ, որ վերջինս պայմանավորված է երկու հատվածների հարաբերությամբ, չառնչվելով, սակայն, կանգունի հետ, որի հիման վրա էլ հենց կառուցվում է թվային հարաբերությունների համակարգը։

*Հնագիտական պեղումները, որոնք վերջին 40 տարվա ընթացքում անընդմեջ ու մեծ ծավալով կատարվում են Ուրարտուի պատմական տարածքում, բացահայտել են նրա սոցիալ-տնտեսական կյանքը, քաղաքաշինությունը, ճարտարապետությունը, շինարարական արվեստը, ինչպես նաև մոնումենտալ որմնանկարչությունը։*

*Ուրարտական ճարտարապետությունը, կազմավորվելով դարերի ընթացքում՝ առնչված Առաջավոր Ասիայի, ինչպես նաև տեղական ցեղախմբերի մշակույթների հետ, ի վերջո հասավ տեխնիկական այնպիսի մակարդակի, որին հավասարապես մոտ էին ինչպես լեռնային, այնպես էլ հարթավայրային ճարտարապետական սկզբունքները թե՛ իրենց ձևերի և թե՛ կոնստրուկտիվ հնարավորությունների իմաստով։ Այդ ճարտարապետության բնորոշ հատկանիշն է նաև այն, որ նրանում ինչպես քարե, այնպես էլ փայտյա կոնստրուկտիվ յուրահատուկ տեկտոնիկ ձևերի արտահայտությունները դրսևորվում են ինչպես ինքնուրույն, այնպես էլ միահյուսված ձևով։*

*Ուրարտական ճարտարապետությունն իր հատկություններով առնչվում, որոշ դեպքերում նաև մերվում է մի կողմից՝ խեթական աշխարհի լեռնային ճարտարապետության քարե ու փայտյա ձևերին, մյուս կողմից՝ Միջագետքի հարթավայրային ճարտարապետական սկզբունքներին, ընդհուպ մինչև հում աղյուսի օգտագործումը։*

*Ուրարտական ճարտարապետական ձևերի հետագա զարգացման սաղմերը պարզ տեսանելի են առավելապես պատմական Հայաստանի դասական ճարտարապետության մեջ։ Վերջինիս կազմավորման ու զարգացման ընթացքը սերտորեն առնչվեց ուրարտական շինարարական մշակույթի հետ։*

*Սակայն, ուրարտական մշակույթի ազդեցությունները չէին տարածվում միայն հայերի կամ կովկասյան մյուս ժողովուրդների մշակույթների վրա։ Այդ ազդեցությունները տարածվել էին նաև Փոքր Ասիա, Իրան ու Միջագետք, ուր ամենուրեք գոյություն ունեցող մշակութային այդ կապերի համար ստեղծվել էր պատմական բարենպաստ միջավայր։ Իսկ եթե նկատի ունենանք աքեմենյան Իրանի դասական ճարտարապետությունը, կարող ենք համոզվել, որ նրանում տվյալ միջավայրն առավելապես բարենպաստ էր։ Այդ առումով էլ այստեղ տեղի է ունեցել ոչ թե էվոլյուցիոն զարգացմանը բնորոշ սովորական ընթացք, այլ կատարվել են թռիչքաձև պոռթկումներ Պասարգադքի, Պերսեպոլիսի, Սուզայի և այլ ճարտարապետական համալիրների կատարյալ հորինվածքների ստեղծման գործում, որոնց հիմքում դրված էր այդ ճարտարապետությունների փոխներթափանցումը։*

*Հարկ է նշել, այնուամենայնիվ, որ ուրարտական ճարտարապետության վերաբերյալ այստեղ բերված նյութը լիովին չի արտահայտում շինարարական այդ մշակույթի ամբողջական ու հարուստ պատկերը, որի հուշարձանների մի մասը հազարամյակների ծանրության ներքո վերացվել է, իսկ մյուսը առայսօր ծածկված է դարերի հողի հաստ շերտով, որի տակ էլ թերևս ընտնրվում են այդ մշակույթի ամենացայտուն ու բնորոշ կոթողները։*

# ՄԱՍ ԵՐՐՈՐԴ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՍՏՐԿԱՏԻՐԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

(VI Դ. Մ.Թ.Ա.—III Դ. Մ.Թ.)

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

*Ուրարտական պետության անկումից հետո Հայկական լեռնաշխարհում ավարտվում է հայ ժողովրդի կազմավորումը և նախնադարյան համայնական հասարակության քայքայման հետևանքով առաջացող ստրկատիրական հարաբերությունների հիման վրա, դեռևս VI դարում (մ.թ.ա.), ստեղծվում է հայկական պետությունը։*

*Հայկական նորաստեղծ պետությունը սկզբում դաշնակցային փոխհարաբերության մեջ էր մարական պետության հետ, սակայն որոշ ժամանակ անց զրկվում է անկախությունից և ընկնում Մարաստանի, ապա ավելի քան երկու դար՝ Աքեմենյան գերիշխանության տակ*[1]*։*

*331-ին (մ.թ.ա.) Ասորեստանի Գավգամելայի մոտ տեղի ունեցած ճակատամարտից հետո Ալեքսանդր Մակեդոնացին նվաճեց Իրանը։ Աքեմենյան կայսրության կործանումից հետո, Հայաստանը վերականգնում է իր անկախությունը, ստեղծվում են պետական նոր կազմավորումներ, որոնք կարճ ժամանակահատվածներով լինելով սելևկյանների իշխանության ներքո, փաստորեն պահպանում են իրենց ինքնուրույնությունը։*

*Դեռևս մ.թ.ա. IV դարի վերջերից Հայաստանն ընդգրկվում է հելլենիստական աշխարհի տնտեսական ու մշակութային զարգացման ոլորտը*[2]*։*

*Արտաշեսյան հարստության ժամանակաշրջանում, հատկապես Տիգրան II-ի օրոք (95—56 թթ., մ.թ.ա.), հելլենիստական աշխարհի հետ ունեցած մշակութային ու տնտեսական կապերն ավելի են ընդարձակվում։ Տիգրան Երկրորդը Կապադովկիայի, Կիլիկիայի, հավանաբար և Ասորիքի, Կորդուքի, Ադիաբենի հելլենիստական 12 քաղաքների բնակչությունը բռնի տեղափոխում է Հայաստան և մեծ մասամբ բնակեցնում Տիգրանակերտում։*

*Այդ քաղաքների թվում էին Կապադովկիայի մայրաքաղաք Մաժակը, Կիլիկիայի Սոլը, ըստ երևույթին, Կորդուքի (Կորդվայոց երկրի) քաղաքները։ Նվաճված քաղաքների ճարտարապետներին և շինարարներին օգտագործում էին երկրի շինարարական աշխատանքներում։*

*Հայկական տաճարներում տեղադրում էին հունական աստվածների արձանները*[3]*։ Հայ արքաների դրամների վրա մակագրությունները կատարվում էին հունարեն։*

*Հելլենիստական ժամանակաշրջանին բնորոշ ամենացայտուն երևույթներից մեկը միապետների նախաձեռնությամբ ու նրանց անունը կրող քաղաքների ընդարձակ ցանցի ստեղծումն էր։*

*Հելլենիստական աշխարհի քաղաքաշինական այդ պրոցեսում է ընդգրկվում նաև Հայաստանը*[4]*։ Ստեղծված շուրջ երկու տասնյակ քաղաքների թվում գոյություն ունեին Երվանդ թագավորի անունը կրող քաղաքներ ու բնակավայրեր (Երվանդաշատ, Երվանդակերտ, Երվանդավան), Արտաշես թագավորի անվամբ՝ Արտաշատ մայրաքաղաքը։*

*Հելլենիստական քաղաքների ազգաբնակչության՝ հայկական քաղաքներում բռնի բնակեցումը նպատակ ուներ Հայաստանում արմատավորել հելլենիստական քաղաքային կենցաղը և խթանել երկրի տնտեսական ու մշակութային վերելքին։ Արտաքին աշխարհի հետ մշակութային կապերի զարգացմանը մեծապես նպաստում էին նաև Հայաստանի միջով անցնող համաշխարհային առևտրական մայրուղիները։*

*I—III դարերում Հայաստանը որոշակի շփման մեջ էր Հռոմի հետ, սակայն, նշվում է, որ մշակույթի և արվեստի բնագավառում «...արևելքում, այդ թվում նաև Հայաստանում, հռոմեական ազդեցությունը բավական թույլ էր արտահայտվում»*[5]*։*

*Ստրկատիրական հարաբերությունների և քաղաքային զարգացող կյանքի հիմքերի վրա բարձրացող երկրի մշակութային-տնտեսական աճին զուգակցվում է ճարտարապետական-կառուցողական արվեստի զարգացումը։*

# ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ՎԱՂ ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

585 թ. (մ.թ.ա.) կործանվեց Հին արևելքի պետություններից մեկը՝ Ուրարտուն և նրա երբեմնի պատմական տարածքում ձևավորվեց Հայաստանը։ Այդ այն դարաշրջանում էր, երբ Հին արևելքի տվյալ հատվածը ապրեց իր շրջադարձային ժամանակաշրջանը։ Պատմության գիրկն անցան ոչ միայն Ուրարտուն, այլ նաև հզոր Ասորեստանը, Բաբելոնը։

Հայաստանի պատմական կյանքի սկիզբը զուգադիպում է նաև Մարաստանի, ապա Աքեմենյանների՝ այդ հզոր երկրի մեծապետական ձգտումներին։ Հայաստանն այդ հզոր հարձակմանը կարողացավ հակադրվել իր ողջ ուժով ու ենթարկվեց նրան հինգ արյունահեղ ու ծանր ճակատամարտերից հետո։

Հայաստանում կազմավորվեցին Աքեմենյան Իրանի 13-րդ և 18-րդ սատրապությունները։ Հայաստանը անկախություն ձեռք բերեց Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների հետևանքով։

Անցնելով պատմության գիրկը, Ուրարտուն, սակայն, իր թողած մշակութային ժառանգությամբ ներթափանցեց հաջորդ դարաշրջաններում կազմավորվող հայ դասական ճարտարապետության մեջ։ Միաժամանակ այն մեծապես նպաստեց աքեմենյան ճարտարապետական արվեստի ձևերի զարգացմանը։ Այդ ամենը հնարավոր էր, քանի որ դեռ երկար ժամանակ կենդանի էին ուրարտական շինարարական ավանդները, դեռևս չէր անհետացել նրանց կառուցողական հմտությունը, իսկ նոր ժամանակներն էլ չէին գերազանցել այդ հնամենի մշակույթը։

Վաղ հայկական ժամանակաշրջանի շինարարական գործունեության ցայտուն օրինակները պարզորոշ արտահայտված են Էրեբունիի միջնաբերդի տարածքում։ Դրանք հիմնականում արտահայտվել են ուրարտական շինությունների հետագա կառուցապատման կամ նրանց վերակառուցման մեջ, որով ստեղծվել էր ճարտարապետական ձևերի խնկական մի համակեցություն։

Նախ ասենք, որ կատարված վերակառուցումների հետևանքով մեծապես վերափոխվեց Էրեբունի միջնաբերդի կենտրոնական միջուկը, նրա հրապարակի հատակագծի հորինվածքը։ Վերացվեց միջնաբերդի հրապարակը և նրա տեղը գրավեց աքեմենյան Իրանի ճարտարապետության համար բնորոշ սյունազարդ դահլիճը՝ ապադանան, որը այդ ճարտարապետության առաջատար ու գերիշխող ձևն է։ Այն ծառայում էր աքեմենյան թագավորների համար որպես ընդունարան-դահլիճ՝ իր շքեղազարդ ձևերով արտահայտելով նրանց հզորությունն ու մեծությունը։

Ապադանան հիմնական ճարտարապետական-տարածական ձև էր աքեմենյան Իրանի՝ Պասարգադի, Պերսեպոլիսի ու Շոշի (Սուզայի) խոշոր համալիրներում։

Այդ առումով Էրեբունիի ապադանան տեղական կառավարիչների համար ծառայել է պաշտոնական ընդունելությունների նպատակին։

Էրեբունիի ապադանան գոյացել է խալդի տաճարի 12 սյունանոց նախամուտքին 18 սյունանոց մի շինություն կցելու եղանակով, որով ստեղծել են մեկ ընդհանուր ներքին տարածություն $29 \times 33$ մետր չափերի (գծագր. աղ. 47)։ Այս դահլիճի հիմնական կոնստրուկտիվ տարրը փայտյա սյուներն են, որոնց համաչափ հերթականությունը թե՛ ճակատով և թե՛ խորությամբ՝ ներքին տարածքի ճարտարապետական ու կոնստ-




*Նկ. 47. Էրեբունիի սյունազարդ դահլիճի հատակագիծը*



Նկ. 48. Սյունազարդ դահլիճի վերակազմություն




Նկ. 49. Հրա մեծ տաճարի հատակագիծը

բուկտիվ ձևերին հաղորդվել են միանման տեսք։ Այս վերջինս բնորոշվում է իր լայնածավալ ձևերի հանդիսավորությամբ ու ճոխությամբ և բարձր սյուների վերասլաց շարժումով ստեղծված ներքին ճարտարապետական ձևերի դինամիկ արտահայտությամբ (գծագր. աղ. 45)։

Ապադանայի՝ հում աղյուսով շարված նրբակառույց արտաքին պատերը, որոնց գետնախարիսխները մի շարք սրբատաշ բազալտե քարերից էին, օժտված էին որմնահեցերով ամբողջ շարվածքի ամրության համար։

Ապադանայի հարավային պատին կից կավաշեն նստարանի վրա շինված է եռաստիճան ղահավեղան՝ 86 սմ բարձրությամբ։ Նրա վրա պահպանված էին մոխիր ու ածուխ, իսկ պատի վրա՝ մուր։ Այդ նշանակում է, որ ապադանան ոչ միայն հանդիսավոր ընդունելությունների, այլև այդ կապակցությամբ իրագործվող կրոնական ծիսակատարությունների համար էր նախատեսված։ Գուցե այդ առումով է, որ Պոպը, ինչպես նաև Էրդմանը, Պերսեպոլիսը համարում էին նախ և առաջ պաշտամունքի վայր։

Անդրադառնալով ապադանայի ճարտարապետական ձևերի ծագմանը, այժմ արդեն, հատկապես Բողազքյոյի և Ալթին-Թեփեի պատմական տարածքներում նման կառույցների հայտնագործություններից հետո, ավելի որոշակիորեն կարելի է ասել, որ դրանք ծնունդ են առել աշխարհիկ կառուցվածքներից, իսկ պատմաաշխարհագրական առումով առաջացել են խեթական հողի վրա։ Խոսքը վերաբերում է Բողազքյոյի հնամենի խաթթուսայի միջնաբերդի պեղումներից հայտնաբերված խոշոր, քառակուսի հատակագծով 25 սյունյականոց (5×5) դահլիճին[2]։ Տվյալ կառույցի ճարտարապետական ձևերն ակներևաբար հաստատում են, որ խեթերն են եղել ճարտարապետական այդ հորինվածքի սկզբնավորողները, որը հետագայում նշանավոր ապադանաների տեսքով հայտնվում է աքեմենյան Իրանի դասական ճարտարապետության մեջ։

Նույնանման մի այլ դահլիճի հայտնաբերումը ուրարտական Ալթին-Թեփեի միջնաբերդում, հուշում է, որ Ուրարտուն այն միջանկյալ օղակն էր, որի միջոցով այդ ձևերը կարող էին թափանցել Իրան։ Բանն այն է, որ իրանական ապադանաների երևան գալու և զարգացման ժամանակաշրջանում խեթական այդ կառույցները վաղուց արդեն դադարել էին գործող լինելուց, մինչդեռ ուրարտական ավանդույթները կենդանի էին իրենց կանգուն շենքերի ճարտարապետական ձևերի ամբողջական արտահայտություններով։ Միանգամայն բնական է, որ աքեմենյաններն իրենց ապադանաների ստեղծման ընթացքում լայնորեն օգտագործած պետք է լինեին շինարարական այդ ավանդույթները։

Աքեմենյան Իրանի ճարտարապետության այս դասական կոթողները, ժամանակի ընթացքում դուրս գալով Իրանի սահմաններից, տարածվեցին նրան ենթակա երկրները, ընդհուպ մինչև Եգիպտոս։ Միաժամանակ ապադանան տարածվում է նաև Իրանին ոչ ենթակա երկրներում։ Այն կարելի է տեսնել Հնդկաստանում, որտեղ Պատալիպուտրայի Աշոկա թագավորի պալատում (III դ. մ.թ.ա.) կառուցված էր համանման բազմասյուն մեծ դահլիճ։

Ժխտելի են, այսպիսով, բոլոր այն դրույթները, ըստ որոնց ապադանան առաջացել է եգիպտական տաճարների հիպոստիլ դահլիճներից և կամ Բիտ-Հիլանիի ձևերից։ Այս վերջինից ապադանան բխեցնում էին Կոլդեվեյը, Հերցֆելդը, Գլյուկը և ուրիշներ։ Սակայն միանգամայն իրավացիորեն այն հերքում էր Ֆրանկֆորտը, իսկ այժմ նաև՝ Ֆրանկովիչը։

Անդրադառնալով Էրեբունիի ապադանային, կարող ենք ասել, որ նրա կառուցողները տեղական վարպետներն էին, քանի որ շենքի բոլոր հանգույցներում նկատելի են ուրարտական շինարարության մեջ լայնորեն օգտագործված ավանդները։

**Հրո տաճարներ**: Անդրադառնալով Էրեբունիի միջնաբերդի մյուս վերակազմություններին, կարող ենք նկատել, որ նրանցում, ինչպես և տաճարի շենքում, աքեմենյանների օրոք արմատապես փոխվել են պալատի կառուցվածքի հատակագծային հորինվածքը և ծավալատարածական ձևերը։ Նրանք, այսպիսով, ոչ թե հարմարվում էին գոյություն ունեցող կառուցվածքներին, այլ, դրանք հիմնովին վերակառուցելով, ստեղծում էին թեմատիկ նոր մտահղացմամբ ճարտարապետական շինություններ։

Աքեմենյանները պալատում ստեղծել են հրո տաճար, իսկ մյուս նման կառույցը բարձրացել է բակի ազատ տարածքի վրա և գրեթե կապված չէ ուրարտական կառույցների գոյություն ունեցող ձևերի հետ։

Առաջին տաճարը վերափոխել է պալատի պե-




*Աղ. 50. Հրո փոքր տաճարի և Սենգերի վիմափոր կառույցի հատակագծերը*

րիստիկ բակը և նրան կից սենյակները։ Բակի սյուները վերացնելու ճանապարհով պալատի միջին մասում բացվել է 19×19 մ ներքին քառակուսի տարածություն՝ երեք կողմերից եզրափակված սենյակներով, իսկ արևմտյան կողմից պալատական Սուսի տաճարի գլխավոր ճակատով։ Տվյալ տարածքի հյուսիսային մասում բակը հատում է որմնահեցեր ունեցող պատը, որով տաճարի տարածությունը մեկուսացված է մնացած մասից։ Տաճարի այդ հատվածում ստեղծվել է, բակ՝ ծիսակատարությունների համար և նրա շարունակությունը կազմող, նույն այդ առանցքի վրա գտնվող Սուսի տաճարի շենքը[3] (գծագր. աղ. 49)։

Բակն այստեղ պաշտամունքային արարողությունների վայր է, նրա միջին մասում պահպանվել է մոխիրը վրան զոհասեղանը, ինչպես նաև նրան կից պատի տակ գտնվող նստարանը։

Պերիստիլ բակի և Սուսի տաճարի հիման վրա, այստեղ ստեղծված նոր ծավալատարածական հորինվածքը իր սկզբունքով գրեթե նման է Տոչի (Սուզայի) հայտնի տաճարի հորինվածքին։

Սուսի տաճարը, որը դարձել էր մշտական կրակի պահպանման տեղը, պարփակված էր բակը հատող պատի շարունակությամբ՝ ամեն կարգի հնարավոր արարողություններից այն մեկուսացնելու համար։ Ինչպես և Տոչում, տաճարը արևի ճառագայթներից մեկուսացնելու համար, նրա դրան առջև կառուցվել է մի մեծ մույթ, որը հուսալիորեն խոչընդոտ էր արևի ճառագայթների ներթափանցմանը, ինչը զրադաշտական կրոնի հիմնական, սկզբունքային պահանջն էր։

Ուրարտական տաճարը և նրան հարող աշխարհիկ կառույցը՝ պերիստիլ բակը, այսպիսով, ճարտարապետական վերամարմնավորման ենթարկվելով, դառնում են աքեմենյան կառույց՝ հրո տաճար։ Այնտեղ առաջ պաշտվում էր ուրարտական Յուարշա աստվածը, հիմա արդեն պաշտվում է աքեմենյանների մեծ աստված Ահուրամազդը։

Հրո մյուս տաճարը, որ բացվել է 1957—58 թթ. պեղումների ժամանակ, պալատի ճակատին կից, նրա գլխավոր մուտքից 20 մետր դեպի արևելք, իր ծավալատարածական հորինվածքով նորույթ մի ձև էր (գծագր. աղ. 50)[4]։ Նրա հատակագիծն իր արտաքին 8×12 մ չափերով կազմված էր երեք մասից. մեծ դահլիճից՝ երեք որմնախորշերով և նրանցում կավաշեն նստարաններով, փոքր սենյակից, որտեղ պահվել է անշեջ հուրը և կողքի երրորդ սենյակից, որտեղ պահվում էր զոհասեղանից հավաքված մոխիրը։ Պարզ է, որ ծիսակատարությունները կատարվում էին դահլիճում, ուր կային ոչ միայն նստարաններ համապատասխան քանակով այցելուների համար, այլ նաև ամբողջ հատակը ծածկված էր 15 սմ մոխրի շերտով, որը կուտակվել էր զոհասեղանից։

Շենքի որմնախորշերը, ինչպես և նրա բոլոր դռները, վերջավորվում են կամարներով, որոնք այդ հորինվածքի նախնական օրինակներն են Հայաստանի վերերկրյա հնավայրերի շենքերում, թեև հորինվածքի նման ձևը լայնորեն հայտնի էր Ուրարտուի թե՛ վիմափոր կառույցներում և թե՛ հարթաքանդակներում։ Այդ կամարները երկկենտրոն են՝ շարված արևի տակ չորացած աղյուսով և կավաշաղախով։

Ինչ վերաբերում է շենքի ծածկին, այն հարթ էր, փայտից, որը վկայում են պեղումներից հայտնաբերված գերանները, եղեգն ու հեծանների ածխացած մնացորդները, այսինքն՝ ուրարտական ծածկերի ավանդական տարրերը։

Կոնստրուկտիվ նման օրինակների ձևերը կիրառվում էին նաև Հյուսիսային Միջագետքի Հատրայում, Արևելյան Սիրիայի Խաուրանում, Միջին Ասիայում և այլն։

Նորից անդրադառնալով Էրեբունիի հրո փոքր տաճարի հատակագծին, հարկ է նշել, որ այն որևէ զուգահեռ չունի աքեմենյան տաճարաշինության մեջ։

Սակայն նման զուգահեռ մենք տեսնում ենք Մակուից 7 կմ հեռավորության վրա, Բայազետի ուղղությամբ, Սենդեր գյուղի լեռնային մասում. մի վիմափոր տաճար, գրեթե հար և նման Էրեբունիի հրո տաճարի հատակագծին[5]։

Հուշարձանի ուսումնասիրողը՝ Վ. Մինորսկին գրում է, որ նման կառույցները, որոնք առաջ համարվում էին հրո տաճարներ, այժմ դասվում են խալդյան (ուրարտական—Կ. Հ.) մշակույթի ոլորտը։ Հատկանշական է, սակայն, տաճարի մուտքի մոտ, վիմափոր դրսի ծածկի մասում, դեպի ուր տանում են աստիճանները, ժամանակին տվյալ հուշարձանի մի այլ ուսումնասիրող՝ Է. Ջիրիկովը, գտել է կրակի զոհարանների հետքեր։

Իրանում աքեմենյան հրո տաճարների ծագումն արդյունք էր երկրում տեղի ունեցող կրոնական մեծ պայքարի, որ մղվում էր Աքեմենյանների կրոնում Իրանի հին ցեղերի աստվածների պաշ-

տամունքի փոխարեն երկնքի մեծ աստծու՝ Ահուրամազդայի պաշտամունքը հաստատելու համար։ Այդ պայքարը, որ ի վերջո հասցրեց կրոնական բարենորոգության, պետության կենտրոնաձիգ ուժերի ամրապնդման իմաստ ուներ։

Այդ պայքարը սկսեց Դարեհ I-ը, այն ավարտեց նրա որդին՝ Քսերքսեսը։ Այդ մասին է պատմում պերսեպոլյան հայտնի արձանագրությունը, որը հայտնաբերել ու հրապարակել է է. Հերցֆելդը 1937 թ.։

Էրեբունին Հայաստանում այն միակ վայրն է, որտեղ պահպանվել են աքեմենյան ճարտարապետական կառույցների մնացորդները։ Սակայն, հավանաբար, Հայաստանում աքեմենյան շինություններ են եղել նաև Տուշպայում, ինչպես հիշատակում է Քսերքսեսն իր եռլեզվյան արձանագրության մեջ՝ փորագրված Վանի ժայռի վրա։

Աքեմենյանների շինարարական գործունեությունը Տուշպայում թերևս բացատրում է այն նմանությունը, որ առկա է Վանի խորխորյան փոքր այրի և Նակշ-ի-Ռուստեմի վիմափոր դամբարանների հատակագծային լուծումներում, որոնց ընդհանրությունը լրացուցիչ պարզաբանումներ չի պահանջում։

Այսպիսով, Էրեբունիում մենք գտնում ենք աքեմենյան ժամանակաշրջանի կառույցներ, որոնք թե՛ իրենց ձևերով և թե՛ թեմատիկ մտահղացմամբ համապատասխանում են աքեմենյան ճարտարապետության ուղղությանը։ Նույնը, սակայն, չի կարելի ասել այդ կառույցների շինարարական տեխնիկայի մասին, որը անառարկելիորեն գալիս է տեղական ավանդույթներից։

Հայաստանում այդ ժամանակ ուրարտական կառուցողական ավանդույթները դեռ կենդանի էին և, անկասկած, դեռևս կային փորձառու շինարարներ։ Հենց նրանց ձեռքով էլ պետք է կառուցված լինեին Էրեբունիի աքեմենյան բոլոր շենքերը։

Երկու և կես հարյուրամյակ անց Հայաստանում, ինչպես և Առաջավոր Ասիայի մյուս երկրներում վերջ տրվեց Իրանի Աքեմենյանների տիրապետությանը։ Աքեմենյանները, սակայն, իրենց տիրապետության ընթացքում, չփոխեցին Հայաստանում ճարտարապետության զարգացման ընդհանուր ուղղությունը, քանի որ տեղական շինարարական ավանդույթներն ավելի կայուն դուրս եկան։

Այս նույն ժամանակաշրջանի ժողովրդական տների վերաբերյալ ուշագրավ տեղեկություններ է հաղորդում հույն պատմիչ Քսենոֆոնը (V դ. մ.թ.ա.)։ Նա 401—400 թթ. (մ.թ.ա.) Հայաստանի հարավային մասում հանդիպում է «գղյակ ամրոցների»՝ շրջապատված բնակավայրերով, որտեղ տներն ունեին աշտարակներ, իսկ կենտրոնական մասում նա տեսել է գետնափոր երդիկավոր տներ, ուր ապրել են նաև ընտանի կենդանիները[6]։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

### ԱՆՏԻԿ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆԵՐ

*Հայ ժողովուրդն իր մեջ կրելով տեղական էթնիկական խմբերի շինարարական մշակույթի ավանդները և ժառանգելով Հայկական լեռնաշխարհում ստեղծված Հայասայի և ուրարտական ժամանակաշրջանի կառուցողական արվեստը, հայկական պետականության սկզբնական շրջանից ձեռնամուխ եղավ շինարարական ընդարձակ գործունեության։ Հին քաղաքներում շարունակվող կառուցողական աշխատանքներին զուգընթաց ծավալվում է բազմաթիվ մեծ ու փոքր նոր քաղաքների շինարարությունը։ Միջազգային տարանցիկ առևտրի ճանապարհների հանգույցներում ստեղծված առանձին քաղաքներ վեր են ածվում ժամանակի առևտրաշահագործական խոշոր կենտրոնների։ Ինքնին հասկանալի է, որ այդ ամենը, հատկապես նորաստեղծ քաղաքների ծավալուն շինարարությունները, պետք է աղդակ հանդիսանային ճարտարապետական արվեստի զարգացման գործին։*

*Այդ քաղաքներից առայժմ հայտնի են՝*

Անի: *Անի (Կամախ) քաղաքը գտնվում է Դարանաղի գավառում՝ արևմտյան Եփրատի վրա։ Հեռավոր անցյալում Կամախ (հին՝ Կումմախա) քաղաքը հանդիսացել է Հայաստանի հյուսիսարևմտյան հատվածում երբեմնի գոյություն ունեցած Հայասա կամ Հայասա-Ազզի երկրի՝ «թագավորության» (XV—XIII դդ. մ.թ.ա.) մայրաքաղաքը։*

*IV դարի վերջում (մ.թ.ա.) Անի-Կամախը դառնում է նախկին Հայասայի տարածքի վրա ստեղծված Փոքր Հայքի հայկական ինքնուրույն թագավորության կենտրոնը։*

*Անին հիշատակվում է նաև իբրև հայկական պանթեոնի գերագույն աստված Արամազդի պաշտամունքի գլխավոր կենտրոն*[1]*։*

*Այստեղ էին կառուցվում մեր թվականության I—IV դդ. հայ Արշակունիների «պինդ ու ճարտար շինվածք» ունեցող դամբարանները*[2]*։ Ըստ երևույթին, այդ դամբարանների օրինակով է IV դարում կառուցվել Աղցի թաղակապ քանդակազարդ դամբարանը*[3]*։*

*Բնական է, որ հազարամյակների ընդերքից եկող քաղաքի կառուցվածքները պետք է վճռական նշանակություն ունենային նույն վայրում տեղի ունեցող կառուցողական արվեստի կազմավորման գործում։*

Վան: *Վանը (Տուշպա) դեռևս IX դարում (մ.թ.ա.), իբրև Ուրարտուի հզոր պետության կենտրոն, ունեցել է զարգացման բարձր աստիճանի վրա գտնվող ճարտարապետություն։ Թե ի՞նչ կարգի կառուցվածքներ կարող էին գոյություն ունեցած լինել Վանում՝ ուրարտական և նրան անմիջապես հաջորդող հայկական ժամանակաշրջանում, որոշակի գաղափար են տալիս ճարտարապետական այն բազմաթիվ հուշարձանների մնացորդները, որոնք պահպանվել են քաղաքում ու նրա շրջապատում։ Այս տեսակետից մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև Մովսես Խորենացու մոտ հիշատակված Վանի կառուցման հայտնի նկարագրությունը։*

*Խորենացու մոտ այնքան ճշմարտացի է տրված Վանի ու նրա շուրջը գտնվող տեղանքի նկարագրությունը, որ իրավացիորեն ենթադրվում է, թե պատմիչն անձամբ տեսել է այն*[4]*։ Հետևապես*

բացառված չէ, որ նկարագրվող կառուցվածքների մի մասը գոյություն ունեցած լինի պատմիչի ապրած ժամանակաշրջանում (V դ.) և նա տեսած լինի դրանք, իսկ որոշ մասի վերաբերյալ տեղեկությունները քաղած լինի տեղացիների մոտ պահպանված՝ նախնիներից եկող հիշողություններից։

Հետաքրքրական է, որ եթե քաղաքի մի մասի կառուցվածքների վերաբերյալ պատմիչը տալիս է մանրամասն նկարագիր (շենքերի տեսակները, հարկայնությունը, շինանյութը, գույները, անգամ առանձին շենքերի լուսամուտների դասավորությունը), ապա որոշ մասի նկատմամբ, չնայած խոսում է մեծ ակնածանքով, սակայն բավարարվում է միայն թվարկումով, նշելով, որ նրանց շինության մասին ստույգ ոչ ոքից չի լսել և հարմար չի գտնում իր պատմության մեջ հյուսել։

Նշանակում է, մանրամասն նկարագրվող կառուցվածքները կամ նա իրոք տեսել է, կամ նրանց վերաբերյալ ունեցել առավել ստույգ տվյալներ։

Ուրարտական պետության անկումից հետո Տուշպան (Վանը), իբրև ժամանակի հայտնի քաղաքներից մեկը, շարունակում է գոյություն ունենալ նաև հայ ժողովրդի կազմավորման ժամանակաշրջանում։ Վանի ժայռի վրա պահպանվել է Քսերքսես Աքեմենյանի եռալեզու արձանագրությունը։

Ութ հարյուր տարի անց Շապուհ II-ի՝ Հայաստանում կատարած ավերածությունների նկարագրությունների մեջ, երկրի առավել նշանավոր քաղաքների թվում նշվում է նաև Վանը։ «Առան նաև Վան ամուր քաղաքը Տոսպ գավառում, կրակ տվին, այրեցին, հիմքերը քանդեցին, այնտեղից էլ դուրս բերին հինգ հազար տուն հայ և տասնութ հազար տուն հրեա»[5]։

Նշանակում է, մինչև Հայաստանում քրիստոնեական կրոնի ճանաչումը, Վանը իբրև քաղաք ունեցել է ավելի քան հազարամյա շինարարական կյանքի փորձ։ Կասկածից վեր է, որ ուրարտական կառուցվածքները պետք է որոշակի դեր խաղային տվյալ միջավայրում բարձրացվող հայկական շրջանի նորակառույցների ստեղծման գործում, իսկ այդ ամենն իրենց հերթին, մեծագույն նշանակություն ունենային քրիստոնեական կրոնի ընդունումից հետո նույն վայրում կերտվող ճարտարապետության համար։

**Արմավիր**[*]—Արմավիր քաղաքի և նրա ճարտարապետության մասին նախնական տվյալներ մեզ հաղորդում են գրավոր աղբյուրները, պատմահայր Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը», հույն աշխարհագիր Պտղոմեոսը, անուղղակիորեն նաև՝ Արմավիրի հունարեն արձանագրությունները[6]։ Այս աղբյուրներից երևում է, որ քաղաքը միջնաբերդով հանդերձ գտնվում էր Արարատյան դաշտում, Արաքսի ափին, Այրարատ նահանգի Արագածոտն գավառում։ Մովսես Խորենացին հիշատակում է Արևի ու Լուսնի (Ապոլոնի և Արտեմիդեի) և թագավորական դինաստիայի նախնիների տաճարը, պատգամախոսարանը՝ սոսիների պուրակը, որտեղ կատարվում էին գուշակություններ։

Արմավիրի հիմնադրումը որպես Հայաստանի մայրաքաղաք տեղի է ունեցել IV դ. (մ.թ.ա.) երկրորդ կեսում, հավանաբար 330-ական թվականներին։ Գավգամելայի ճակատամարտից հետո, երբ Ալեքսանդր Մակեդոնացին փայլուն հաղթանակ տարավ պարսիկների դեմ, Հայաստանի կառավարիչ Երվանդ-Օրոնտասը իրեն Աքեմենյան Իրանից անկախ հայտարարեց և մայրաքաղաքը Վանից տեղափոխեց Արմավիր[7]։ Այստեղ, դեռևս Աքեմենյանների օրոք, տեղի էր ունեցել Արմավիր բլրի շրջապատում գտնվող բնակավայրերի համախմբման պրոցեսը՝ Արմավիրի տաճարային համայնքի շուրջը[8]։ Այդ մասին են ակնարկում Մովսես Խորենացու «Հայոց պատմության» առաջին գլխի համապատասխան հատվածների, Արմավիրի հունարեն արձանագրությունների տվյալները։

Երվանդունիները որպես մայրաքաղաք պատահմամբ չէին ընտրել Արմավիրը։ Այն ուներ քաղաքաշինական բացառիկ առանձնահատկություններ՝ ստրատեգիական մեծ առավելություններով օժտված բլուր-միջնաբերդ, որի շուրջը փռված էր քաղաքը։ Քաղաքի և միջնաբերդի հարավային ծայրերը ողողված էին Արաքսի ջրերով, որոնք օգտագործվում էին ոռոգման ու խմելու նպատակով։ Քաղաքը գտնվում էր Արարատյան բարեբեր դաշտում, այն պետության տնտեսական կենտրոնն էր, իր զարգացած երկրագործությամբ, որը հաջողությամբ մրցում էր հարևան նախալեռնային և լեռնային շրջաններում ծաղկող անասնապահության հետ։ Այս դաշտում էին

* Տեքստը՝ Գ. Ա. Տիրացյանի։

խաչաձևվում դեռևս հնուց հայտնի առևտրական ուղիները։

Արաքս գետի հեռանալու կապակցությամբ Երվանդունի թագավորը մայրաքաղաքը տեղափոխում է Երվանդաշատ, Արաքսի ու Ախուրյանի միախառնման տեղում։ Սակայն հնագիտորեն ապացուցվեց, որ մայրաքաղաքը մ.թ.ա. III դարի վերջին Երվանդաշատ տեղափոխվելուց հետո Արմավիրը շարունակեց պահպանել իր գոյությունն ու նշանակությունը նրա հաջորդ դարերում, մի հանգամանք, որն իր արտացոլումն է գտել նաև հույն աշխարհագիր Պտղոմեոսի վկայության մեջ։

Մյուս պատճառը, որ Երվանդունիները Արմավիրը ընտրեցին որպես մայրաքաղաք՝ այստեղ գոյություն ունեցող ուրարտական քաղաքի ճարտարապետական մնացորդներն էին։ Առայժմ կարելի է վստահությամբ պնդել, որ Երվանդունիները օգտագործել են ուրարտական ամրաշինական կառույցները, պալատական և տաճարային շենքերը, պահեստները և այլն։ Արմավիրի բլրում, նրա ստորոտում և հարևան գյուղերում դեռևս անցյալ դարում գտնված ուրարտական սեպագիր արձանագրությունները վկայում են, որ հին Արմավիրի տեղում գտնվելիս է եղել Արգիշտիխինիլի ուրարտական քաղաքը։

Հնագիտական պեղումները բացահայտեցին Արգիշտիխինիլիի քաղաքաշինական առանձնահատկությունը։ Նրա քաղաքային թաղամասերը տարածվում էին երկու՝ Արմավիրի և ս. Դավիթ բլուրների միջև ընկած տարածությունում և վերջինից էլ այն կողմ։ Բլուրների վրա տեղավորված էին քաղաքի երկու՝ արևելյան ու արևմտյան միջնաբերդերը[9]։ Ըստ սեպագիր արձանագրությունների տվյալների, որոնք հաստատվում են հնագիտական պեղումների արդյունքներով, քաղաքը բարգավաճել է հատկապես VIII դարում, հիմնադիր Արգիշտիի ու նրա որդի Սարդուրիի օրոք։ Այն որոշ լճացում ապրելուց հետո վերակենդանացել է VII դարի վերջին, իր անկման նախօրյակին։ Անկումը եղել է բռնի, թշնամու ձեռքով. քաղաքը հրդեհվել է ու ավերվել։ Քաղաքի արևմտյան հատվածները վեր են ածվել դամբարանադաշտի։ Արևելյան մասում կյանքը շարունակվել է և աշխուժացել մ.թ.ա. IV դարից սկսած, Արմավիրը մայրաքաղաք դառնալուց հետո։

Հետախուզական պեղումները պարզեցին, որ Արմավիրի քաղաքային թաղամասերը ձգվում էին բլից դեպի արևմուտք[10], դեպի ս. Դավիթ բարձունքը ձգվող ժայռոտ բլրաշարքի սկզբնական մասը, որտեղ տեղադրված էր մի հետաքրքիր համալիր՝ հելլենիստական ժամանակաշրջանի ագարակը։ Մոտ 100 հեկտար տարածություն զբաղեցնող քաղաքի սահմաններն էին Արաքսի հին հունը՝ հարավից, Նոր Արմավիր գյուղի բլրաշարքը՝ արևմուտքից, այժմյան Բամբակաշատ գյուղի հողային տարածությունները՝ հյուսիսից, Արմավիր բլուրը՝ արևելքից[11]։

Արմավիրի միջնաբերդի ճարտարապետական կոթողների մասին խոսելիս պետք է օգտագործված ուրարտական կառույցները տարբերել մ.թ.ա. III—I դարերում կառուցվածներից։ Օգտագործվող կառույցներից պետք է նշել պարիսպը, որը բլրի գագաթը շրջափակում էր չորս կողմից և որի մուտքը գտնվում էր ամրոցի հյուսիսարևմտյան մասում։ Պարիսպը մեծ աշտարակներով ամրացված էր արևմտյան մասում և փոքր կոնտրֆորսներով մյուս հատվածներում։ Պարիսպը կառուցված էր չթրծված աղյուսներից՝ քարե ներքնամասի վրա։ Պարսպի քարերը մշակվածության տարբեր ձևի ու աստիճանի էին։ Հանդիպում են կիկլոպյան շարվածք հիշեցնող կոպիտ մշակված քարեր, եզրերը հանած (ռուստովկա արված) և երեսները լրիվ հարթեցված քարեր։

Այնտեղ, ուր պարիսպը հանդիպում էր բնական ժայռին, այն ուրարտական սովորության համաձայն մշակվում էր և ստանում աստիճանավոր տեսք։ Աստիճանների վրա բարձրանում էին պարսպի քարե շարքերը[12]։ Երվանդունիների օրոք, ամրոցը նրա հյուսիսարևմտյան կողմից ավելի ապահով դարձնելու նպատակով, լանջն ի վայր կառուցվում է մի կիսակլորավուն աշտարակ։ Նրա թվագրման համար նշանակություն ունեցող տարբերիչ առանձնահատկություններն են իրար միացող վեմերի ծայրերին փորված ծիծեռնակի պոչ հիշեցնող փոսերը[13] (լուսանկ. աղ. 37)։ Նրանց մեջ դրվում էին քարերը իրար միացնող մետաղե կամ փայտե կապերը, որոնք Հայաստանում հանդես են գալիս IV—III դարերի սահմանագլխին և հարատևում են ամբողջ հելլենիստական ժամանակաշրջանում։

Հնագիտական տվյալները հաստատում են, որ Երվանդունիների օրոք օգտագործվել են ամրոցի արևելյան մասում տեղադրված, նեղ միջանցքով բաժանված երկու մեծ, հինգ և երեք սենյակա-

Ա

0 5 10 15 20մ




Բ

*Աղ. 51. Արմավիր. ա) Միջնաբերդի արևմտյան մասի անտիկ դարաշրջանի կացարանների հատակագիծը, բ) Հելլենիստական դարաշրջանի աղարակի հատակագիծը*

նոց շենքերը։ Ուրարտական այս շենքերում նկատվող ավելի ուշ ժամանակի[14], առաջին հերթին հելլենիստական ժամանակաշրջանի բնակության հետքերը կարող են վկայել այն մասին, որ նրանք ծառայել են նույն նպատակին որպես բնակելի պալատական շենքեր Երվանդունիների համար։

Ուրարտական մյուս կառույցը, որն օգտագործվել է հին հայկական ժամանակաշրջանում, տեղադրված է բլրի գագաթին։ Նրա շինարարական վերլուծությունը ցույց է տալիս, որ այն ենթարկվել է վերափոխությունների, վերջինը՝ միջին դարերում, երբ այն վեր է ածվել փոքրիկ ամրության։ Ուրարտական ժամանակաշրջանում ունեցել է քարե հարթակ, որի վրա բարձրացել է տաճարի շենքը։ Որ այն այդպիսի բնույթի շենք է եղել, երևում է ոչ միայն նրա ամրոցի տարածքի նկատմամբ գերիշխող դիրքից ու ուրարտական տաճարներին բնորոշ հարթակի առկայությունից (Թոփրախ-կալե), այլ նաև նրա շարվածքում օգտագործված խոշոր, հոյակապ մշակված քարերից։

Որ ուրարտական այս շենքը օգտագործվել է հելլենիստական ժամանակաշրջանում, երևում է նրա հարավարևելյան մասում կատարված վերակառուցման աշխատանքներից։ Այստեղի քարերի վրա երևում են այդ ժամանակաշրջանին բնորոշ ծիծեռնակապոչի ձև ունեցող՝ կապերի համար արված բները (լուսանկ. աղ. 35)։ Նման կապեր հաստատված չեն ուրարտական ճարտարապետության մեջ. նրանք Հայաստանում հանդես են գալիս ավելի ուշ։ Այդ մասին են վկայում Հասան-ղալայի վաղ հելլենիստական ժամանակաշրջանով թվագրվող դամբարանաբլրի թաղման սենյակի պատերի քարերը, ինչպես նաև Տաշբուրունում, Ցոլակերտում, Ջերնակի-թեփեում, Անիում, Երվանդակերտում հանդիպող և, անկասկած, մ.թ.ա. III—I դդ. թվագրվող քարերը[15]։ Շինարարական տեխնիկայի այս բնորոշ առանձնահատկությունը, հավանաբար, Հայաստան է մուտք գործել արևմուտքից, հունա-լիդիական աշխարհից, որտեղ այն հանդիպում է դեռևս մ.թ.ա VI դարում։ Ինչպես երևում է Գառնիի ամրոցի պարսպի ու տաճարի օրինակից՝ ծիծեռնակապոչի ձև ունեցող կապերը փոխարինվում են փակագծաձև անկյունավոր կապերով, որոնց ծայրերը մացվում էին իրար միացող վեմերի հատուկ փոսիկների մեջ և լցվում արճիճով։ Արմավիրի հելլենիստական դարաշրջանի Արևի ու Լուսնի և Թագավորական նախնիների տաճարի հատակագծային ու ծավալային առանձնահատկությունները մեզ անհայտ են։ Այն, ինչպես և ուրարտական տաճարային շենքը բարձրացել է քարե հարթակի վրա։ Հավանաբար նա ունեցել է նույն ձևը, ինչ որ իրեն նախորդող ուրարտական տաճարը։ Ուրարտական պաշտամունքային շենքի օգտագործումը հելլենիստական ժամանակաշրջանում, թեկուզև որոշ վերափոխություններից հետո, հաստատում է հին հայկական ճարտարապետության վրա ուրարտական ճարտարապետության թողած ազդեցության մասին վաղուց արտահայտված տեսակետը։

Արմավիրում ուրարտական ճարտարապետական կառույցների օգտագործման նաև այլ փաստեր են հայտնի, ինչպես դա երևում է, այսպես կոչված, մերձտաճարային շենքի օրինակից[16]։ Ուրարտական աղյուսաշեն սենյակների վերին շերտերում հանդիպող հելլենիստական շրջանի հնագիտական բնորոշ նյութը, խեցեղենը, այդ թվում և գունազարդ քարե սպասքի բեկորները, մետաղե իրերն ակնհայտորեն վկայում են այդ սենյակների վերին հարթությունների բնակեցման մասին մ.թ.ա. III—I դարերում։

Հելլենիստական դարաշրջանում ամրոցի արևմտյան մասում ծնունդ է առնում մի փոքր թաղամաս, որը, դատելով նրա մի շարք առանձնահատկություններից, կառուցվել է ամրոցի շարքային բնակչության համար։ Այն բաղկացած է քառանկյունի հատակագիծ ունեցող բավականին պարզ սենյակներից (գծագր. աղ. 51 ա)։

Միջին դարերում կատարված ավերածությունները մի կողմից և այդ կացարանների համեմատաբար համեստ բնույթը մյուս կողմից, առայժմ հնարավորություն չեն ընձեռում վերականգնելու անտիկ շրջանի այս թաղամասի ճարտարապետական մնացորդների քիչ թե շատ ամբողջական պատկերը[17]։

Ուրարտական շենքերի փլատակների վրա առաջանում են հելլենիստական ժամանակաշրջանի կացարաններ, որոնց հատակագծման առանձնահատկություններից մեկն այն է, որ նրանց մեծ մասը կռթնած է անմիջականորեն ուրարտական հին պարսպին։ Այստեղ հնարավոր եղավ պարզել շինարարական երեք հորիզոնների գոյության փաստը։ Սենյակների պատերը, ի տարբերություն ուրարտական սենյակների պատերի, ավելի նեղ են (0,80—1 մ) և կառուցված են միջին ու փոքր

շափերի քարերից։ Պատերից մեկում օգտագործված էր ուրարտական ժամանակաշրջանի խարիսխ։

Երկու իրար զուգահեռ, բայց տարբեր աստիճանի վրա կանգնած պատեր, որոնք իրենց մի շարք հատկանիշներով արմատապես տարբերվում են ուրարտականներից (մեկի լայնքը 0,50, մյուսինը՝ 1 մ, իսկ ուրարտական պատի լայնքը 2,80 մ), շարված են ուրարտական պատի քարե հիմքերից վերև։ Հնարավոր եղավ ուրվագծել մի սենյակի քառանկյունի (6,60×4) հատակագիծ։ Պատերի պահպանված վերջին շարքերը կազմված են անմշակ քարերից՝ հարթ երեսները դեպի դուրս։ Պատերի լայնությունը 0,70—0,80 մ է։

Սենյակի շերտագրական առանձնահատկությունն այն է, որ նրա հարավային նեղ պատը տեղադրված է ուրարտական պատի քարե լայն ներքնամասի վրա, որից բաժանված է մոտ 0,30 մ հաստությամբ հողի շերտով։

Նոր Արմավիրի բլրաշարքի արևելյան մասում բացված համալիրի մնացորդները վերաբերում են հելլենիստական դարաշրջանի ագարակին։ Այն բաղկացած է բնակելի ու տնտեսական բաժանմունքներից՝ խմբված ներքին բակի շուրջը (գծագր. աղ. 51 բ)։ Բնակելի սենյակները ջեռուցվում էին բուխարիների օգնությամբ, որոնք իրենց զուգահեռներն ունեն հելլենիստական քաղաքներում։ Տնտեսական մասն աչքի է ընկնում իր հնձաններով։ Նրանցից մեկն ունի խաղողի տրորման սվաղապատ հրապարակ՝ համեմատաբար մեծ քանակով հումք մշակելու համար։ Մյուս հնձանը բաղկացած է խաղողը ճզմելու քարե սալից և խաղողի հյութը կուտակող քարե գուռից։ Ագարակում հստակ երևում են շինարարական երկու հորիզոններ, սակայն ագարակում գտնված հնագիտական նյութը և առաջին հերթին խեցեղենն ունի իր անմիջական զուգահեռները միջնաբերդի նյութերում, որով ագարակը թվագրվում է մ.թ.ա. III—I դարերով[18]։

Արմավիրի հելլենիստական դարաշրջանի բնակելի ճարտարապետության օրինակները, միջնաբերդի արևմտյան փոքր թաղամասում և ագարակում, որոշակի նշանակություն ունեն Հայաստանի հելլենիստական բնակավայրերի, ինչպես նաև բնակելի համալիրների հատակագծման ու շինարարական տեխնիկայի առանձնահատկությունները հասկանալու համար։ Միևնույն ժամանակ Արմավիրը Հայկական լեռնաշխարհի այժմ այն հազվագյուտ հուշարձաններից է, որտեղ ակնառու է հին հայկական (հելլենիստական) և ուրարտական շերտերի փոխհարաբերությունը և որտեղ հին հայկական ճարտարապետությունը ակնհայտորեն զարգացել է ուրարտական միջավայրում։

**Արշամաշատ:** Արշամաշատը հիմնադրվել է III դարի կեսերին (մ.թ.ա.) և հանդիսացել Ծոփքի Արշամ թագավորի աթոռանիստ քաղաքը։

Հայկական լեռնաշխարհի հարավարևմտյան մասը, ուր գտնվում էր Ծոփքը, տնտեսական և մշակութային առումով առավել զարգացած էր։ Այդտեղով էր անցնում Դարեհի՝ արևելքն արևմուտքին միացնող, այսպես կոչված, «արքայական ճանապարհը»։ Հ. Մանանդյանն այդ նպաստավոր պայմաններով է բացատրում այն հանգամանքը, որ հին Հայաստանի անդրանիկ քաղաքները հիմնադրվեցին Ծոփքում[19]։

Արշամաշատը ստեղծվել էր իբրև հելլենիստական տիպի քաղաք և, որպես այդպիսին, Հայաստանի առաջին քաղաքներից մեկն էր։

**Արկաթիոկերտ:** Արկաթիոկերտ կամ Կարկաթիոկերտ քաղաքը եղել է Ծոփքի աթոռանիստ մյուս քաղաքը։ Ենթադրվում է, որ այն հիմնադրել է Ծոփքի Զարիադրես թագավորի որդի Արկաթիասը[20]։

Արկաթիոկերտի ճշգրիտ տեղը հայտնի չէ[21]։ Պլինիոսը հիշատակում է միայն, որ Արկաթիոկերտը գտնվել է Տիգրիսի մոտերքում։

Արշամաշատի նման, այս քաղաքը նույնպես հին Հայաստանի հելլենիստական բնույթի անդրանիկ քաղաքներից է։

**Երվանդաշատ:** Երվանդաշատը հիմնադրել է Արտաշես Առաջինի նախորդ Օրոնտես-Երվանդը (մ.թ.ա. III դարի վերջերին)[22]։ Խորենացին ուշագրավ տեղեկություններ է հաղորդում ոչ միայն Երվանդաշատի տեղի, այլև նրա կառուցման վերաբերյալ. «Յաւուրս սորա փոխին արքունիքն յԱրմաւիրն անուանեալ բլրոյ. քանզի էր հեռացեալ գետն Երասխ, և ի յերկարել ձմերայնոյն, և ի դառնահոտ փչմանէ հիւսիսոյ պաղացեալ ձուլեալ վտակն՝ ոչ ուստեք արքունումն բաւական թագաւորականին գտանէր տեղւոյ։ Ընդ որ նեղեալ Երուանդայ, նա և ամրագոյնի ևս տեղւոյ եղեալ ի խնդիր՝ փոխե զարքունիսն յարևմուտս կոյս, ի քարակտուր մի բլուր, զորով պատ առեալ Երասխայ՝ ընդդեմ Ախուրեանն հոսի գետ։ Պարսպէ զբլուրն, և ի ներքսագոյն քան զպարիսպն ընդ

բաղում տեղիս կարեալ դքարինսն մինչև ի յատակս բլրոյն հաւասար գետոյն, մինչև դիմել ջուրց գետոյն ի փորուածն, յըմպելեաց պատրաստութիւն։ Զմիջնաբերդն ամրացուցանէր բարձր պարսպօք և դրունս պղնձիս կանգնէր ի միջոցի պարսպին, և ելանելիս երկաթիս ի ներքուստ ի վեր մինչև ղդուռնն, և ի նմա որոգայթս իմն ծածուկս ընդ մեջ աստիճանացն, որպէս զի ըմբռնեսցի՝ եթէ որ գաղտ ելանելով դաւել կամիցի զարքայն։ Եւ էր, ասեն, երկդիմի, որպէս զի մինն լիցի սպասավորաց արքունի և ամենայն ելմտից համապարհ տուընջենային, իսկ միւսն գիշերային և մարդադաւաց»[23] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։

Երվանդաշատը, այսպիսով, կառուցվել է Արաքսի ափին, նրա՝ Ախուրյան գետի հետ միացման տեղում և հանդիսացել է Հայաստանի նոր մայրաքաղաքը։

Նորաստեղծ մայրաքաղաքից ոչ հեռու կառուցվում է մի փոքր քաղաք՝ Բագարանը, ուր Արմավիրից տեղափոխվում են պաշտամունքի բոլոր կուռքերը. «բայց Երուանդայ շինեալ զքաղաքն իւր և փոխեալ անդր զամենայն ինչ յԱրմաւրայ ուրոյն ի կռոցն, զոր ոչ օգուտ իւր համարեալ յիւրն փոխել ի քաղաքն... այլ հեռագոյն ի նմա նէ... նման իւրոյ քաղաքին շինեաց քաղաք փոքր ի վերայ գետոյն Ախուրենայ, և անուանեաց Բագարան, այս ինքն թէ ի նմա զբագնայց յօրինեալ է դկարմութիւն. և փոխեաց անդր զամենայն զկուռսն որ յԱրմաւիր»[24] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։

Թե ինչպիսին էր Երվանդաշատը կամ ինչ կառույցներ են եղել նրանում, անհնարին է առանց մանրամասն պեղումների որևէ սույզ բան ասել։ Սակայն պահպանված վերերկրյա ավերակների մնացորդներն անգամ ճարտարապետական-կառուցողական արվեստի տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում։

Թորամանյանը, որ անձամբ եղել է ավերակների վայրում, գրում է. «Երբ անցա Ախուրյանի ձախ ափը... ամեն քայլափոխին կնկատվեին մեծամեծ շինությանց հետքեր՝ ցրված մինչև Հաջիբայրամ գյուղի ստորին սահմանները»։ Գյուղը (Հաջի-բայրամը), կարելի է ըսել, ամբողջովին շրջապատված է պարտեզներով ու բանջարանոցներով, որոնց բոլորտիքը իբրև շրջանակ շարված են հին շինությունների քանդված մեծազանգված քարեր, որոնց վրա պահված են տակավին երկաթե կապերու տեղեր»[25] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։

Մեկ այլ տեղ, անդրադառնալով Երվանդաշատի շինարարության մեջ երկաթի գործածության մասին խորենացու վկայությանը, Թորամանյանը գրում է.

«...Ես ինքս տեսել եմ Երվանդաշատի բերդի մեջ պարիսպներից թափված քարերի վրա երկաթի կապի նշանները։ Երվանդաշատի բերդը շինված էր հնագույն պարիսպների նման, մեծազանգված որձաքարի անտաշ քարերով, որոնք միմյանց մոտ լավ ամրացնելու համար կպցված էին երկաթե կապերով, թեև երկաթները հանված են, սակայն կապի տեղերը փորված մնում են քարերի վրա»[26] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։

Հետևաբար Երվանդաշատը իբրև մայրաքաղաք ոչ միայն ունեցել է ճարտարապետական բազմապիսի կառույցներ ու բարձր պարիսպներով շրջապատված անառիկ միջնաբերդ, այլև շինարարական այնպիսի ավանդույթներ, երբ պարիսպների դռները կառուցվում են պղնձից, աստիճանները՝ երկաթից, իսկ պատերի կառուցվածքներում, իբրև շաղկապող միջոց, օգտագործում մետաղյա գամեր։

Բնականաբար շինարարական նման ավանդույթներով ստեղծված կառույցվածքները պետք է որ լինեին մայրաքաղաքին արժանի՝ ճարտարապետական բարձրարժեք հուշարձաններ։

Երվանդակերտ դաստակերտը։ Երվանդակերտի կառուցումը Խորենացին վերագրում է Երվանդաշատի հիմնադիր Երվանդին (III—II դդ. մ.թ.ա.). «Քաղցր է ինձ ասել յաղագս գեղեցիկ դաստակերտին Երուանդակերտի, զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղեցիկ և չքնաղ յօրինուածովք»։ Այնուհետև, հովվերգելով «պայծառ շինուածովք լուսաւոր» կառույցվածքները, գրում է. «Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն գոգցես ի բարձրաւանդակ թագաւորանիստ ղհայեցուածսն ունի. և արդարև բերրի և թագաւորական դաստակերտն»[27]։

Երվանդակերտում կիրառվել է շինարարական այն տեխնիկան, ինչ Երվանդաշատում։

Թորամանյանը, խոսելով հնագույն մի կառույցվածքի մասին, գրում է. «Երվանդակերտի մեջ եթե մի տարբերություն կա, այն ալ քարերուն երկաթ կապերով իրար կապված չինելն է, շատ մը քարերու վրա անեղծ մնացած են կապերու տեղերը»[28] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։

**Արտաշատ***: Հին Հայաստանի Արտաշատ մայրաքաղաքը հիմնադրվել է մ.թ.ա. II դ. 180—170-ական թթ.։ Դա տեղի է ունեցել մի դարաշրջանում, երբ Մերձավոր արևելքի ժողովուրդների, նաև հայ ժողովրդի կյանքում կատարվում էին պատմական խոշոր, կարելի է ասել, շրջադարձային նշանակություն ունեցող անցքեր:

Արտաշես Ա-ն (189—160) պետական խոշոր գործիչ ու զորավար էր և լավ էր հասկանում, որ երկրի դժվարությամբ նվաճված անկախությունը պահպանելու համար պետք էր միավորել հայկական հողերը, զորեղացնել հայկական թագավորությունը, որին միացվեցին հայ բնակչություն ունեցող մի քանի ծայրամասային նահանգներ և գավառներ: Նրա օրոք մեծ հողատարություն ցուցաբերվեց երկրի տնտեսության հիմքը հանդիսացող երկրագործության զարգացման նկատմամբ[29]: Դա ամենը չէր, պետք էր ստեղծել երկիրը քաղաքականապես միավորող կենտրոն-մայրաքաղաք և հիմնադրել քաղաքներ՝ արհեստագործությունը, առևտուրը զարգացնելու և քաղաքները թագավորության տնտեսական և քաղաքական հենարանը դարձնելու համար: Արտաշեսը հիմնադրեց իր և իր հոր՝ Զարեհի անունը կրող մի քանի քաղաք և քաղաքատիպ ավան: Վերջապես Արտաշեսի մեծագործությունների պսակը կազմեց Արտաշատ մայրաքաղաքի հիմնադրումը:

Արտաշատը հիմնադրվեց Արարատյան դաշտի առավել բերրի և ջրառատ մասում, առևտրական ճանապարհների հանգույցում, Արարատ լեռան դիմաց, Արաքս և Մեծամոր գետերի միջև ընկած եռանկյունու վրա: Տեղանքն այստեղ հարմար էր. Արաքսի ափին գտնվում էր մի ընդարձակ բլրախումբ՝ նրա շուրջ փռվող արգավանդ դաշտերով, պաշտպանված ջրային հզոր պատնեշներով: Քաղաքը շրջափակվեց ընդարձակ պարիսպներով, ջրով լցված փոսով:

Հույն, հռոմեացի և հայ հեղինակները մեծ գովասանքով են խոսում Արտաշատի մասին: Ստրաբոնը Արտաշատի մասին գրում է. «Այս վերջինը գեղեցիկ է շինված և երկրի թագավորանիստ քաղաքն է: Նա գտնվում է գետածոցում, որը նման է թերակղզու, և նրա շուրջը, բացի պարանոցի մասից՝ գետի առջև ձգվում է պարիսպը, իսկ պարանոցը փակված է խրամով ու պատվարով[30]: Պլուտարքոսը խոսելով Արտաշատի հիմնադրման մասին, եզրակացնում է՝ «այսպիսով կառուցվեց մեծ և խիստ գեղեցիկ քաղաք, որն անվանվեց թագավորի անունով և հռչակվեց Արմենիայի մայրաքաղաք»[31]:

Արտաշատ մայրաքաղաքի հիմնադրումը խոշոր նշանակություն ունեցող իրողություն էր, ուստի նրա արձագանքները շուրջ յոթ դար անց հասել են Մովսես Խորենացուն, որը բերում է նաև ավանդաբար պահպանված որոշ տեղեկություններ. «Երթեալ Արտաշիսի ի տեղին, ուր խառնին Արաքս և Մեծամօր, և հաճեալ ընդ բլուրն շինէ քաղաք յիւր անուն անուանեալ Արտաշատ: Ձեռնտու լինի նմա և Երասխ փայտիւք մայրեաց. վասն որոյ անաշխատ և երագ շինեալ՝ կանգնէ ի նմա մեհեան, և փոխէ ի նա ի Բագարանէ զպատկերն Արտեմիդեայ և զամենայն կուռս հայրենիս. բայց զԱպողոնի պատկերն արտաքոյ քաղաքին կանգնէ հուպ՝ ի ճանապարհն: Եւ յարուցանէ ի քաղաքէն Երուանդայ զգերութիւն Հրէիցն, որ փոխեալ էին անդր յԱրմաւիրայ, և նստուցանէ զնոսա յԱրտաշատ: Նա և զամենայն վայելչութիւն քաղաքին Երուանդայ, զոր տարեալ էր յԱրմաւիրայ և զոր անդէն արարեալ նորա՝ փոխէ յԱրտաշատ, և առաւել ես յինքենէ յօրինէ իբրև զքաղաք արքայանիստ»[32]:

Արտաշատը արագ աճելով դարձավ Մերձավոր արևելքի առևտրական-տնտեսական և մշակութային խոշոր կենտրոններից մեկը: Մեծ էր Արտաշատի նաև վարչաքաղաքական դերն ու նշանակությունը: Նա դարձել էր Հայոց աշխարհի սիրտը և մայրաքաղաքի տնտեսական-քաղաքական ու մշակութային կենտրոնի նշանակալից դերը կատարեց շուրջ 500 տարի:

Արտաշես արքան իր բազմակողմանի և ծավալուն գործունեությամբ հանդիսացավ հայկական հողերի միավորողը, հայկական միասնական և հաստատուն պետության հիմնադիրը:

Գտնվելով Հայաստանի հին պատմության կիզակետում, Արտաշատը, բնականաբար, բաժանել է հայ ժողովրդի ճակատագիրը՝ հաճախ է դարձել ռազմական ընդհարումների թատերաբեմ, ավերվել է, նորից վերականգնվել:

Մ. թ. 58 թ. աշնանը հռոմեական զորքերը՝ Կորբուլոնի գլխավորությամբ գրավեցին Արտաշատը և 59 թ. գարնանը,ստիպված լինելով հեռանալ,

* Տեքստը՝ Բ. Ն. Առաքելյանի

հիմնահատակ ավերեցին և հրկիզեցին քաղաքը։ Բայց շուտով այն վերականգնվեց։

II դարում, երբ Վաղարշապատը թագավորանիստ դարձավ, Արտաշատը չկորցրեց մայրաքաղաքի իր դերն ու նշանակությունը։ Բայց 360-ական թթ. Սասանյան Շապուհ արքայի զորքերը կործանեցին քաղաքը և նրա հազարավոր բնակիչներին գերի տարան։ Ավերված, խիստ թուլացած Արտաշատը V դարում մայրաքաղաքի դերը զիջեց Դվին քաղաքին և, կորցնելով երբեմնի խոշոր քաղաքի նշանակությունը, քարշ ավեց իր խղճուկ գոյությունը մինչև VII—VIII դդ., ապա անհետացավ պատմության թատերաբեմից։

Մինչև 1920-ական թթ. Արտաշատի տեղն իսկ հայտնի չէր, իսկ երբ այն որոշվեց, քաղաքի հետքերը չէին երևում, ուստի տարակուսանքը շարունակվեց և հաղթահարվեց միայն ձեռնարկված պեղումների շնորհիվ։

1967 թ. հին Արտաշատի տեղանքին կից գտնվող Փոքր Վեդի գյուղում ջրմուղի գիծ անցկացնելիս հայտնաբերվեցին լատիներեն արձանագրություններ, որոնցից մեկը փորագրված էր հինգ սալ քարերի վրա՝ 8,5 մ ընդհանուր երկարությամբ և 80 սմ լայնությամբ[33] (գծագր. աղ. 54 դ)։

Արտաշատի պեղումները ձեռնարկելու լավ առիթ էր առաջացել և որոշ նախապատրաստական աշխատանքներից հետո Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտի հնագիտական արշավախումբը 1970 թ. սկսեց անցյալի այդ նշանավոր քաղաքի հնագիտական ուսումնասիրությունը։

Առաջին հարցը, որը փորձեց պարզել Արտաշատի հնագիտական արշավախումբը, վերաբերում էր քաղաքի տեղանքին և գրաված տարածքին։ Սակայն քաղաքի սահմաններն ստույգ որոշելը մեծ դժվարություն էր ներկայացնում այն պատճառով, որ այստեղ դաշտերը դարեր շարունակ մշակվել են, գյուղեր են հիմնադրվել և քաղաքի հարթավայրային մասում փռված թաղամասերի հետքերն անհետացել են։ Այնուհանդերձ կարելի է ասել, որ հին Արտաշատը գրավել է շուրջ 450—500 հեկտար տարածություն, այսինքն շատ ավելի մեծ քաղաք է եղել, քան կարելի էր ենթադրել պեղումներից առաջ։

Քաղաքի տեղագրության հետ սերտորեն կապված է նաև նրա պաշտպանական համակարգի հարցը։ Վերևում նշվեց, որ Մովսես Խորենացու վկայությամբ քաղաքը պաշտպանված է եղել Արաքս և Մեծամոր գետերի ջրային հզոր պատնեշով, իսկ Ստրաբոնը վկայում է քաղաքի պարիսպների և ամբարտակների մասին։ Տեղանքի զննումն այժմ ներկայացնում է հետևյալ պատկերը. քաղաքի միջնաբերդը և կենտրոնական ողջ թաղամասեր տեղադրված են եղել Խորվիրապի մեծ բլրախումբը կազմող ինը ժայռոտ բլուրների վրա, որոնք բռնում են շուրջ 100 հեկտար տարածություն, իսկ նրանց առջև հարթավայրում՝ դեպի հյուսիս-արևելք և հարավ փռված են եղել քաղաքի թաղամասերը։ Այդ բլրախմբից 350—400 մ դեպի հարավ-արևելք գտնվում են ևս երկու բլուր, որոնց վրա պարիսպների հետքերը նույնպես պահպանվել են։

Պարսպով շրջափակված են եղել Խորվիրապի բոլոր բլուրները, բայց պարիսպները կառուցվել են ոչ թե իրարից անջատ, այլ կազմել են մի միասնական, ընդարձակ և պաշտպանական հզոր համակարգ։ Կողք կողքի գտնվող կամ կից բլուրներն օղակող պարիսպներն իրար միացած են նրանց միջև գտնվող ցածրադիր մասում կառուցված զուգահեռ պատերով կազմված միջանցքներով։ Պարսպի հետքերը նկատելի են բոլոր բլուրների շուրջ, բայց տեղ-տեղ նրանք բոլորովին չեն պահպանվել, քայքայվել են անգամ նրանց հիմքերի տակի ժայռերը։ Պարիսպը կառուցված է եղել տեղական կարմրավուն, կարծր, բայց ճեղքեր տվող և քայքայվող քարից, օգտագործվել է նաև տեղական մոխրավուն մարմարը՝ ոչ սրբատաշ, կոպիտ մշակմամբ (լուսանկ. աղ. 38 ա)։ Վեմերով շարված են եղել, հավանաբար, պարսպի հիմքերը, իսկ վերևում թերևս եղել է հում աղյուսի շարվածքը, որի հետքերը երևան եկան հյուսիսային (1-ին) բլրի պարսպի որոշ հատվածներում։

Պարիսպը վարպետորեն հարմարեցված է տեղանքին, մեկ դուրս, մեկ ներս թեքվելով և անկյուններ կազմելով հնարավորություն է ընձեռել թշնամուն հարվածելու և՛ ճակատից, և՛ թևերից, իսկ բլուրների անկյուններում կանգնեցված են եղել կիսաշրջանաձև կամ $^2/_3$ շրջան կազմող աշտարակներ։

Ամենամեծ և բարձրադիր բլրի հյուսիսարևելյան լանջին պեղումներով բացվեց պարսպի երկու գիծ։ Առաջին պարսպից, որն ավելի հինը,




*Նկ. 52. Արտաշատ. ա) 1-ին բլրի վրա բացված ամրոցի հատակագիծ, բ) 1-ին բլրի վրա բացված զորանոցի (զինագործի արհեստանոցի) հատակագիծ, գ) 4-րդ բլրի հատակագիծը պեղումներից հետո*

նախնականն է, պահպանվել են լավ մշակված քարերից շարված հիմքերը՝ կանոնավոր հենապատերով (կոնտրֆորսներով) և անկյունային $^{2}/_{3}$ շրջան կազմող աշտարակով։ Ներքին պարիսպը կառուցված է ավելի ուշ, առաջինին զուգահեռ և երկուսի միջև թողնված է 40—70 սմ նեղ միջանցք։ Ներքին պատը, որ բացված է 2—3 մ բարձրությամբ, ամբողջովին շարված է ճեղքված քարերով։ Այս պատի մեջ տեղ-տեղ հանդիպում են ավելի հին, հավանաբար, արդեն շենքերից վերցված լավ մշակված սրբատաշ քարեր, որմնասյան բեկորներ՝ կրաքարից։

Արտաշատի հիմնադրման ժամանակ հիմնական պարիսպը կառուցված է ամրոցաշինության պահանջների հմուտ կիրառմամբ և աչքի է ընկնում իր ընդարձակությամբ։ Ուշագրավ է, որ հռոմեական պատմիչ Կոռնելիուս Տակիտոսը 59 թ. Արտաշատի ավերումը և հրկիզումը հռոմեացիների կողմից փորձում է արդարացնել քաղաքի պարիսպների ընդարձակությամբ։ Նա գրում է. «Քաղաքը հրի ճարակ դառնալով հիմնահատակ կործանվեց, որովհետև պարիսպների ընդարձակության պատճառով չէր կարելի պահել այն առանց պահապանների հզոր գնդի և մենք բավական զորք չունեինք՝ և՛ քաղաքը պահելու, և՛ պատերազմելու համար, իսկ եթե այն կանգուն և անպահպան թողնվեր՝ կկորչեին քաղաքի առման և՛ փառքը, և՛ օգուտը»[34]։ Տակիտոսը արդյո՞ք այն պարիսպների ընդարձակությունն է նկատի ունեցել, որոնց հետքերը երևում են բլուրների վրա, թե՞ եղել են պարիսպներ նաև հարթավայրում փռված թաղամասերի շուրջը, առայժմ պարզ չէ, թեև Ստրաբոնի հիշատակությամբ քաղաքի շուրջը և գետի առջև ձգված է եղել պարիսպ։ Տակիտոսը նույնպես վկայում է, որ Արաքսի ջրերը թրջում են քաղաքի պարիսպները[35]։

Պարսպի հաստությունը տարբեր մասերում տարբեր է՝ 2,80 մետրից մինչև 4,80 մետր։ Պարսպի, ինչպես և շենքերի հիմնապատերի հետքեր կարելի է նկատել խորվիրապի բոլոր բլուրների վրա։ Շենքերի հետքեր տեղ-տեղ երևացին նաև հարթավայրում՝ բլուրներից հարավ և արևելք։

Միայն պեղումները կարող են պարզել շենքերի բնույթը և շինարարական սկզբունքներն ու առանձնահատկությունները, փաստական նյութ տալ լուսաբանելու հինավուրց քաղաքի կյանքին, կենցաղին և մշակույթին վերաբերող շատ հարցեր։ Այդ նպատակով էլ Արտաշատի հնագիտական արշավախումբը ձեռնարկեց քաղաքի պեղումները, աշխատանքը կենտրոնացնելով առաջին հերթին բլրախմբի հյուսիսային ծայրի (1-ին) բլրի վրա և 1973 թ. ավարտեց նրա համատարած պեղումները։ Բլուրը շրջափակված է ոչ շատ կանոնավոր եռանկյունու տեսք ունեցող պարսպով։ Արևմտյան անկյունում գտնվող մուտքին կից, արևելյան անկյունում և հյուսիսային պատի կենտրոնական մասում տեղադրված են աշտարակներ։ Երեք կողմերից պարսպին հարում են բնակելի սենյակներ և դարբնոց-զինագործական արհեստանոցներ։ Հյուսիսարևմտյան և հյուսիսարևելյան կողմերում այս կացարանների և արհեստանոցների շարքը ոչ լայն միջանցքով անջատված է ավելի ներս ընկած շենքերից։ Այդ հանգամանքը դյուրացնում էր զինվորների շարժումը պարսպի մի հատվածից մյուսը, իսկ միջանցք-փողոցից տեղ-տեղ անցում է թողնված դեպի պարսպի աշտարակները և անկյուն կազմող մասերը։ Բլրի հարավարևելյան կողմից կացարանների և արհեստանոցների շարքն անմիջապես հենվել է պարսպին և դեպի ներս նրանց մուտքերը բացվել են բակի վրա։ Միանգամայն ակնհայտ է, որ բլուրը կառուցապատվել է միասնական նախագծով։ Բլրի վրա պարզ նկատվում է շինարարական երկու շրջան։ Առաջին շրջանի շենքերը քանդվելուց կամ ավերվելուց հետո բլուրը կրկին կառուցապատվել է նախկինը հիշեցնող նախագծով, միայն թե միջանցք-փողոցները փոքր-ինչ նեղացել և ավելի են մոտեցվել պարսպին (գծագր. աղ. 52 ա)։

Բոլոր շենքերը կառուցապատված են տեղական ճեղքված և կոպիտ մշակված, ոչ սրբատաշ քարերով և, հավանաբար, ունեցել են կավե սվաղ։ Դարբին զինագործի արհեստանոցներից երկուսը կառուցված են միևնույն նախագծով և ունեն երեք բաժանմունք՝ քուրայի, ընդհանուր սենյակ և քուրայի սենյակին կից միջանցք, հավանաբար վառելիքի համար. միայն բաժանմունքների չափերն են տարբեր (գծագր. աղ. 52 բ)։

Ավելի լավ են պահպանվել հյուսիսարևելյան հատվածի կացարան-սենյակները, որոնց պատերը տեղ-տեղ կանգուն են մնում 2—2,60 մ. բարձրությամբ։ Սենյակներից մեկում դրված է կրաքարից փոքր չափերի երկու խարիսխ՝ հավանաբար փայտյա սյուների համար։

Պարսպին հարող բնակելի սենյակները հատակագծով և կառուցվածքով մեծ մասամբ նման են










*Աղ. 53. Արտաշատ. ա) 8-րդ բլրի պեղումներով բացված հատվածի հատակագիծը, բ) 8-րդ բլրի վրա բացված խեցեգործական արհեստանոցի հատակագիծը (Բրժման հնոցով), գ) 8-րդ բլրի վրա բացված բաղնիքի՝ հիպոկաուստով սենյակի հատակագիծը*

իրար: Հավանաբար դրանք եղել են զինվորական կացարաններ:

Միջանցք-փողոցներից ներս ընկնող սենյակներն ավելի ընդարձակ են: Նրանցից մեկի մեջ տեղադրված են կարասներ, որոնց մեջ նավթ (մազութ) է լցված եղել: Ինչպես երևում է, այս բլուրը բնակեցված է եղել զինվորականներով և նրանց ընտանիքներով: Բլուրն ամբողջությամբ ունեցել է պաշտպանական նշանակություն:

Այս բլրի վրայի կառուցվածքները երկիցս ավերվել են և երկու անգամ հրկիզվել: Հրդեհի հետքերը նկատելի են ամենուրեք: Շենքերի մի մասն ունեցել է հարթ ծածկ, գերանների վրա փռված է եղել եղեգն, որի հետքերը վառված վիճակում պարզ նկատելի են ծածկերի փլվածքների տակ: Պետք է ենթադրել, որ բլրի կառուցվածքներն առաջին անգամ թշնամին ավերել է մ.թ. 59 թ. գարնանը, երբ Կորբուլոնի գլխավորած հռոմեական լեգեոններն ամբողջապես ավերեցին և հրկիզեցին հայոց մայրաքաղաքը:

Բլրախմբի հարավարևմտյան կամ Արաքսի ափին մոտեցող, ծայրի 8-րդ բլրի վրա ևս բացվեցին պարսպի առանձին հատվածների հետքեր և բազմաթիվ շենքերի հիմնապատեր, որոնք դասավորված են պարսպին զուգահեռ ընթացող փողոցների երկու կողմերում, արտաքին շարքով հարելով պարսպին: Այստեղ նկատելի են շինարարական տարբեր, նույնիսկ երեք-չորս շրջանների հետքերը: 8-րդ բլրի վրա ևս կյանքը սկսվել է մ.թ.ա. II դ. քաղաքի հիմնադրման օրից, և ի տարբերություն 1-ին բլրի, հարատևել է մինչև IV դարը: Այլ խոսքով, այս բլրի վրա հայտնաբերված թե՛ ճարտարապետական կառուցվածքները և թե՛ հնագիտական նյութերը վերաբերում են Արտաշատ քաղաքի գոյության համարյա ամբողջ ժամանակշրջանին և դրանով իսկ մեծ հետաքրքրություն են ներկայացնում:

8-րդ բլրի վրա ևս շինարարությունը կատարված է միասնական նախագծով և նույն սկզբունքով, ինչ 1-ին բլրի վրա: Բացված փողոցների երկայնքով երկու կողմերից ձգվում են շենքերի արտաքին պատերը, որոնք մի ամբողջական գիծ են կազմում, իսկ ներսում բացվում են սենյակների բաժանմունքները (գծագր. աղ. 53 ա, լուսանկ. աղ. 37): Շինարարական երկրորդ և հետագա շրջանում փողոցների ու շենքերի նախնական գծագրի որոշ խախտումներ են նկատվում: Առաջին փողոցի վրա կառուցված է եղել նաև մի բաղնիք (գծագր. աղ. 53 գ): Բաղնիքից ոչ հեռու բացվեցին իրար կից ջրավազաններ՝ մեկը մեծ, երկուսը փոքր: Դրանց պատերը կառուցված են կրաշաղախով, որի մեջ ագուցված եղեգնի ցողունների տեղերում պահպանվել են ուղղահայաց անցքեր: Ավազանների հատակներին շարված են եղել թրծած աղյուսներ: Ինչպես երևում է, ավազանը բաղնիքի հետ կապված չէ: Առաջին փողոցի վրա բացվել է նաև խեցեգործական արհեստանոց՝ խեցեղեն թրծելու հնոցով (գծագր. աղ. 53 բ):

Շենքերի հետքեր բացվել են նաև հարևան՝ 7-րդ բլրի վրա, որտեղ նույնպես շինարարական տարբեր շերտերի առկայությունն ակնհայտ է:

Արշավախմբի համարակալմամբ 2-րդ բլրի վրա, որն ամենամեծն է ու բարձրադիրը, նկատելի են անտիկ դարաշրջանի բազմաթիվ շենքերի հետքեր, որոնց պատերը շարված են տեղական կարմրավուն ճեղքված քարերով: Սակայն այս բլրի վրա ընդարձակ տարածությամբ թափված են կրաքարի մանր ու մեծ տաշվածքներ, ուստի պետք է ենթադրել, որ այստեղ եղել են սրբատաշ կրաքարից կառուցված, գուցե և սյունազարդ, նշանավոր շենքեր: Այդ բանը հաստատող նշաններ էլ կան: Այստեղ գտնվել է կրաքարից պատրաստված սյան խարիսխ և քիվի բեկոր՝ լավ մշակված և անտիկ շրջանին բնորոշ գեղեցիկ անցումներով: Բլրի գագաթին ևս, հավանաբար, եղել են աչքի ընկնող շենքեր, սակայն այժմ այստեղ պահպանվում են վաղ միջնադարյան փոքրիկ ամրոցի բավականին հաստ պատերը՝ կրաշաղախ միջուկով և երեսապատման քարերով:

Սրբատաշ կրաքարից կառուցված և սյունազարդ շենքերը, ինչպես երևում է, շատ են եղել Արտաշատում, քանի որ քաղաքի տարածքի տարբեր մասերում, հին և նոր գերեզմանոցներում հանդիպում են ավերված շենքերի քարեր, միացման երկաթե գամերի համար արված փոսիկներով, ինչպես և սյուների խարիսխներ (լուսանկ. աղ. 38 բ): Վերջիններիս չափերի տարբերությունները վկայում են, որ նրանք պատկանել են տարբեր շենքերի: Գտնվել են նաև սյուների լավ մշակված գլաններ: Դրանցից մի քանիսը Արտաշատի հին շենքերի ավերակներից XIX դ. տարվել են Արարատ գյուղը՝ օգտագործելու այստեղ կառուցվող եկեղեցու համար, և այժմ ընկած են այդ եկեղեցու շուրջը, իսկ առանձին մասեր դրված են

նկեղեցու մուտքի առջև և ներսում։ Դրանց՝ անտիկ Արտաշատին պատկանելը կասկածից դուրս է, մանավանդ, որ նրանց վրա պահպանվել են գլանների տարբեր մասերն իրար միացնելու երկաթե գամերի համար արված փոսիկները։ Անտիկ դարաշրջանի ավելի փոքր չափերի սյուների երկու գլան և խարիսխների բեկորներ գտնվել են Արտաշատի շրջանի Ազատավան գյուղում։

Այժմյան Արարատ քաղաքի մոտերքի հանքերից բերված մանրահատիկ կրաքարը լավ մշակված, հղկված վիճակում իր տեսքով հիշեցնում է մարմարը։ Այդպիսի սպիտակ քարից կառուցված շենքերը շքեղություն են հաղորդում քաղաքին (շենքերն ունեցել են ճարտարապետական հարդարանք-որմնանկարներ)։ Նրանց քանդակներից առայժմ գտնվել է մի փոքրիկ բեկոր։ Շենքերի սենյակները ներսից ունեցել են կրաշաղախից պատրաստված ձևավոր քիվեր, որոնց տարբեր չափերի նմուշները գտնվել են բլուրներից բավականաչափ հեռու՝ հարթավայրում, վարած արտի մեջ։ Մի հին շենքի տեղից հավաքված սվաղի բեկորները, 7—8 գույնի ներկված, վկայում են, որ շենքերը հարդարվել են նաև որմնանկարներով։ Գույներից, մանավանդ կարմիրն իր տարբեր երանգավորումներով, նարնջագույնը, դեղինները, սև, սպիտակը աչքի են ընկնում իրենց հստակ երանգներով։ Պետք է հուսալ, որ հետագայում կբացվեն որմնանկարների, ինչպես և խճանկարների հետքեր և նմուշներ։

Շենքերը մասամբ ծածկված են եղել թրծած կավե կղմինդրներով, որոնց շատ օրինակներ գտնվել են քաղաքի տարբեր մասերում։ Կղմինդրներն ունեն անտիկ դարաշրջանին բնորոշ ձևավորում, իսկ շատերի արտաքին մակերեսը ծածկված է կարմիր ներկով։ Փավածքի կղմինդրների (սալենների) իրար կից բարձրադիր եզրերը ծածկվել են երկնիստ, եռանիստ և կիսախողովակաձև կղմինդրներով (կալիպտերներով)։

Արդ, քաղքաշինական ի՞նչ սկզբունքներով է կառուցվել Արտաշատը և ի՞նչ ճարտարապետություն է ունեցել. Ստրաբոնի ասելով՝ «քարաշեն», իսկ Պլուտարքոսի վկայությամբ՝ «մեծ ու խիստ գեղեցիկ» այս քաղաքը։ Առաջին բլրի պեղումներից երևում է, որ այստեղ կառուցումները կատարվել են միասնական նախագծով, որը հարմարեցված է անկանոն եռանկյունաձև բլրի տեղանքին։ Շենքերը հարել են պարիսպներին, ապա նեղ փողոց-միջանցքներով անջատվել բլրի վերին մասից, որտեղ կառուցվել են մի քանի շենքեր՝ կենտրոնական մեծ հրապարակի երկու կողմերում։ Ութերորդ բլրի վրա բացվել է հինգ զուգահեռ փողոց, բլրի թեք լանջին, որի տարածքը մեծ չէ և հատող փողոցներ չկան։ Այստեղ ևս կառուցումները կատարվել են միասնական նախագծմամբ, որը ոչ մեծ խախտումներով պահպանվել է նաև քաղաքի ավերումներից և վերականգնումներից հետո՝ դարեր շարունակ։ Շենքերը փողոցների վրա կազմել են իրար կպած համատարած շարքեր։

Չորրորդ և ամենափոքր բլրի պեղումները վկայում են, որ այն հանդիսացել է քաղաքի բլուրների վրա գտնվող միջնաբերդի և պարսպափակ թաղամասերի ներքին ռազմակոմունիկացիոն հանգույցը։ Այն ամրացված է պարիսպներով և աշտարակներով, որոնց միջև թողնված է 1,60 մ լայնությամբ անցում, որով միայն կարելի էր 1-ին, 2-րդ և 3-րդ բլուրներից անցնել դեպի մյուս բլուրները, ինչպես և հակառակ ուղղությամբ (գծագր. աղ. 52 գ)։

Քաղաքաշինության հետ սերտորեն կապված էր նաև բնակչության համար կոմունալ-կենցաղային հարմարություններ ստեղծելու հարցը։ Խոսքը վերաբերում է, առաջին հերթին, քաղաքի ջրամատակարարմանը։ Քաղաքի տարածքում գտնված խոշոր և փոքր չափերի, ինչպես և ծնկաձև կավե խողովակները (նաև տեղի բնակիչների դաշտային աշխատանքների ժամանակ երևան եկած ջրմուղի գծի հատվածը) տարակույս չեն թողնում, որ քաղաքի ջրամատակարարման հարցը լուծվել է հաջողությամբ (լուսանկ. աղ. 39 բ)։ Խմելու ջուրը կարող էր բերվել Գառնիից տասնյակ կիլոմետր հեռավորությունից, բայց Արաքսի գետից էլ է կավե խողովակներով ջուր վերցվել։ Մյուս կարևոր միջոցառումը բաղնիքների կառուցումն էր։ 8-րդ բլրի պեղումներով, առաջին և չորրորդ փողոցների վրա կավագործ արհեստավորների մի թաղամասում հայտնաբերվել են երկու բաղնիքի հետքերը, որոնք գտնվում են մեկը մյուսից ընդամենը 26—30 մետր հեռավորության վրա։

Քաղաքի տարածքում կատարվող դիտումների, երկրագործական և մելիորատիվ աշխատանքների ժամանակ հայտնաբերվել են նաև մի քանի այլ բաղնիքների հետքեր։ Ուշագրավ է, որ բոլոր բաղնիքներն ունեցել են կրկնակի հատակ և

ստորհատակյա ջեռուցման համակարգ-հիպոկաուստ, որը բնորոշ է հռոմա-հռոմեական թերմերին: Բաղնիքների վերին հատակները հիմնվել են կլոր կամ քառանիստ կավե խողովակների, բոլորակ կամ քառակուսի աղյուսներից կազմված միակտոր քարե հենակների վրա: Նշված հինգ տիպի հենակների օրինակներն էլ հայտնաբերվել են Արտաշատում: Վերին հատակը կազմվում էր հենակների վրա դրվող մեկ կամ երկու շերտ խոշոր աղյուսների փռվածքից, որի վրա լցվում էր անջրաթափանց շաղախի շերտը, սովորաբար 5—7 սմ հաստությամբ: Հռոմեական նշանավոր ճարտարապետ Վիտրուվիոսն (մ.թ.ա. I դ. երկրորդ կես) հաղորդում է, որ անջրաթափանց շաղախը կազմվում էր ծեծած աղյուսից և կրից՝ 3 : 1 հարաբերությամբ[36]: Պեղումները վկայում են քաղաքային բնակչության կուլտուր-կենցաղային բավականաչափ բարձր մակարդակի մասին:

Բլուրների առջև փռված հարթավայրի թաղամասերը տակավին չեն պեղված, ուստի դժվար է որոշակի խոսել այս քաղաքի նախագծման մասին, բայց դատելով բլուրների վրա կատարված պեղումներից, կարելի է ենթադրել, որ զուգորդված են եղել քաղաքաշինության տեղական և հելլենիստական սկզբունքները՝ առաջինների գերակշռությամբ:

Քաղաքի ճարտարապետության վերաբերյալ փաստացի նյութերը համեմատաբար բազմազան են և պատկերն ավելի որոշ է: Շենքերի մեծ մասը կառուցվել է տեղական կարմրավուն, ճեղքումով պատրաստված անտաշ քարերով և ծածկվել է գերանների վրա փռվող եղեգնի վրա լցվող հողե հարթ ծածկով, մի ավանդույթ, որը սկիզբ առնելով Հին արևելքում, իսկ Հայաստանում սովորական լինելով ուրարտական ժամանակներից, հարատևել է մինչև XX դարը: Դրա կողքին քաղաքի շատ շենքեր, մանավանդ հասարակական խոշոր շենքերը, կառուցվել են բաց գույնի մանրահատիկ կրաքարից, գերազանց մշակումով: Հայտնաբերված մի քանի տասնյակ սյան կրաքարե խարիսխները, սյուների գլխները և գեղեցիկ անցումներով ու աստիճանավոր քիվերի բեկորները ցույց են տալիս, որ քաղաքում եղել են զգալի թվով սյունազարդ շքեղ շենքեր, որոնք, դատելով հայտնաբերված մեծ քանակությամբ ծածկի կղմինդրներից, ունեցել են կղմինդրե երկթեք ծածկ (լուսանկ. աղ. 39 ա): Նման ծածկերը Հայաստանում առաջանում և սովորական են դառնում հելլենիստական դարաշրջանում:

Ուշագրավ է նաև շենքերի ներսի հարդարանքը: Ինչպես նշվեց, պատերը զարդարվել են գույնզգույն սվաղով և որմնանկարներով: Հայտնաբերված երկրաչափական զարդեր կրող բեկորների հարուստ երանգները, խորը գծերով երկրաչափական պատկերների (ֆիգուրների) բաժանված լինելը մերձեցնում են նրանց պոմպեյան որմնանկարչության առաջին ոճին: Սովորական բնակելի շատ շենքերում օգտագործվել է պարզ գունավոր սվաղը:

Հին ժամանակներից ի վեր հայ ժողովուրդն աչքի է ընկել իր շինարարական գործունեությամբ, որն իր դրսևորումը, բնականաբար, գտել է նաև Արտաշատ մայրաքաղաքում: Քաղաքի պարիսպները կառուցվել են քարի ճեղքված, կիսամշակ, մասամբ և մշակված խոշոր բլոկներից: Քարի երկիր Հայաստանում շինարարությունն իրականացվել է առավելապես քարով, տեղ-տեղ երևում են աղյուսաշար պատեր ու շինություններ՝ հում աղյուսից, և միայն մի փաստ է մեզ հայտնի, երբ շինությունը կառուցվել է թրծած աղյուսով: Սակայն թրծած աղյուսն օգտագործվել է քաղաքի բաղնիքներում, որոնք ունեն կրկնակի հատակ և աղյուսներով կազմվող վերին հատակը հենվել է մասամբ քարից պատրաստված, բայց առավելապես կավե աղյուսներով շարված կամ խողովակաձև հենակների վրա:

Ճեղքված քարերով կառուցված շենքերի պատերը սվաղված են կրաշաղախով, իսկ կիրը ստացվել է կրաքարը այրելու եղանակով: Կրաշաղախից են պատրաստվել նաև շենքերի ներսի հարդարանքի համար օգտագործված ձևավոր քիվերը: Շենքերի ծածկի համար, ինչպես վերևում նշվեց, լայնորեն օգտագործվել է կղմինդրը՝ ծեծած աղյուսից և կրից կազմված անջրաթափանց շաղախը: Այսպիսով կարելի է հավաստել, որ շինարարության հետ կապված են եղել մի քանի արհեստներ՝ քարտաշությունը, քարի որմնադրությունը, աղյուսագործությունը, կիր պատրաստելու արհեստը և կրով սվաղ անելը, կղմինդրների արտադրության արհեստը:

Ճարտարապետության հետ սերտորեն կապված էր նաև տաղձագործությունը՝ շենքերի փայտյա մասերի պատրաստման արհեստը: Ուշագրավ է, որ Արտաշատում դեպի փողոց դուրս եկող մի

հիմնական պատի մեջ հայտնաբերվել են շարվածքի ամբողջ երկարությամբ ագուցված փայտյա գլաններ՝ պատին կայունություն հաղորդելու նպատակով։

Կարևոր նշանակություն է տրվել քաղաքի պաշտպանության հարցին։

Արտաշատը գտնվելով Արաքսի և Մեծամորի միացման տեղում, երկու գետերի միջև ընկած տարածքում, պաշտպանված է եղել ջրային հզոր պատնեշներով։ Արաքսի վրա նետված Տափերականի կոչվող կամուրջը կառուցված էր անմիջապես քաղաքի առջև և, հավանաբար, քաղաքի պարսպից դարպասը բացվում էր նրա վրա և այստեղից մայր ճանապարհը տանում էր հարավարևմուտք՝ դեպի Տիգրանակերտ։ Մեծամորի վրա նետված կամրջից սկիզբ առնող ճանապարհը հյուսիսարևմտյան ուղղությամբ տանում էր դեպի Վաղարշապատ, իսկ հարավարևելյան ուղղությամբ՝ դեպի Իրան։

Գետերով պաշտպանված լինելով հանդերձ, ինչպես նշվեց, քաղաքն ուներ պաշտպանության արհեստական հզոր համակարգ, բաղկացած ընդարձակ պարիսպներից, ջրով լցված փոսից և ամբարտակներից։

Հայտնաբերված են մեծ քանակությամբ և տարբեր չափի կլոր քարեր, որոնց մի մասը, հավանաբար, օգտագործվել է քարնետ մեքենայով, ձեռքով և պարսատիկով թշնամու վրա նետելու համար[37]։

Քաղաքի պարսպին մոտեցող թշնամու զինվորների պաշարողական մեքենաների վրա նետվել են նավթի (մազութի) մեջ թաթախված բոցավառվող լաթեր։ Այդ առթիվ վկայություն է պահպանել հռոմեական պատմիչ Դիոն Կասիոսը **(մոտ 155—235 թթ.)**, որը ճիշտ է ոչ թե Արտաշատի, այլ Տիգրանակերտի վերաբերյալ։ Նա պատմում է, որ երբ Լուկուլլոսը պաշարեց Տիգրանակերտը, քաղաքի պաշտպանները մեծապես վնասեցին նրան նետաձգությամբ և պաշարողական մեքենաների վրա նավթ թափելով, որը բոցավառվում էր այնպես, որ հրկիզում էր այն ամենը, ինչի կպչում էր և հանգցնելը հեշտ չէր[38]։

Ուշագրավ է, որ 1-ին բլրի վրա պեղումների ժամանակ պարսպի տակ ներսից մի քանի տեղում գտնվեցին նավթի (մազութի) չորացած զանգվածներ, իսկ սենյակներից մեկում գետեղված կարասների մեջ լցված է եղել նավթ։

Քաղաք թափանցած թշնամու հեծելազորի դեմ գործածվել են նաև երկաթե «փշեր», դրանք նետասլաքի ծայրերի պես սուր ծայրերով, եռաճյուղ և քառաճյուղ «փշեր» էին, որոնք թափվում էին փողոցներում և ինչպես էլ ընկնեին՝ ծայրը ցցված էր մնում, և թշնամու հեծելազորը անցնելիս, «փշերը» մտնում էին ձիերի ոտքերը և շարքից հանում նրանց։

Դատելով քաղաքի տարածքի ընդարձակ չափերից կարելի է ենթադրել, որ այն ունեցել է մինչև հարյուր հազարի հասնող բնակչություն, որի նյութական ապահովության համար անհրաժեշտ էր քաղաքային բավականաչափ ընդարձակ և զարգացած տնտեսություն։ Ինչպես անտիկ դարաշրջանի քաղաքներին, Արտաշատին ևս բնորոշ է եղել քաղաքային տնտեսության երեք հիմնական ճյուղերի՝ երկրագործության, արհեստային արտադրության և առևտրի բավականաչափ բարձր մակարդակը։ Քաղաքների բնակիչները հելլենիստական և ուշ անտիկ դարաշրջանում կազմում էին ինքնավար համայնք, որն ուներ իր հողերը՝ քաղաքի շուրջը և քաղաքին պատկանող բնակավայրերում։ Հին Հայաստանում քաղաքներին, տաճարներին, թագավորին ու այլ մեծամեծներին պատկանող մասնատիրական բնակավայրերը կոչվում էին ագարակներ[39], որոնց բնակիչները ստրուկ կամ կիսաստրուկ (կոլոն) երկրագործներ էին։

Տնտեսության նման կարգը, անշուշտ, նկատելիորեն ազդում էր քաղաքաշինության վրա։ Քաղաքը խիտ էր կառուցապատված, քանի որ քաղաքի ներսում չկային այգիներ, երկրագործության և անասնապահության հետ կապված տարածք, շինություններ և այլ հարմարանքներ։

Հույն, հռոմեացի և հայ հեղինակները Արտաշատի մասին խոսում են մեծ դրվատանքով, իսկ պեղումները առարկայորեն և ցայտուն կերպով են բացահայտում հայոց այդ հինավուրց մայրաքաղաքի փառահեղ պատկերն իր բազում կողմերով։ Թեև պեղված է քաղաքի մի փոքր մասը, բայց արդեն կարելի է ասել, որ Արտաշատը հանդիսացել է Հին Հայաստանի ոչ միայն վարչաքաղաքական, այլև առևտրատնտեսական և մշակութային խոշորագույն կենտրոնը և այդ դերը խաղացել է շուրջ հինգ դար շարունակ։ Արտաշատն, ավելի քան Հին Հայաստանի մյուս քաղաքները, այն հնոցն է, որտեղ համաձուլվել են հայկական հինավուրց ավանդական ու նորամուտ հելլենիստական մշակույթները և ձևավորվել է հայ-

կական հելլենիստական մշակույթը: Դրա շնորհիվ հին հայկական մշակույթը ևս հարստացել և նշանակալիորեն առաջադիմել է, իսկ երկիրն իր արժանավայել տեղն է գրավել հելլենիստական արևելքի երկրների շարքում:

**Զարիշատ:** Այս քաղաքը կառուցվել է Վանա լճի հյուսիսարևելյան ափին, Աղիովիտի գավառում:

Խորենացին նկարագրելով IV դարում պարսկական զավթողության զոհ գնացած Գնելի թաղումը, գրում է. «Իսկ Արշակայ հանդերձ Նախարարօքն իջուցեալ ի դաշտ Աղիովտի զդին Գնելայ՝ թաղեաց **յարքունական քաղաքին Զարիշատի**»[40] (ընդգծումը մերն է—Ա. Ս.): Նշանակում է Զարիշատը եղել է արքունի քաղաք: Երբ է հիմնադրվել այս քաղաքը՝ ստույգ հայտնի չէ: Ըստ Մանանդյանի, այն հավանաբար, հիմնադրվել է III—II դարերում (մ.թ.ա.)[41]: IV դարի նշանավոր քաղաքների շարքում հիշատակվում է նաև Զարիշատը և այն համարվում «մեծ քաղաք»: Նույն ժամանակշրջանում, Հայաստանի մի շարք քաղաքների ավերածությունների ժամանակ, Զարիշատից գերվում են 10000 հայ և 14000 հրեա ընտանիք[42]:

Կասկածից վեր է, որ կես հազարամյակից ավելի կյանք ունեցող այդ քաղաքը, որը IV դարում դասվում էր ժամանակի խոշոր քաղաքների շարքը և հայտնի էր իբրև «արքունական քաղաք», պետք է ունենար իր դիրքին համապատասխան բարձրարժեք կառուցվածքներ:

**Զարեհավան:** Զարեհավանը գտնվում էր Երվանդաշատի հարավային կողմում, Բագրևանդի շրջակայքում: Ենթադրվում է, որ այն հիմնվել է Արտաշես Ա-ի որդի Զարեհի կողմից (II դ. մ.թ.ա.)[43]: Դեռ IV դարում այն Հայաստանի նշանավոր քաղաքներից էր: Նույն դարում, հայկական մի շարք քաղաքների վերը հիշատակված ավերածությունների ժամանակ, Զարեհավանից գերվում են 5000 հայ և 8000 հրեա ընտանիքներ[44]: Այնուհետև, ըստ երևույթին, այն կորցնում է իր նշանակությունը և V դարում հիշատակվում իբրև մի աննշան գյուղ[45]:

**Նախճավան:** Նախճավանի հիմնադրման ժամանակը հայտնի չէ, դեռևս II դարում այն հիշատակվում է Պտղոմեոսի մոտ: Այս հնագույն քաղաքը, գտնվելով համաշխարհային առևտրի կարևորագույն ճանապարհներից մեկի՝ հյուսիսային մայրուղու վրա, իբրև ժամանակի առևտրի ճանաչված կենտրոններից մեկը դարեր շարունակ նշանակալից դեր է խաղացել միջազգային առևտրում:

IV դարի երկրորդ քառորդում պարսկական զորքերի կողմից մեծ ավերածությունների ենթարկված Հայաստանի նշանավոր մի շարք քաղաքների թվում նշվում է նաև Նախճավանը[46]:

**Տիգրանակերտ:** Տիգրանակերտը կառուցվել է Մեծ Հայքի Աղձնիք գավառում, այժմյան Ֆարկին քաղաքի տեղում[47]: Տիգրան Բ-ն (95—56/55), հիմնադրելով այն, դարձրել է իր լայնարձակ պետության մայրաքաղաքը[48]: Մայրաքաղաքի ներսում կառուցվել էր ամրակուռ միջնաբերդ: Արքունի ապարանքը գտնվում էր պարիսպներից դուրս: Ապարանքային համալիրի շրջապատում ստեղծվել էին «պարտեզներ», որսատարածքներ, որսատեղեր ու «ձկնավազաններ»[49]:

Քաղաքը շրջապատված է եղել բարձր և չափազանց լայն պարիսպներով: Պարիսպների բարձրությունը հասել է մինչև 50 կանգունի (մոտավորապես 25—26 մետրի), իսկ լայնությունն այնքան մեծ է եղել, որ պատերի մեջ կառուցվել են պահակազորի զինանոցներ ու զանազան տնտեսական այլ շենքեր[50]:

Տիգրանակերտը ստեղծվել էր որպես ոչ միայն ժամանակի խոշոր պետություններից մեկի մայրաքաղաք, այլև երկրի տնտեսական ու մշակութային կյանքում մեծագույն դեր խաղացող կարևորագույն կենտրոն: Հետևապես նրա նշանակությունը դուրս էր սովորական մայրաքաղաք լինելու սահմաններից: «Տիգրան Բ-ն,—գրում է Մանանդյանը,—հասկացել էր, ըստ երևույթին, որ նահապետական հայ կենցաղի, տնտեսական ու կուլտուրական առաջադիմությանը կարող էր մեծապես նպաստել **հելլենիստական տիպի քաղաքը**, որը կենտրոնն էր արհեստների, արդյունագործության և առևտրի զարգացման»[51] (ընդգծումը մերն է—Ա. Ս.):

Տիգրան Երկրորդն իր արշավանքների ընթացքում Կապադովկիայի, Կիլիկիայի, հավանաբար և Ասորիքի, Կորդուքի Ադիաբենի հելլենիստական 12 քաղաքների բնակչությանը բռնի կերպով տեղափոխում է Հայաստան և մեծ մասամբ բնակեցնում Տիգրանակերտում:

Նշանավոր հույն հռետոր Ամֆիկրատեսը, աքսորվելով Աթենքից, մերժում է Սելևկյանների հրավերը և ապաստան գտնում Տիգրան Երկրորդի արքունիքում: Այստեղ էր ժամանակի ճանաչված

գրող և փիլիսոփա Մետրոդորոս Սկեպսիացին, որը գրել է Տիգրան Երկրորդի պատմությունը։

Հելլենիստական քաղաքների բնակչության հետ մեկտեղ բռնի կերպով մայրաքաղաք են գաղթեցնում նաև հայ իշխանավորներին ու ազնվականներին։

Քաղաքի ազգաբնակչությունն ինքն էլ իր կողմից էր նպաստում շինարարության և քաղաքը ընդարձակման աշխատանքներին։

Որքան էլ այդ տեղեկությունների մեջ չափազանցություններ լինեն, ակնհայտ է, որ Տիգրանակերտի կառուցումը հանդիսացել է ժամանակի ճարտարապետական-կառուցողական արվեստի զարգացմանը մեծապես նպաստող՝ պետական նախաձեռնությամբ ու հսկողությամբ կատարված շինարարական հսկայածավալ գործ։

Թե ինչ տիպի ու չափի կարող էր եղած լինել քաղաքը, ստույգ դժվար է ասել։ Գիտնականների մի մասն այն համեմատում է Նինուեի և Բաբելոնի հետ, իսկ ոմանք՝ հելլենիստական տիպի քաղաքների հետ, որը համոզիչ է։

Տիգրանակերտը բազմամարդ ու գեղեցիկ քաղաք լինելու հետ մեկտեղ, նաև անառիկ բերդ էր։ Նա, բացի արհեստական մեծ ամրություններ ունենալուց, կառուցված է եղել «...պաշտպանված ու դժվարամատչելի լեռնային տեղում»[52]։ 69 թվականի (մ.թ.ա.) գարնանը, երբ Լուկուլլոսի զորքերը պաշարում են Տիգրանակերտը, «հռոմեացիների բոլոր ջանքերը՝ գրավելու քաղաքը գրոհով և պատերազմական մեքենաների օգնությամբ՝ մնացին ապարդյուն...»։ «Ամիսներ շարունակ Տիգրանակերտը մնաց կանգուն և անպարտելի»[53] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։ Քաղաքը գրավվեց միայն 69 թվականի աշնանը, հույն վարձկան զորքի դավաճանության պատճառով։

Տիգրանակերտը հետագայում նույնպես մնում է իբրև անառիկ բերդաքաղաք և «բազմամարդ մեծ կենտրոն»։ Ուղիղ մեկ դար հետո Տիգրանակերտը պաշարվում է պարթևների կողմից, սակայն քաղաքը գրավելու նրանց բոլոր ճիգերն անցնում են ապարդյուն։

Տիգրանակերտի «բարձր ու անմատչելի պարիսպները» հիշատակվում են նաև մեր թվականության I—II դարերում։ Ավելի ուշ Տիգրանակերտի ամրությունների մասին ուշագրավ տեղեկություններ ենք ստանում Շապուհ II-ի (309—379) մի հարձակման առթիվ։

«Եւ Յոնացն մատուցեալ մեծաւ բռնութեամբ յեցուցին ի պարիսպն գկոչեցեալ էշսն։ Եւ է այս գործի մեքենայից անուաւոր, յորից երից արանց մղելով տարեալ, և ի ներքուստ կացնովք և սակրօք երկբերանովք և կոցաւոր մրճովք՝ փորել՝ զհիմունսն։ Եւ զնախարար արարեալ զայն, որ ի հայկազնոյն Տիգրանայ հօծեալ և յարմարեալ որմունքն, քակեալ ընկեցին»[54] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։

Դժբախտաբար, Տիգրանակերտի ճարտարապետական ոչ մի հուշարձանի վերաբերյալ նույնպես կոնկրետ տվյալներ չունենք։ Ճիշտ է, գոյություն ունեն Տիգրանակերտ-Ֆարկին քաղաքի առանձին տեսարաններ պատկերող մի քանի նկարներ (քաղաքի ավերակների ընդհանուր տեսքը, արևելյան և հյուսիսային պարիսպների առանձին հատվածները և այլն), իսկ պարիսպներից մեկի վրա IV դարում փորագրված է հունարեն արձանագրություն, սակայն դրանք հազիվ թե կարողանան հիմք հանդիսանալ Տիգրանակերտի սկզբնական կառուցվածքի մասին թեկուզ հեռավոր գաղափար կազմելու համար (գծագր. աղ. 54 ա, բ)։

Այնուամենայնիվ, կասկածից վեր է, որ ժամանակի խոշորագույն պետություններից մեկի այդ նորաստեղծ մայրաքաղաքը, ուր տեղական ազգաբնակչության հոծ մասսաների հետ մեկտեղ բռնի կերպով բնակեցվել էին հելլենիստական բազմաթիվ քաղաքների բնակիչներ և որը բնակելի, արհեստագործական, առևտրական, հասարակական, մշակութային (թատրոնի) նորակառույց շենքերի, իշխանական դղյակների և արքունի պալատական խոշոր համալիրի հետ մեկտեղ ուներ պաշտպանական մի հզոր սիստեմ և «Առաջավոր Ասիայի ամենամեծ հելլենիստական քաղաքների, Սելևկիայի և Անտիոքի մրցակիցն էր լինելու»[55], պետք է որ այդ ամենին արժանի իր կառուցվածքներով մեծապես նպաստած լիներ երկրի ճարտարապետական մտքի ու կառուցողական արվեստի զարգացման գործին։

Մծուրն։ Ենթադրվում է, որ Մծուրնը կառուցվել է Արածանիի և նրա ձախ վտակ Կարասուի միջև։

Փավստոս Բուզանդը, խոսելով Աշտիշատ այցելած մի իշխանի մասին, գրում է. «Սրանից հետո... իջավ Եփրատ գետի ափը... երկու գետերի խառնուրդի մոտ, որտեղ հնուց ի վեր մի քաղաք է շինված եղել Սանատրուկ թագավորից

Մծուրք կոչված տեղում»[56] (ընդգծումը մերն է— Ա. Ս.)։ Մծուրնի կառուցումը Սանատրուկի կողմից կարող է տեղի ունեցած լինել I դարի վերջին քառորդում կամ II դարի սկզբին։ Քաղաքն ունեցել է ստրատեգիական և առևտրական տեսակետից նպաստավոր պայմաններ։ Այն իշխում էր ճանապարհների մի խոշոր հանգույցի վրա, որտեղից անցնում էին դեպի Մելիտենե, Կարին, Տիգրանակերտ, Արտաշատ, Բագավան և մի շարք այլ վայրեր տանող կարևոր ուղիներ։ Սեբեոսը, հիշատակելով Մարաբա փիլիսոփայի մասին, գրում է. «Անդ հայելով ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ զոր էգիտ դրոշմեալ ի վերայ արձանի ի Մծբին քաղաքի՝ յապարանսն Սանատրուկ արքայի հանդեպ դրան արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն։

Քանզի զսինս տաճարին այնորիկ խնդրեալ ի դուռն արքային Պարսից և բացեալ զաւերածն վասն սեանցն ըստ դիպան արձանագրին դրոշմեալ ի վերայ վիմի զամս և զաւուրս հինգ թագաւորացն Հայոց և պարթևաց»[57] (ընդգծումը մերն է—Ա. Ս.)։

Այդ տեղեկությունների հիման վրա եզրակացվում է, որ Մծուրնը նույնպես եղել է Հայաստանի աթոռանիստ քաղաքներից։

Ինչպես երևում է, ապարանքն ունեցել է ճարտարապետական ուշագրավ համալիր։

**Փայտակարան**։ Փայտակարանը հայ մատենագրության մեջ հիշատակվում է իբրև IV դարի առաջին կեսերին Հայաստանի նշանավոր քաղաքներից մեկը[58]։

**Վաղարշապատ***։ Վաղարշապատ քաղաքը հիմնադրվել է II դարի առաջին կեսում, Վաղարշ I (117—140) թագավորի կողմից դեռևս Երվանդունիների ժամանակ հիշատակված Վարդգեսավան բնակավայրի տեղում։ Հայաստանի ուշ անտիկ քաղաքներից մեկի առաջացմանը նպաստեցին Տրայանոս կայսեր Արևելք կատարած արշավանքից հետո երկրի տնտեսական զարգացման համար ստեղծված բարենպաստ պայմանները։ 163 թ. հռոմեացիների կողմից Արտաշատ քաղաքի նվաճման և հայերի ապստամբության ճնշումից հետո Վաղարշապատը, որը վերանվանվեց Նոր քաղաք (Կայնեպոլիս), հռչակվեց Հայաստանի մայրաքաղաք և այդպիսին մնաց մինչև երկրի անկախության կորուստը[59]։

* Տեքստը՝ Գ. Ա. Տիրացյանի։

Գրավոր աղբյուրների օգնությամբ և հնագիտական ուսումնասիրությունների արդյունքների հիման վրա հնարավոր է որոշ պատկերացում կազմել հին Վաղարշապատի քաղաքաշինական կառուցվածքի և հատակագծման, տեղագրության ու ճարտարապետության մասին[60]։ Ըստ այդ տվյալների, քաղաքը բաղկացած է միջնաբերդից, բուն քաղաքից և արտաքաղաքային տարածքից։

**Միջնաբերդ**։ Ավելի քան հավանական է, որ միջնաբերդը մոտավորապես գրավում էր այժմյան էջմիածին վանքի տարածքը[61]։ Այն շրջափակված էր պարսպով և ուներ ուղղանկյուն ձև։ Պարսպի գոյության մասին են ակնարկում Ագաթանգեղոսի Հայոց պատմության հաղորդած տվյալներն ու էջմիածնում հայտնաբերված 175 և 185 թթ. լատինական արձանագրությունները (լուսանկ. աղ. 36 ա)[62]։ Ըստ Ագաթանգեղոսի, Միջնաբերդում էր գտնվում Մայր եկեղեցին ու թագավորական պալատը։ Վերջինիս ստույգ տեղը պարզ չէ, բայց այն տեղադրված կարող է լինել Մայր եկեղեցուց արևմուտք և հարավ-արևմուտք[63]։ Այն, որ միջնաբերդում կային փողոցներ («փողոց ի ներքնագույնս») ակնարկում է այստեղ այլ շենքերի գոյության մասին ևս։

Այժմ բոլոր հիմքերը կան պնդելու, որ Մայր եկեղեցու տեղում անտիկ դարաշրջանում կանգնած էր հեթանոսական տաճար։ Մայր տաճարի վերականգնման աշխատանքների ժամանակ գտնվել են նախաքրիստոնեական կառույցների մնացորդներ՝ ուրարտական ժամանակաշրջանի բազալտե կոթող, քարե վեմ՝ երկաթի կապերի համար բներով, ինչպես նաև օջախ-կրակարան։ Մայր եկեղեցու հարավային մասում հատակի տակ երևացել են արևելք-արևմուտք կողմնորոշում ունեցող շենքի հիմքերի մնացորդներ[64]։ Անտիկ տաճարը Հայաստանի մյուս տաճարների նման ոչնչացվել է քրիստոնեության ընդունման օրերին։ Այն մեծ նշանակությունը, որ ունեցել է էջմիածնի Մայր եկեղեցին, ակնարկում է նրա տեղում անտիկ դարաշրջանում կանգնած հեթանոսական տաճարի կարևորության մասին։ Հավանական է, որ հեթանոսական տաճարը նվիրված է եղել Անահիտ-Արտեմիդեի պաշտամունքին[65]։ Այդ մասին է վկայում Մովսես Խորենացու մոտ պահպանված Վաղարշապատի Արտիմեդ մյուս անունը։ Նրա մեջ տեսնելով հունական Արտեմիդե դիցուհու անունը, որն արևելքում (այդ թվում և

Հայաստանում) նույնացվում էր Անահիտի հետ, կարելի է գալ այն եզրակացության, որ քաղաքը հայտնի է եղել նաև իր գլխավոր սրբավայր՝ Արտեմիդե-Անահիտ դիցուհու անունով։ Պալատական շենքից ու տաճարից բացի կարելի է խոսել միջնաբերդում գոյություն ունեցող երրորդ շենքի՝ բաղնիքի մասին[66]։ Նրա մնացորդները բացվել են Մայր տաճարից դեպի արևելք ընկած տարածքում։ Քանի դեռ կառույցը մինչև վերջ ուսումնասիրված չէ, կարելի է խոսել երկու բաժանմունքների մասին, որոնք հաղորդակցվել են բաժանմունքների հավասար ջեռուցմանը նպաստող ընդհատակյա անցքերով։ Շենքի պատերը, այն չափով, որ պահպանված են, շարված են շաղախով միացած ուղղանկյուն կամ քառակուսի աղյուսներից։ Հատակը կազմված էր տոփանված հողից ու շաղախից։ Նրա վրա շարված էին կավե խողովակներ, որոնք ծառայում էին որպես հենակներ վերևի հատակի համար։ Նրանց ավելի մեծ կայունություն հաղորդելու նպատակով հենակ-խողովակները լցված էին շաղախով։

Վերևի հատակի կառուցվածքը պարզ չէ, բայց երևի նրա ստորին շերտը կազմված է եղել կավե մեծ սալերից, որոնց չորս անկյունները հենվել են հիշատակված խողովակաձև հենակների վրա։

Վաղարշապատի միջնաբերդի բաղնիքը պատկանում է ամրոցային տիպի բաղնիքներին, որոնցից Հայաստանում հայտնի են Գառնիում և Արտաշատում և որոնք նախատեսված էին այցելուների ոչ շատ մեծ թվի համար[67]։

**Քաղաքը**։ Այն կարծիքը, ըստ որի Վաղարշապատ քաղաքը պետք է որ զբաղեցրած լիներ այժմյան Էջմիածին քաղաքից դեպի արևելք ընկած տարածքը, Զվարթնոցի մոտակայքում, հերքվեց[68]։ Այժմ ապացուցված կարելի է համարել, որ անտիկ քաղաքը գտնվել է միջնաբերդի շուրջը, այսինքն՝ ժամանակակից Էջմիածնի տեղում։

Քաղաքի մեծությունը, նրա սահմանները որոշվում են մոտավորապես։ Քաղաքն ունեցել է մի քանի դարպասներ, որոնցից երկուսը՝ արևելյանն ու հարավայինը, հայտնի են գրավոր աղբյուրներից (Ագաթանգեղոս, Հայոց պատմություն)։ Նրանց տեղեկությունները օգնում են որոշելու քաղաքի մոտավոր տարածքը։ Այսպես՝ քաղաքի արևելյան սահմանը գտնվում էր միջնաբերդից դեպի ս. Հռիփսիմե տանող կես ճանապարհին, իսկ քաղաքի հարավային սահմանը գտնվում էր ս. Գայանե վանքի շրջակայքում։

Այս նախնական տվյալներից երևում է, որ քաղաքի մակերեսն այնքան էլ մեծ չէր, մանավանդ, եթե հաշվի չառնենք արտաքաղաքային, բայց քաղաքամերձ տարածքը, որը, ինչպես կտեսնենք, բազմաթիվ թելերով կապված էր բուն քաղաքի հետ։

Վաղարշապատը որպես հարթավայրային քաղաք ուներ իր առանձնահատկությունները, որոնցից ամենակարևորը նրա պաշտպանական անպատ դիրքն էր[69]։ Այն զրկված էր ջրային, բնական պատնեշներից ու բարձունքից, որի վրա կարող էր տեղադրված լինել միջնաբերդը։ Այդ պատճառով նա ամբողջապես պետք է հույս դներ իր պաշտպանական կառույցների վրա։ Գրավոր աղբյուրներից հայտնի է, որ վերջինները բաղկացած էին իրար զուգահեռ ընթացող բուն պարսպից ու հողե պատնեշից, որոնց միջև գտնվում էր ջրով լցված խրամը[70]։

Պարթևական և Սասանյան դարաշրջանի Միջագետքի, Իրանի ու Միջին Ասիայի հարթավայրային պայմաններում առաջացած կլոր կամ կլորավուն հատակագիծ ունեցող քաղաքների ու քաղաքային կենտրոնների նմանությամբ[71] կարելի է ենթադրել, որ Վաղարշապատը ևս իր պաշտպանական հնարավորությունները բարձրացնելու նպատակով ուներ պարիսպներ, որոնք շրջանակ էին կազմում, թեպետ այդ մասին կոնկրետ փաստեր չունենք[72]։ Այս կապակցությամբ մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն հանգամանքը, որ VII դարի 40-ական թվականներին առաջացած Զվարթնոցի քաղաքատիպ բնակավայրը, ինչպես երևում է հնագիտական դիտողություններից, ուներ կլոր հատակագիծ, որը կարող էր առաջացած լինել հարևան Վաղարշապատի ազդեցությամբ[73]։

**Արտաքաղաքային տարածքը**։ Գրավոր աղբյուրների տվյալները և հնագիտական պեղումների արդյունքները հնարավորություն են տալիս խոսելու քաղաքամերձ տաճարի, դամբարանադաշտի և արտադրական կենտրոնների մասին։ Վերջիններս տեղադրված էին քաղաքից դուրս, հյուսիսային կողմում։ Այստեղ տարածվում էին քաղաքամերձ երկրագործական գոտու մեջ մտնող խաղողի այգիները, որտեղ գոյություն ունեին հատուկ շենքեր՝ խաղողը մշակելու հնձաններով, գինին պահելու տարողություններով և ապակեգործական արհեստանոցով[74]։

Բացառված չէ, որ Զվարթնոցից մեզ հասած

վաղմիջնադարյան։ Մոնումենտալ հնձանների կառուցողական առանձնահատկությունների հիմքում ընկած լինեն գրավոր աղբյուրներից հայտնի անտիկ Վաղարշապատի հնձանները։

Քաղաքից արևելք, գլխավոր ճանապարհի կողքին, բարձունքի վրա, այնտեղ, ուր այժմ գտնըվում է ս. Հռիփսիմեի վանքը, դեպի վեր էր խոյանում անտիկ տաճարի շենքը։ Այդ մասին են վկայում եկեղեցու պատերի տակ բացվող հին կառույցի լավ մշակված տուֆե քարերը[75]։ Քարերի մշակման ոճը և ձևը, հար և նման է Գառնիի հեթանոսական տաճարի մանրամասների մշակման եղանակին։ Լիովին համընկնում են պարանոցյուս, ուլունքաշար և այլ զարդանախշ գոտիները[76] (լուսանկ. աղ. 36 բ)։

Միանգամայն հնարավոր է, որ ս. Հռիփսիմե եկեղեցու տեղում կամ նրա մերձակայքում անտիկ դարաշրջանում կանգնած էր հեթանոսական տաճար՝ նման Գառնիի տաճարին։ Շատ կարևոր է այն հանգամանքը, որ մի կողմից անտիկ ժամանակաշրջանի շենքերի բեկորները, որոնք գտնվել են Էջմիածնի Մայր եկեղեցու և ս. Հռիփսիմեի տաճարի հիմքերի տակ, Գառնիի ճարտարապետական կառույցների օրինակով թվագրվում են մ.թ. առաջին դարերով և որ մյուս կողմից՝ այս թվագրումը համընկնում է գրավոր աղբյուրների տվյալների հետ, որոնք Վաղարշապատի հիմնադրումը տանում են մ.թ. II դար։ Բացառված չէ, նաև, որ Վաղարշապատի քաղաքամերձ տաճարը նույնպես ձոնված էր արևի աստծուն՝ Միհր-Ապոլլոնին։ Այն հանգամանքը, որ տաճարը գտնվում էր քաղաքի պարիսպներից դուրս, գլխավոր ճանապարհի մոտ, հաստատում է նման ենթադրությունը։

Արտաշատում Արեգ-Ապոլլոնի տաճարը նույնպես տեղադրված էր քաղաքից դուրս, ճանապարհի վրա (Մովսես Խորենացի, Հայոց պատմություն, գիրք 2-րդ, գլ. 49)։ Այս զուգահեռը ավելի համոզիչ կթվա, եթե հաշվի առնենք, որ, ինչպես Արտաշատում, այնպես էլ Վաղարշապատում կանգնած էր Անահիտ-Արտեմիդեի տաճարը։ Աստվածությունների նույն զույգին ձոնված տաճարների գոյության փաստը Վաղարշապատում և Արտաշատում պատահական չպետք է համարել։ Պետք է ենթադրել, որ նոր հիմնված, շուտով մայրաքաղաք դարձած Վաղարշապատում կրկնվեցին կամ փոխադրվեցին այն երևույթները, որոնք բնորոշ են Արտաշատին։ Հին մայրաքաղաքի՝ Արտաշատի օրինակով հայ Արշակունիները Վաղարշապատում մ.թ. II—III դարերում կանգնեցրին Արևի (Ապոլոնի, Միհրի) և Լուսնի (Անահիտի, Արտեմիդեի) տաճարները, ընդ որում ընդօրինակումը արտահայտվում է անգամ այն հանգամանքի մեջ, որ մի տաճարը կանգնած էր քաղաքում, իսկ մյուսը՝ քաղաքից դուրս, ճանապարհի վրա։ Արևի ու լուսնի տաճարների առկայությունը Վաղարշապատում արդարացված է նաև Հին Հայաստանի դինաստիական աստվածությունների պաշտամունքի զարգացման տեսակետից։ Կարելի է որոշակիորեն պնդել, որ Հին Հայաստանում իշխած թագավորական երեք դինաստիաներն էլ իրենց հովանավոր աստվածներն էին համարում Արևն ու Լուսինը, նրանց էին պաշտում Երվանդունիներն Արմավիրում և Բագարանում, իսկ Արտաշեսյաններն ու Արշակունիները՝ Արտաշատում։ Վաղարշապատի՝ Արշակունիների նոր մայրաքաղաք հռչակվելու կապակցությամբ, այստեղ հաստատվեց երկու նույն աստվածությունների պաշտամունքը, որոնց երկրպագում էին նախորդ դինաստիաների ներկայացուցիչները նախկին մայրաքաղաքներում։

Հնագիտական պեղումների ընթացքում հաստատվել է, որ հին Վաղարշապատի դամբարանադաշտը գտնվում էր քաղաքի պարիսպներից դուրս, արևելքում։ Նա մոտավորապես սկսվում էր ս. Հռիփսիմե վանքի շրջապատից, ձգվում արևելյան ուղղությամբ և ավարտվում ս. Հռիփսիմեից Զվարթնոց տանող ճանապարհի կես հեռավորության վրա[77]։ Այստեղ բացվել են քարարկղներ, հիմնահողային ու կարասային թաղումներ, կավե դագաղներ։ Դամբարանադաշտը սկիզբ է առել մ.թ. I—II դարերում և գոյատևել մինչև IV—V դարերը։

Հին Վաղարշապատի քաղաքաշինական կառուցվածքը վկայում է Հին Հայաստանի քաղաքաշինական մտքի հասունության մասին։ Ուշադրության արժանի է տարածության կազմակերպման ընդհանուր մտահղացումը, որն իր արտահայտությունն է գտել քաղաքը բաղկացուցիչ մասերի բաժանելու սկզբունքի մեջ, մասեր, որոնցից ամեն մեկն իր դերն ուներ (միջնաբերդում պալատատաճարային կենտրոնական համալիրի առանձնացումը, դամբարանադաշտի սահմանազատումը բուն քաղաքից և այլն)։

Հին Վաղարշապատը հելլենիստական Հայաստանի այն սակավաթիվ քաղաքներից է, որի մա-




Աղ. 55. Շիրակավան. ընդհանուր հատակագիծ

*սին։ մենք տեղագրական բավական հստակ պատկեր ունենք։ Հայտնի է ոչ միայն նրա բաղկացուցիչ մասերի տեղադրումը, այլ նաև առանձին քաղաքացիական ու պաշտամունքային նշանակության կառույցների, արտադրական օբյեկտների և քաղաքաշինական կառուցվածքի այլ տարրերի տեղերը։*

**Երիզա ավան**: *Երիզան (այժմյան Երզնկան) պատմական Հայաստանի հնագույն բնակավայրերից է։ Այն ստեղծվել է հայ ժողովրդի կազմավորումից շատ դարեր առաջ, հանդիսանալով Հայասա-Ազզի երկրի կարևորագույն կենտրոններից մեկը։*

*Հայաստանում քրիստոնեական կրոնի ընդունմանը նախորդող կեսհազարամյա ժամանակաշրջանի մեզ հասած տեղեկություններից երևում է, որ Երիզան միաժամանակ հանդիսացել է հեթանոսական կրոնի հանրաճանաչ կենտրոն։ Այդտեղ էր կառուցված Անահիտի պաշտամունքին նվիրված խոշորագույն տաճարներից մեկը, որի հռչակը տարածվում էր ոչ միայն ամբողջ Հայաստանում, այլև երկրի սահմաններից շատ հեռու։*

*Այսպիսով, թեև անհնարին է խոսել Հին Հայաստանի քաղաքների հատակագծային ընդհանուր կառուցվածքի, քաղաքի հորինվածքի հիմքում ընկած քաղաքաշինական սկզբունքների մասին, այնուհանդերձ, թեկուզ ամենաընդհանուր ձևով դրսևորվում է այդ քաղաքների հիմնական ուրվագիծը։*

*Հիշատակված բոլոր քաղաքներում անխախտ քաղաքի հիմնական օրգանիզմի կոմպոզիցիոն կենտրոնը կազմում է միջնաբերդը, որը, ստեղծվելով պաշտպանական տեսակետից բնական ավելի նպաստավոր տեղանքում, իշխում է քաղաքի ոչ միայն մնացած հատվածի, այլև նրա շրջապատի ամբողջ տարածքի վրա։*

*Միջնաբերդի բնական պաշտպանական հնարավորությունները լրացնելով արհեստական կառույցներով (պարիսպ, աշտարակներ), այն միակցվում է քաղաքի ընդհանուր տարածքի հետ և այդ ամենը առնվում պաշտպանական մի ընդհանուր համակարգի մեջ (պարիսպ, ուղղանկյուն աշտարակներ, պարսպին զուգընթաց կամ արհեստական հունով ընթացող հորդառատ ջուր, արհեստական խրամներ, փոսեր և այլն)։*

*Դժվար չէ նկատել, որ բնակավայրի տեղանքի ընտրման ու ամրաշինության այդ սկզբունքները Հայկական լեռնաշխարհում հիմնականում հայտնի են դեռևս բերդ-շեների, Հայասայի և Ուրարտուի քաղաքների ու ամրոցների կառուցվածքներից։*

**Շիրակավան***: *1977 թ. Ախուրյանի ջրամբարի տարածքում հայտնաբերվեց անտիկ դարաշրջանի բնակավայր, որը ուսումնասիրում է ՀԽՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի հնագիտական արշավախումբը[78]։ Բնակավայրը տեղադրված է Ախուրյանի ձախ ափին, նրա և Կարս գետի միախառնման կետից 3 կմ հյուսիս։ Այն բաղկացած է մի քանի ընդարձակ, առանձնացած բնակելի զանգվածներից, ավելի քան 6 հա ընդհանուր տարածությամբ և դամբարանադաշտից։ Տարածված է արևելքից արևմուտք ձգվող երկար, երկու դարավանդներից կազմված և գետահովտի վրա իշխող հրվանդանի վրա, որը հյուսիսից ողողվում է Սևակնի, իսկ հարավից և արևմուտքից Ախուրյանի ջրերով։ Արևելյան և հարավարևելյան կողմով հրվանդանը ոչ մեծ բարձունքներով հարում է սարահարթին (գծանկ. աղ. 55)։*

*Բնակավայրից հյուսիս, Սևակն առվակից այն կողմ, տարածվում է հելլենիստական ժամանակաշրջանի դամբարանադաշտը։*

*Հնագիտական ուսումնասիրությունների ընթացքում հայտնաբերվել են մշակութային շերտեր, որոնցից յուրաքանչյուրն ունի իր շինարարական համալիրը։ Հուշարձանի կյանքի տարբեր շրջանների արտացոլող ողջ հնագիտական նյութերի և տվյալների համադրման քննության հիման վրա այդ շերտերը կարելի է թվագրել.*

*1-ին՝ստորին, ամենավաղ շերտը—մ.թ.ա. II դ. 1-ին կեսով,*
*2-րդ շերտ՝ մ.թ.ա. II դ. երկրորդ կեսով,*
*3-րդ շերտ՝ մ.թ.ա. I դ. սկիզբ և մ.թ. I դ.,*
*4-րդ շերտ՝ մ.թ. II—III դդ.։*

*Այնուհետև կյանքը բնակավայրում մարում է, միայն IX դ. շատ կարճ ժամանակով վերակենդանանում է, որ հաստատում են այդ ժամանակաշրջանի խեցեղենի սակավաթիվ բեկորները և երկու դրամները։*

*Բացառված չէ, որ այս շրջանի կյանքը կենտրոնացված էր հուշարձանի արևմտյան մասում։*

**Առաջին շերտ.** *առավելագույնս ի հայտ է եկել 1-ին և 3-րդ պեղավայրերում։ Այս ժամա-*

* *Տեքստը՝ Ֆ. Ի. Տեր-Մարտիրոսովի։*

նակաշրջանի կառույցներն ունեն մի շարք բնորոշ գծեր՝ երկրի կողմերի նկատմամբ խստագույն կողմնորոշում։ Ինչպես ցույց տվեցին այս շրջանի ոչ մեծաթիվ կառույցների պեղումները, բնակավայրը կազմված է եղել մի քանի՝ իրարից անկախ տների խմբերից։ Բոլոր տներն ունեն ուղղանկյուն հատակագիծ։ Շինարարական տեխնիկան բնորոշվում է միջին և խոշոր չափերի ճեղքված քարերի օգտագործումով՝ կավե շաղախով միացած, որը կառույցին տալիս է ավելի վաղ ժամանակների՝ կիկլոպյան կառույցներին նմանվող տեսք։ Շենքերում լայնորեն օգտագործվել են տուֆի և կրաքարի լավ տաշված տորաձև գետնախարիսխներ՝ ծածկը պահող փայտե սյուների համար։ Այս երևույթը Հայաստանի մշակույթի զարգացման մեջ բացահայտում է ընդհանուր գծեր հելլենիստական արևելքի մշակույթների հետ, որտեղ տորաձև խարիսխներն ունեն խիստ լայն տարածում[79]։

Ուշադրության արժանի է, հատկապես, լանջերին արհեստականորեն հարթեցված հրապարակների ստեղծումը, որոնց վրա բարձրացվում էին շենքերը, և այս դեպքում լանջի ուղղահայաց կտրվածքները երեսպատվում էին միջին և խոշոր չափերի ճեղքված քարերի միաշարք շարքով։ Ըստ որում մի շինության այսպիսի երեսապատումը կարող էր հիմք ծառայել լանջի վրա ավելի բարձր դիրքով կանգնած մյուս շինության պատի համար, որը և ողջ շենքին տալիս էր աստիճանավոր տեսք։ Նշենք, որ արհեստական դարավանդների օգտագործումը՝ շենքեր կառուցելու համար, հատուկ է Հայաստանի շինարարական գործին դեռևս III հազարամյակից։

Ստորին դարավանդի տներից մեկում բացվել են նեղ մուտքով իրար միացած երկու շինություններ։ Դրանցից մեկը պահպանել էր կիկլոպյան կերպի երեսապատը, որի կողքով ձգվում էր հատակի քարե սալահատակը, որի վրա էլ կանգնեցված էին կոպիտ տաշված տուֆե տորաձև խարիսխները։ Հաջորդ շինություններն ունեն կավե տոփանված հատակ, որի կենտրոնում դրված էին լավ տաշված կրաքարե տորաձև խարիսխները։ Սենյակում տոփանված հատակի մեջ հայտնաբերվեցին տնտեսական հորեր։ Խարիսխների քառակուսի դասավորությունը հնարավորություն է տալիս ենթադրելու, որ շենքի ծածկը եղել է գլխատուն ձևով։

Առաջին պեղավայրում բացված են տներ, որանցում օգտագործվել են մեծ տրամագծի (0,40 մ) գլանաձև տուֆից խարիսխներ։ Այս ժամանակաշրջանի մի քանի տներ պեղվել են նաև վերին դարավանդի երրորդ պեղավայրի արևմտյան մասում։ Դրանք ևս պահպանել էին սալահատակների հետքեր։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում երրորդ պեղավայրի հարթեցրած մասում, ավելի բարձր դիրքում տեղադրված շենքը։ Նրա պատերի ստորին շարքերն են միայն պահպանվել, որոնք ունեն մանր, հարթ տաշված, կողի վրա դրված քարերի երկշար շարվածք, լցված մանր գետաքարերով և հողով։ Դատելով շարվածքից և վերին մասի հարթ կտրվածքից, կարելի է ենթադրել, որ դրանք ծառայել են որպես հում աղյուսե վերնապատերի հիմք։ Շենքի մուտքը, 1 մ լայնությամբ, շարված է չորս քառակուսի սալերով։ Հատակը կավով ավաղված է, որի վրա դրված է լավ հղկված սև տուֆե տորաձև խարիսխը։

1-ին շերտի բոլոր շինությունները ծածկված էին ածխի և մոխրի հզոր, 0,2—0,4 մ հաստության շերտով։ Ողջ բնակավայրը ընդգրկած հրդեհը այնքան ուժեղ է եղել, որ թրծել է 3-րդ պեղավայրի շենքի կավածեփ հատակը։ Այս շերտում հայտնաբերված նետասլաքները ցույց են տալիս, որ կործանման պատճառը հանդիսացել են ռազմական գործողությունները։ Ըստ որում մի շարք շինություններ լրիվ ոչնչացել են, իսկ մյուսների պատերը պահպանվել են մինչև 2 մ բարձրությամբ։

Երկրորդ շերտ. լավ պահպանվել է 1-ին և 3-րդ պեղավայրերում։ Այն բնորոշվում է հուշարձանում ողջ կյանքի, նախ և առաջ ճարտարապետության ժամանակավոր անկումով։ Առաջին պեղավայրում նկատվում է 1-ին շերտի շինությունների վերակառուցում։ Պատերը երեսպատող քարերի մեջ փորվում են անցքեր՝ փայտյա գերանների ամրացման համար, որոնց մյուս ծայրը ագուցվում էր բնակարանի հատակում, կողքով թաղված մեծ քարի մեջ։ Այս պայմաններում գերանը անցնում էր տորաձև խարիսխներից մեկի վրայով, որը բացառում էր այդ խարսխի վրա սյուն կանգնեցնելու հանգամանքը։ Շենքերի վերակառուցումներ նկատվել են և 3-րդ պեղավայրում, ըստ որում բնորոշ է նոր շինարարական տեխնիկայի կիրառում՝ կավածեփի պատերի օգտագործում, որոնք ներսից ե-



0 2 4 6 8մ

Նկ. 56. Տիրակավան. Երկրորդ պեղավայր. Հատակագիծ

րեսապատված են մանր գետաքարերի հավասար շարքերով: Առավել հետաքրքրական է այստեղ հայտնաբերված փոքր սրբարանը, որը 2,5×3 մ չափերի շինություն է՝ վերը նշված տեխնիկայով շարված: Այն ունեցել է անկանոն ուղղանկյուն ուրվագիծ և խստագույնս կողմնորոշված է եղել երկրի կողմերի նկատմամբ: Մուտքը, հավանաբար, եղել է հարավային կողմից: Ներսում, արևմտյան պատի մոտ, բարձրացված են եղել երկու կիսակլոր մույթեր, նույնպես կավածեփ՝ երեսապատված մանր գետաքարերի հորիզոնական շարքերով: Հյուսիսարևելյան անկյունում տեղադրված է օջախը՝ անկյուններում չորս ուղղահայաց դրված քարերով և կավե պատերով: Սենյակի կենտրոնում տեղադրված է տուֆե խարիսխը, որը ընդօրինակում է ատտիկյան ոճին: Խարսխի վրա դրված էր կիսամշակված սերդոլիկե կտոր, որը ցույց է տալիս, որ խարիսխը օգտագործվել է որպես զոհասեղան: Խարիսխների օգտագործումը այդ նշանակությամբ լայն տարածում ուներ անտիկ աշխարհում:

Մույթերի տեղադրությունը արևմտյան պատին կից, զոհասեղանին մոտ, որոշում են աղոթողի դիրքը դեպի արևմուտք: Սրբարանի շուրջը հայտնաբերվել է կարասների մեջ կատարված մարդկանց և շների համատեղ բազմաթիվ թաղումներ: Հայտնաբերված նյութերի ամբողջությունը թույլ է տալիս շինությունը համարելու սրբարան: Տվյալ սրբավայրը Հայաստանի հելլենիստական հուշարձաններում առայժմ եզակի է և զուգահեռներ մեզ հայտնի չեն:

3-րդ շերտ. բնակավայրի կյանքի ծաղկման ժամանակաշրջանն է: Բնակավայրի բոլոր հատվածներում կատարվել են շինարարական մեծ աշխատանքներ:

1-ին պեղավայրում բացվել են 2—5 շինություններից բաղկացած տներ և նրանց կից բակեր (լուսանկ. աղ. 34): Հատակագծով նրանք նման են I շերտի տներին: Նույնական է և շինարարական տեխնիկան, չնայած խոշոր քարերի օգտագործում չի նկատվում: Գերակշռում է միջին չափերի ճեղքված, կոպիտ տաշված քարերի շարվածքը: Տներում հայտնաբերվում են սալապատ հատակներ, տուֆից և կրաքարից, գլանաձև և քառանկյուն (պրոֆիլավորված) խարիսխներ:

2-րդ պեղավայրում վերին դարավանդում բացվել է սրբավայր, նրա առջև տարածված հրապարակով (գծագր. աղ. 56): Պահպանվել է հրապարակի սալահատակված մի հատված (10 մ× 20 մ): Սրբավայրը դեպի հրապարակ է ուղղված արևելյան ճակատով, որը շարունակվելով, դառնում է կից տների համար պարփակող պատ: Այս պատի հարևանությամբ հայտնաբերված ոսկրաբանական նյութը ցույց է տալիս, որ արտաքուստ պատը հարդարված է եղել եղջերուների, այծյամների, ցուլերի, այծերի, խոյերի գլուխներով: Պատի մեջ առկա են 1 մ լայնությամբ երեք մուտք, որոնցից երկուսը տանում են ուղղակի շինությունները, իսկ երրորդը՝ դեպի գետաքարերով ծածկված նեղ փողոցը, որը ձգվում է սրբավայրի ներքին տների միջով: Տները բաղկացած են մեկ կամ երկու բնակելի համալիրներից: Առավել լավ պահպանվել են դեպի հրապարակ ուղղված այն շենքերը, որոնք տեղադրված են սրբավայրի հյուսիսարևելյան մասում: Տներից մեկը բաղկացած է երեք, իսկ երկրորդը՝ հինգ սենյակներից, գոմից և նրանց կից բակից: Ամենամեծ սենյակը, որպես կանոն, ունի մի մասով սալարկված տոփանված հատակ: Սալարկված մասի երկայնքով դրված են տորաձև խարիսխներ: Սենյակի մյուս մասում, հատակի մեջ, բացվել են մոխրով լեցուն հորեր:

Հատկապես առանձնանում է սրբավայրի արևելյան մասի կենտրոնում տեղադրված, քարե սալերով շարված երկար հարթակը՝ դեպի արևելք ուղղված ուղղանկյուն զոհասեղանով: Հարթակի երկայնքով դրված են տորաձև բազաներ: Ցավոք, այս համալիրը խիստ վնասվել է գյուղատնտեսական աշխատանքների ընթացքում:

Պահպանվել է միայն մի մասը՝ զոհասեղանով, իսկ հնում տեղադրված 7 սյուներից՝ միայն հինգը:

Հարկ է նշել, որ սրբավայրի շենքերը հատակագծով, շինարարական տեխնիկայով չեն տարբերվում ստորին դարավանդի բնակելի շենքերից: Ընդհանուր է և հնագիտական նյութը:

Այսպիսով, Շիրակավանի սրբավայրերի համալիրում ի հայտ է գալիս պաշտամունքային շինությունների առանձացման միտումը, բնակավայրի պաշտամունքային կենտրոնի, դեռևս չձևավորված տաճարային ճարտարապետության պայմաններում:

Այստեղ մենք հանդիպում ենք Հայաստանի ավելի վաղ հուշարձանների ավանդների շարունակությանը: Այսպես, Դվինի հնագույն սրբա-

վայրը միաժամանակ և արհեստագործական արհեստանոց է[80]։ Մյուս բնակելի համալիրների հետ ճարտարապետորեն ընդհանուր է նաև Օշականի սրբավայրը[81]։ Սրբավայրերի և նույնիսկ տաճարների կողմից բնակարանի ճարտարապետական հատակագծի պահպանումը նկատվում է և ուշ ասորեստանյան մի քանի հուշարձաններում[82]։

Կարելի է ենթադրել, որ Շիրակավանի սրբավայրը ձևավորվել է դեռևս հուշարձանի կյանքի առաջին շրջանում։ Դրա հյուսիսային ծայրամասում հայտնաբերվել են մեծ պատի և շինության մնացորդներ, սակայն այնպիսի ավերված վիճակում, որ դժվար է բնորոշել նրանց բնույթը։

Սրբավայրում հայտնաբերված նյութերից դատելով, այստեղ պաշտում էին արևին, լուսնին, կատարում պտղաբերության հետ կապված ծեսեր։

**Երրորդ պեղավայր.** այստեղ վերին դարավանդում բացվել է մեծ շենք՝ 1000 քառ. մ տարածությամբ։ Ցավոք, շատ մեծ ավերմունքի հետևանքով, ներքին շինությունների ճշգրիտ հատակագիծը և նրանց ֆունկցիոնալ պատկանելության որոշումը դժվարանում է։

Մեծ տպավորություն է թողնում այստեղ բացված սյունազարդ դահլիճը, որի թռիչքը հյուսիսից հարավ 16,5 մ է, իսկ արևելքից արևմուտք պահպանված մասի երկարությունը 12 մ։ Դահլիճի արևմտյան պատը լրիվ ավերված է։ Արևելքից դահլիճին են հարում մի շարք սենյակներ, որոնք դահլիճի հետ կապվում են 1 մ լայնք ունեցող մուտքերով։ Հարավային և հյուսիսային պատերը խուլ են։ Հյուսիսային պատի երկայնքով ձգվում է քարե սալերից շարված հարթակ, որը տոփանված և հատակից բարձր է մոտավորապես 0,4 մ։ Դահլիճի կենտրոնում պահպանվել են 4 մեծ, հրաշալի մշակում ունեցող տուֆե տորաձև խարիսխներ։ Արևելյան սենյակներից մեկում հայտնաբերվել են ևս երեք նույնատիպ խարիսխներ, որոնք թափված էին հողակույտի մեջ։ Այսպիսով, կարելի է ենթադրել, որ դահլիճն ունեցել է պահպանված չորսից ավելի՝ ութ կամ ծայրահեղ դեպքում վեց սյուն։ Պետք է նշել, որ խարիսխները նույնական են 3-րդ պեղավայրի 1-ին շերտի թրծված, կավածեփ հատակով սենյակում հայտնաբերվածների հետ և, կարելի է ենթադրել, որ դրանք սյունազարդ դահլիճում օգտագործվել են երկրորդ անգամ։ Այսպիսով, հնում, երբ ամբողջական էր արևելյան մասը, և՛ 6 սյուների, և՛ նրանց խարիսխների 4,1 մ քայլի առկայության պայմաններում դահլիճը պետք է ունենար 16,5 մ ×16,5 մ չափեր։

Հատկապես նշենք, որ դահլիճի հարավային պատը սյան խարիսխներից հեռու է ոչ թե 4 մ, այլ 7,5 մ։ Այստեղ շինարարները գիտակցաբար օգտագործել են 1-ին շերտի շինության մնացորդները, որոնք գտնվում են դահլիճի տակ։ 2 մ ավելի բարձրությամբ պահպանված П-աձև կանգնած պատերը ծածկվել են հողով այնպես, որ գետնի մակերեսին մնացել է 0,5 մ ոչ բարձր մաս, որի վրա շարվել են նոր պատերը։ Այստեղից էլ հարավային պատը ձեռք է բերել 3,5 մ երկարությամբ մույթեր, որոնց վրա հենվել են սյուներից եկող գերանները։ Այս մույթերի շնորհիվ հարավային պատը ունեցել է խոր որմնախորշեր։ Հայաստանում բազմասյուն լավագույն դահլիճներ հայտնի են ուրարտական ժամանակաշրջանից (Արգիշտիխինիլի, Էրեբունի, Օշական)։ Պետք է հատկապես առանձնացնել Արմավիրի սյունազարդ դահլիճը, որը, սովորաբար, համարվում է ուրարտական ժամանակաշրջանի կառույց[83], բայց, մեր կարծիքով, վաղ հայկական ժամանակաշրջանի շինություն է[84]։ Այստեղ սյունազարդ դահլիճը կառուցվել է պարսպի պատի երկայնքով, որն ունի նլուստ-կոնտրֆորսներ։ Ըստ որում որմնահեցերը ծառայել են դահլիճի համար արևելյան պատի վրա որպես մույթեր, իսկ նրանց միջև ընկած տարածությունները՝ որմնախորշեր։ Սակայն որմնահեցերը խարիսխների հետ չեն համապատասխանեցված միասնական քայլով, ուստի Արմավիրի սյունասրահը կարող է լինել Շիրակավանին ժամանակագրորեն նախորդող, բայց ոչ տիպաբանորեն։ Անկասկած է, որ Շիրակավանի սյունասրահի հատակագծի՝ գուցե պատահական շինարարական այս գյուտը հետագայումստանում է լայն, հաստատուն կիրառում։ Այն արտացոլվում է Գառնիի ուշ ժամանակաշրջանի ամառային պալատի սյունասրահի[85], Դվինի սյունազարդ դահլիճի ճարտարապետության մեջ։

Շենքի և նրա սյունազարդ դահլիճի մասշտաբները, նրա կողմնորոշումը ոչ թե երկրի կողմերի, այլ ըստ ռելիեֆի, պաշտամունքային բնույթի գյուտերի բացակայությունը թույլ են տալիս այն բնորոշելու որպես աշխարհիկ, ամենայն հավանականությամբ, պալատական-տնտեսական համալիր, ըստ որում այն իր ընդհանուր հատակագծով տարբերվում է Շիրակավանի բնակելի




Նկ. 57. Գառնի. ամրոցի ընդհանուր հատակագիծը

ղանգվածներից, միայն իր մեծ մասշտաբներով՝ սյունասրահով և անտեսական շինությունների քանակով։ Այս երևույթը բնորոշ է հին աշխարհի, մասնավորապես Ասորեստանի պալատական շինություններին[86]։

Հուշարձանի ծաղկումը ընդհատվում է հանկարծակի։ Այստեղ հրդեհի հետքեր չեն նկատվում։ Հավանաբար, բնակիչները I դ. լքել են բնակավայրը։ Այս ժամանակաշրջանը լի էր ռազմական բուռն ընդհարումներով, իսկ անտիկ Շիրակավանը չուներ պաշտպանական կառույցներ։ Այդ պատճառով բնակչությունը, առաջին հերթին վերին գարավանդի, հեռացել են ավելի ապահով վայր։

Չորրորդ շերտ. այս շրջանում բնակավայրում կյանքը շարունակվել է միայն ստորին գարավանդում, իսկ վերինը վեր է ածվել գամբարանադաշտի։ Այստեղ ամենավաղ թաղումները կատարվել են պալատական մասում, աստիճանաբար ընդարձակվելով դեպի արևելք և հասել են մինչև 2-րդ պեղավայրը։ Բնակիչները քարարկղային դամբարաններ պատրաստելու համար օգտագործել են ավելի վաղ շինությունների քարերը, որը խիստ ազդել է դրանց պահպանվածության վրա։

Ստորին գարավանդում շինարարության մեջ նոր տարրը մի քանի բնակարանների միացումն է մի միասնական-շինարարական ղանգվածի մեջ։ Այստեղ բացվել է տների մի այնպիսի ղանգված՝ հյուսիս—հարավ կենտրոնական առանցքային գծով, որին երկու կողմից կցված են մի քանի իրար հարող տներ՝ իրենց բակերով։ Սրանց կողքին առկա են և առանձին կանգնած տներ։ Տների կորիզը կազմում է սենյակը՝ քառանկյունի դասավորված խարիսխներով, հավանաբար գլխատան տիպի ծածկի համար։ Գլխատանը կից առկա են պահեստային սենյակներ, գոմ և այլ շինություններ։ Սովորաբար տան համալիրը բաղկացած է 3—5 սենյակից։ Կենտրոնական սենյակի մի մասը նույնպես ունի սալահատակ։ Լրիվ սալահատակված են գոմերը։ Տունն ունի մեկ կամ երկու օջախ՝ տեղադրված սենյակների անկյուններում։ Օջախները շարված են քարից։ Հանդիպում են թոնիրներ։ Հայտնաբերվել են տնտեսական մեծ հորեր՝ նեղ, քառակուսի շարված անցքերով, որոնք դեպի ցած լայնանում են (խոր. 2մ)։

Սենյակներից մեկում հայտնաբերվել է երկու խարիսխներից և ուղղանկյուն խորանարդներից կազմված ղոհասեղան։ Մյուս տներում գտնվել են մարդու՝ փոքր չափերի արխաիկ ոճի քարե արձանի գլուխ, խեցեղեն դրոշմ՝ այծի պատկերով, սրբազան հացը դրոշմելու համար։ Այսինքն, կարելի է ասել, որ այս շրջանում պահպանվում էր վաղ ժամանակների պաշտամունքը, միայն այն տարբերությամբ, որ ծիսակատարությունները սրբավայրից տեղափոխել էին բնակարանները։

Այս ժամանակաշրջանից հետո կյանքը բնակավայրում ընդհատվում է ընդմիշտ։

Այսպիսով, անտիկ Շիրակավանի հնագիտական նյութի համառոտ ուսումնասիրությունը թույլ է տալիս այն առանձնացնելու Հայաստանի նույն դարաշրջանի մյուս հուշարձաններից։ Առանձնահատկությունը ճարտարապետության մեջ է՝ շենքերի մասշտաբայնության, տարաձև, գլանաձև և այլ ուրվագիծ ունեցող խարիսխների առատ օգտագործման մեջ, որը չի նկատվում նույնիսկ մեծ քաղաքների՝ Արմավիրի, Արտաշատի ճարտարապետության մեջ։ Այս երևույթը կարելի է բացատրել միայն Շիրակավանի՝ որպես տաճարային համայնքի բնակավայրի բնույթով։

## ԱՄՐՈՑՆԵՐ

Ամրաշինությունը գտնվում էր զարգացման նշանակալից աստիճանի վրա. ստեղծվել էր անառիկ ամրոցների ընդարձակ ցանց՝ Արտագերս, Բաղաբերդ, Բաղաղեշ, Դարոյնք, Գառնի, Հադամակերտ, Հռնարակերտ, Սինորա, Շատբերդ, Ողական և այլն։ Ժամանակի ամրաշինության (ֆորտիֆիկացիոն) պաշտպանական սիստեմի և ռազմակառուցողական արվեստի զարգացման աստիճանի ըմբռնման տեսակետից առանձնահատուկ նշանակություն ունի Գառնի ամրոցը։

Գառնի ամրոցը գտնվում է Երևանից 28 կիլոմետր դեպի հարավ-արևելք, պատմական Կոտայք գավառի (այժմյան՝ Աբովյանի շրջանի) Գառնի գյուղի հարավային եզրի եռանկյունաձև տարածքում, ծովի մակերևույթից շուրջ 1400 մետր բարձրության վրա (գծագր. աղ. 57, լուսանկ. աղ. 40 ա)։

Գառնի ամրոցում շինարարական կյանքը սկըսվում է դեռևս վաղ բրոնզեդարից. պահպանվել են կլոր կացարանի և կիկլոպյան պարսպապատի մնացորդներ[87]։

Մատենագրությունը Գառնի ամրոցի կառուցումը կապում է հայ ժողովրդի ամենահնավոր

անցյալի հետ. Մովսես Խորենացու մոտ հիշատակված ավանդության համաձայն, Հայկ Նահապետի թոռ Ամասիայի որդի Գեղամը «... առ ոտամբ նորին լերինն ի ձորակի միում ամրոց շինէ ձեռակերտ մի, և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ ի Գառնկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի»[88]:

Գառնիի վերաբերյալ ամենահնագույն ստույգ տեղեկությունները տալիս է Գառնի անտիկ տաճարից ոչ հեռու, 1963 թ. գտնված ուրարտական թագավոր Արգիշտի Ա-ի (781—760) սեպագիր արձանագրությունը (լուսանկ. աղ. 40 բ):

Արձանագրության մեջ ասված է, որ Արգիշտի Ա-ն «նվաճեց Գիառնիանի երկիրը...». Նշանակում է, Գառնի—«Գիառնիանի» անունը և այն կրող երկիրը գոյություն է ունեցել դեռևս նախաուրարտական ժամանակներում[89]:

Արձանագրությունը փորագրված է «Վիշապ» անվանվող քարակերտ կոթողի պահպանված մասի քանդակապատ երեսի վրա։

Գառնիի վերաբերյալ պատմական մյուս ստույգ տեղեկությունը հաղորդում է I դարի հռոմեական պատմագիր Կոռնելիոս Տակիտոսը։

51 թ. Փարասմանի որդի Հռադամիզդը, ցանկանալով հայկական գահը խլել Հռոմի կողմից նշանակված իր հորեղբայր Միհրդատից, հարձակվում է Հայաստանի վրա։ Ըստ Տակիտոսի, Միհրդատը հանկարծակի ներխուժումից անհաբեկված՝ փախել ու պատսպարվել էր Գառնի ամրոցում, որն «ապահով էր թե՛ տեղադրության և թե՛ հռոմեական կայազորի պաշտպանության հետեվանքով»[90]:

Հռադամիզդը ուժով չի կարողանում գրավել ամրոցը, դիմում է խորամանկության։ Կաշառելով հռոմեական կայազորի հրամանատար պրեֆեկտ Կելիուս Պոլիոնին, նա հաշտության դաշինք կնքելու պատրվակով Միհրդատին հրավիրում է պարիսպներից դուրս և այս, «...երդվելով հավատարիմ իր երդման... չգործադրել ոչ թույն և ոչ էլ թուրը», սպանում է՝ խեղդամահ անելով գորգերի տակ։

Այդ դեպքերից հրավացիորեն եզրակացվում է, որ «... Գառնին արդեն իսկ այդ ժամանակ անմատույց բերդ էր՝ շրջապատված անառիկ պարիսպներով»[91], և իրր այդպիսին, բնականաբար, պետք է սանդված լիներ ավելի վաղ։

Կորբուլոնի արշավանքների ընթացքում, հռոմեական զորքերի կողմից 59-ին Արտաշատ մայրաքաղաքի ավերման ժամանակ, մեծ ավերածություններ է ենթարկվում նաև արքունի ամառանոց Գառնի ամրոցը։ Այդ մասին է վկայում 1945 թ. նկարիչ Մ. Սարյանի և գյուղատնտես Յ. Դավթյանի կողմից Գառնիում հայտնաբերված հունարեն արձանագրությունը (լուսանկ. աղ. 45 բ)։

Ըստ պ. Կ. Տրևերի, արձանագրության թարգմանությունը հետևյալն է.

«Հելիոս։ Տիրիդատես Մեծ Հայքի թագավոր։ Երբ իշխանը կառուցեց ագարակ թագուհու համար (և) այս անառիկ բերդը իր թագավորության 11-րդ տարում, Մեննեասը, տիրոջ ցանկությամբ (որպես) մեծ սպարապետի լիտուրգոս (ի նշան) շնորհակալության Մատե վկայի ներկայությամբ վճարեց»[92]:

Նշանակում է, Տրդատ թագավորի գահակալության 11-րդ տարում ամրոցը և նրա մեջ գտնվող դաստակերտը ենթարկվել են վերակառուցման։ Արձանագրության մեջ հիշատակված Տրդատ թագավորը համարվում է Տրդատ Ա-ն, իսկ նրա գահակալության 11-րդ տարին՝ 76 թ.[93]։

I դարում Գառնիում տեղի ունեցած այդ աշխատանքներին անդրադառնում է նաև Մովսես Խորենացին[94], սակայն նա Տրդատ Ա-ի գործունեությունը վերագրում է քրիստոնեությունը Հայաստանում պետական կրոն հռչակած Տրդատ Գ թագավորին (287—330)։

II դարի երկրորդ կեսին—III դարի սկզբին, Վաղարշակ թագավորի որդին՝ Մեծ Հայքի թագավորը, Գառնիում թողել է արամեական գրությամբ արձանագրություն[95]։

Հավանական է, որ Մեծ Հայքի թագավորը, որը, ինչպես ենթադրվում է, Վաղարշակ թագավորի որդի Խոսրով I էր[96], ինչ-որ կարևոր առիթով է թողել այդ արձանագրությունը Գառնիում[97], սակայն ի՞նչ առիթով, անհայտ է[98]։

Ամրոցի պաշտպանական համակարգի արևելյան հատվածում, որտեղ տեղանքի պատճառով հակառակորդը դժվարությամբ կարող էր մոտենալ պարսպապատին, հետևապես նրա հարձակումը հնարավոր կլիներ ավելի փոքր ուժով եռ մղել, ավելի փոքր թվով աշտարակներ են կառուցված, այսինքն՝ միմյանցից մեծ հեռավորության վրա (լուսանկ. աղ. 41 բ)։ Ամրոցի հյուսիսային և հյուսիսարևմտյան մասերում, որտեղ թշնամին կարող էր համեմատաբար անարգել մոտենալ պարսպապատերին, հետևապես պետք էր, որ ավելի մեծ ուժեր կենտրոնացվեին նրա դեմ, աշ-













Աղ. 58. Գառնի. ա) Ամրոցի հյուսիսային պարսպի պաշտպանական համակարգից հատված. վերակազմություն. երկայնական կտրվածք, բ) Ամրոցի հյուսիսային պարսպի հատված. տեսքը հարավից, վերակազմություն, գ) Ամրոցի մուտքը հարավից. վերակազմություն, դ) Ամրոցի հյուսիսային պարսպի պաշտպանական համակարգից հատված. հատակագիծ, վերակազմություն

*տարակները կառուցված են մեծ թվով, այսինքն՝ միմյանց ավելի մոտ (լուսանկ. աղ. 41 ա)։ Ընդ որում տեղանքից անկախ, իբրև ռազմապաշտպանական հատուկ միջոցառում, մուտքից դեպի արևմուտք 4-րդ և 5-րդ աշտարակները մյուս աշտարակների համեմատությամբ կառուցված են ավելի ներս՝ ստեղծված է արհեստական տեղ, որի մեջ ներքաշված հակառակորդի ուժերը, ինչպես իրավացիորեն նշում է Բ. Առաքելյանը, ընկնելով աննպաստ պայմանների մեջ, պետք է դառնային ավելի հեշտ խոցելի (գծագր. աղ. 58 դ)։*

*Ամրոցի առավել վաղ շրջանի աշտարակները ուղղանկյունի են։ Նման աշտարակներ գոյություն ունեն նաև հելլենիստական ճարտարապետության այլ կենտրոններում։*

*Հայկական լեռնաշխարհում ուղղանկյուն ձևի աշտարակներ ստեղծվել են շատ ավելի վաղ՝ նախաուրարտական և ուրարտական ժամանակներից (Տուշպա[100], Շամիրամ, Նազրվան, Արգիշտիխինիլի[101], Թեյշեբաինի[102])։*

*Գառնիի աշտարակները կառուցվել են երկու եղանակով։ Պաշտպանական տեսակետից առավել պատասխանատու հանգույցում՝ մուտքի աջ և ձախ կողմերի աշտարակները շարված են որձաքարի համատարած խոշոր պանգվածներով, չոր, առանց շաղախի։ Մնացած մյուս բոլոր աշտարակների արտաքին պարագծով կառուցված են 1,15—1,50 հաստության քարե շրջանակներ և նրանց մեջ շերտ-շերտ լցված է կրից, ավազից, ճեղքված որձաքարից և գետաքարերից կազմված կրաբետոն։*

*Ամրոցի կառույցում օգտագործվել են մետաղական միայն հորիզոնական կապեր, իսկ տաճարի շենքում նրանք զուգակցվում են ուղղահայաց ձողերի հետ։ Հայաստանի անտիկ ժամանակաշրջանի նյութական մշակույթի հուշարձանների նյութերը ցույց են տալիս, որ Գառնի ամրոցում կիրառված մետաղական միացումներով շինարարական տեխնիկան գոյություն է ունեցել Հայաստանի նույն, ավելի վաղ ժամանակաշրջանի նաև այլ վայրերում (Արմավիր[103], Երվանդաշատ[104])՝ III—II դդ. մ.թ.ա., Երվանդակերտ[105], Արտաշատ[106] II դ. մ.թ.ա., Անի III—II դդ. մ.թ.ա.[107]։*

*Ամրոցի պարսպում ակնառու են շինարարական մի քանի շրջաններ, որոնք որոշակի լույս են սփռում Հայաստանում պատի կառուցողական արվեստի ատիճանական զարգացման ընթացքի վրա։*

*Շինարարական առաջին հնագույն շրջանի պարսպի ուղղանկյուն հատակագիծ ունեցող աշտարակների պատերը շարված են մաքուր տաշված որձաքարի խոշոր զանգվածներով, առանց շաղախի, և որմնաքարերը միացված են իրար երկաթյա կապերով։ Այս հատվածը պատկանում է ամրոցի մինչև 51 թվականը գոյություն ունեցած պարսպին և, ինչպես նշվում է, ստեղծված պետք է լինի առնվազն մ.թ.ա. II—I դարերում։*

*Աներկբայորեն այս շրջանին է պատկանում պարսպի մոտ բացված որձաքարի խճի առաջին շերտը։*

*Երկրորդ շրջանը նույն շինարարական տեխնիկայով և գրեթե նույն չափերի քարերով կառուցված մասն է, ուր շարվածքի ու քարերի մշակման որակը որոշակիորեն զիջում է նախորդ շրջանին։*

*Այս հատվածն է, անշուշտ, որ վերակառուցվել է Տրդատ I-ի գահակալության 11-րդ տարում, այսինքն 76-ին (մ.թ.ա.)։ Պարսպի մոտ բացված որձաքարի խճի երկրորդ շերտը, ըստ երևույթին, առաջացել է այս վերակառուցման ժամանակ։*

*Երրորդ շրջանը կապված է մուտքի արևելյան կողմին կցված կիսակլոր աշտարակի կառուցման հետ։ Այստեղ, ի տարբերություն նախորդ շրջանների շինարարական արվեստի, պատերը կառուցված են համեմատաբար փոքր քարերով, առանց երկաթյա կապերի, և որմնաքարերի միացման համար իբրև կապակցող նյութ գործ է ածված կրաշաղախը։ Սակայն պատի հիմնական կրող մասը, նախորդ շրջանների նման, գարձյալ քարն է և ոչ շաղախը։*

*Պատի կառուցման այս եղանակը հանդիսանում է նախորդ շրջանների՝ չոր, առանց շաղախի կառուցվող պատերից կրաշաղախային խոշոր միջուկով պատերին անցման նախնական փուլը[108]։*

*Հայտնի է, որ Մովսես Խորենացին Գառնիի ամրոցի կառուցումը վերագրում է Տրդատ III-ին (287—330)[109]։ Հնարավոր է, որ ռազմապաշտպանական տեսակետից ամրոցի կարևորագույն հանգույցում ստեղծված այդ խոշոր կիսակլոր աշտարակի կառուցողը լիներ Տրդատ III-ը, որին հետագայում (թերևս առավել մեծարման նպատակով) վերագրվել է ամբողջ ամրոցի կառուցումը։*




*Նկ. 59. Գառնի. պալատական շենքեր և նրանց շրջապատի կառույցներ, հատակագիծ. ա) Անտիկ տաճար, բ) Քառաբսիդ եկեղեցի, գ) Մատուռ (Մաշտոց կաթողիկոսի եկեղեցի), դ) Պալատական դահլիճ, ե) Պալատական շենքի մնացորդներ, զ) Բաղնիք*

Չորրորդ շրջանը խիստ փոքր քարերով երեսապատած և կրաշաղախի մեծ միջուկով պատի կառուցվածքն է. կառուցողական այս եղանակը Հայաստանում լայն կիրառում ուներ հիմնականում X—XIV դարերում[110]:

Ինչպես ցույց են տալիս այդ եղանակով իրականացված, ամրոցի մուտքի արևելյան աշտարակի ու արևմտյան աշտարակից դեպի արևմուտք ձգվող բավական մեծ բարձրությամբ պահպանված պատի մնացորդները, և պարսպապատի հյուսիսային հատվածի ամբողջ երկայնքով թափված համանման պատի որմնաքարերը՝ միջնադարում տեղի է ունեցել ամրոցի պարսպապատերի խոշոր վերակառուցում:

Գառնի գյուղի հնագույն խաչքարերից մեկի վրա փորագրված Կատրանիդե թագուհու 879 թ. արձանագրությունից երևում է, որ այդ ժամանակներում Գառնին պատկանել է Բագրատունիներին, որոնք և կարող էին իրականացրած լինել այդ վերակառուցումը[111]: Հետևապես նման խոշոր վերակառուցում կարող էր տեղի ունեցած լինել Բագրատունյաց թագավորության շրջանում, թերևս X դարում:

Հինգերորդ շրջանը ամրոցի գլխավոր մուտքի արևելյան աշտարակի ներսի կողմում շինարարական նույն տեխնիկայով ստեղծված տուֆաշեն կառուցվածքն է, որն, ամենայն հավանականությամբ, պատկանում է Զաքարյանների ժամանակաշրջանին: Բագրատունիներից հետո Գառնին եղել է Զաքարյանների սեփականություն. անտիկ տաճարի պարակալի վրա պահպանվել է Գառնիի տեր Խոշաք իշխանուհու և նրա որդի Ամիր Զաքարեի՝ 1291 թ. փորագրված արձանագրությունը:

**Պալատական շենքեր.** Գառնի ամրոցի պարիսպներից ներս պահպանվել են ճարտարապետական-գեղարվեստական մեծ արժեք ներկայացնող աշխարհիկ և պաշտամունքային կառույցների մնացորդներ:

Պալատական խումբը բաղկացած է եղել մի քանի շենքերից: Պեղումների հետևանքով առայժմ բացվել են ավելի քան 40 մ երկարության և մոտ 15 մ լայնության արքունի ապարանքի մնացորդները: Հարավարևելյան կեսում գտնվել է 1:2 համաչափությամբ կամարակապ մի խոշոր դահլիճ, իսկ մյուս կեսում տեղադրված են եղել տարբեր չափերի ու նշանակության բազմաթիվ սենյակներ (գծագր. աղ. 59):

Դահլիճից պահպանված է հյուսիսարևելյան պատը՝ 2,00—2,20 մ բարձրությամբ, իսկ մյուս պատերը, չնչին բացառությամբ, ոչնչացված են: Շենքի մնացորդների մի մասը գտնվում է VII դարում կառուցված քրիստոնեական քառաբսիդ եկեղեցու արևմտյան հիմքերի տակ: Նշանակում է, VII դարում պալատական կառույցները մասամբ կամ ամբողջապես արդեն ավերվել էր:

Պալատական խմբի մյուս մասի, դեպի հրապարակ ուղղված պատն ունի միմյանց հաջորդող մի քանի ուղղանկյուն ելուններով մշակված եզրագիծ: Անկասկած, դրա վրա բարձրացված ճակատն ունեցել է բավական հարուստ ու արտահայտիչ տեսք: Հյուսիսարևմտյան սենյակներից մեկի ներսի պատերի ծեփի վրա պահպանվել են մուգ վարդագույն ներկի հետքեր:

Եթե նկուղային հարկում գոյություն է ունեցել որմնանկարչություն, ապա կարելի է պատկերացնել, թե ինչ շքեղ տեսք պետք է ունեցած լինեին վերնահարկի պալատական մյուս սենյակներն ու արքունական ընդունելության դահլիճները: Պատերը կառուցված են ճեղքված որձաքարից և գետաքարից, իբրև միացնող նյութ օգտագործված է կրաշաղախ: Պալատական խմբի, դեպի բաղնիքի շենքը ուղղված կեսում, քարի որմնաշարքերին զուգընթաց, տեղ-տեղ հանդիպում է թրծած աղյուսի շարվածք:

Դահլիճի 9,65×19,92 մ չափի հատակագծային ներքին տարածությունը ութ ուղղանկյունի մույթերի միջոցով (որոնցից տեղում գտնվել են երեքի՝ 1,12—1,08 մ չափի ներքնասալերը) բաժանված է եղել երկու հավասար մասի՝ նավի[112]: Պահպանվել են դեպի անտիկ տաճարը ուղղված պատի՝ 0,98×0,70 մ ելուն ունեցող բոլոր որմնամույթերի մնացորդները: Պետք է ենթադրել, որ նույն քանակի և չափերի որմնամույթեր կային նաև հանդիպակաց պատին կից (գծագր. աղ. 60):

Դեպի անտիկ տաճարն ուղղված պատի անկյունից, 1,295 մ հեռավորությամբ պահպանվել է դռան բացվածքը երիզող պատի հատվածը: Իմանալով որմնամույթերից մինչև մույթերը եղած հեռավորությունը (4,25 մ), մենք տվյալ պատի շարունակության և համապատասխան մույթի միացման անկյունում դնելով նույն 1,295 մ չափը, ստացանք դռան բացվածքի լայնությունը՝ 4,250—(1,295+1,295)=1,660 մ, որով և ամբողջացավ դահլիճի հատակագծային հորինվածքի հնարավոր վերարտադրումը:

Դռան բացվածքը կարող էր լինել նաև դահլի-






















*Աղ. 60. Դառնի. ա) Պալատական դահլիճ. երկայնական և լայնական կտրվածք. չափագրություն, բ) Վերակազմություն. 1-ին տարբերակ, գ) 2-րդ տարբերակ, դ) Հատակագիծ, վերակազմություն, ե) Լայնական կտրվածք, վերակազմություն, 1-ին տարբերակ, զ) 2-րդ տարբերակ, է) Դահլիճ. ամրոցի արևելյան պարսպին կից*

ճի՝ դեպի կիրճը ուղղված պատի վրա (թերևս նաև մյուս նավի համանման հատվածում)։

Դահլիճի հատակը անտիկ տաճարի պատվանդանի ներքին եզրի նիշից գտնվում է 2,52 մ ցած, անտարակույս պալատական կառուցվածքը եղել է երկհարկանի[113]։

Որմնամույթերի և մույթերի դասավորությունից ու չափից հետևում է, որ կառույցը ունեցել է թաղակապ ծածկ, ուր յուրաքանչյուր նավ ծածկըվել է միանման թռիչք ունեցող ինքնուրույն թաղով[114]։

Վերը նշվեց, որ VII դարում քառաբսիդ եկեղեցու արևմտյան մասի հիմքերը դրվել են դահլիճի պատերի վրա։ Հիմքերի տակ պահպանված պատի բարձրությունը կազմում է 2,00 մ, իսկ նույն պատի շարունակության վրա այն հասնում է մինչև 2,20 մ, բնական է, հին շենքի սկզբնական բարձրությունը կարող էր լինել ավելի մեծ։

Դահլիճի հատակագծի հիմքում ընկած 1 : 2 համաչափությունը կիրառվել է նաև կենտրոնական կամարաշարքի կամարների բացվածքի համար (որպիսի հարաբերությամբ կիսաշրջանաձև վերջավորություն ունեցող կամարը հազվադեպ չէ անտիկ ճարտարապետության մեջ)։

Թաղի կառուցման եղանակի համար հնարավոր է երկու տարբերակ։

Մեկը՝ եթե որմնամույթերից դեպի կենտրոնական կամարաշարքի համապատասխան մույթերը նետվեն թաղակիր կամարներ և նրանց մեջ առաջված աղատ տարածությունները ծածկվեն թաղի համապատասխան սեկցիայի քարերով։

Երկրորդը՝ եթե որմնամույթից որմնամույթ կամարներ նետվեն դահլիճի երկայնական ուղղությամբ և այդ յուրահատուկ կամարաշարքի վրայից սկզբնավորվի դեպի կենտրոնական կամարաշարք ընթացող թաղը։

Առաջին դեպքում ավելի դյուրին կարող է լինել թաղի կառուցումը, սակայն թաղակիր կամարների և թաղի կրունկի քարերի միացման հանգույցները ստացվում են ոչ շատ հստակ։

Երկրորդի դեպքում, չնայած թաղը ստանում է շուրջ 20 մ երկարություն, սակայն նրա կոնստրուկտիվ իրականացումը համեմատաբար ավելի պարզ է։

Պալատական դահլիճը թե՛ ճարտարապետական մտահղացմամբ (որոշակի համաչափությամբ հատակագծային հորինվածք, ներքին տարածության նավերի բաժանում, կամարաշարք) և թե՛ կառուցման ձևով (պատի շարվածք առանց աղյուսի օգտագործման, մույթերի մեծադանգված որձաքարի ներքնասալիկներ, թաղակապ միասնական ծածկ) տարբերվում է պալատական խմբի մյուս կեսի շինություններից[115]։

Կառուցողական եղանակով և օգտագործված շինանյութով այն տարբերվում է նաև անտիկ տաճարից։

Ուշագրավ է պալատական դահլիճի կամարաշարքի կառուցվածքում դրսևորվող ակնհայտ զգուշությունը։ 1,08×0,98 մ չափեր ունեցող մույթերի վրա նետված կամարների թռիչքները կազմում են ընդամենը 1,74 մ։ Անշուշտ, կառուցողները ցուցաբերել են իրավացի զգուշություն, որովհետև կամարաշարքի վրա իջնում են երկու կողմի նավերի թաղերի համապատասխան պատերը։ Սակայն մեզ թվում է, այդքան մեծ զգուշությունն, ըստ էության, նաև փորձի պակասի հետևանք է։

Հայտնի է, որ Հռադամիզդի հանկարծակի հարձակումից ահաբեկված, Միհրդատը մ.թ. 52 թ. փախել և պատսպարվել է Գառնի ամրոցի արքունի ապարանքում։ 59 թ. հռոմեական զորքերի կողմից Արտաշատի կործանման ժամանակ ավերածությունների են ենթարկվում նաև Գառնի ամրոցը և նրա ներսում գտնվող պալատական կառույցները։

Հնարավոր է, որ ուսումնասիրվող դահլիճը պատկանի մինչև 59-ի ավերումները գոյություն ունեցած պալատական շենքին։

Գառնիի բաղնիքը։ Այն գտնվում է հեթանոսական տաճարից մոտ 50 մ դեպի հյուսիս-արևմուտք. ներկայումս կիսաքանդ վիճակում է։

Շենքը գլխավոր ճակատով ուղղված է դեպի հյուսիս-արևելք, որի հետևանքով ամբողջ կառույցը ստացել է հյուսիս-արևելք, հարավ-արևմուտք կողմնորոշումը (լուսանկ. աղ. 42 ա)։

Հատակագիծն ունի նույն ուղղությամբ միմյանց հաջորդող չորս սենյակներից կազմված հստակ հորինվածք։ Սենյակների դեպի հարավ-արևելք ուղղված պատերն ունեն արտաքինից կորագիծ, իսկ ներսից, մի մասը՝ պայտաձև, մյուսը՝ կիսաշրջանաձև տեսք ունեցող խորշեր (աբսիդներ) (գծագր. աղ. 61, լուսանկ. աղ. 42 բ)։

Հյուսիսարևելյան կողմից հաշված առաջին սենյակն ունի 2,91×3,14 մ, գրեթե քառակուսի հատակագիծ, որի հարավարևելյան ճակատը



Ա



Բ



Գ Ե




Դ Զ

*Նկ. 61. Գառնի. բաղնիք, ա) Երկայնական կտրվածք, վերակազմություն, բ) չափագրություն, գ) Լայնական կտրվածք. վերակազմություն, դ) Հյուսիսային ճակատ. վերակազմություն, ե) Հատակագիծ. վերակազմություն, զ) Հատակագիծ հիպոկաուստով. չափագրություն*

պսակվում է 2,39 մ բացվածք ունեցող պայտաձև խորշով։

Առաջին սենյակը մյուսների համեմատությամբ ունեցել է առավել հարուստ ներքին ձևավորում։ Ի տարբերություն մնացած բոլոր սենյակների, այն յուրաքանչյուր պատի վրա ունի 0,89—0,94 մ լայնությամբ դռան մեկական բացվածք, որոնցից մեկը հաղորդակցվում է դրսի, մյուսը՝ հյուսիսարևմտյան կողմից հետագայում կցված սենյակի, իսկ երրորդը՝ մնացած լողասենյակների հետ։

Սենյակի պայտաձև խորշի առջև կառուցված է 0,32×0,27 մ չափի նստարան, որի համար իբրև թիկնակ ծառայել է նստարանի հետևից բարձրացող 0,45 մ բարձրություն և 0,30 մ հաստություն ունեցող պատը։ Նստարանաձև համանման մի կառուցվածք էլ ստեղծված է այդ պատի հետևի ճակատին կից՝ պայտաձև խորշի մեջ։ Երկրորդ նստարանն ունի ավելի մեծ բարձրություն, քան առաջինը, որի հետևանքով պայտաձև խորշի հատակը սենյակի հատակի հորիզոնի համեմատությամբ ստացվել է ավելի ներքև։

Կասկածից վեր է, որ պայտաձև խորշի ներսում ստեղծված է եղել ջրավազան։ Թե ինչի՞ է ծառայել այդ ավազանը, ստույգ դժվար է ասել։ Թերևս այն ունեցել է դեկորատիվ նշանակություն, իբրև սենյակի ներքին ձևավորման մանրամասներից մեկը։ Բացառված չէ նաև, որ բաղնիք այցելողներն ընդունում էին սառը լոգանք։

Սենյակի հատակը (2,91×3,14) ամբողջապես ծածկված է բարձր արվեստով կատարված խճանկարով (լուսանկ. աղ. 43 ա, բ, 44 ա, բ)։

Այս սենյակը թե՛ բաղնիքի ողջ հորինվածքում գրաված դիրքով և թե՛ ներքին յուրահատուկ (առավել հարուստ) մշակմամբ, անշուշտ, հանդիսացել է բաղնիքի նախասրահ-հանդերձարանը։

Հնագույն բաղնիքներից առանձին նախասրահներ ունեն ոչ միայն մեծ չափերի, այլև Գառնիի բաղնիքի նման ավելի համեստ չափերի բաղնիքները։

Այսպես. Վրաստանի՝ նույն ժամանակաշրջանի (II—III) Արմազիսխևիի (Մցխեթայի) էրիսթավների պալատական բաղնիքի հինգ սենյակներից ձախից առաջինը (Գառնիի նման) հանդիսացել է բաղնիքի ընդհանուր հանդերձարանը[116]։

Նման օրինակներ, երբ նախասրահի համար հատկացված են հատուկ սենյակներ, գոյություն ունեն նաև բազմաթիվ այլ վայրերում (Սև ծովի հյուսիսային ափերում՝ Խարակսի բաղնիքը, Տրիրի հռոմեական վիլլաների բաղնիքները և այլն)։

Գառնիի բաղնիքի հաջորդ սենյակները վնասված են ավելի շատ։

Նախասրահին կից սառը ջրով լողասենյակի հատակը ստացել է չնչին ջերմություն, որովհետև այն կրակարանից եկող բոցի և ծխի հոսանքից անջատված էր (փոքր անցքեր ունեցող) երկու հաստ պատով և գտնվում էր կրակարանից բավական հեռու։

Որեմն, սառը ջրով լողասենյակը երկրորդը լինելով, նրան հաջորդող երրորդը հանդիսացել է գոլ բաժանմունքը։

Չորրորդ սենյակն, ըստ էության, բաղկացած է երեք մասից։ Հյուսիսարևելյան կեսը թե՛ հատակագծի ընդհանուր տեսքով, թե՛ չափերով (2,90×3,05) և թե՛ աբսիդի բացվածքի առկայությամբ նման է նախորդ սենյակներին և, անկասկած, տաք ջրով լողանալու սենյակն է։ Մյուս կեսի հյուսիսարևմտյան մասը, ամենայն հավանականությամբ, ջրամբարի տեղն է, իսկ հարավարևմտյան հատվածում՝ հատակի ներքևի մասում գտնվել է հնոցը, որի միջոցով տաքացվել է ջուրը։

Բոլոր սենյակների պատերը շարված են գետաքարերով և ճեղքված որձաքարի կտորներով. իբրև միացնող նյութ օգտագործված է կրաշաղախը։

Հանդերձարանի սենյակի պատերը պահպանվել են 1,50—2,00 բարձրությամբ, իսկ հյուսիսարևմտյան պատը՝ մինչև դռան բարավորը ներառյալ։ Երկրորդ, երրորդ և չորրորդ սենյակների պատերի պահպանված հատվածների բարձրությունը հասնում է 1,40—1,65 մետրի։

Բոլոր սենյակների և կորացած խորշերի անկյունները, ինչպես և հանդերձարանի դռների բացվածքների եզրերը, շարված են մաքուր տաշված 0,40—0,50 մ բարձրություն ունեցող տուֆաքարով, երբեմն օգտագործվել է նաև աղյուս։ Լողասենյակներում դրսից ոչ մի բացվածքի (լուսամուտի կամ դռան) հետք չկա։ Դժվար է անգամ որոշակի ասել, լողասենյակները միմյանց հետ ինչպես են հաղորդակցվել՝ դռների, թե՞ կամարակապ բացվածքների միջոցով։

Հանդերձարանի պատերի վրա պահպանված են ծեփի երկու շերտի մնացորդներ, առաջինը մոտ երկու սանտիմետր հաստությամբ՝ սպիտակավուն, իսկ նրա վրա, անհամեմատ շատ բարակ, ընդամենը մի քանի միլիմետր չափի, բաց վարդագույն։

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

### ՊԱՇՏԱՄՈՒՆՔԱՅԻՆ ԿԱՌՈՒՅՎԱԾՔՆԵՐ

Նախաքրիստոնեական Հայաստանում գոյություն է ունեցել պաշտամունքի կառույցվածքների ինչպես առանձին, այնպես էլ ճարտարապետական խոշոր խմբերի ընդարձակ ցանց։

Մատենագրական կցկտուր տեղեկությունների հիման վրա մեհենական այդ կառույցվածքներից մեզ հայտնի են.

Արմավիրի «Արեգակի և Լուսնի» պաշտամունքին նվիրված տաճարը։ Հայկական տաճարային կառույցվածքների այս հնագույն հուշարձանը Հ. Մանանդյանը դիտում է որպես հունական տաճար։ Քանի որ Արմավիրի «Արեգակի և Լուսնի» պաշտամունքի տաճարը, մեր կարծիքով, խոշոր նշանակություն է ունեցել հայկական տաճարաշինության համար, մենք անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ այդ հարցին առավել հանգամանորեն։

Մովսես Խորենացին, խոսելով առաջին հայ Արշակունի Թագավորի գործունեության մասին, գրում է.

«Այս բոլորից հետո Արմավիրում մեհյան շինելով՝ արձաններ է կանգնեցնում Արեգակին, Լուսնին և իր նախնիքներին»[1]։

Մեկ այլ տեղ, անդրադառնալով Արտաշես աշխարհակալի Փոքր Ասիա կատարած արշավանքներին, հաղորդում է. «Ասիայում գտնելով Արտեմիդեի, Հերակլի և Ապոլոնի պղնձաձույլ ոսկեզօծ արձանները, բերել է տալիս մեր երկիրը, ուրպեսզի կանգնեցնեն Արմավիրում։ Քրմապետները, որոնք Վահունիների ցեղից էին, Ապոլոնի և Արտեմիդի արձաններն առնելով կանգնեցրին Արմավիրում, իսկ Հերակլեսի արձանը, որ Սկյուղասի և Կրետացի Դիպինոսի գործն էր, իրենց նախնի Վահագնը համարելով, կանգնեցրին Տարոնում, իրենց սեփական Աշտիշատ գյուղում՝ Արտաշեսի մահվանից հետո»[2]։

Երվանդաշատ քաղաքի կառուցումը նկարագրելուց հետո, հայտնում է. «Բայց Երվանդն իր քաղաքը շինելով՝ Արմավիրից այնտեղ փոխադրեց ամեն ինչ, բացի կուռքերից, որովհետև իր համար օգտակար չհամարեց նրանց էլ իր քաղաքը փոխադրելը...։ Ուստի նրանից հյուսիս... Ախուրյան գետի վրա շինեց մի փոքր քաղաք, նման իր քաղաքին և կոչեց Բագարան, այսինքն թե բագիններն այնտեղ են տեղավորված. և այնտեղ փոխադրեց Արմավիրում եղած բոլոր կուռքերը»[3]։

Ըստ Խորենացու, Արմավիրում գոյություն ուներ նաև սոսիների սրբազան պուրակ, ուր կատարվում էին զանազան գուշակություններ[4]։

Կասկածից վեր է, որ Արմավիրում գոյություն ունեցած հայկական հեթանոսական կրոնի անդրանիկ կենտրոնը (որը դեռևս հայ ժողովրդի կազմավորումից շատ առաջ հանդիսանում էր այդ վայրում՝ հայկական պետականությանը նախորդող ուրարտական պետության կրոնական նշանավոր օջախներից մեկը) վճռական նշանակություն կարող էր ունենալ հայկական տաճարաշինության կազմավորման ու նրա հետագա զարգացման համար։ Ավելին, Արմավիրը հանդես է եկել ոչ միայն իբրև հնարավոր ընդհանուր ազդեցության աղբյուր, այլ հայկական տաճարաշինության վրա ազդել է ուղղակի, անմիջականորեն։ Այսպես, երբ Արմավիրից մայրաքաղաքը տեղափոխվում է Երվանդաշատ, ինչպես տեսանք, նոր մայրաքաղաքից փոքր հեռու կառուցվում է

կրոնական հատուկ քաղաք Բագարանը և արմավիրյան բոլոր կուռքերը տեղափոխվում են վերջինի նորակառույց **մեհյանները**։

Պարզ է, որ կուռքերի համար կանգնեցվող նոր տաճարները պետք է կառուցվեին հիմնականում այն ձևով, որ գլխավորն է՝ ճարտարապետական արվեստի ընձեռած այն հնարավորություններով, որոնք դեռ ուրարտական ժամանակներից սեռեծվել ու կատարելագործվել էին Արմավիրում։

Նույն երևույթը տեղի է ունենում, երբ մայրաքաղաքը Երվանդաշատից փոխադրվում է նորակառույց Արտաշատ։ Այս անգամ էլ Արտաշատում ու նրա շրջապատում են կառուցվում նոր տաճարներ և այնտեղ տեղափոխվում Բագարանի կուռքերը[5]։

Հասկանալի է, որ նոր մայրաքաղաքում կառուցվող տաճարները կա՛մ պետք է կրկնեին երկրի կրոնական կենտրոնի տաճարների հիմնական կերպարը, կա՛մ հանդիսանային նրանց զարգացման հաջորդ աստիճանը։ Հետևապես նաև Արտաշատի նոր տաճարները, ուր տեղափոխվեցին Բագարանում գտնվող արմավիրյան կուռքերը, կարող էին կրել Արմավիրի տաճարի նմանությամբ կառուցված՝ Բագարանի տաճարների ազդեցությունը[6]։

Ուրեմն, մատենագրական վկայություններից հայտնի Արմավիրի «Արեգակի և Լուսնի» պաշտամունքի տաճարը պետք է խոշոր նշանակություն ունեցած լինի հայկական տաճարների կաղմավորման գործում։

Արմավիրում հեթանոսական սրբավայրի գոյության մասին են վկայում նաև Արմավիրի բլրի հարավային լանջի վրա՝ Արմավիրից Շահրիար տանող միջգյուղային ճանապարհի մոտ գտնված հունարեն արձանագրությունները[7]։

Գտնում են, որ արձանագրությունների մեջ հիշատակված «չորս ձիերի ու մարտակառքի» նվիրաբերումը կապ ունի «Արևի աստծու՝ Ապոլոնի պաշտամունքի հետ»[8]։

Ելնելով արձանագրությունների բովանդակությունից, դրանք վերծանող բոլոր գիտականները (Սմիրնով, Բոլտունովա, Մանանդյան, Տրևեր) գտնում են, որ արձանագրություններ կրող քարերը տեղադրված են եղել սրբավայրում[9]։

Ակադ. Մանանդյանը նույնիսկ հանգում է այն եզրակացության, որ Խորենացու մոտ հիշատակված առաջին հայ Արշակունու կառուցած տաճարը հիմնվել է հենց ավյալ հունարեն արձանագրությունների գտնված վայրում, բայց պատմիչը, քանի որ ծանոթ չի եղել Հայաստանում Երվանդյանների-Օրոնտյանների թագավորական դինաստիայի գոյությանը, շփոթել է տաճարի կառուցման ժամանակաշրջանը[10]։ «...Այդ տաճարի կառուցումը,—գրում է Մանանդյանը,—պետք է վերագրել ոչ թե Արշակունիների դարաշրջանին, այլ Երվանդյանների, այսինքն՝ III—II դդ. մեր թվականությունից առաջ»[11] (ընդգծումը մերն է— Ա. Ս.)։

Զնայած ժամանակի շփոթմանը միանգամայն հավանական է համարվում նաև հեթանոսական աստվածների «պղնձաձույլ ոսկեզօծ արձանները» Փոքր Ասիայից Արմավիր տեղափոխելու վկայությունը[12]։

Դարանաղի գավառի Անի (Կամախ) քաղաքի տաճարը[13]։ Տաճարի կառուցումը վերագրվում է Տիգրան Երկրորդին, որն այնտեղ կանգնեցրել էր օլիմպիական Դիոսի (Զևսի) արձանը[14]։

Դարանաղի տաճարը հանդիսացել է հայկական պանթեոնի գլխավոր աստված Արամազդի պաշտամունքի գլխավոր կենտրոնը, որը, շնորհիվ իր ունեցած մեհենական գրականության և արխիվի՝ ունեցել է մշակութային խոշոր նշանակություն[15]։

Այդ տեղի հետ՝ զանազան ուսումնասիրություններ կատարելու նպատակով կապված են եղել շատ գիտականներ (սորի նշանավոր գիտական Բարդածան Եդեսացին II դ. մ.թ., հետագայում, հավանաբար, Խորենացին և այլն)[16]։

Հեթանոսական պաշտամունքի այս նշանավոր կենտրոնը, որը բացի տաճարից, ամենայն հավանականությամբ, ունեցել է տաճարին կից ճարտարապետական նաև այլ կառույցվածքներ, քրիստոնեության մուտքի ժամանակ ավերվում է և դարձվում եկեղեցու կալվածք։

Եկեղյաց գավառի Երիզա ավանի Անահիտի տաճարը[17]։ Հայաստանում Անահիտին նվիրված բազմաթիվ տաճարներ են գոյություն ունեցել, որոնցից չորսի վերաբերյալ հիշատակություններ ունենք։

Երիզայում կառուցված Անահիտի տաճարն այն աստիճան է հռչակված եղել, որ հույն որոշ պատմիչներ տաճարի պատվին Եկեղյաց ամբողջ գավառը կոչել են «Անահտական»[18], իսկ ոմանք «Երկիր Անահիտի»[19]։ Տաճարն ունեցել է մեծ

հարստություն: Եկեղյաց ամբողջ գավառը եղել է տաճարի սեփականությունը:

Տաճարում դրված Անահիտի արձանը ավանդաբար պատրաստված էր ոսկուց: Մարկոս Անտոնիոսը (34—33 մ.թ.ա.) Արտավազդ Բ-ից վրեժ լուծելու համար, կողոպտելով Անահիտի տաճարը, տարավ նրա ոսկեձույլ արձանը[20]: Մոտ չորս դար հետո, քրիստոնյաների կողմից տաճարի ավերման ժամանակ, այնտեղ դրված Անահիտի արձանը դարձյալ ոսկուց էր[21]:

Տաճարի համբավն այնքան մեծ էր, որ այնտեղ երկրպագության էին գնում ոչ միայն հայ, այլև հույն թագավորները[22]: Տաճարին կից գոյություն ունեին հիերոդուլներ[23]:

Հայ հեթանոսական կրոնի այդ հնագույն սրբավայրն իր կառուցվածքներով գոյատևում է մինչև Հայաստանում քրիստոնեության պետական կրոնի հռչակումը:

Անշուշտ պաշտամունքի՝ բազմադարյան կյանք ունեցող այդ խոշորագույն օջախում, պետք է որ լինեին պաշտվելիք կուռքի ոսկեձույլ արձանին, տաճարին, «բարձրաբերձ պարիսպներին»[24] համապատասխանող ճարտարապետական նաև այլ կառուցվածքներ, որոնց զգալի մասը քրիստոնեության մուտքից հետո դարձավ նույն տեղում հիմնված եկեղեցու սեփականություն[25]:

**Աշտիշատի Անահիտի տաճարը:** Աշտիշատը մտնում էր քրմական դասի տոհմիկ կալվածքի մեջ[26] և հանդիսանում էր հայկական հեթանոսական կրոնի գլխավոր կենտրոնը[27]:

Այն եղել է «...յաշտից տեղիք **թագաւորացն հայոց մեծաց**... որ և անուանեալ ըստ հաճախաշատ պաշտման տեղացն՝ Յաշտիշատ»[28] (ընդգծումը մերն է—Ա. Ս.):

Թե ինչպիսի նշանակալից կառուցվածքներ էին տաճարը և նրան կից շենքերը, թերևս կարելի է կռահել հայ արքաների՝ այդ տաճարին ցույց տրված առատաձեռն վերաբերմունքից: Խոսրով Թագավորի (III դ.) մեկ ընծայաբերման մասին Ագաթանգեղոսը հիշատակում է, թե ինչ-որ հաղթանակի առթիվ նա Անահիտի տաճարին նվիրեց սպիտակ նոխազներ, սպիտակ ձիեր և սպիտակ ջորիներ՝ զարդարված ոսկով և արծաթով, մետաքս գործվածքներ, **ոսկե պսակներ և արծաթե զոհարաններ ու այլ սրբազան անոթներ,** որոնք զարդարված էին թանկագին քարերով, ոսկեզօծ և արծաթագործ զգեստներ ու զարդեր[29] (ընդգծումը մերն է—Ա. Ս.):

Եթե նկատի ունենանք տաճարում պաշտվող աստծու նաև ոսկեձույլ արձանը, ապա պետք է կռահել, որ եղել է նաև տաճարի ներքին այդ շքեղությանը և հարստությանը ներդաշնակ ճարտարապետական համապատասխան կառուցվածք:

Քրիստոնեական տաճարների ծագման ու կազմավորման հարցերի լուսաբանման տեսակետից հետաքրքրական է այն փաստը, որ քրիստոնեությունն, օգտվելով Աշտիշատի հեղինակությունից, հենց այդտեղ կառուցեց «Հայոց մեծ և առաջին մայր եկեղեցին[30]...», կաթողիկոսական շքեղ ապարանքով[31]:

**Արտաշատի Անահիտի տաճարը:** Քրիստոնեության մուտքի ժամանակ տաճարի ավերման նկարագրության մեջ հիշվում է, թե «...և ամենայն շինուածք մեհենին ի հիմանց զլրջեալ տապալեցան և լուցեալ յանկարծօրէն փայտակերտն հրդեհեցաւ... և ծուխն ծառացեալ մինչև յամպս հասանէր»[32]:

Քրիստոնեական վաղ շրջանի պաշտամունքի կառուցվածքների զգալի մասն ունեցել է փայտածածկ տանիք. ըստ երևույթին Արտաշատի տաճարը նույնպես ունեցել է նման կառուցվածք, որի ավերման ժամանակ «փայտակերտն հրդեհեցաւ»:

**Վասպուրականի Անձևացյաց երկրի Դարբնաց քար կոչվող տեղում գտնված Անահիտի տաճարը,** որի մասին որևէ այլ տվյալ չունենք[33]:

**Աշտիշատի Վահագնի պաշտամունքին նվիրված տաճարը:** Անահիտի տաճարի ճարտարապետական կոմպլեքսում ստեղծված այս կառուցվածքի մասին հիշատակվում է, թե՝ «...մեհեանն մեծագանձ, լի ոսկւով և արծաթով, և բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ...»[34]:

**Աշտիշատի տաճարների կոմպլեքսում կառուցված՝ Աստղիկի պաշտամունքի տաճարը,** որի մասին նույնպես որևէ այլ տվյալ չունենք[35]:

**Մեծ Հայքի Դերջան գավառի Բագայառիճ գյուղում գտնված Միհրի պաշտամունքի տաճարը:** Այստեղ Տիգրան Երկրորդը կանգնեցրել է «Յունաց Հեփեստոսի արձանը»[36]:

Քրիստոնեության մուտքի ժամանակ ավերվում է նաև Միհրի տաճարը և տեղը կառուցվում եկեղեցի[37]:

**Եկեղյաց գավառի Թիլ ավանում կառուցված՝ Նանեի պաշտամունքի տաճարը:** Նանեի տաճարում Տիգրան Երկրորդը կանգնեցրել է հունական Աթենասի արձանը[38]: Քրիստոնեության տարած-

*ման ժամանակ ավերվում է տաճարը և հարստությունը հանձնվում նույն տեղում հիմնադրվող եկեղեցուն*[39]:

Վաղարշապատի և Արտաշատի միջև գտնված Երազամույն ավանի՝ Տիրի պաշտամունքի տաճարը, *որը ավերվում է Տրդատ III թագավորի և Գրիգոր Լուսավորչի ձեռքով*[40]:

Դարանաղյաց գավառի Թորդան գյուղում կառուցված Բարշամինի տաճարը: *Տիգրան Երկրորդի հրամանով տաճարում կանգնեցված է եղել Բարշամինի արձանը «..զոր ի փղոսկրոյ և բիւրեղէ կազմեալ էր արծաթով...»*[41]:

*Քրիստոնեական կրոնի ընդունման ժամանակ կործանվում է նաև այս տաճարը և ամբողջ կալվածքը հանձնվում նույն տեղում կառուցվող եկեղեցուն*[42]:

Բագրևանդի Բագավան կամ Դիցավան ավանի տաճարը: *Բագավանը դեռ հնագույն ժամանակներից հանդիսացել է խոշոր ուխտատեղի, ուր Տիգրան Դ-ն իր եղբոր՝ Մաժան քրմապետի գերեզմանի վրա կառուցում է մեհյան*[43]:

Տարոնում (Աշտիշատից ոչ շատ հեռու) Քարքե լեռան վրա կառուցված տաճարները: *Քրիստոնեական կրոնի ընդունման ժամանակ այս տաճարների տեղում կառուցվում է ս. Կարապետի նշանավոր վանքը*[44]:

Բագարանում կառուցված հեթանոսական տաճարների համալիրը[45]: *Ն. Մ. Տոկարսկին, խոսելով Գառնիի ամրոցի հուշարձանների մասին, գրում է. «Այստեղ տեղին է հիշատակել Բագարանի միանավ եկեղեցու ավերակների մասին, որի երկայնական պատերից խիստ առաջ եկող որմնասյուները պսակված են կոնքաձև խոյակներով»*[46]:

*Նման հուշարձանների գոյությունը Բագարանում միանգամայն հասկանալի է: Չէ որ, դեռևս III—II դդ. (մ.թ.ա.), Երվանդաշատից ոչ հեռու կառուցվեց Բագարանը, որտեղ իբրև երկրի պաշտամունքի գլխավոր կենտրոն զետեղվեցին հեթանոսական տաճարների մեծ խումբ: Հիշենք Խորենացու վկայությունը, ըստ որի, Երվանդ թագավորը Երվանդաշատ մայրաքաղաքից ոչ հեռու «...Ախուրյան գետի վրա, շինեց մի փոքր քաղաք նման իր քաղաքին և կոչեց Բագարան, այսինքն թե՝ բագիններն այնտեղ են տեղավորված. և այնտեղ փոխադրեց Արմավիրում եղած բոլոր կուռքերը: Շինեց նաև մեհյաններ և իր Երվազ եղբորը քրմապետ նշանակեց» (Գիրք, Բ, գլ. Խ):*

Երազգավորսի հեթանոսական տաճարը: *Ն. Մառը, անդրադառնալով Երազգավորսի հեթանոսական շրջանի դամբարանների նյութերին, հիշատակում է, որ Երազգավորսում (Բաշ-Շուրագյալ), ըստ Հ. Օրբելու բանավոր հաղորդման, գոյություն ունեն հեթանոսական տաճարի մնացորդներ*[47]:

## ՎԱՂԱՐՇԱՊԱՏՈՒՄ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻ ԵՎ Ս. ՀՌԻՓՍԻՄԵ ԵԿԵՂԵՑՈՒ ՀԻՄՔԵՐՈՒՄ ՊԱՀՊԱՆՎԱԾ ՀԵԹԱՆՈՍԱԿԱՆ ՏԱՃԱՐԻ ԲԵԿՈՐՆԵՐ

*Էջմիածնում (նախկին Վաղարշապատ) վերջին տարիներին բացվեցին նախաքրիստոնեական շրջանի կառուցվածքների մի քանի ուշագրավ բեկորներ:*

*Մայր տաճարի սկզբնական կառուցվածքի (IV դ.) հիմքերի մոտ բացվեց բազալտե մի խոշոր որմնաքար՝ մետաղական կապերի հետքերով, որը հիշեցնում է Գառնիի ամրոցի անտիկ շրջանի պարսպապատերի որմնաքարերը, իսկ ս. Հռիփսիմեի տաճարի գմբեթակիր որմնամույթերի տակ՝ տուֆակերտ ինչ-որ շենքի քիվի (1,30×0,80×0,40 մետր չափերի) քանդակազարդ երեք բեկոր, որոնց մշակումը հար և նման է նույն ամրոցի հեթանոսական տաճարի մանրամասների մշակումներին:*

*Այդ բեկորների զգալի չափերից և նրանց զարդաքանդակման ոճից դժվար չէ կռահել, որ նրանք պատկանել են բավական հարուստ մշակում ունեցող ճարտարապետական խոշոր կառույցի:*

*Արդ հետաքրքրական է, ի՞նչ բնույթի կառուցվածք է եղել այն:*

*Ինչպես տեսանք վերը, քրիստոնեական կրոնը Հայաստանում պետական հռչակելու շրջանում, հեթանոսական մշակույթի մյուս հուշարձանների հետ ավերվում են նաև տաճարները և նրանց տեղում բարձրացվում պաշտամունքի նոր կառուցվածքներ: Ընդ որում, Աշտիշատից ոչ հեռու գտնված հեթանոսական տաճարներից մեկի տեղում կառուցված եկեղեցու վերաբերյալ պահպանվել է հիշատակություն այն մասին, որ եկեղեցու համար ընդունվել է հատակագծային նույն կոմպոզիցիան, որպիսին ուներ մեհյանը, «Քան-*

զի հիմն եկեղեցւոյն եղաւ ի նոյն տեղիս, նոյն չափովն լայնութիւնն և երկարութիւնն, բայց միայն զի նորա յարեմուտս երկրպագէին»: Նշանակում է, հեթանոսական տաճարի հատակագիծն ունեցել է ուղղանկյուն-երկայնական հորինվածք և ընդունվել է նույն տեղում կառուցված եկեղեցու համար, այն տարբերությամբ միայն, որ «սեղանը» արևմտյան կողմից տեղափոխվել է արևելյան կողմը:

Հոփփոփմեի տաճարի գմբեթակիր որմնամույթերի հիմքերում պահպանված հեթանոսական շրջանի ճարտարապետական բեկորները նույնպես պատկանել են այդ նույն տեղում երբեմնի գոյություն ունեցած հեթանոսական պաշտամունքային կառուցվածքի (լուսանկ. աղ. 36 բ):

Ինչպես տեսանք, Հայաստանում քրիստոնեության տարածման ժամանակ ավերվել է հեթանոսական տաճարների զգալի մասը և նույն տեղում կանգնեցվել են քրիստոնեական պաշտամունքի առաջին կառուցվածքները[48]:

Սակայն հեթանոսական տաճարների մի մասը «սրբագործվելով», ուղղակի փոխարկվել են քրիստոնեական պաշտամունքի առաջին կառուցվածքների:

Փավստոս Բուզանդը, նկարագրելով Տարոնում՝ հեթանոսական նախկին սրբավայրում կառուցված «հայոց մեծ և առաջին եկեղեցին» այցելած ինչ-որ աստիճանավորների, գրում է.

«Որովհետև հենց այսպես սովոր էին հայոց եպիսկոպոսապետները՝ թագավորի, մեծամեծների, նախարարների և ժողովրդի խառն բազմության հետ միասին պատվել այն տեղերը, **որոնք առաջ կուռքերի պատկերների տեղեր էին և հետո աստծու անունով սրբվեցին ու դարձան աղոթքի տներ և ուխտատեղիներ բոլորի համար**»[49] (ընդգծումը մերն է—Ա. Ս.):

Հետևապես, քրիստոնեական պաշտամունքի վաղ շրջանի մի շարք կառուցվածքներ հանդիսացել են հեթանոսական նախկին մեհյաններ[50]:

Նշանակում է, հեթանոսական տաճարները ոչ միայն հատակագծային կոմպոզիցիայով, այլև տարածական-ծավալային կառուցվածքով հիմնականում բավարարում էին քրիստոնեական պաշտամունքի անդրանիկ կառուցվածքների պահանջները:

Հեթանոսական պաշտամունքի այդ կառուցվածքների մեծագույն մասը գոյություն է ունեցել մինչև Հայաստանում քրիստոնեական կրոնի հաստատումը: Բնականաբար, պաշտամունքի բազմադարյա կյանք ունեցող այդ կառուցվածքները պետք է որ հանդիսանային իրենց նշանակության և հռչակին համապատասխան՝ ճարտարապետական-կառուցողական բարձր արվեստի երկեր:

III դարի վերջերին կամ IV դարի սկզբներին, երբ երկրում քրիստոնեական կրոնը հռչակվել է պետական, հեթանոսական մշակույթի մյուս հուշարձանների հետ կործանվել են նաև գրեթե այս բոլոր կառուցվածքները: Միայն առանձին տեղերում որոշ մեհյաններ հարմարեցվել են նոր կրոնի պահանջներին և վերածվել քրիստոնեական պաշտամունքի տաճարների: Երջանիկ բացառություն, ըստ երևույթին, կազմել է Գառնի ամրոցի արքունի հեթանոսական տաճարը:

**Գառնիի հեթանոսական տաճարը:** Կառուցված է ամրոցի եռանկյունաձև տարածքի հարավարևելյան հատվածում, եռանկյան շուրջ 500 մետր բարձրություն ունեցող բնական ժայռերից ստեղծված գագաթից ոչ շատ հեռու՝ Ազատ գետի հրաշագեղ կիրճի գրեթե եզրին: Ստեղծված լինելով տեղանքի բավական բարձր մասի վրա, այն ընկալվում է ամրոցի ոչ միայն ներսի, այլև դրսի գրեթե բոլոր կետերից (լուսանկ. աղ. 45 ա, 49, 50):

Կառուցման ստույգ ժամանակը հայտնի չէ: Գիտական գրականության մեջ նրա կառուցման ժամանակի վերաբերյալ առաջարկվող թվագրությունը տատանվում է ավելի քան կես հազարամյակի սահմաններում (III—II դդ. մ.թ.ա.—մինչև IV դ. մ.թ.ա.): Սակայն ժամանակի պատմական իրադարձությունների և հատկապես տաճարի ճարտարապետական-շինարարական արվեստի վերլուծությունից պարզվում է, որ նրա կառուցումը, անտարակույս, կապվում է հայոց Տրդատ Ա թագավորի գահակալության ժամանակաշրջանի հետ (66 թ. հետո):

Քրիստոնեական կրոնի ընդունումից հետո տաճարի շենքը ծառայել է աշխարհիկ նպատակների, հանդիսանալով Տրդատ Գ թագավորի քրոջ՝ Խոսրովդուխտի հովանոցը: Անշուշտ, այդ է պատճառը, որ միջնադարում հաճախ այն կապվել է Տրդատ Գ թագավորի անվան հետ և հիշատակվել «սարաւոյթ Տրդատայ», «թաղթ Տրդատայ» անուններով:

Տաճարը կանգուն վիճակում մնացել է մինչև



*Աղ. 63. Գառնի. Անտիկ տաճար, հյուսիսային ճակատ, վերակազմություն ըստ Ն. Բունիաթյանի*

XVII դարը և խոնարհվել 1679 թ. Հայաստանում տեղի ունեցած երկրաշարժի ժամանակ։ Այնուհետև, թեև ավերված, բայց իբրև մեծ արժեք ունեցող հազվադեպ հուշարձաններից մեկը, նա իր վրա բևեռեց վերջին հարյուրամյակներին հայկական ճարտարապետության հարցերը շոշափող հայրենի և օտար բազմաթիվ մասնագետների ուշադրությունը (Շարդեն, Մորիեր, Կեր-Պորտեր, Դյուբուա, դե Մոնպերյո, Տեքսիե, Շանտր, Շնաազե, Մառ, Սմիրնով, Թորամանյան, Բունիաթյան, Մանանդյան, Տրևեր և այլն)։

Իբրև հիմնական շինանյութ օգտագործված է տեղական կապտավուն որձաքարը, որը մշակված է մեծագույն վարպետությամբ։ Բնական է, որ նման կատարելության դյուրությամբ կարող էին հասնել այդ շինանյութի վրա աշխատելու մեծ փորձ ունեցող տեղական վարպետները։ Շինարարական այդ տեխնիկան, Գառնիի տաճարի կառուցումից շատ դարեր առաջ կիրառված է եղել Գառնիի ամրոցի պարիսպներում և աշտարակներում, ինչպես նաև Արմավիրում, Երվանդաշատում, Անիի նախաքրիստոնեական կառուցվածքներում և այլուր։

Որձաքարի մշակման և քարե պատի կառուցման բարձր արվեստը Հայկական լեռնաշխարհին հայտնի էր դեռևս ուրարտական շրջանից, որը հելլենիստական մշակույթի ստեղծման ընթացքում պետք է հասած լիներ զարգացման նոր, ավելի բարձր աստիճանի։

Պատերը շարված են չոր, առանց շաղախի, որմնաքարերը ինչպես հորիզոնական, այնպես էլ ուղղաձիգ ուղղությամբ միացված են երկաթյա կապերով և երկաթի ու քարի միացման փոսիկները լցված են կապարով։ Սյուների քարերի միացման տեղերում օգտագործված են նաև բրոնզե ուղղաձիգ կապեր։ Շինարարությունը կատարված է խոշոր բլոկներով. առանձին քարեր (օրինակ՝ նախամուտքերի, առաստաղի սալերը, որոնք ունեն 0,90—1,05 մ լայնություն, 0,44—0,5մ բարձրություն և ավելի քան 4,00 մ երկարություն) կշռում են մինչև հինգ տոննա։

Տենքն ունի ոչ մեծ կառուցվածք։ Նրա հատակագիծն իրենից ներկայացնում է 5,04×7,98 մ չափի մի սրահ (այսպես կոչված՝ «նաոս») հյուսիսային կողմից երկայնական պատերի շարունակությունների միջև ներգծված նախասրահով («պրոնաոս»), որոնք արտաքինից շրջապատված են քսանչորս (կարճ ճակատներում վեցական, երկար ճակատներում՝ ութական) սյուներով (գծագր. աղ. 62)։ Սյունաշարքի համար ընտրվել է հոնիական ոճի (լուսանկ. աղ. 46 ա, 47 ա), այսպես կոչված, հունահռոմեական օրդերը, այսինքն սյուները դրվել են բարձր պատվանդանի (պոդիումի) վրա և պսակվել են հարուստ մշակված անտաբլեմենտով (արխիտրավ, ֆրիզ, քիվ) (լուսանկ. աղ. 46 ա, բ, 47 բ, 48 ա, բ)։

Տաճարը գլխավոր ճակատով ուղղված է դեպի հյուսիս (գծագր. աղ. 63)։ Գլխավոր ճակատի գրեթե ամբողջ լայնքով ընթանում են մեծ բարձրության ինը աստիճաններ, որոնց երկու կողմերի պատվանդանների ճակատներին պատկերված են երիտասարդների մեկական բարձրաքանդակներ՝ ատլանտներ։ Ատլանտները մեկական ոտքերով ծունկի են եկած և ձեռքերը վեր պարզած պահում են ինչ-որ ծանրություններ։ Կարծիք կա, ըստ որի պատվանդանի վրա դրված են եղել զոհասեղաններ, որոնք և ստեղծել են ատլանտներ կրելիք ծանրությունների տպավորությունը։

Ենթադրվում է, որ Գառնիի տաճարը նվիրված է եղել հին հայկական արևի աստված Միհրի պաշտամունքին։

Կ. Տրևերը նկատի ունենալով Կասիոս Դիոնի (մոտ 155—235 մ.թ.) այն հիշատակությունը, ըստ որի 65 թ. Հռոմում Տրդատ I-ը հանդիպում է Ներոնին և ասում. «Ես ներկայացա քեզ, իմ աստծուն, երկրպագելու քեզ, իբրև Միթրայի», և Տակիտոսի (I-ին դ. մ.թ.) այն վկայությունը, որ Տրդատ I-ը միաժամանակ կատարում էր քրմական (քրմապետի) ֆունկցիա, գրում է.

«Այսպիսով մի կողմից մենք գործ ունենք Կասիոս Դիոնի հաղորդման հետ, որ Տրդատը իր (գերագույն) աստվածը համարում էր Միթրային-Միհրին, մյուս կողմից, մեր առջև Տակիտոսի խոսքերն են՝ Տրդատի քրմական պարտականությունների մասին։ Այդ հանգամանքները հիմք են տալիս ենթադրելու, որ Տրդատը, 66 թ. վերադառնալով Հռոմից և ձեռնամուխ լինելով Կորբուլոնի կողմից ավերված Արտաշատի, ինչպես և Գառնիի ամրոցի վերականգնմանը, հենց այդ ժամանակ էլ կառուցում է տաճար, նվիրելով այն Արևի-Արեգակի աստծո պաշտամունքին, որին դեռևս I-ին դ. (մ.թ.ա.) երկրպագում էր Տիգրան II-ը և որին Արշակունի Տրդատ I-ը անվանեց Միթրա»[51]։

Ընդ որում, ելնելով այն բանից, որ «մեհյան»-ը



Աղ. 64. Գառնի. Անտիկ տաճար. լայնական կտրվածք, վերակազմություն

սերվում է «Միհր-Մհեր» աստծո անունից և հեթանոսական տաճար հասկացողության հետ մեկտեղ, առաջին հերթին նշանակում է՝ միհրական պաշտամունքի տաճար, ուրեմն Գառնիի տաճարը եղել է մեհյան այդ բառի հիմնական իմաստով[52]:

Նոր հետազոտությունները ցույց են տվել, որ պաշտվող կուռքի արձանը կանգնեցված է եղել նաև Գառնիի տաճարում:

Մասնագիտական գրականության մեջ, համեմատելով հռոմեական և սիրական հեթանոսական տաճարների ներքին հորինվածքը, հիշատակվում է, որ «Սիրիական տաճարների ներքին լուծումը յուրահատուկ է: Ինչպես հռոմեական տաճարներում, նրանց միջև ևս պաշտվող (կուռքը) արձանը կանգնած էր հետևի պատի մոտ: Սակայն, հռոմեական տաճարների աբսիդների փոխարեն, սիրիական տաճարի աղոթասրահը (ցելլան) խորքում պսակվում է բարձր պատվանդանի վրա ստեղծված aditon-ով»[53]:

Սիրիական տաճարներից համանման լուծումներ ունեն Բաալբեկի մեծ ու փոքր տաճարները, Պալմիրայի, այսպես կոչված, Բալի տաճարը, Ջեռաշայի տաճարները և այլն[54]: Նույն երևույթը բնորոշ է փոքրասիական պաշտամունքի տաճարներին (Պերգամ, Պրիենե և այլն)[55]:

Այդպես է եղել նաև Գառնիում: Պաշտվող կուռքի արձանը կանգնեցվել է աղոթասրահի հետևի պատի մոտ, բարձր պատվանդանի վրա, ներառված բավականին մեծ չափեր ունեցող ուղղանկյունի խորշի մեջ (գծագր. աղ. 64):

Խորշի բացվածքի չափերը ցույց են տալիս, որ նրա մեջ դրված արձանը կարող էր ունենալ զգալի բարձրություն:

Գառնիում մուտքի բացվածքն աղոթասրահի ներսի տարածության համեմատությամբ այնքան մեծ է, որ այնտեղից ներս թափանցող լույսը լիովին բավարարում էր աղոթասրահը անհրաժեշտ չափով լուսավորելու համար:

Սակայն, չնայած դրան, Գառնիի աղոթասրահը լուսավորվել է նաև վերևից՝ երդիկից: Երդիկի լույսը, անշուշտ, ունեցել է սիմվոլիկ նշանակություն. ցանկացել են պաշտվող կուռքի վրա լույսի խուրձ իջեցնել նաև վերևից:

Այս առումով ուշագրավ են ճարտարապետության պատմության հանրաճանաչ մասնագետ Օգյուստ Շուազիի դիտումները. նա գրում է. «Անհրաժեշտ է նշել, որ այն տաճարները, որոնցում առավել սուրբ են համարված վերևից լուսավորելու բացվածքների առկայությունը, նվիրված են լույս անձնավորող աստվածություններին՝ Զևսին (Օլիմպիա, Սելինունտ), Ապոլլոնին (Ֆիգալիա, Միլեթ)»[56]:

Ուրեմն, նույն երևույթն ենք տեսնում նաև Գառնիի՝ արևի պաշտամունքի տաճարի կառուցվածքում:

Հեթանոսական պաշտամունքի այս ուշագրավ հուշարձանն, ըստ ընդհանուր հորինվածքի, պատկանում է հունահռոմեական ճարտարապետության համանման կառուցվածքներին (գծագր. աղ. 65, 66, 67):

Ինչպես տեսանք, II—I դարերում (մ.թ.ա.) Հայաստանը Առաջավոր Ասիայի մի շարք երկրների նման հելլենիստական մշակույթի տարածման օջախներից էր և միանգամայն տրամաբանական է, որ մեր թվականության նախորդ կամ նույնիսկ սկզբի դարերում պաշտամունքի տեղական կառուցվածքներին զուգընթաց, հանդես գային նաև դրսից վերցրած առանձին հորինվածքներ: Գառնիի տաճարը հենց այդ կարգի հուշարձան է:

Տաճարն ըստ ընդհանուր կոմպոզիցիայի հունական պերիպտեր է, ըստ առանձին մանրամասների կառուցվածքի (բարձր պոդիում, ճակտոնի մեծ թեքություն, որոշ տեսակի զարդաքանդակների առկայություն և այլն) մոտենում է հռոմեական արվեստին:

Վերոհիշյալներից ելնելով, հետազոտողների մի մասն այն համարում է «...հռոմեական տիպի տաճար»՝ կառուցված հռոմեական ինչ-որ կայսեր պատվին[57], կամ դիտում որպես «հռոմեական տաճարի բնորոշ տիպ», ուր «հունահռոմեական ոճը յուրօրինակ ներդաշնակությամբ միացվում է ասիականի հետ»[58]: Ուրիշներն այն անվանում են «հելլենիստական-հռոմեական կառուցվածք», իսկ վերջերս գիտնականների որոշ խումբ այն կապում է տեղական, նույնիսկ նախահայկական (ուրարտական) ճարտարապետության հետ[59] կամ պարզապես համարում Հայաստանի ամենավաղագույն շրջանի կառուցվածք[60]:

Սակայն Հայկական լեռնաշխարհին օտար չէր ուղղանկյունի հատակագծով, սյունաշարքով ու ճակտոնով կառուցվածքի կերպարը:

Մուսասիրի ուրարտական տաճարը (IX դ. մ.թ.ա.), ինչպես իրավամբ նշում է ակադեմիկոս Բ. Պիոտրովսկին, «...ներկայացնելով սյունաշար-



Նկ. 65. Գառնի. Անտիկ տաճար. երկայնական կտրվածք, վերակազմություն

քով և ճակտոնով տաճարների նայոսի տիպերից հնագույնը, ընկալ անտիկ ճարտարապետության հիմքում»[61] (ընդգծումը մերն է—Ա. Ս.):

Հատկանշալի է, որ Մուսասիրի տիպի տաճարներ կարող էին գոյություն ունենալ Հայկական լեռնաշխարհի նաև այլ վայրերում. այդ մասին է վկայում Իջևանից (Աստղիբլուր) գտնված մ.թ.ա. VI դարի գործ համարվող երկլանջ տանիքով շենքի կավաշեն մոդելը։

Մուսասիրի տաճարի առաջավորասիական կերպարը, մոտենալով մասնավորապես «պրոստիլոս», «անտերով տաճար» (թերևս «կեղծ պերիպտերոս» կոչվող) տիպի պաշտամունքի կառուցվածքներին, իր հորինվածքով (բարձր պատվանդան), վրան վեց (կլոր կամ ուղղանկյունի կտրվածքով) սյուներից կազմված սյունաշարքով, որ կողքի սյուների համեմատությամբ միջանցի սյուների հեռավորությունը մեծ է, նախամուտքով, բարձր ճակտոնով, ակրոտերիայով, ընդհանրություն ունի նաև Գառնիի տիպի (թեկուզ պերիպտերիալ կառուցվածք ունեցող) տաճարների հետ։ Տարբերությունն ըստ էության հոնիական օրդերն է, որն իբրև այդպիսին մշակվեց անտիկ ճարտարապետության մեջ։

Հոնիական հիշեցնող խոյակներով սյուներ Առաջավոր Ասիայում հանդիպում են ամենախոր անցյալում (Յազիլի-կայայի հերալդիկ քանդակի վրա պատկերված վոլյուտաներով սյուները՝ XVI—XIII դդ. մ.թ.ա., Կըզկապանի դամբարանի մուտքի կառուցվածքում՝ VII դ. վերջ, VI դ. սկիզբ մ.թ.ա., Կուրանգունից ոչ հեռու Դա-ու, Դուխտարի ժայռափոր դամբարանի ճակատի, «նախահոնիական» կոչվող խոյակներով սյուները, որ վերջինները, դեպի վեր նեղացում ունենալով, «կրում են» ատամնաձև պարապետով անտաբլեմենտ, VII դ. երկրորդ կես մ.թ.ա.)։

Հայտնի է, որ հոնիական օրդերի երկու (ոչ մեծ տարբերություն ունեցող) տարբերակներից առաջինը՝ հիմնականը, համարվում է «փոքրասիական» տարբերակը (կիրառված Սամոս կղզու և Եփեսոսի դիպտերոս տաճարներում 560—550 թթ. մ.թ.ա.), երկրորդը՝ հունականը, որը «կազմավորվեց հիմնականից ավելի ուշ»՝ կիրառված Դելփիքում՝ հոնիական գանձատների կառուցվածքներում (մոտավորապես 525 թ. մ.թ.ա.)։

Ավելին, փոքրասիական ծագում ունի նաև Գառնիի տաճարի (I դար) հոնիական օրդերի համաչափ համակարգը։ Գառնիի տաճարի պերիպտերիալ հորինվածքը, լինելով հելլենիստական ժամանակաշրջանի ճարտարապետական-կառուցողական ընդհանուր արվեստի արգասիք, իր ընդհանուր կառույցի հիմքում՝ հիմնականում ունի Մուսասիրի ուրարտական տաճարի կերպարը, աղոթարանի հատակագիծն իր համաչափություններով, նույնիսկ բացարձակ չափերով հար և նման էր Էրեբունիի ուրարտական տաճարի «Սուսիի» հատակագծին, իսկ հոնիական օրդերի համաչափական համակարգն, ըստ էության, ունի փոքրասիական ծագում։

Տարիներ առաջ, ցույց տալով Հայաստանի նախաքրիստոնեական շրջանի, վաղ միջնադարի և ուրարտական ժամանակաշրջանի տաճարների միջև գոյություն ունեցող ժառանգական կապը, Գառնիի և Թոփրախ-կալեի տաճարների (VIII դ. մ.թ.ա) հատակագծային հորինվածքի մասին նշել ենք, որ «Թոփրախ-կալեի հատակագծի հարթակն ունի «ոսկյա հատման» համաչափություն և մոտենում է Գառնիի հեթանոսական տաճարի հատակագծի համաչափություններին»։

Ինչպես վերը տեսանք, նույն մոտիկությունը գոյություն ունի նաև ավելի ուշ՝ Էրեբունիի պեղումների ժամանակ բացված «Սուսի» կոչվող ուրարտական տաճարի (VIII դ. մ.թ.ա.) և Գառնիի միջև։ Ընդ որում «Սուսիի» և Գառնիի աղոթարանները հար և նման են ոչ միայն համաչափություններով, այլև բացարձակ չափերով։

Բնական է, ուրեմն, որ Գառնիի աղոթարանի համար կարող էին օրինակ լինել ոչ թե Թոփրախ-կալեն կամ տարածքային տեսակետից ավելի մոտ գտնվող «Սուսին», այլև այլ միջավայրում գոյություն ունեցող՝ նույն ժամանակների կամ ավելի ուշ շրջանի համանման ուրիշ կառուցվածքներ։

Գառնիի տաճարի հիմքերի ամրացման ժամանակ, 1969 թ. հայտնաբերվեցին հնագույն սրբավայրերի գոյությունը հաստատող իրական ապացույցներ՝ տաճարի հարավային պատի տակ հնագույն շենքի պատի մնացորդներ, իսկ արևելյան պատի հիմքերից ցած՝ սրբազան կրակի մոխիրը պահելու հորեր՝ ածուխի, մոխրի, զոհաբերված կենդանիների ոսկորների և հնագույն խեցեղենի մնացորդներով լցոն։

Հին շենքի պատը շարված է լարով, շինանյութը ճեղքված որձաքարն է, իբրև կապակցող նյութ օգտագործվել է հողը (կավը)։

Շարվածքի ձևը և շրջապատում գտնված խե-



Աղ. 66. Գառնի. Անտիկ տաճար. Հարավային ճակատ, վերակազմություն

ցեղենր հնարավորություն են տալիս հին շենքը համարել առնվազն վաղ հայկական (եթե ոչ առավել հին) շրջանի կառուցվածք:

**Մեմորիալ կառուցվածքներ:** Մովսես Խորենացին հաղորդում է, որ երբ մարտում զոհվում է Երվանդ թագավորը, Արտաշեսը «...հիշելով, թե Երվանդը Արշակունյաց ցեղի խառնուրդ էր, հրամայում է թաղել և մահարձան դնել»[62]. կամ հիշատակում է, որ «...հայոց թագավոր Տիգրան Վերջինը պատվել է իր եղբոր՝ Մաժան քրմապետի գերեզմանը Բագավանում..., գերեզմանի վրա բագին շինելով»[63]:

Հուշարձան է կանգնեցվել նաև ի նշան հաղթանակի: Նույն պատմիչը հայտնում է, որ Վաղարշակ թագավորի որդին.... հյուսիսային ցեղերի դեմ մղած պատերազմի հաղթանակի առթիվ, իբրև «...իր տերության նշան մի արձան է կանգնեցնում հունարեն գրով...»[64]:

Հետաքրքրական են հատկապես դամբարանային կառույցները (հայ Արշակունի թագավորների՝ Անի Կամախի և Անգեղ բերդի դամբարանները, Փարաքարի դամբարանը և այլն):

Փարաքարի դամբարանը գտնվում է էջմիածնի շրջանի համանուն գյուղի արևմտյան բլրի գագաթին: Այն ունի աշտարակաձև հորինվածք, որը վեր բարձրանալով որձաքարից շարված համատարած հարթակի վրայից, արտաքինից ունեցել է ութանիստ, ներսից՝ կորագիծ կառուցվածք:

Թաղումը կատարվել է շենքի կենտրոնում: Պահպանվել է հիմքի շարվածքի հորիզոնի ուղղությամբ անտաշ խոշոր սալերից պատրաստված 1,05—1,55 մետր չափի ձվածիր գերեզմանը, որտեղ հայտնաբերվեց կողքի վրա թեքված ու մի փոքր կուչ եկած վիճակում մարդու կմախք՝ կողմնորոշված հյուսիս-արևելքից հարավ-արևմուտք:

Գերեզմանի շուրջ ստեղծված կլոր շինության պատի ներքևի շարքի բոլոր քարերի վրա անխախտ գոյություն ունեին դեպի շինության կենտրոնը կոնսոլաձև կախված երկրորդ քարեր[65]:

Այդ քարերի դասավորության սկզբունքը հիշեցնում է Օշականի դոլմենների, այսպես կոչված, «հսկայի տների», ծածկերի կառուցման սկզբունքը, որպիսին Հայաստանում լայն կիրառում ուներ դեռևս Քսենոֆոնի (V դ. մ.թ.ա.) ժամանակներից:

Անշուշտ Փարաքարում նույնպես գոյություն է ունեցել նույն բնույթի կառուցվածք, որի կենտրոնական հատվածը ավերվել է գանձ որոնողների կողմից գերեզմանի կողոպտման ժամանակ: Սակայն դժվար է ասել, թե ի՞նչ տեսք է ունեցել այդ կենտրոնական հատվածը, արդյո՞ք այն կազմել է առաջին շարքի տրամաբանական շարունակությունը, թե հանդիպելով գերեզմանի վրա ստեղծված ինչ-որ կառույցի՝ ընդհատվել է: Մի բան ակնհայտ է, որ աշտարակաձև կառուցվածքի հատակի տակ եղել է թաղման սենյակ հիշեցնող տարածություն:

Դամբարանի շինությունը ներկայումս ամբողջապես ավերված է, պահպանվել է միայն ներքևի 1—2 շարքը: Շինանյութը տեղական մոխրագույն տուֆաքարն է (ֆելզիտ), պատերը շարված են չոր, առանց շաղախի:

Շրջապատում թափված պատի շարքի սովորական քարերի հետ հանդիպում են մուտքի կամ լուսամուտի բացվածքը վերևից երիզող կամարի, մի կողմը անտաշ, երեք կողմը սրբատաշ եռանիստ որմնասյան և քարակերտ ծածկի բեկորներ:

Ուշագրավ են կրկնակի (հորիզոնական և ուղղաձիգ ուղղությամբ) կորություն ունեցող քարերը, որոնք պատկանել են կլոր պատից թաղակապ ծածկի (կամ գմբեթի) անցման շարքերին:

Կան սրբատաշ քարեր, որոնք ունեն ներսի կորությանը հակադիր նաև դրսի կողմից կորություն: Ինչպես երևում է, դամբարանի արտաքին բազմանիստ կողերին տրվել է որոշ կորություն:

Կլոր շինության պատի դրսի եզրից մինչև հարթակի դրսի եզրը հավասար է մոտ երեք մետրի, հարթակի վրա, մինչև կլոր շինության պատը գոյություն ունեն միմյանց զուգահեռ երկու բազմանիստ շարքերի հետքեր կամ կլոր շինության արտաքին բազմանիստ պատին զուգահեռ գոյություն է ունեցել նաև երկրորդ պատ և երկու պատերի միջև ստեղծվել օղակաձև սրահ (գալերեյա), և կամ, որ առավել հավանական է, հարթակի վրա ստեղծված է եղել դամբարանը արտաքինից երիզող բազմաստիճան ստիլոբատ (պատվանդան): Վերջինը աշտարակաձև և բազմանիստ ծավալին կարող էր տալ ավելի մեծ վեհություն:

Վերը հիշատակված եռանիստ որմնասյան քարը, անտարակույս, զետեղված է եղել դամբարանի ութանիստ ծավալի արտաքին նիստերի հանդիպման անկյուններից մեկում:

Ճիշտ համանման հորինվածք ունի Պոլայի



Աղ. 67. Գառնի. *Անտիկ տաճար. հյուսիսային ճակատ. վերակազմություն*

(Դալմացիա, Հարավսլավիա) I դարի կեսերին ստեղծված դամբարանի արտաքին ծավալը։

Ինչպես բազմանիստ ծավալի արտաքին նիստերի համադրման անկյուններում, որմնասյուն կամ սյուն գոյություն ունի նաև I—II դարերի դամբարանային այլ կառուցվածքներում։

Փարաքարի դամբարանի կառուցման ժամանակը անհայտ է։ Դեռևս 1958 թ. այդ տեղանքում գտնվել էր Արտավազդ 2-րդ թագավորի (55—34 թթ. մ.թ.ա.) մեկ դրամ, իսկ 1961 թ. Գառնիի հնագիտական արշավախմբի ջոկատի կատարած պեղումների ժամանակ, գերեզմանի մոտից գտնվեցին նույն (I-ին դարի մ.թ.ա.) յոթ դրամներ, որոնցից երեքը Տիգրան II թագավորի (95—55 թթ.)։

Ինչպես տեսնում ենք, դրամների թողարկման ժամանակաշրջանը գրեթե համընկնում է Փարաքարի դամբարանի ճարտարապետական հորինվածքն ունեցող համանման հուշարձանների կառուցման ժամանակաշրջանի հետ։

Հետևապես հնարավոր է եզրակացնել, որ Փարաքարի դամբարանը կարող էր ստեղծվել մեր թվականությունից առաջ I-ին դարի կեսերից մինչև մեր թվականության I-ին դարի կեսերն ընկած ժամանակահատվածում։

Աշտարակաձև կլոր կառույցներ, իհարկե, Հայաստանում քիչ չկան, սակայն, ինչպես ճիշտ նկատում է Թ. Թորամանյանը, դրանք առավել հնագույն շրջանի հուշարձաններ են։

# ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

## ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԱՐՏԱՀԱՅՏՉԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐ

*Կառույցի գեղարվեստական արտահայտչականությանը հասել են՝ ճարտարապետական ու կոնստրուկտիվ ճշմարտացի ձևերի, հարուստ հարդարանքի (զարդաքանդակ, բարձրաքանդակ), արվեստի սինթեզի (քանդակ, որմնանկար, խճանկար) և հատկապես շինության առանձին մասերի ու մանրամասների ինչպես միմյանց, այնպես էլ ընդհանուր հորինվածքի նկատմամբ ստեղծված համաչափությունների և փոխադարձ պայմանավորվածության միջոցով։*

*Այս տեսակետից ուշագրավ նյութեր են տալիս Արտաշատ և Արմավիր մայրաքաղաքների պեղումները, մասնավորապես արքունի ամրոց Գառնիի անտիկ հուշարձանները։*

*Մեծ հետաքրքրություն է ներկայացնում Գառնիի տաճարի համաչափական համակարգը։*

*Գառնիի անտիկ տաճարը կառուցված է մոդուլային համակարգի հիման վրա։ Ընդ որում, եթե օրդերը (սյան անտամբլեմենտը) ստեղծվել է Վիտրուվիոսի ներկայացրած հոնիական օրդերը կանոնիկ համակարգին համապատասխան, ուր մոդուլը հավասար էր սյան ներքևի տրամագծին (0,692 մ), ապա տաճարի համաչափական համակարգում մոդուլ է ընտրվել սյան ներքևից հաշված $^{1}/_{3}$ բարձրության տրամագծի չափը (0,704 մ)։*

*Ակնհայտորեն նման են նաև Վիտրուվիոսի հիշատակած և Գառնիի տաճարում իրականացված թե՛ սյուների տեղադրման, թե՛ օրդերի կարևորագույն մասերի և թե՛ տաճարի առանձին հանգույցների (մուտք, աստիճանների կորվատուրային երևույթներ և այլն) կառուցողական սկզբունքները[1]։*

*Անտիկ տաճարների կառուցվածքի վերաբերյալ Վիտրուվիոսի տեսության և Գառնիի տաճարի կառուցվածքի միջև եղած ընդհանրությունների հետ մեկտեղ գոյություն ունեն նաև տարբերություններ։*

*ա. Վիտրուվիոսը ներկայացնելով անտիկ տաճարների հիմնական տեսակները գրում է. «Նրանց կառուցվածքները բնորոշվում են հետևյալ հատկանիշներով» և ապա Գառնիի տաճարի նման բոլոր կողմերից սյունաշարքերով շրջապատված, այսպես կոչվող, «պերիպտերների» մասին նշում է. «Պերիպտերում և՛ առջևի, և՛ հետևի ճակատներում պետք է լինեն վեցական սյուներ, իսկ կողքի ճակատներում, անկյունների հետ մեկտեղ՝ տասնմեկական»[2]։*

*Գառնիի տաճարը կարճ ճակատներում ունի վեցական, կողքի ճակատներում անկյունայիններ հետ մեկտեղ՝ ութական սյուներ։*

*բ. Տաճարների հատակագծային հորինվածքի համաչափությունների մասին Վիտրուվիոսը հայտնում է. «Տաճարների երկարությունը որոշվում է այնպես, որ նրա լայնությունը երկու անգամ փոքր լինի երկարությունից»[3], այսինքն տաճարի հատակագծային հորինվածքի լայնությունը երկարության նկատմամբ պետք է ունենա 1 : 2 հարաբերություն։*

*Գառնիի տաճարի թե՛ ցելլայի՝ աղոթասրահի հատակագծային ներքին հորինվածքը, թե՛ պատերի արտաքին ճակատները միմյանց նկատմամբ և թե՛ տաճարի ամբողջ հատակագիծն ունեն 5 : 8 համաչափություն։*

Զարդաքանդակ։ *Քանդակազարդման արվեստի հիմքում ընկած է միասնական հորինվածքում*

*բազմազան մոտիվների կիրառման սկզբունքը՝ բազմազանություն միասնության մեջ։*

*Եթե հունա-հռոմեական դասական շրջանի ճարտարապետական միանման մանրամասներն ունեն միևնույն մշակումը, Հայաստանում (Գառնիի տաճար) նրանք երբեք չեն կրկնվում։ Անգամ օրդերի, ֆրիզի, ըստ էության, միայն ականթի տերևներով մշակված անընդհատ ձգված զարդաքանդակում ճարտարապետը խույս է տվել միօրինակությունից։ Մերթ ականթի երկու նրբին ճյուղեր, ելնելով ֆրիզի մակերեսի ներքևի եզրից, ալիքաձև տարածվում են աջ ու ձախ և պսակվում տարբեր տեսակի ու քանակի թերթիկներ ունեցող գեղաքանդակ ծաղիկներով կամ վարդյակներով։ Մերթ ականթի մի զույգ հյութեղ տերևներ՝ նույն կորությամբ բարձրանում են վեր և մեղմորեն խոնարհվելով ցած, ստեղծում միևնույն կենտրոնից տարբեր շառավիղներով սկզբնավորված ճյուղավորությունների հարուստ հորինվածք։ Մերթ ականթի փարթամ միայն մեկ ոստ, նույն ալիքաձև ընթացքով սփռվում է ֆրիզի մակերեսին, և ալիքների բեկման հանգույցներում մի քանի սահուն պտույտներ կատարելով, ամբողջապես լցնում ֆրիզի դաշտը։ Եվ այսպես շարունակ... Նույն ականթի տերևի միջոցով, պահպանելով նույն ալիքաձև հորինվածքը, ստեղծվում են մեկը մյուսին չկրկնող, մեկը մյուսից ուշագրավ զարդաքանդակի բազմերանգ մոտիվներ։ Զարդաքանդակներում ականթի ու դափնու տերևների հարուստ տարբերակների ու նրանց հնարամիտ դասավորությունների հետ հանդես են գալիս զանազան ծաղիկներ, կաղնու տերևների, նաև և բուսական այլ զարդաքանդակների բազմապիսի համակցություններ։ Բազմազան ձևով են մշակված ոչ միայն արխիտրավների սոֆիտները, խոյակների բարձիկները, պլաֆոնը, այլև գլխավոր քիվի վրա պատկերված առյուծի գլուխների քանդակները։*

*Եթե հռոմեական կառուցվածքներում զարդանկարման տեխնիկան կիրառվում է կանոնիկ եղանակներով (կարկինի օգնությամբ կամ երկրաչափական կառուցումներով), Գառնիում կատարված է ազատ, առավել սահուն պլաստիկ ձևով (խոյակների պարույրների կառուցում, ճարտարապետական պրոֆիլների կառուցումներ և այլն)։*

*Միանման մանրամասները բազմազան ձևով մշակելու սկզբունքը կիրառված է հելլենիստական մշակույթի նաև մյուս կենտրոններում՝ Փոքր Ասիա (Պերգամ, Միլետ, Պրիենե և այլն), Սիրիա (Պալմիրա, Բաալբեկ, Անտիոք, Ջերաշա և այլն) և այլուր։*

**Խճանկար։** *Գեղարվեստական արտահայտչականության հիմնական միջոցներից մեկը եղել է խճանկարը։ Պահպանվել է Գառնիի արքունի բաղնիքի, հանդերձարանի հատակի վրա պատկերված խճանկարը, որը նախաքրիստոնեական Հայաստանի մոնումենտալ գեղանկարչության առայժմ մեզ հայտնի միակ հուշարձանն է[4]։*

*Պահպանված մասից ակնառու է նրա միֆական-դիցաբանական սյուժեն։ Վարդագույն շրջանակի մեջ պատկերված է ծով, ուր նուրբ մշակված գունային (տոնալ) փոխանցումները ստեղծում են ջրի ալիքների շարժման պատրանք, նկարի տարբեր հատվածներում ծովի ջրերի տարբեր վիճակ, ասես ալիքների ծփանքին համապատասխան ծովը մերթ ստանում է բաց կանաչավուն տեսք, մերթ ավելի մուգ գույն, մերթ մեղմանալով, հասնում ջինջ պարզության։ Ջրերի մեջ պատկերված են զանազան դիրքով միֆական աստվածություններ ու առասպելական էակներ (իխտիոկենտավրներ—մարդ՝ ձիու առջևի ոտքերով և ձկան վերջավորությամբ, ներեիդներ (ծովինարներ), մեծ ու փոքր բազմապիսի ձկներ և այլն)։ Աստվածությունների և ջրահարսերի պատկերների մոտ հունարեն գրված են նրանց անունները (Գլավկոս, Թետիս, Ագրեոս, Էրոս, Պոթոս և այլն)։*

*Խճանկարի կենտրոնում՝ հյուսվածապատ շրջանակում պատկերված են տղամարդու և կնոջ վերևի կեսերը։ Առաջինի մոտ գրված է «օվկիանոս» (որը, ըստ դիցաբանության, բոլոր աստվածների հայրն է), իսկ երկրորդի մոտ՝ «ծով» (որը գեղեցկության և սիրո աստվածուհի Աֆրոդիտեի մայրն է)։ Շրջանակի վերևում գրված է. «Ոչինչ չստանալով աշխատեցինք» առեղծվածային արտահայտությունը։*

*Խճանկարի առանձին պատկերներ, մասնավորապես ձկների, կատարված են մեծ վարպետությամբ։ Սահուն գծանկարը, անատոմիական համոզիչ կառուցվածքը, գույների երանգները ցուցադրում են խճանկարային արվեստի բարձր մակարդակը։*

*Խճանկարը պատրաստված է բնական գունավոր քարերից կտրված 0,5—1,0 սմ մակերես ունեցող խորանարդիկներից։ Բորդյուրում օգտագործված են ավելի մեծ (1—1,5 սմ²) չափի*

խորանարդիկներ։ Գոյություն ունեն 15 երանգներ։ Նկարի նուրբ փոխանցումների իրականացումը դյուրացնելու նկատառումով օգտագործված են երկրաչափական տարբեր ձևերի խորանարդիկներ (քառակուսի, ուղղանկյունի, շեղանկյունի, եռանկյունի)։

Խճանկարի հիմքը կառուցված է հարթ, ամուր տոփանված գետնի վրա, ապա շարված է գետաքարի և ճեղքված որձաքարի երեք շերտ, յուրաքանչյուրը ամրացված է կրաշաղախի լիցքով։ Այդ ամենի վրա դրված է 14—15 սմ հաստության բետոնի շերտ և ապա լցված խճանկարի հատիկների շարման համար՝ 33 սմ բարձրության (կրի, ավազի, մանրացված աղյուսի կամ կղմինդրի խառնուրդից) խմորը։

Խորանարդիկները շարված են միմյանց կպած. որոշ դեպքերում նաև իրարից մի փոքր հեռու. մակերեսները հղկված են։

Ինչպես նկարի կոմպոզիցիոն կենտրոնը, այնպես էլ մնացածի զգալի մասը, հետևապես և հորինվածքը համեմատաբար ավելի ամբողջական ձևով ընկալվում է սենյակի հարավարևելյան պատի կողմից, ավելի ստույգ, կորացիծ խորշի բացվածքի առջևից։

Սենյակի երեք դռներից մեկը գտնվում է հյուսիսարևելյան պատի հարավային անկյունում. այցելուն ներս մտնելով սենյակ՝ մի հայացքով կարող է ընկալել խճանկարի գրեթե ամբողջ հորինվածքն իր մանրամասներով։

Խճանկարի հիմնական սյուժեն, կատարման տեխնիկան, ոճային ու գունային առանձնահատկությունները հիմք են տալիս այն համարելու III դարի վերջի գործ։

**Արձաններ**: Պաշտվող կուռքի արձան կանգնեցված է եղել նաև Գառնիի տաճարում. այն դրված է եղել ցելլայի ետևի պատի մոտ, բարձր պատվանդանի վրա՝ ներառված բավական մեծ չափեր ունեցող ուղղանկյուն խորշի մեջ։

Հեթանոսական փոքր տաճարների ներսը սովորաբար լուսավորվում է անհամեմատ մեծ չափեր ունեցող մուտքի բացվածքով։ Գառնիում մուտքի բացվածքն այնքան մեծ է, որ այնտեղից ներթափանցող լույսը լիովին բավական էր աղոթասրահը անհրաժեշտ չափով լուսավորելու համար։ Չնայած դրան, Գառնիի աղոթասրահը լուսավորվել է նաև վերևից՝ երդիկից։

Իրավամբ ենթադրվում է, որ Գառնիի տաճարը նվիրված է եղել հին հայկական աստվածներից մեկին՝ Միհրին։ Ուրեմն, կարելի է եզրակացնել, որ Գառնիի երդիկի լույսը նույնպես ունեցել է սիմվոլիկ նշանակություն. ցանկացել են պաշտվող կուռքի վրա իջեցնել արևի ճառագայթների խուրձ։

Միհրը հաճախակի պատկերվել է ցուլի դեմ մենամարտելիս։ Տաճարի վերականգնման շինարարության ժամանակ կատարված մասնակի պեղումների ընթացքում, կառույցից մոտ 20 մետր դեպի հյուսիս, գտնվեց սպիտակ մարմարից մեծ վարպետությամբ քանդակված ցուլի կճղակ։ Անտարակույս այն պատկանել է տաճարի ներսում դրված պաշտվող կուռքին, որը քրիստոնեական կրոնի ընդունումից հետո հանվել է շենքից և ոչնչացվել։

Քանդակի այդ բեկորը ոչ միայն հաստատում է, որ տաճարը իրոք նվիրված է եղել Միհրին՝ այսինքն արևի պաշտամունքին, այլև ցույց է տալիս քանդակի նյութը և հնարավորություն ընձեռում որոշակիորեն պատկերելու քանդակի հնարավոր ընդհանուր կոմպոզիցիան՝ Միհրը ցուլի հետ մենամարտելիս։

# ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԿԱՌՈՒՑՈՂԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ ԵՎ ԿՈՆՍՏՐՈՒԿՑԻԱՆԵՐԸ

*Հայաստանի ստրկատիրական հասարակության ժամանակաշրջանի կառուցողական տեխնիկան, դեռևս հնագույն շրջանում, Հայկական լեռնաշխարհում ստեղծված հարուստ ավանդույթների շարունակությունն ու նրանց զարգացումն է։*

*Պատերի համար որպես շինանյութ ծառայել են լավ մշակված որձաքարը և տուֆը. օգտագործվել են նաև գետաքարը, ճեղքված որձաքարը և թրծած աղյուսը*[1]*։*

*Պաշտպանական կառույցվածքներում և մոնումենտալ շենքերի մեծագույն մասում պատերը շարված են չոր, առանց շաղախի և քարերը իրար հետ միացված են երբեմն մետաղական կապերով։ Առանձին (պալատական, կոմունալ) շենքերի պատերի մեջ օգտագործված է նաև կրաշաղախ։ Ծածկերը եղել են փայտաշեն (հարթ) և քարաշեն (թաղակապ)։*

*Այսպես, Գառնիի տաճարի պատվանդանը իր բարձրությամբ ներկայացնում է կրաբետոնի մեծ ամրություն ունեցող համատարած զանգված, ըստ էության, երեսապատված որձաքարի խոշոր զանգվածներով։*

*Ցելլայի պատերը շարված են չոր, առանց շաղախի. որմնաշարքը ըստ լայնության կազմված է պատի հաստության չափն ունեցող մեկական քարից, որոնք ընդհուպ հպված են միմյանց և ինչպես հորիզոնական, այնպես էլ ուղղաձիգ ուղղությամբ իրար հետ կապված երկաթյա գամերով*[2]*։*

*Հորիզոնական գամերի ծայրերը թեքվել են 90 աստիճան անկյամբ և ագուցվել քարերի 6×6×6 սմ չափի խոռոչների մեջ, իսկ քարի և գամի միացման հանգույցը լցվել է կապարով։ Կապարի հալվածքի հոսքը կատարվել է քարերի վրա փորված՝ դեպի ներս աստիճանաբար խորացող եռանկյունաձև նեղ ակոսների միջոցով։*

*Շինարարական նույն տեխնիկայով են կառուցված նաև տաճարի բոլոր մասերը, սակայն շենքի տարբեր մասերում օգտագործվել են տարբեր նյութի, տարբեր քանակի ու չափի գամեր, նայած տվյալ մասի ամրությունն ապահովելու անհրաժեշտությանը։*

*Սյան բնի քարերը միմյանց, խարսխին և խոյակին են միանում (2×2) (3×3) սմ կտրվածք ունեցող երկու կամ երեք բրոնզե, իսկ խարիսխը հատակի սալերին՝ նույն չափի և քանակի երկաթե ձողերի միջոցով։*

*Անտաբլեմենտների մասերից՝ արխիտրավները հորիզոնական ուղղությամբ ամրացվում են երկու զույգ գամերի, իսկ խոյակների հետ կապվում մեկական երկաթյա ուղաձիգ ձողերի միջոցով։ Նույնպիսի միացումներ ունեն նաև ֆրիզի և քիվի քարերը, միայն քիվի քարերը, որոնք դրված են ֆրիզի և նրան ընդհուպ հպված առաստաղի սալերի շարունակության վրա, վերջինների հետ միանում են երեքից-չորս, համեմատաբար մեծ կտրվածք ունեցող ուղղաձիգ ձողերի միջոցով։*

*Ճակտոնների քիվի և նրանց տակ գտնվող տիմպանի քարերի միջև մետաղական կապեր չկան։ Ճակտոնի քիվի քարերը ամբողջ խորությամբ ունեն թեք կտրվածք. այդ թեք մակերեսով առաջին շարքի քարը նստում է ճակտոնի ներքևի անկյունաքարի շեղանկյուն կտրված համապատասխան մակերեսի վրա և ապա բոլոր քարերը հաջորդաբար՝ մինչև ճակտոնի գագաթի*

քարը ներառյալ, հենվում են միմյանց վրա։ Մետաղական կապեր ստեղծվել են ճակտոնի քիվի քարերի միայն վերևի հարթությունների վրա։ Արտակարգ ուժեղ են ճակտոնների անկյունաքարերի ու գագաթների միացումները ակրոտերիաների հետ. ճակտոնի անկյունաքարերից յուրաքանչյուրի վրա մետաղական ձողերի քանակը հասնում է տասից տասներկուսի։

Տաճարի բոլոր քարերն իրենց ծանրության կենտրոնում ունեն 4—8 սմ խորությամբ և 5×6 սմ մակերեսով մեկական փորվածք, որոնց վերևի մակերեսը դեպի խոռոչի հատակը աստիճանաբար լայնանում է։ Ակնհայտ է, որ այդ խոռոչներում ագուցվել է մետաղական սեպաձև հարմարանք, որի միջոցով, հատուկ պարանների օգնությամբ քարերը բարձրացվել և տեղադրվել են կառույցի համապատասխան մասերում։ Քարերի բարձրացման այդ միջոցը անտիկ շրջանի կառուցողական տեխնիկայում կիրառվող հանրահայտ ձևերից է։

Ցելլան ունեցել է թաղակապ քարակերտ թաղ։ Տաճարի ավերակների մեջ գտնվել է աղոթասրահի պատերի հյուսիսարևմտյան հանգույցի մեկ ամբողջական անկյունաքար, որը ցույց է տալիս շենքի երեք ուղղությամբ ընթացող պատերի հաստությունների ստույգ չափերը։ Ընդ որում, ուշագրավն այն է, որ աղոթասրահի հյուսիսային պատը, որը կրում է նախամուտքի շուրջ չորս մետր երկարություն և ավելի քան հինգ տոննա կշիռ ունեցող առաստաղի սալերի հսկայական բեռը, ունի ավելի փոքր հաստություն (0,76—0,78 մ), քան արտաքին սյունասրահների առաստաղի՝ երկու անգամ ավելի թեթև սալաքարերի բեռը կրող պատը, որն ունի շատ մեծ հաստություն։ Ճիշտ է, փայտե կոնստրուկցիաների դեպքում այդ մեծ հաստություն ունեցող պատերի վրա պետք է ավելանար նաև փայտե հեծանների կշիռը, սակայն անիմաստ կլիներ մտածել, որ անհամեմատ չնչին կշիռ ունեցող փայտե մի քանի հեծանի համար կարող էր պատերի կառուցվածքում նման տարբերություններ ստեղծելու կարիք առաջանալ։ Բնական է, որ արևելյան և արևմտյան պատերի մեծ հաստությունները արվել են ծածկից առաջացող շատ ավելի մեծ բեռի համար, և այդ մեծ բեռը, հասկանալի է, կարող էր ունենալ միայն քարակերտ ծածկը։

Աղոթասրահի երկայնական (արևելյան ու արևմտյան) պատերի վերջին շարքի քարերը արտաքին կողմից իրենց բարձրությամբ, հարթության մշակումով (պրոֆիլներով), քարերի տաշվածքի ֆակտուրայով և հողմահարվածության աստիճանով հար և նման են նույն պատերի դիմացից ընթացող սյունաշարքերի արխիտրավներին, իսկ ներսի երեսի վերևի մասը 0,23×0,27 մ բարձրությամբ և 0,44×0,51 մ խորությամբ կտրված ու հանված է։ Այդ հատվածի տեղում առաջացած խորշի ներքևի մակերեսը հետազոտողները մշտապես պատկերել են որպես հորիզոնական հարթություն և ենթադրել, որ դրա վրա դրվել է «մաուերլատ» կոչված փայտե գերանը։

Պարզ է, որ մաուերլատը պետք է դրվեր հորիզոնական մակերես ունեցող քարի պատի երկայնքով, որպեսզի նրա վրա հնարավոր լիներ շարել շենքի՝ լայնական ուղղությամբ տեղադրվելիք փայտե հիմնական հեծանները։ Սակայն ուշադիր չափագրությունը ցույց է տալիս, որ քարերն ունեն ակնհայտ շեղ կտրվածք։ Եթե դրանց վրա դնելու լինեին մաուերլատները (որ, անտարակույս, պետք է ունենային ուղղանկյունի կտրվածք), ապա նրանց վերևի մակերեսը հորիզոնական վիճակում պահելու համար անհրաժեշտ կլիներ ներքևի մակերեսները քարերի շեղ կտրվածքի վրա տեղադրելու նպատակով նույնպես անել շեղ։ Սակայն դա կլիներ միանգամայն անիմաստ։ Եթե քարերի վրա դրվելու էին փայտե գերաններ, ապա ինչո՞ւ պետք է ուղղանկյունի կտրվածք ունեցող փայտե գերանի տակի քարը տաշվեր շեղ և այդ շեղությանը հարմարվելու նպատակով էլ փայտե գերանի՝ քարի վրա նստող մասը նույնպես շեղ տաշվեր։

Կասկածից վեր է, որ աղոթասրահի երկայնական պատերի վրա տեղադրված այդ քարերի շեղ կտրված մակերեսները արվել են նրանց վրա համապատասխան թեքություն ունեցող ուրիշ քարեր տեղադրելու նպատակով։ Նշանակում է՝ աղոթասրահի երկայնական պատերի ամբողջ երկարությամբ դասավորված շեղ մակերեսով այդ քարերը ոչ այլ ինչ են, եթե ոչ աղոթասրահի թաղակապ ծածկի առաջին շարքի, այսպես կոչված, «կրունկի» քարերը։ Կրունկի քարերի վրա հաջորդ շարքի կառուցման համար գոյություն ունեցող տեղի ձևից ու խոշոր չափերից ակնհայտ է դառնում նաև հաջորդ շարքի քարակերտ հորինվածքը։ Բարեբախտաբար պահ-

պանվել են աղոթասրահի թե՛ արևմտյան և թե՛ արևելյան պատերի երկայնությամբ այդ պատերից սկզբնավորվող թաղի կրունկի բոլոր քարերը։ Այս փաստերից հետևում է, որ աղոթասրահի առաստաղը՝ հյուսիսից հարավ ընկած ամբողջ տարածությամբ, ծածկված է եղել մեկ միասնական թաղով, և այն, ինչպես ցույց է տալիս այդ թաղի ներքևից հաշված երկու շարքի (կրունկի և նրա քարերի վրա զետեղված հաջորդ շարքի) կառուցվածքը, եղել է քարակերտ։

Կրունկի առանձին քարերի վրա պահպանված էին կրաշաղախի մնացորդներ։ Ինքնին հասկանալի է, որ կրաշաղախ կարող էր օգտագործվել աղոթասրահի առաստաղի քարաշեն ծածկի դեպքում։

Տաճարի ավերակների մեջ գտնվեցին աղոթասրահի շաղախակապ քարաշեն ծածկի գրեթե անաղարտ պահպանված մի շարք բեկորներ, որոնք թե՛ քարի տեսակով (որձաքար), թե՛ հողմահարվածության աստիճանով, թե՛ քարի մշակման ֆակտուրայով, թե՛ մետաղական կապերի համար ունեցած հնագույն խոռոչներով, թե՛ տաճարի բոլոր բեկորների ծանրության ուղիղ կենտրոնում գոյություն ունեցող քարերի բարձրացման համար փորված (վերևում նեղ, ներքևում լայն չափի) խոռոչի առկայությամբ, պատկանում են տաճարի սկզբնական կառուցվածքին։ Այդ քարերից մեկի վերին մակերեսն ունի մաքուր տաշված կորաձև տեսք, որի կորի շառավիղը ճշտությամբ համապատասխանում է աղոթասրահի լայնության կեսին (2,52 մ) այսինքն՝ լրիվին համընկնում է այն կորին, որպիսին կարող էր ունենալ աղոթասրահի գլանաձև (կիսաշրջանաձև) հորինվածք ունեցող թաղակապ ծածկի լայնական կտրվածքը։ Քարը դրված է եղել հարավային ճակատը եզրափակող պատի վերին շարքի արևմտյան մասում և շնորհիվ իր մեծ չափերի (բարձրությունը հավասար է 0,63 մ, խորությունը՝ 0,64 մ, երկարությունը՝ 1,75 մ) գրավել է շարքի ամբողջ արևմտյան կեսը։ Նրա վրա պահպանված մետաղական կապի ագուցման փորվածքը ցույց է տալիս, որ այդ քարը մետաղական հորիզոնական գամով միացված է եղել նույն շարքի արևելյան կեսի նույնանման քարին։

Հայտնաբերված քարերից մյուսը եղել է նույն պատի՝ վերևից հաշված երկրորդ շարքի արևելյան անկյունում, նրա կորության շառավիղը հավասար է այս պատի առաջին շարքի վերը հիշատակված քարի կորության շառավղին, այսինքն՝ երկուսի կորագիծ եզրագծերը կազմում են միմյանց շարունակությունը։ Քարի վրա կա հորիզոնական գամի ագուցման համար փորվածք։

Պահպանված է նաև թաղի հարավային ճակատը եզրափակող տվյալ պատի բոլոր շարքերի ուղղանկյուն որմնախորշերի նշանակալից մասը։

Երրորդ քարը պատկանում է թաղակապ ծածկի հյուսիսային ճակատը եզրափակող պատի վերևից հաշված առաջին շարքին և տեղադրված է եղել այդ շարքի արևմտյան կեսում։ Իր ընդհանուր մշակումով, տեսքով, մետաղական կապերի համար արված փորվածքով, վեր բարձրացնելու համար քարի ծանրության կենտրոնում բացված հատուկ խոռոչով, եզրերի կորության շառավիղով այս քարը հար և նման է թաղի հարավային ճակատը եզրափակող պատի վերևի շարքի համապատասխան որմնաքարերին։

Նկարագրված քարերը հնարավորություն են ընձեռում ոչ միայն վերականգնել աղոթասրահի թաղակապ ծածկի հարավային և հյուսիսային ճակատների իրական պատկերը, այլ ճշտորեն որոշել թաղի տեսակը՝ ձևը (կիսաշրջանաձև) և նրա սկզբնական կառուցվածքի ստույգ չափերը։

Կարելի է մտածել, որ Գառնիի տաճարի աղոթասրահի հարավային և հյուսիսային ծայրերի կիսաշրջանաձև վերջավորությամբ այդ պատերը ինչ-որ ձևով կատարել են քրիստոնեական վաղ շրջանի հին հռոմեական կամ սիրիական բազիլիկային կառուցվածքների փայտակերտ տանիքների հորինվածքներում հանդիպող կամարների դերը (Հռոմում՝ ս. Ագնեսի՝ IV դարի տաճարը, Սիրիայում՝ Ռուվեայի բազիլիկան, Կալբ-Լուզեն, V—VII դդ. և այլն)։ Սակայն դա բոլորովին բացառված է, եթե նույնիսկ նկատի չունենանք Գառնիի տաճարի թաղակապ ծածկի վերը հիշատակված մնացորդների գոյությունը։ Բանն այն է, որ փայտաշեն ծածկ ունեցող նման կառուցվածքներում, օրինակ՝ Ռուվեայի բազիլիկայում, շենքի երկայնական պատերին ուղղահայաց կառուցվել են քարաշեն կամարներ և վերջինների վրա բարձրացվել փայտակերտ տանիքի լանջերին զուգահեռ երկթեք պատեր, որպեսզի այդ երկթեք պատերը, տանիքի ծպեղների հետ մեկտեղ կարողանան կրել կղմինդրե տանիքը։ Նույն սկզբունքը կիրառված է նաև Հռոմի ս. Ագնեսի տաճարի տանիքի կառուցված-

րում. տաճարի աբսիդի կոնխայի բացվածքը եռիզող կամարի վրա բարձրացել է երկթեք վերջավորությամբ ուղղաձիգ պատ, որը փայտաշեն տանիքի ծպեղների հետ կրում է ընդհանուր տանիքի կավարամածը։ Եթե Գառնիի տաճարի աղոթասրահի ծածկը լիներ փայտաշեն, ապա աղոթասրահի կոր վերջավորությամբ այդ պատերի վրա պետք է բարձրացված լինեին նաև երկթեք վերջավորությամբ պատեր։ Այս դեպքում միանգամայն անիմաստ կդառնար երկթեք վերջավորություն ունեցող պատերի տակ կոր վերջավորությամբ պատերի գոյությունը։ Տաճարի կառուցողները ինչո՞ւ պետք է հատուկ շաբլոնով, խնամքով ու որոշակի դժվարությամբ մշակեին կորաձև որմնաքարեր, զգուշությամբ տեղադրեին դրանք շարքերի մեջ, մեծ ճշտությամբ ստանային պատի վերջավորության կիսաշրջանաձև եզրագիծը և անմիջապես այդ ամենը թաքցնեին երկթեք վերջավորություն ունեցող պատի շարքերի տակ։ Պարզ է, որ Գառնիի տաճարի կոր վերջավորությամբ պատերի վրա ուրիշ պատեր չեն բարձրացվել, և որ կոր վերջավորություն ունեցող այս պատերը եղել են ոչ այլ ինչ, եթե ոչ աղոթասրահի թաղակապ ծածկի հյուսիսային ու հարավային ճակատները եզրափակող պատերը։

Ն. Մառի պեղումների ժամանակ տաճարի նոր հայտնաբերած բեկորների թվում հիշատակվում է թաղի երկու քար կլորացող կողմով։ Ցավոք կիսաշրջանաձև թաղի այդ քարերը տեղում չեն պահպանվել։

Տաճարի արևելյան և արևմտյան ճակատների ամբողջ երկարությամբ պահպանվել են անտաբլեմենտի քիվի համարյա բոլոր քարերը (30-ից պահպանվել են 28 հատ), որոնց վրա անխտիր գոյություն ունեն կրաշաղախի մեծ չափի մնացորդներ։ Կրաշաղախի մնացորդներ կան նաև ճակատների քիվի ինչպես անկյունների, այնպես էլ գագաթների քարերի վրա։ Կրաշաղախից առաջացող բեռը թեթևացնելու նպատակով շաղախի մեջ լցված են ոչ թե պատերի համար օգտագործված որձաքարի բեկորներ կամ հիմքի շաղախի մեջ օգտագործված գետաքար, այլ շատ թեթև հրաբխային ծակոտկեն կարմրավուն քարեր։ Նույն կազմության կրաշաղախի խոշոր զանգվածներ մեծ քանակությամբ թափված են նաև տաճարի ավերակների շրջապատում։

Եթե տաճարի հյուսիսային ճակատի գագաթից մինչև հարավային ճակատի գագաթն ընկած տարածության վրա, տաճարի երկլանջ տանիքի ամբողջ կառուցվածքում օգտագործվել է կրաշաղախ, ապա ինքնին հասկանալի է, որ այն կարող էր պետք գալ ոչ թե փայտաշեն, այլ քարակերտ տանիքի առկայության դեպքում։

Տաճարի հյուսիսային ճակատի ետևի (դեպի հարավ ուղղված) ճակատի վրա պահպանված են կիսաշրջանաձև թաղի կորությանը համապատասխանող, մեծ խորության ու բարձրության փորվածքներ, ուր ագուցվել են քարաշեն թաղի սալերը։

Նույն կորությամբ մշակված թաղի մեկ որմնաքար պահպանվել է աղոթասրահի հյուսիսային պատի արտաքին՝ դեպի նախամուտքը ուղղված ճակատի վրա։ Այս քարի կորաձև մշակված մասը որոշակիորեն տարբերվում է աղոթասրահի հարավային պատի վրա թաղակապ ծածկից պահպանված քարերի տեսքից։ Այստեղ քարի հաստության մի կեսը (դեպի աղոթասրահն ուղղված ճակատը) ունի սովորական որմնաքարի նման ուղղանկյունի կտրվածք, իսկ մյուս կեսը (դեպի նախամուտքը ուղղված ճակատը)՝ կորաձև մշակում։ Պարզ երևում է, որ վերջինիս վրա դետեղված է եղել ծածկի սալ։ Քարի բոլոր ճակատներն էլ ունեն կիսամաքուր տաշվածք։ Անկասկած է, որ նա դրված է եղել նախամուտքի և աղոթասրահի ընդհանուր պատի այն հանգույցում, որը ոչ մի տեղից չի երևացել։ Ինչպես ցույց են տալիս քարի վրա պահպանված մետաղական կապերի խոռոչները, այդ տեղը կարող էր լինել միայն նախամուտքի առաստաղի հարթ ծածկի վրա գտնվող՝ տվյալ պատի հյուսիսարևմտյան հատվածը, այսինքն ճիշտ և ճիշտ հյուսիսային ճակատի հետևի ճակատի վրա ստեղծված թաղակապ ծածկի հյուսիսարևմտյան հատվածի համապատասխան փորվածքների դիմացը։ Ուրեմն հյուսիսային ճակատի պատի հետևի երեսի վրա եղած փորվածքներին համապատասխանող թաղը մի ճակատով ագուցված է եղել ճակատի ետևի պատի մեջ, իսկ մյուսով տեղադրվել է աղոթասրահի հյուսիսային պատի՝ կլոր մշակում ունեցող համապատասխան հատվածի վրա։ Այս նշանակում է, որ նախամուտքի առաստաղի հարթ ծածկի վրա կառուցվել է երկրորդ ծածկ. այս անգամ թաղակապ։

Հայտնի է, որ տաճարի արևելյան, արևմտ-

